# ՊՈԲԼԻՈՍԻ

# ՎԻՐԳԻԼԵԱՅ ՄԱՐՈՎՆԻ

# ՄՇԱԿԱԿԱՆՔ

ՊՈԲԼԻՈՍԻ

## ՎԻՐԳԻԼԵԱՅ ՄԱՐՈՎՆԻ

# Մ Շ Ա Կ Ա Կ Ա Ն Ք

ԹԱՐԳՄԱՆԵԱԼՔ Ի ՉԱՓՍ ՀԱՅԿԱԿԱՆՍ ԵՒ ՀԱՄԱՌՕՏ
ՄԵԿՆՈՒԹԵԱՄԲՔ ԲԱՑԱՅԱՅՏԵԱԼՔ

Ի Հ. ԱՐՍԵՆԷ ԿՈՄԻՏԱՍԱՑ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՈՑ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԷ

132 + 55 p.



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1847

ԱՌ ՎՍԵՄԱԿԱՆ ՄԵՊՈՒՀՆ

# ՅԱԿՈԲ ՏԻԻԶ

ՈՍՏԻԿԱՆ ԱՐՔՈՒՆԻ ԴՐԱՄԱՀԱՐՈՒԹԵԱՆ

ԵՒ

ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ԱՏԵՆԻՑ

ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ԵՒ ԲՈՎՈՒՑ

ՏԱՐՓԵԼԻԴ դու յիմաստ և արուեստից այս հըմուտ,
Որ ընդ բիւր նըշոյլս 'ի փունջ հիւս ճակատուդ 'ի պըսակ՝
Այսմ իսկ ուշ և պարապ թերեւալ 'ի Քէն մըտաղիւր,
Բոլոր հոմասեռից նուրբ հանճարով գերաթուիչ,
Մինչ պետական սուր դիտողին ատենակալ ընտրելոյ.
Քո մեծ հովաթեք՝ ինձ հովանի Մեկենաս,
Այս բիւթեանդ հեշտ հովանուտք Պարթենոպէդ իմ ընդոյր
Հովասուն շընչել սիք 'ի Վիրգիլեան հոգւոյն յիս.
Ընդ՝ ընդ հըմայիւքդ ելեալ երկոցս իմ 'ի լոյս
Յաւէրժ իրաւապէս Քեզ 'ի ձօնի սըրբանուէր,
Պէթ միումդ ունին դէտակն ընդունելոյդ դիմակի՝
Թորգոմեան կըտընդոցաց զուգապարել 'ի հանդէս:

ԹԱՐԳՄԱՆԻՉՆ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԱՄԵՆԱՅՆ ազգի ազգի քերթուածք ճարտարաց ունին իւրաքանչիւր յիւրում կարգի զպէտս օգտակարութեանն, այլ թերևս առաւել քան զբնաւունն Խրատականքն ասացեալք կամ Վարդապետականք, որոց է զգիտութիւն ինչ կամ զարուեստ նիւթ առնել և եթ տաղիցն՝ ոչ թէ տիրապէս 'ի խոր ուսուցանել զայն ուսմանական կարգաւորութեամբ, այլ զգլխաւոր և զհաստատուն միայն զիտելիսն համառօտս աւանդել, և զայն՝ բանաստեղծական հեշտալուր ոճով և ամացուածիւ. և զամենայն ոյժ թափել այնուհետև 'ի պաճուճել զայնս ըստ պատշաճի և վայելչութեան զանազան բնական և բարացուցական կենդանի նկարուք և իմաստիւք և գեղեցիկ գեղեցիկ դրուագօք, որ յառաջիկայ ճառուն յանկ իցեն և ոչ ամենևին օտար և ըստ արտաքոյ անկեալ: Որ թէպէտ և ամենայն բանահիւսից պարտ է ընդ ուշի կալուլ զՈրատեայ զհռչակաւոր առածն

Ո ամենայն լնու զհաճոյս որ զպիտանին խառնէ 'ընդ անոյշ,

'ի նմանութիւն կրթելով բնութեան, որ ամենայն ուրեք զօգուտ և զհեշտութիւն 'ի մի ծորդեալ ունի, սակայն ուր այլք 'ի քերթողաց երկրորդ ունին կարգաւ զպիտանութիւնն, առ խրատականսն առաջին է այն: Այլ եթէ քերթածոց 'ի պիտանութենէն կշռէր միայնակ, զառաջին ամենեցուն տանէր խրատականն:

Ամենայն խրատական քերթուածս նախնեաց և արդեաց նախապատիւ առ ամենեսեան են Մշակականք Վիրգիլեայ։ Ըստ օգտակարութեան, զի նիւթ ունի զԵրկրագործութիւն՝ զառաջին արուեստ 'ի նախաստեղծ մարդոյն և այսր, զկերակրիչ և դարմանիչ մարդկան և անասնոց։ Ըստ զուարճութեան, զի զի՞նչ քաղցր և ախորժական քան զդաշտորայս և զագարակս և զայգիս և զանտառս, և 'ի նոսա զընտանի և զհամբուրասէր անասնոցն ջոկս, և զպարզամիտ և զխաղաղասէտ շինական կենցաղ։ Իսկ ըստ զուարճութեան ճարտար յօրինուածոյն՝ անզուգական, գերազանցեալ քան զամենայն յիւրում կարգի՝ ոչ միայն քան զայլոց բանաստեղծիցն ստեղծուածս տաղից, այլ և քան զնորուն իսկ Վիրգիլեայ զայլ ամենայն յօրինուածս։ Մինչ զի, որպէս յայտ է, հրաման տուեալ նորա կտակաւ 'ի հուր դատել և անհետ կորուսանել զհրաշակերտ Ենիականն՝ զանկատարն մնացեալ առ կանխելոյ օրհասին, բայց զսա պահէր 'ի խիստ պատուհասէն՝ շատ համարեալ 'ի փառս իւր և հռովմէական դպրութեանց։

Զայս քաջահնչօղ փողոց դիւցազնական նուագաց Իլիականին Հոմերոսի և Ենիականին Վիրգիլեայ՝ կամեցեալ մեր և ճաշակ ինչ տալ ազգիս զխրատական ստեղծաբանութեան, ոչ կարծեմ անճահ ինչ արարեալ մտածութիւն և ընտրութիւն 'ի թարգմանելս զայս անմահական քերթուած. ոչ միայն ըստ օգտի քերթողական ախորժակաց և առ 'ի տալ օրինակ կատարեալ զայսր ազգի քերթութեան, այլ և ըստ ենթակային իրի պիտանութեան։ Զի եթէ, որպէս թուեցաւ ոմանց, ըստ սադրելոյ Մեկենասայ ձեռն արկ Վիրգիլիոս յայս վաստակ առ 'ի դարձուցանել զհռովմայեցիս յարենէ և յընտանի պատերազմացն վրդովմանց 'ի սէր և 'ի փոյթ դաշտական և հողավաստակ կենաց, և յարծարծել 'ի նոսա զեռանդն բազմաշահ արուեստիս, յոր ոչինչ անձն համարէին նախնիքն իւրեանց նուիրել զմնացուած ժամանակին յաշխարհին տեսչութեանց, որոց և ձեռք իւրեանց բազում անգամ քրտնացեալք 'ի մաճոյն՝ զայլին առնուին զերասանակս կառավարութեան տիեզերաց, մեզ ևս ոչինչ ընդհատ պարտի լինել փոյթ ըղձակերտս առնելոյ զայս արուեստ՝ յամենայն ժամ կենցաղօգուտ, և զրեթէ ոչ երբէք ըստ արժանի 'ի սէր և 'ի վարկ վայելեալ, մանաւանդ առ արևելեան ազինս և յազգս մեր։ Այլ առաւել ևս խրախուսելի է մեզ 'ի սոյն զայժմու

ժամանակաւս, յորում և Տէրութեանս առանձինն խնամովք հոգ յանձին կալեալ, և ատեան խորհրդոյ ևս սահմանեալ 'ի բարգաւաճել յաշխարհին մերում զմշակութեան ուսումն և զարդիւնսն։ Որում ակն ունիմք նպաստ լինել առաջիկայ քերթածիւս, ոչ եթէ՝ որպէս ասացաքն՝ զչոր և զցամաք գիտութիւն արուեստին ուսուցանելով, այլ քերթողութեամբն զուարճալի և ցանկալի ընծայել զերկրագործութեան պարապումն և 'ի շահ օգտից նորին հայեցուցանել զմիտս։

Աչրանի է մեզ, եթէ և թարգմանութիւնս հանգոյն բնագրին 'ի դոյն կէտ նպատակի հասեալ լինիցի։ Զի բազում անգամ որ ինչ գեղեցիկն է և սքանչելի 'ի լեզուի միում, յայլ լեզու հանեալ՝ ոչ զնոյն տիպս չքնաղ կերպարանաց յանձին երևեցուցանէ, ոչ գիտեմ 'ի թարգմանութեանն յանցանաց, եթէ յազգին և 'ի բարբառոյն բնաւորութենէ։ Այլ եթէ չէր մեզ յոյս ազատ 'ի թշուառութենէ աստի լինելոյ, և ոչ իսկ յանձն առնուաք մխել 'ի թարգմանութիւնս, թող թէ 'ի լոյս զայն ընծայել։ Այլ յոյսն մեր յայն ապաստան կայ, զի զուարճութիւն նիւթոյն և գերազանց ճարտարութիւն յօրինուածոյն ինքնին բաւական թուին 'ի կախարդել զմիտս և ըզսիրտս. որպէս և ամենայն իսկ այսպիսի ընտրական բնագիրք հնոցն ճարտարաց, եթէ միայն ողջ ածցին հաւատարմութեամբ 'ի մեր լեզու։

Այլ հաւատարմութիւն իմա ինձ ոչ զվեր 'ի վերոյ իմաստիցն և եթ, թէ և առանց անդէպ յաւելուածոյ և պակասութեան, այլ և զկատարեալ ճշդութեան և անթերի ճշգրտութեան մտացն, զնրբութեան և փափկութեան ծածկեալ իմաստիցն և ազդմանց, և զվսեմութեան և պերճութեան՝ զուժգնութեան և ճոխութեան տաղիցն ըստ համեմատի բնագրին. որպէս զի ամենայնիւ այդոքիւք լիցի հանել զտիպս կերպարանաց բնագրին, և ոչ թէ թարգմանչին զիւրն։ Զոր և զայդ ամենայն խնամոտ փութով ջան տարեալ է մեր ըստ մերում կարի և ըստ ներել հայկականս բարբառոյ և չափոց լի բովանդակ ընծայել 'ի թարգմանութեանս. այլ թէ և յաջողեալ, և որչափ, և թէ ոչ, զայն ընտրողք տեսցեն։

Թարգմանութեան է նորանոր գանձս ճոխութեան բերել յաւելուլ յազգաց ազգաց օտարաց 'ի բնիկ փարթամութիւն հայրենի

լեզուին. ոչ զչքնաղ իրացն միայն ասեմ, այլ և զնորագիւտ ասացուածոց։ Այլ մերս լեզու ՚ի վերայ ամենայն հարստութեան իւրոյ ոչ արհամարհէ, ոչ խոժոռի ընդունել սիրողաբար որ ինչ և մատուցի նմա յազգասէր նախանձուէ՝ ոչ յախուռն բարբարել կարծեցելոցն, այլ ՚ի խոհական և ընտրող հայրենասիրութենէ ճարտարաց, որ ոչ եթէ զմնիկ գեղ ազգային բարբառոյն աղաւաղել, այլ պճնել և աճեցուցանել զայն խնդրիցեն։

Հայկեանս բարբառոյ ոչինչ կարծեմ պակասէ ՚ի յիշատակեալ հանգամանացդ ՚ի լաւութիւն թարգմանութեան. ոչ բաւականութիւն ՚ի բացատրել զամենայն ինչ ճշգրտօրէն ճշգիւք և անօսր փափկութեամբ իմաստից, ոչ պերճ վսեմախօսութիւն, ոչ հարստութիւն զօրութեան և ոչ առատութիւն ճոխութեան, միայն թէ ՚ի գրիչ ճարտար դիպիցի։ Եթէ պակասէ ինչ նմա առ հելլենականաւն և հռովմայեցւոյ, մանաւանդ առ առաջնովք, ոչ այլ ինչ է՝ բայց փափկութիւն և ողորկութիւն զգալի ձայնիցն, յորս ոչ ունի հաւասարել քաղցրութեան նոցին. թէպէտ և քան զբազումս այլ բարբառս փափկավանկ գտանիցի։ Սակայն և յայսմ ոչ սակաւ ՚ի ձեռս ճարտարին է իշխանութիւն պատկառ կալոյ ըստ կարի քաղցրութեան տաղիցն, զգուշացեալ յազգի ազգի անհարթութեանց՝ առանց կորուսանելոյ ՚ի պարտուպատշաճ վսեմութենէն և յուժգնութենէն, և առանց զքերթողաց և զտաղաչափիցն արուեստ տապալելոյ։ Գործ արդարև ոչ դիւրին. և այս դժուարութիւն է, կարծեմ, որ լքուցեալ է և լքուցանէ զոգի և զձեռս հանճարեղացն մերոց քերթողաց՝ չհամարձակել ՚ի տաղս դժոխալուրս։

Իսկ ՚ի չափով ասելոց թարգմանութիւն, որոց նուագաւորն դաշնակութիւն մի է ՚ի կարևոր և յանհրաժեշտ պիտոյից հաւատարմութեան քերթածաց, այլ ևս երկու ինչ է առանձինն խնամով նկատելի։ Մի, զի զոր ազգ չափոց և ՚ի ձեռն առնուցու թարգմանիչն, չափաբերութիւն բռնաւոր՝ հարկ առնէ նմա ուրեք ուրեք յաւելուլ ինչ ՚ի բնագիրն կամ զեղչել առ ՚ի զտաղն ողորկելոյ։ Ի յաւելլոյ և ՚ի հատանելոյ կարի զգուշալի է, զի մի թերի և պակասաւոր ցուցցէ զմիտս օրինակագրին ՚ի պիտանի ինչ և ՚ի կարևոր առ մի ինչ ՚ի նախասացեալ հանգամանաց հաւատարմութեան։ Իսկ ՚ի յաւելուլ ինչ առ անհնարին հարկի՝ զգուշալի է մի օտարոտի ինչ կամ անդէպ մուծանել իմաստից բնագրին կամ ճշգրտութեան, փափ-

կութեան, գեղեցկութեան, վսեմութեան և ազդողութեան նոցին, այլ յար ինչ և յանկագոյն 'ի նոյնս՝ իբրև աճումն իմն նոցին, և ոչ թէ նոր ինչ 'ի պատրանս ընթերցանելեաց՝ զիւր իմաստս հօր բանին ընծայելոյ, կամ ոչ ուժեք վստահ լինելոյ առնուլ ինչ 'ի վկայութիւն 'ի թարգմանութենէ անտի։ Երկոքին պայմանքդ 'ի ճարտարութիւն թարգմանչին հային։

Երկրորդ այն է նկատելի 'ի չափս ոտից, զի թարգմանն զայն ազգ տաղից ընտրեսցէ, որ պատշաճագոյնն իցէ առաջի արկելոյ քերթածին։ Իսկ պատշաճագոյն այն է համարելի, որ ըստ կարի նուազն բռնադատիցէ 'ի յաւելուլ և 'ի զեղչել ինչ առ անսխալ բերելոյ չափոցն, կամ 'ի փոփոխումն ինչ առնել կարգի իմաստից՝ մանաւանդ գերակատար և յառաջադաս բանաստեղծաց։ Իսկ մանաւանդ այն, որ չափոց և դաշանց սկզբնագիր քերթողին համեմատն իցէ, որով և այնր ազգի քերթուածոյ՝ ըստ թեթևութեան և ծանրութեան ոտից կամ ըստ քնքշանաց կամ ըստ մեծավայելուչ պերճութեան, առանց որոյ անհնար է չմնալ 'ի ստորև քան զբնագիրն և չկորուսանել իսկ զերանգագոյն հաւատարմութիւն կարևոր, առ որ ելանէ և միւս առածն Որատեան,

Զպայմանեալ յեղանակս և զքերթածաց պահել զերանգս
Եթէ չկարեմ կամ թէ չգիտեմ՝ ընդէ՞ր քերթող ես ողջունիմ։

Իսկ արդ՝ զո՞ր 'ի հայկական չափոց ընտրել արժան էր 'ի թարգմանութեան քերթածիս։ Բնագիրն յօրինեալ է վեցոտանի մեծագոյն չափովք դիւցազնականօք չափական տաղից։ Իսկ զտանել ոտանաւոր հաւասար ամենևին նուագաւոր դաշնակութեան և բազմապիսի փոփոխմանց չափական վեցոտանւոյն Յունաց և Հռովմայեցւոց՝ յանհնարիցն է, մանաւանդ յարդեացս նոյնաձայն տաղտուկ ոտանաւորաց։ Խնդրելի էր ապա ըստ կարի համեմատն, որ և ընդ միւս պահանջեալ յատկութիւնն առաւել ունիցի՝ նուազագոյն հարկ առնելոյ յաւելուածոց կամ զեղչմանց։ Ապա ուրեմն ընտրելի էր այնպիսի իմն ոտանաւոր, որ մեծագոյն և պերճագոյն իցէ 'ի չափս հայկականս, որ ոչ հարկ առնիցէ ճշդիւ յամենայն տողս զնոյն թիւ վանկից պահել. այլ յարմարաւոր ներդաշնակութեամբ նոյնաթիւ և զուգաչափ անդամոցն շատացեալ, առ 'ի հատանելոյ զնոյնաձայ-

նութեանն տաղտուկ՝ ազատութիւն շնորհիցէ 'ի թիւս վանկից տա-ղից, օրինօք՝ և ոչ վարկպարազի անխտրութեամբ, զի մի ելցէ ըստ պայման չափաբանութեան. որ և դարձեալ ազատ առնիցէ զտաղսն 'ի ձայնական յանգից, որ աւելորդ իմն կապանք են 'ի մեծ տաղս և հարկեցուցող ճարտարագունից անգամ յոչ սակաւ այլայլութիւն մտաց կամ կարգի իմաստից և դարձուածոց. մանաւանդ 'ի թարգ-մանութիւնս։

Այլ ո՞ւր գտանիցի առ մեզ այդպիսի սքանչելի տաղաչափութիւն։ 'Ի յետին դարուց ոտանաւորացս և առ մեզ յաճախելոց չիք ուրեք և ոչ մի։ Այլ եթէ որպէս 'ի հայերէնախօս լեզուագիտութեան մասին յամենայնի նախանձախնդիր եմք հնագունի ոսկեղէն դարու գրականութեանս մերում հետեւօղս լինելոյ, զնոյն և յայսմ մասին չափաբանութեան առնիցեմք, որպէս արժան իսկ էր, անդ գտանի-ցեմք և զայդ չքնաղ տաղաչափութիւն։ Այլ ոչ առ կարի հնագոյնսն և եթ տեսանիցեմք մնացեալ զայն, այլ և անդուստ 'ի սկզբանէ կարգեալ եկեալ մինչև յերեքտասան դար և այսր ևս, և միայն առ յետինսն և առ մեզ անծանօթ իմն մնացեալ՝ 'ի տիրել վանկաչափ և յանգաւոր ոտանաւորաց, որոց ձայնական յանգից հայր ճանաչին՝ մանաւանդ առ մեզ՝ տաճիկք կամ արաբացիք, և սկզբնաւորող Արեւկացին յաղօթագիրսն կամ Մագիստրոս, և ծաղկեցուցիչ Ներսէս Շնորհալին, և բնաւ անծանօթ են առ նախնիս մեր, որ-պէս և առ հինսն այլոց ազգաց բազմաց, հազիւ ուրեք երբէք ե-րևեալ յառաջ քան զմետասներորդ դարն, և յերկոտասանին առհասա-րակ տիրացեալ։

Շատ լիցի մեզ ուշիւ հայել և աւագ աչօք 'ի հնագոյն մեծա-չափ տաղս նախնեաց մերոց, որպիսի յաճախ գտանին 'ի շարականս և յերգս՝ 'ի Սահակայ Պարթևէն մինչև 'ի նոյն ինքն իսկ 'ի Շնոր-հալին, և անդ ակն յայտնի տեսանիցեմք զխնդրեալ օրինակդ յա-տուկ ազգային ոտանաւորաց, է զի պարզ վարեալ, և է զի խառն ընդ այլում քնարական մանր տողի։ (1) Եթէ գտցի ուրեք Զաքա-

1. Այսպիսի են, օրինակ իմն, սակաւք 'ի բազմաց 'ի կարի հնագունիցն, համբարձին աւագ երկուշաբաթւոյն Որ յանէից գոյացուցեր. մանկունքն աւագ երեքշաբաթւոյն Ահաւոր ես թագաւոր. օրհնութիւնն աւագ ուրբաթուն Արծաթափրասնեամբքն, և երկրորդ գրուագն 'ի Գինչերին յորում մարմնէր. Ճրագալուցի մանկունքն Ծագեալն հրաշալի. հինգերորդ աւուր ծննդեան տէր յերկնից Որ անսկիզբն անփոփոխն. Հարցափոխմանց Անձինք և համ-

բանք Խորենացւոյն չինեն և 'ի Մահալ բադրաթանի, ոչինչ երկբայիմ թէ յայս ազգ տաղից իցեն։ Յայս ազգ ոտանաւորաց է և զոր Գրիգոր Մագիստրոս վարէ 'ի Մեծ են գործս և յայլ տաղս իւր, յաւելեալ միայն զյանգ ձայնական՝ ընդհուպ արաբացւոց, կամ առ մտաւորի պարծանս ինչ առ նոքօք, որպէս թէ ոչ 'ի խոնարհ մնացեալ 'ի նոցանէ և յայնմ աւելորդ առաւելութեան։ Այսպիսի են և այլք բազումք մինչև 'ի քերթողս յետին դարուց․ զոր թէ ոչ աւելորդ,

բարձին Անոքիղբըի բանն տոփոած․ խաչի երրորդ աւուր 'ի սփոնգանէին Այրոնոյ․ Վարագայ խաչին օրհնութիւնն Նըշանոս ամենայողբ․ գիւտի խաչին տէր յերկնից Աղաւնէջոտ 'ի խաչ տո․ Հայրապետաց օրհնութիւնն Այսօր ոգեոց հոյրապետացն․ Կիրակոսի և Յուլիտայ մանկունքն Վարդագոյն վառեալ ծաղկի․ մարտիրոսաց համբարձին Սուրբ էս փէր ղերաբէանց․ ննջեցելոց շարականքն Եւ տոտջի փէր ողորմեա և Աշարէլ ն մորդոսէր․ երկրորդ ծաղկազարդի գրեթէ բոլոր պատկերն Մեծահրաշ այս խորհուրդ։ Եւ 'ի շարականաց նորին իսկ Շնորհալւոյն, անապակին Որ զփրկանիւք կերպարան, տնտեսին Որ աշարէր ղերաբեամբ, վարդավառին Այսօր որ էն 'ի ջերկիսն, վարդանանց Նորահրաշ պըսակաւոր․ վերանդեանց տէր յերկնից Երկնային հրաւիրակօք, և մանկունքն Անմառեալ բանդ տոփոած․ և 'ի տաղից նորին ոչ սակաւք, որպէս ծննդեան Նոր Բագաւորին, մեծի ուրբաթուն Շնորհօք ոգեոյ հոգւոյն, յարութեան Նոր ծաղիկ պայծառ ջոտոա, առաքելոց Առաքելոյ տոփոածորդւոյն, 'ի սուրբ վկայսն Բանիս տէփառոր, հախճախմանց Երկնիէ հոգիահրաշ. Եւ 'ի Նարեկացւոյն՝ երգն ծննդեան Սեռ էմ գեղեցիկ, յայտնութեան Առէգիս մեծ խորհրդոյ։ Եւ յայլուստ երգն պատարագի Ընփրէալք յոփոածոյ․ և այլք բազումք։

Իսկ թէ չկամիցի ոք ընդունել զդոսա այդչափ երկայն տողս, և յերկուս հատանել յամառիցի, ոչ ներեն զայն նմա նախ՝ բազում առաջին կիսատողիցն անհամեմատ և աննման կարճութիւնք, որպէս է տեսանել բազում ուրեք․ և երկրորդ՝ ըթիւ վանկք յաճախեալք 'ի վերջ երկրորդ անդամոց և 'ի յաջորդն անցեալք․ որպէս,

'ի պատկեր աստուածութեանըդ քոյ ստեղծեր մարդ 'ի հողոյ։
'ի յաւէժ կենդանութեանըն մահահաթ պըտղով մեռեալ։
Որ ըստ պարտեաց նախահօրըն յանձն առեր յօժարութեամբ։
'ի միւսանգամ քո գալըստեանըն յորժամ գաս դատել զերկիր։
Ժողովեալ հըրեշտակըն կըչեսցին արծաթ բազում։
Զերանեալ նահատակըն մատուցուք 'ի յընծայումն։
Տարագնաց եղեւք յերկինըս պարակցեալ ընդ անմարմնոցն։
Ընկալեալ ըղբըրաքինըն յաղթանակ նահատակացն։

Եւ երկատողից ինչ նմանութիւնն ոչ ինչ ստանանէ տաղիցն․ զի և 'ի չափականն զտանին ըստ նոցա, և 'ի նոյն իսկ 'ի վերջատանիսն։ Զի թէպէտ և սովորաբար հատածոյքն խափանեն զայդ նմանութիւն, սակայն և այնպէս՝ է որ 'ի գիլիկեանն և 'ի փերեկրատեան հատանի, է որ 'ի փալլիակեան և յադոնեան․ ոմն յերկուս փերեկրատեանս և միւս յերիս ադոնեանս․ և սակայն ոչինչ փոյթ առնեն։ Նոյնպէս և մեք․ ապա թէ ոչ զբազում երկար տողս մեր և գրեթէ զբնաւն՝ հարկ լինի ապախտ առնել ընդդէմ հասարակաց սովորութեան և ականջաց իսկ։

տակայն երկայն է մեզ տողել աստանօր. որ կամի՝ կարող է խնդրել և տեսանել 'ի տաղս նոցա՝ ոչ յեղանակաւորս միայն, այլ և 'ի կարդալի քերթածս, և մինչև 'ի նամակս անգամ դարուցն յետնոց, որպիսի են և մագիստրոսիքն ոմանք, որպիսի և Նեփ էն գործոն ապդ իսկ յիշատակեալ քերթուած նորա երկայն, ոչ կցկտուր իմաստիւք տող առ տող բովանդակեալ, այլ ազգի ազգի իմաստից դարձուածոց մանուածոյ հիւսիւք ոլորեալ: Որովք յայտ է թէ այս ազգ տաղից ոչ 'ի կցկտուր տաղս և յեղանակաւոր երգս միայն վարէր 'ի նախնեաց. և համանին ընդունայն պատճառաբանութիւնք այնոցիկ՝ որ զայդ կարծիցեն, և անյարմար 'ի շարամանութիւն և 'ի լուր ընթերցուածոյ դատիցին զչափս տաղիցդ: Այլ բնաւ իսկ այդպիսի զանազանութիւն եղանակելի միայն և ոչ կարդալի տաղից՝ անգոյ է, և ոչ յազգի ուրեք երբէք երևեալ կամ լսելի լեալ:

Իսկ եթէ ոք ուրասցի զդոսա չլինել իսկ բնաւ ոտանաւորս, աղաչեմք առ միմեանս եդեալ ընթեռնուլ զդոսա ընդ այլ վանկ և դաշնակաւոր շարականս և շարագիրս. եթէ և այնպէս չլուիցէ զզանազանութիւն դոցա, մեք ոչ կարեմք ականջս ստեղծանել, ոչ իբրև զԱրամազդ և ոչ իբրև զԱպոլոն: Իսկ եթէ լուիցէ, աւելորդ է վիճել այնուհետև՝ թէ ընդէ՞ր այս ազգ ոտանաւոր կամ այս չափաբանք են, և ոչ այն՝ զոր ինքն կամի բազմամեայ կանխակալցս սովորութեամբն պաշարեալ: Թող ընդ հին նախնիսն վիճեսցի, որք քան զմեզ կարի հմտագոյնք գոլով բնաւորութեան և ախորժակաց և դաշնակութեան լեզուիս՝ զայս ազգ ընտրեալ են տաղից, և զայն բաւական համարեալ 'ի չափս բանի՝ յորոշումն արձակ շարագրածաց: Այլ զինչ այլ առաւել խնդրիցի 'ի փափուկ և 'ի զգաստ լսելեաց, և զինչ այլ ինչ պահանջեսցի 'ի պէտս և յօրէնս տաղից:

Այսու ամենայնիւ ոչ եթէ բնաւ խոտել կամիցիմք զճիշդ զուգավանկ տաղս, և մերժել զձայնականն յանգս յոտանաւորաց մերոց. այլ 'ի մեծ չափս և յերկայն քերթածս, մանաւանդ 'ի թարգմանեալս, ոչ կարևոր ինչ համարիմք լինել՝ նախնեացն օրինաց հաւանեալ: Զի բաց 'ի տաղտուկ նոյնաձայնութենէ և 'ի տագնապեցուցիչ հարկէ՝ զինչ օգուտ կամ զինչ առաւելութիւն դաշնակութեանն տաղից 'ի ճիշդ զուգավանկութենէ անդամոց և տողից, ուր անհնար է ամենայն վանկից զնոյն սղութիւն կամ երկարութիւն ունել, ուստի և ոչ անդամոց և տողից զնոյն չափս ամանակի և զհաւասարութիւն: Թող և զբա-

զուգ ուրեք անմիաբանութիւնն ընդ իմաստից և կրից բանին և ընդ առոգանութեան։ Իսկ ձայնայանգք, որպէս ասացաք, աւելորդ կապանք և խոչ ընդ ոտն են քերթողին, և թեթև իմն և գրեթէ անգոյ հեշտութեամբ՝ բազում փնասուց պատճառք, ոչ միայն հաւատարմութեան, այլ և վսեմութեան և շարժողութեան տաղից, մանաւանդ 'ի թարգմանութեան, թէ և ճարտարօրէն և յոյժ գեղեցկապէս ճշգրտեալ յօրինեսցին. իսկ եթէ և այդ շնորհ ոչ երևեսցի 'ի նոսա, զի՞ լինին այնուհետև։ Սակայն և այնպէս 'ի մանր քերթուածս ինչ, մանաւանդ քնարերգականս, ես առաւել 'ի նոյնավանկ անդամովք տաղս, յոյժ վայելուչ և գեղեցիկ զայն կարծեմ՝ եթէ ըստ պատշաճի 'ի ձայն ճշգրտեսցին։ Այլ զայս այսպէս հարկիմք խորհել՝ յետ միանգամ մուտ գտանելոյ և տիրանալոյ յազգի մերում զուգավանկ տաղից և նոյնաձայն յանգից։ Որ հնագոյն նախնիքն մեր և զմանր և զքնարերգական տաղս իսկ անյանգ 'ի ձայնից երգեալ են։ Բազում ինչ գրեալ կայ յեւրոպէական իմաստնոց փոխանակ և ընդդէմ ձայնայանգից, 'ի նոցունց իսկ ազգաց՝ որ քան զյանգաւոր ոտանաւորս այլ ինչ ազգ ոչ ունին։ Հմտագոյնքն և քաջախոհք առաւել ոտից գտանին քան ջատագովք. (Գ) և 'ի վերայ այլոց փնասուց՝ գտանեն զայն և գիւտ լեալ ժամանակաց վայրենութեան կամ տղայութեան այժմու ազգաց, և ցայսօր առ վայրենիս և տղայաբարոյ ազինս զօրացեալ։ Այլ 'ի ծաղկեալ յարդի ազգաց Եւրոպայ գերմանացիք ընկալան և զանյանգ ոտանաւորս. անգղիացւոց լաւագոյն քերթածքն անյանգ տաղիւք են չափեալ. և յիտալիացւոցն լեզու՝ քան զամենայն արդիս քերթողական, 'ի հնոց ես առաւել 'ի նորոց բազում քերթողք են՝ որ զմեծամեծ քերթածս անյանգ տաղիւք երգեն մինչև ցայսօր ժամանակի, տաղտկացեալք 'ի գերութենէ ընդունայն յանգից առաջնոցն և ընկեցեալք զլուծն։ Արդ՝ եթէ նոքա որ 'ի նախնեաց իւրեանց

Գ. Տես յանգլիացւոց 'ի Պլէռ, դասք հռետորականին և գեղեցիկ դպրութեանց, հատոր Գ. յաղագս բանաստեղծութեան, դաս Ծ։ 'ի գաղղիացւոց 'ի Փենելոն, թուղթ առ Ճեմարանն, Ե. առաջարկ. քերթողականին. — 'ի Տիւպօս, քննութիւնք 'ի վերայ քերթողութեան և նկարչութեան. մասն Ա, հատուած ԼԷ. յաղագս Յանգի. — 'ի Լավօ, բառգիրք դժուարութեանց գաղղիական լեզուի, 'ի բառն Յանգ։ — Մառմոնթէլ ջատագովն իսկ յանգից՝ միահաւան գտանի, թէ 'ի վսեմ և 'ի մեծավայելուչ տաղս թեթև ինչ և մնոտի և ունայն են նոցին շնորհք. տարերք գրականութեան, Յանգ։

գյանգաւորն ընկալեալք՝ դարձուցին զայն յանյանգ, մեզ. քանզի՞ն առաւել չիցեն նախանձելի իմաստնախոհ և բանիբուն մերոցն նախնեաց ազնուականագոյն ախորժակք։

Բայց անյանգ զի ասացաք զբուն ազգային հին ոտանաւորս մեր, մի այնպէս կարծիցի որպէս թէ չգուցէ ինչ բնաւ նմանավերջութիւն յաւարտ տողից. զի առանց այդր ոչ որոշին վերջք և սպառուածք տողից իւրաքանչիւր, և ոչ հանգչին ականջք լրութեամբ չափոցն. վասն որոյ և կարևոր դատեալ է յամենայն ազինս, և 'ի նոյն իսկ չափական ոտանաւորսն։ Սակայն ոչ եթէ ձայնական յանգիւ ձայնաւորաց և բաղաձայն տառից վճարի այդ նմանավերջութիւն, այլ նման ոտս գրեթէ միշտ վարելով 'ի վերջսն չափական տաղից, որպէս վեցոտանւոյն 'ի ստեղն և 'ի համբոյր աւարտեալ, և երբեմն ազատութեամբ յերկուս համբոյրս։ Այս բաւական է 'ի նմանութիւն ինչ յանգմանց և յորոշումն տողից. զոր և մարթ է ասել յանգումն քանակի կամ եղանակի, և ոչ տառից։ Այս օրէնք են և 'ի մերում նախնական ոտանաւորս. զի զյետին երկու անդամն քառանդամ տաղից գրեթէ միշտ նոյնավանկ դնեն, և այն լինի նոցին 'ի տեղի յանգի. որպէս տեսցի այժմ յաւանդելս համառօտիւ զօրէնս այսր բուն ազգային վաղեմի մեծ տաղաչափութեանս։ Նոյնպիսի նմանայանգութիւն իմա և զայլոց չափմանց։

Արդ այս ազգ ոտանաւորաց, որպէս ասացաք, ոչ զվանկից՝ այլ զանդամոցն թիւս միայն չափէ և հաստատուն պահէ, յորում և է իսկ ոտանաւորացս զուգայարմար չափակցութիւն կատարեալ, յայլում ամենայնի ազատօրէն վարեցեալ, սակայն օրինօք։ Քանզի մեր չիք չափ հաստատուն վանկից, և տաղքս չեն չափական իբրու ըզՅունացն և զՀռոմոց, այլ թուաւոր և կշռական միայն, էական թիւ կամ կշիռ և ոտք և դաշինք և ձև և պայման ոտանաւորացս ոչ 'ի վանկսն եդեալ է 'ի հին նախնեաց, այլ 'ի յարդարուն համեմատութիւն և 'ի չափակցութիւն անդամոց։ Այս ընծայութիւն և հաւաստիք փորձոյն այն է, զի եթէ զնոյնավանկ տողս, զոր օրինակ զհնգետասան, յայլաթիւ անդամս հատանիցես, յերիս, 'ի չորս, 'ի հինգ, այն տողք ոչ երբէք միաբանին 'ի մի յարմարութիւն ընդ միմեանս։ Իսկ եթէ ընդ հակառակն զաննոյնավանկ տողս իսկ, որպէս զհնգետասան, զչորեքտասան, զերեքտասան, հատցես 'ի նոյ-

նաթիւ ոչ կարի անհամեմատ անդամս, օրինակ իմն 'ի քառանդամ, տողքն այն՝ ուղիղ առոգանութեան օրինօք յարդարեալ յարմարեալ գան 'ի մի միաբանութիւն դաշնակութեան ընդ իրեարս, և վանկի ինչ պակասութիւն յանդամս ուրեք՝ առ ոչինչ գրի: Զայսր զփորձ կարէ առնել և տեսանել ամենայն ունկն հայացի: Արդ ըստ այսմ տեսութեան՝ մեծ կամ դիւցազնական տաղն նախնեաց յամենայն 'ի տողսն քառեակ անդամովք ոլորի: (3) Առաջին անդամն ազատ գոլով 'ի միոյ ցչորս վանկս. երկրորդ անդամն քառավանկ, կամ եռավանկ՝ եթէ առաջինն չիցէ միավանկ. զի մի մին ընդ յաջորդ երիցն մի անդամ քառավանկ կարծեցեալ և 'ի մի խառնեալ՝ կորնչիցի քառանդամութիւնն, ուստի և չափք տաղին: Երրորդ և չորրորդ անդամքն յաճախ սովորաբար են քառավանկ, առ 'ի լինել ծանր և մեծավայելուչ յանկումն տողից իբրև զհամբոյրն չափականին: Բայց ազատ է երբեմն զչորրորդն դնել եռավանկ, միայն թէ երկրորդն ևս չիցէ յայնժամ եռավանկ կամ առաջինն միավանկ. զի այնպիսի տողք՝ կամ ոչ դաշնակաւոր լինին ընդ այլ տողս, կամ յերկուս հաւասարս հատանին ըստ այսր ազգի ոտանաւորաց, և կամ ոչ լնուն զչափս երկոտասան երկար վանկից, թէ և մի ևեթ սուղ վանկ համարեսցի 'ի նոսա, որում անմարթ իսկ է չգտանել: Վասն որոյ թիւ վանկից տողիցն չպարտի նուազել քան զերեքտասան, որպէս և ոչ առաւելուլ քան զվեշտասան, ըստ որում տեսցի 'ի յաջորդ պատկերին: Գովլին պարզ օրինօքդ եղանեն ինքնին տասն յեղանակք նոյնաչափ համարեալ տաղից՝ յաճախ վարեալք առ նախնիս խառն ընդ միմեանս, որպէս գոյ տեսանել 'ի նախայիշատակեալ օրինակսդ:

Կարգեսցուք այժմ իբր 'ի պատկերի առաջի աչաց զտասն փոփոխմունսդ, համդերձ կշռովք սղութեան և երկարութեան վանկից իւ-

3. Կայ և քան զայն մեծագոյն տաղ առ մեզ, որպէս և առ Յոյնս և Հռովմայեցիս քան զվեցոտանին բայց սակաւ ուրեք վարեալ. որպէս:

Զարթիք փառք իմ զարթիք և ես զարթեայց առաւօտուց ալէլուիա:

Այսօր զանճառելի ծնընդեան քոյ տէր ըղձապասաւոր խորհրդոյ:

Այսօր զիմանալի լուսոյն ծագօղն 'ի խաւարի նըստելոցս:

Մարթի և զսոսա քառանդամս հաշուել, առաջին անդամն վեցավանկ, որ գտուն ուրեք լոկ 'ի տաղս մեր: Բայց սովորական քառանդամն՝ զոր աստ ցուցանեմք, բաւական է յոյժ առ մեծագոյն չափս դիւցազնականս:

րաքանչիւր տողից, որ և գան զուգին 'ի մի միաբանութիւն չափոց, ըստ որում զի երկու սուղն մի երկար վանկ համարի։ Զախակողմեան թուանշանքդ զթիւս վանկից քառեակ անդամոցն ցուցանեն, աջակողմեանքդ զթիւս վանկից տողիցն՝ սուղ և երկար համարելոց ըստ պատշաճի տեղւոյն և երկայնութեան տողիցն։

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 4 – 4 – 4 – 4 | յորում թէ իցեն սուղ վանկք | 8, | լինի | 12 | վանկ երկայն կամ չափ. (4) |
| 3 – 4 – 4 – 4 | . . . . . | 6, | — | 12 | . . . . |
| 2 – 4 – 4 – 4 | . . . . . | 4, | — | 12 | . . . . |
| 1 – 4 – 4 – 4 | . . . . . | 2, | — | 12 | . . . . |
| 4 – 3 – 4 – 4 | . . . . . | 6, | — | 12 | . . . . |
| 3 – 3 – 4 – 4 | . . . . . | 4, | — | 12 | . . . . |
| 2 – 3 – 4 – 4 | . . . . . | 2, | — | 12 | . . . . |
| 4 – 4 – 4 – 3 | . . . . . | 6, | — | 12 | . . . . |
| 3 – 4 – 4 – 3 | . . . . . | 4, | — | 12 | . . . . |
| 2 – 4 – 4 – 3 | . . . . . | 2, | — | 12 | . . . . |

Սուղ վանկս իմա ինձ աստանօր ոչ ըստ հելլէն և հռոմ հաստատուն չափոց առոգանութեան, որ 'ի տաղս մեր չունին տեղի, այլ ըստ երագաշարժութեան և ծանրաքայլութեան բնական առոգանութեան բանին ըստ իմաստից և ըստ կրից, կամ թէ երբեմն և ըստ ազատութեան իսկ։

'Ի կշռութենէ այսր չափոցդ իմանայ հմուտն տաղաչափութեան, թէ զոր տողս 'ի սուղ և 'ի թեթև բանս, և զոր յերկար և 'ի դանդաղ բանս վարելի իցէ, եթէ ամենայն ճարտարութեամբ 'ի գործ ածցին տաղքդ, զորմէ չէ տեղւոյս յերկարել, յոր և չեղաք իսկ մեք անվրէպ ժաման։ Նա այդու իսկ յոյժ իմն առաւելութիւն ունի այս ազգ տաղաչափութեան քան զզուգավանկն. զի ոչ միայն ազատ է 'ի ձանձրալի նոյնաձայնութենէ տողից և անդամոց, այլ և զի ըստ պատշաճի երագընթաց սղութեան և ծանրադանդաղ երկարութեան բառից և բանին ունի յարմարել. ուր զուգավանկն նովին ոտիւք հարկի ասել օրինակ իմն զօդաթռիչ սլացս երիվարի 'ի դաշտ և զյամրաքայլ գնացս եզանց ծանրաբեռն սայլի ընդ զառ 'ի վեր, կամ զեռանդն բարկութեան և զվհատութիւն տրտմութեան։

4. Նա որպէս յայտնի է, 'ի չափական տաղս երկու երկար վանկն կամ երկուչափն՝ մի ոտն համարի. իսկ ըստ արդի լեզուաց մէն մի չափ՝ մի ոտն։ Ըստ առաջնոյն հաշուի լինի մերս վեցոտանի, ըստ երկրորդին՝ երկոտասանոտնեան։

Յայսմ իսկ անզուգական են վեցոտանիքն Յունաց և Հռոմոց, թէ– պէտ և նոքին իսկ ոչ ամենայն ուրեք անվրէպ պահեն զոր կա– րեն և զոր պայման բանին պահանջէ։

Ահա այդ են պարզ օրէնք ոտանաւորացս այսոցիկ, որպէս մեքս վարեցաք 'ի քերթուածի աստ անյանգ, և այլ ուրեք 'ի տաղս ինչ մեր յանգիւ և անյանգ, ընտրանաւ առեալ 'ի բազում ազգի ազգի նոյնաչափ տաղից նախնեացն։ Զի ուր նոքա անխտրաբար զիւրա– քանչիւր անդամսն իսկ եռավանկ, այլ և երկավանկ ևս դնեն ու– րեք, և ուրեք հնգավանկ, մանաւանդ 'ի քնարերգական տաղս, և եղանակօք նուագացն սղեալ կամ երկարեալ լնուն զչափսն, մեք յա– ճախագոյն և սովորաբար 'ի նոցանէ վարելոցն զհետ կրթեալ, և զբարեյարմար նուագաւորսն ընդ միմեանս ընտրեալ, ընկալաք զտասն և եթ զանազանութիւնս. և տեսաք զի ինքնին ընդ պարզ օրինօք իսկ փակեալ գտանին, ըստ որում աւանդեցաքդ։

Այլ թէ ներէր տեղիս' ակն յայտնի ցուցանէաք և զկատարեալ զգալի նմանութիւն մանաւանդ թէ նոյնութիւն այսոցիկ ընդ ազ– գային տաղիցս ընդ բազում տողս չափական վեցոտանեացն Յունաց և Հռոմոց. ոչ ըստ չափոյ ոտիցն նկատեալ զնոսա, այլ ըստ շեշ– տիցն և ըստ երկայն հատածիցն կամ թէ ասել հանգստից նոցին, որ համեմատին շեշտից կամ հանգստից մերոց անդամոցս (5), և ո– րովք իբր 'ի քառեակ անդամս հատանին ըստ մեզ։ Տեղեակքն հել– լէն և հռոմ լեզուի և տաղից ինքնին մարթեն տեսանել զայդ. իսկ այլոց աւելորդ են։

Յայս ազգ տաղից, զնոյն իմա և յայլսն, յաջորդ անդամոցն նուա– գութիւն լցեալ և բովանդակեալ լինի' ոչ եթէ երկարելով իւ– րեանց վերջին, որպէս կարծէր ոմանց մինչև ցայժմ, այլ յերկարու– թենէ ամանակի վերջին վանկից նախադաս անդամոց. որ և քանզի առաւել երկարին հարկաւ, և առաւել հանգիստ ունին 'ի յանգս

5. Զի որպէս ցուցեալ է մեր այլուր, անդամք տաղից մերոց հատանին մերթ սաստիկ շեշտիւ, ուր յաջորդ բառն հարկաւ կապեալ է ընդ առաջնոյն. մերթ չափաւոր իմն շեշտիւ բնական արտասանութեան առաջնոյն ընդ յաջորդին. և մերթ սուղ իմն հան– գըստիւ իմաստից, որ մանաւանդ յաճախ պատահէ յետ երկրորդ անդամոյ քառանդամ տաղից։ Եւ այս հանգիստ' սովորաբար երկայն հատածիւ պահանջի և գտանի օրինօք հաստատեալ 'ի չափական վեցոտանին 'ի կէս երրորդ ոտին կամ 'ի կէս երկրորդին և չորրորդին, այս է' միշտ մօտ 'ի կէսս տողից։ Նոյնպէս գտանի և յայլ չափական տաղս։

տողից, (6) վասն որոյ և առաջին անդամոյն առաւել ազատութիւն շնորհեալ է փոքր քան զայլսն կալել լինելոյ։ Նմանապէս 'ի մէջ տողին կարճագոյն անդամն լրանայ երկարելով վերջի նախադաս անդամոյն։ Զի այն երկարութիւնք ամանակի ոչ նոցին ինքեանց այնմ վերջից համարին, այլ յաջորդ անդամոցն. և այսպէս յաջորդ եռավանկն համարի քառավանկ, և միավանկ առաջին անդամն համարի մինչև յեռավանկ և 'ի քառավանկ իսկ՝ յաջորդելովն երկարայանգ վերջի կամ հանգստի նախադաս տողին։ Այսմ ապացոյց են, բաց 'ի բնական առոգանութեանն օրինաց, և խաղք շարականացն երկարք՝ եղեալք յայսմ ազգի չափոց միայն 'ի վերջս անդամոյ ևս և քառավանկի՝ որում յաջորդէ կարճագոյն անդամ, և ոչ երբէք 'ի վերջս նուազագոյն անդամոյ՝ որում զհետ գայ լիավանկ անդամ. միայն թէ չիցէ եղանակաւոր ինչ խաղ առ ոլորել հարկաւ զձայնն 'ի պայմանեալ տեղիս ինչ նուազայն գեղգեղելոյ։ Զայս մարթ է դիտել ամենեցուն 'ի շարականս (7)։ Բայց յերկբառեան անդամի՝

6. Որպէս և 'ի չափական ոտանաւորս իսկ համարէ միշտ. և ըստ այնմ օրինաց՝ թէ և բնութեամբ սուղ իցէ վերջին վանկ տողին, 'ի տեղի երկարի գնայ, և անխտիր զոր և է սուղ վանկ փոխանակ երկարի առնուն քերթողք 'ի վերջս ամենայն տողից. և ոչ է այդ ցնորք, այլ առոգանութեան պայման։ Եւ թէ ցնորք իցեն, լաւ է ցնորել ընդ Հելլենս և ընդ Հռոմս և ընդ մեր նախնիս։

7. Յորոց շատ լիցին օրինակքս,

Խակ պատրանօք բանսարկուին 'ի դրախտէն արտաքս անկեալ։
Այլ դու փրկիչ բարերար որ մարմնացար 'ի սուրբ կուսէն։ —
'Ի յերկինս 'ի յերկրի և յամենայն ժամանակի։
Յորժամ ծագես 'ի յերկնից և նորոգես զքո զարարածս։ —
Ժողովեա՛լ Հրէիցըն կըշռեցին արծաթ բազում,
Առեալ տարան առ Պիղատոս, ասեն 'ի խա՛չ հան 'ի խաչ։ —
Բառնալով ըզզատակնիք անիծի՛ցն առ 'ի մէնջ։
Դիմամարտ գոլով սըրբոցն ընդ կռապաշտի՛ց պաշտամունսն։
'Ի մըրցմունըս գազանա՛ց սրոյ և հրոյ մենամարտեալք։ —
Ծագումըն հրաշալի՛ որ անյայտ էր 'ի մէնջ։
Հուր փայլակնացեալ և 'ի մարմնի՛ բնակեցաւ։
Ծագումըն հրաշագործ որ 'ի կուսէ՛ն ծագեցաւ։
Երկինըք ցընծայի՛ն և երկիր ուրախանայր։ —
Բարձրեա՛լ թագաւոր որ վասն մեր ելեր 'ի խաչ։ —
Յաւուր յայնմի՛կ մատնեցայ 'ի ձեռս անհեղ հրապարակին։
Հայեցա՛յ 'ի բարձունս առ քեզ կարող ամենայնի։ —
Գեղեցկութիւնըք մարմնաւոր պայծառութեա՛ն ձմրոյ

և երկարութիւն վերջի առաջնոյ բառին կարէ լնուլ զչափն, առանց կարօտ լինելոյ 'ի Նախադաս անդամոյն առնուլ: (8)

Յիմարեցոյց ըզթագաւո՛րն և պահեա՞ն հեթանոսք ·
'ի գեղ ըղձանչելի աստուածատո՛ւր կուսանացն
Յարփացեա՛լ զուարթո՛ւնք ընդ մարդկա՞ն տօնեցին :
Դարձեա՛լ վերըստին արարչագո՛րծ զօրութիւն
Եւ դարձեա՛լ Ե՞դեմ աստուածատո՛ւնկ զարդարի · · ·
Բերելո՛վ մեզ պտուղ զերանելի՛ն Հռիփսիմէ :
Երկուանըք մահաբե՛րք անիծի՛ցըն լուծան
Եւ Ադամ վերըստին աստուածակե՛րպ Ճոխանայ :
Զօրըք հրեշտակա՛ց ընդ մարդկա՞ն տօնեցին :
Կուսութեամբ ընդ մահու պատերազմեա՛լք յաղթեցին :

Իսկ ուր Նախադաս քառավանկի վերջն ոչ երկայնի յառաջ քան զկարճագոյն անգամ՝ օրինակ իմն յառաջ քան զեռավանկ, նշանակէ՝ Թէ այլով չափովք և դաշնակութեամբ յօրինեալ տաղ է, և մանաւանդ առաւել քնարերգական. թեթև և դիւրանիկ ունելով զյետին անդամն՝ ուրախական պարուց և սթափական ոտից աշխոյժ կրից համեմատ : Որով և թատերցն եռանդուն վսեմախօսութեան պատշաճագոյն թուին այնպիսի քառանգամքն նովին ընտրութեամբ և ազատութեան օրինօք վարեցեալք, որովք 'ի գիւցազնականին ասացաք, միայն զյետին անդամն փոխանակ քառավանկի դնելով եռավանկ: Այսպիսի են բազումք 'ի շարականս, երկանգամ կամ քառանգամ առեալ · ուր և ասացեալ վերջքդ առանց երկար խաղին գրին · որպէս ,

Ուրախացիր , սըրբուհի , Գաբրիէլի աւետեօք :
Օրհնեմք ըզքեզ , աստըւած , ընդ անմարմնոցըն դասուց :
Խորհուրդ մեծ և սքանչելի որ յայսմ աւուր յայտնեցաւ :
Համբառնալով զաչըս մեր կարդամք առ քեզ մարդասէր :
Առաւօտեան սուրբ կանայքն հանդերձ իւղովք և խընկովք :
Ըզյարութիւն Քրիստոսի ամենեքեան օրհնեսցուք :
Վասըն մերոյ փըրկութեան խոնարհեցար 'ի յերկնից :
Այսօր աղբիւր գիտութեան բըղխեալ 'ի սուրբ վերնատունն :
'Ի հարաշարժ աղբերէն անհատահոսըդ վըտակ :
Էջ միածինն 'ի հօրէ և լոյս փառաց ընդ նըմա :
Որ յարմատոց հարցըն սըրբոց մեզ գաւազան բըղխեցեր :
Աղբիւր կենաց բաշխող շնորհաց հոգիդ իջեալ 'ի բարձանց :

Այսպիսի է և Ընկալ [illegible] աղօթք Նարեկացւոյն , և 'ի տաղից տօնից անթիւք :

8· Զոր օրինակ 'ի համբարձին Հռիփսիմեանց ,

Զօհեցան զենմամբ սրոյ 'ի բանաւոր ողջակիզումն :

Այսպէս են և յայլաչափ տաղս , զոր օրինակ 'ի Շնորհալւոյն

Է՛ր միշտ՝ և է յայժմուս :
Յայնժամ գայ 'ի Յորդանան :
Մե՛րկ եկաք յորովայնէ
Եւ մերկ գըտնիցք 'ի տապանին :

Նա որպէս տեսանի ակներև 'ի պատկերիդ և յօրինաց չափոյդ, յայս ազգ տաղից ոչ ունին համարձակութիւն մտանելոյ հնգավանկ բառք. որպէս և 'ի բազում ազգս ոտանաւորաց մերոց՝ յորս աւելի քան զքառավանկ անգամ չունի տեղի: Սակայն առ Նախնիս երևի և այդմ փոքու դժուարութեան դարման տարեալ, հատանելով յերկու զբազմավանկ բառն, և տալով զմի մասն 'ի մի անգամ և զմիւսն 'ի միւս: Նա գտանի այդ արարեալ ոչ միայն 'ի քան զչորս առաւել բազմավանկ բառս, այլ և 'ի քառավանկսն անգամ, թէ 'ի բարդս և թէ յածանցեալս, հատանելով անընդմիջաբար յառաջ քան զյօդաւոր տեղի բարդին և ածանցին, կամ 'ի նմին 'ի յօդին (9): Այլ այդպիսիք կարի զգուշաբար և առ տագնապօ հարկի ևեթ ներելի լինիցին դուն ուրեք երբէք վարեցեալք. զի և առ Նախնիս սակաւ յոյժ են այդոցիկ օրինակք: Նա յիրաւի փոքր ասեմ զդժուարութիւնդ. զի ահա մեծ կէս Հոմերի և գրեթէ բոլոր Վիրգիլիոս թարգմանեցաւ առ մեզ առանց կարօտ լինելոյ հնգավանկ բառի:

Ո՛վ կամաւ զանկապտելին
Կապեալ ըղձեաւ արձակողին:
Դո՛ւք որդիք նոր Սիոնի նորոյ ծննդեան:
Նա՛ և լեառն իմանալի անհատական:
Փա՛ռք քեզ ասացուած փառաւորեալ յաւիտեան. Շնր:

9. Օրինակ իմն, զոր և չեշտիւդ յայս ածնեմք.
Խորհրդոց ոչ խոտորումն և ոչ փոփոխմնդրութիւն բարուց:
Ցորմէ օրհնութիւնք նըմա 'ի փրկելոցս արեամբ նորա:
Արծաթախրութեանըն մոլեալ Յուդա. Շնր:
Զապս աղանդակերպս բերեալ թաթաւելով արեամբն իւրեանց:
Արքայական նըման յաղթայութեան ըստ հրամանին:
Բազմանաբար զիմաստս իմաստութեան հօր ընծայեալ. Շն. փող:
Առ քեզ աղաւնինիկք ամենասըրբուհի:
Եւ եղեր վերընկալ աստուածային բանին:
Եւ զհաւատոյս Խըշմարիտս սուրբ երրորդութեան:
Եւ բանըն հայրական անըմբռնելի.
Ճառագայթելով զարարածս ամենայն. Շնր:

Եւ յայլաշափ տաղս,
Սոսկալին փայլմնանման երևեալ լուսափայլ կերպիւ:
Հախխախեալ գեղազարդեալ կուսից պարծանք. Շն. փող:
ԶԳրիգորիոս սուրբ հայրապետն եկայք վերամբառնասցուք:
Եւ ըղձացեալ ըղձութիւնս 'ի կեանս վերանորոգեցեր. Շնր:

Յայտ արարեալ ցայս վայր զհնագոյն ազգային տաղաչափութիւնն և զկարևոր հանգամանս նորա և զօրէնս, մնայ այժմ համառօտիւ 'ի հարցփորձ մատչել երկբայութեանց ինչ և ընդդիմադրութեանց, որ ծնանիցին թերևս 'ի կասկածոտ ինչ միտս ուրեք։ Այլ զայս այնչափ ևս ախորժելով մտադիւր կատարեմք, որչափ զի միանգամայն և այլ ևս ընտրութիւնք հնոյն 'ի վեր երևիցին։

Յետ զայսքան և զայսպիսի առաւելութիւնս այսր հնագոյն ազգի տաղիցս տեսանելոյ, թերևս գտանիցի ոք տակաւին որ կարծիցէ, թէ զուգավանկ և յանգաւոր տաղքն ստեղծեալք կամ ընկալեալք իցեն 'ի յետնոց իբրև կատարելութիւն հնոյ ոճոյն, և ոչ թէ զի յաւելուած ստացուածոց արարեալ զնորն, կամ խամութեամբ ընդ վայր զհինն հարեալ։ Այլ որ զայսն ասիցէ, պարտի ցուցանել զբազմութիւն ընտիր ընտիր քերթողացն մերոց յետնոց և զազգի ազգի քերթուածսն, որոց ընտրութիւնն և չափքն յօրէնս ունիցին լինել այնուհետև կիրթ ախորժակաց 'ի հասարակ հաւանութենէ հաստատեալ։ Այլ սակայն ընդ հակառակն տեսանեմք մեք, որպէս յիշեցաք վերագոյն, մինչև 'ի յետին դարս նախինեաց հնոյն մանաւանդ վարեցեալ զյոլովագոյնս, և նորոյն զկարի սակաւս, զՇնորհալին իմա և զոմանս հետևողս նորին. Նա մանաւանդ և զՇնորհալին իսկ հնոյն՝ յեկեղեցական 'ի բազմագոյն տաղս իւր, որ առաւել ազգայինքն են համարելիք հռչակաւ 'ի ժողովս երգեցեալք։

Բայց եկ բեր ասէ, և ո՞ր այն արդեօք նորոյն իցէ շնորհ՝ առ նախամեծար քան զհինն լինելոյ։ Ունի ինչ ոք ասել, բայց զզուգավանկութիւն և զձայնայանգս, որ նմա 'ի ներդաշնակութիւն համարիցին։ Արկորդեմք և մեք զհամառօտ ասացեալն վերագոյն, թէ նիւթական անընդհատ զուգավանկութիւնն, թող զի և չմարթէ իսկ լինել միաչափ, ոչ միայն ներդաշնակութիւն չէ, այլ մանաւանդ աւելորդ ձևով ուսման և արուեստակութեամբ միակերպ նոյնաձայնութիւն, և ոչ այլ ինչ ամենևին։ Այլ մի և նոյն եղանակն յարաձայնեալ՝ զի՞նչ այլ ինչ է, բայց տաղտուկ ձանձրութիւն, քան զոր չիք ինչ ժանտ ապականարար յարուեստս զուարճութեան։ Սոխակն չլինէր երաժշտագոյն 'ի հաւս, եթէ միշտ զնոյն դայլայլիկս յեղյեղէր. և ոչ նուագիչ արժանի լսելոյ ինչ է, որ միշտ զնոյն մատն հարկանիցէ։ Իսկ արդ իցէ՞ ինչ հնար, թէ զձանձրալի և զարուեստակեալ միատեսակն նոյնաձայնութիւն՝ դաշնակութիւն

ղք համարիցի 'ի տաղս, եթէ ոչ ընդ հակառակս ինչ մնաց և ուն-
կան խորհելով՝ դաշնակութիւն իմանայցէ կամ ասիցէ զմիօրինակ
եղանակն ազդեալ միանգամ յունկն իւր և 'ի մատունսն թուեալ,
և սովորութեամբ չգիտեմ որպէս սիրելի եղեալ. որ է ասել զար-
ձեալ զտաղտկալին ձանձրոյթ: Այլ ունկն փափուկ և կիրթ 'ի
չափս տաղի՝ որպէս չզգայցէ զբաւական դաշնակութիւն նուագաց հնա-
գոյն տաղիցս, և առաւել զգալի նոյնաձայն բախմանց կարօտիցի:
Եւ որ այդչափ զգաստն է և աչալուրջ յիմանալ զպակասութիւն վան-
կի միոջ 'ի զուգավանկութենէն, զիարդ չիմանայ և չզգայ զանփո-
փոխ և զանընական նոյնաձայնութեան զուգավանկիցն զանսպառ
և զանհանդուրժելի տաղտուկ յերկայն քերթածս, և զբազում ու-
րեք աննմանութիւն նոցին. և անյարմարութիւն ընդ իմաստից և
կրից բանին և սոցին պատշաճ առոգանութեան: Զամենայն տաղս
զուգութիւն ինչ նմանութեան խնդրի ապաքէն, բայց առանց ձանձ-
րութեան. մանաւանդ թէ տիրապէս խօսելով՝ ոչ զուգութիւն
սոսկ է պահանջելի յարուեստս զուարճութեան, այլ վայելուչ զու-
գախառնութիւն: Արդ հինն անզուգավանկ է, բայց անդամովք և
առոգանութեամբ զուգախառն զուգաչափ ըստ յունին և համե-
մայեցւոյն. նորն՝ զուգավանկ 'ի ձանձրութիւն, բայց անզուգախառն
անզուգաչափ առոգանութեամբ ըստ անդամոց և ըստ բոլոր տա-
ղին: Արդ ո՞ քան զո ընտրելի իցէ զուգախառն դաշնակութեան
խնդրողին: Ամենեքեան վկայեն թէ յարդի ազգաց վանկաչափ ոտա-
նաւորս իսկ՝ գերազանց քան զամենայն ըստ ճարտարութեան և գե-
ղեցիկ՝ հեռի յամենայն ձանձրութենէ է մեծազոյն կամ դիւցազնա-
կան տաղն իտալացւոց: Իսկ իւ արդեօք իցէ: Ոչ վասն քաղցրութեան
լեզուին. զի ահա և գալլիացւոցն լեզու ոչ ինչ ընդհատ քաղցր է
քան զայն, այլ դիւցազնական տաղ նոցա ձանձրալի, ըստ վկայելոյ
նոցին իսկ ազգայինն բազմահմուտ և կիրթ գրագիտաց: Այլ իտա-
լացին առաւելու քան զայն և քան զայլս այնու՝ զի 'ի նմա, թէ յան-
գաւոր իցէ՝ թէ անյանգ, իննն ազգ տաղից կամ տողից 'ի մի խառն
են, ըստ փոփոխութեան շեշտից կամ անդամատութեան տողիցն,
և ըստ եռատեսակ աւարտից միոյ միոյ: Եւ այս վեցեակ զանա-
զանեալ տողք՝ ընկալեալ են յազգէն և իբրև մի ամենևին զուգա-
խառնեալ 'ի մի գեղայարմար միաբանութիւն, առանց ինչ ստնա-
նելոյ նոցա փոփոխմանցն, այլ մանաւանդ նպաստ լինելով 'ի հաստա-

նել զձանձրութիւն նոյնաձայնութեանն և 'ի յարմարութիւն ընդ իմաստից և կրից բանին, ըստ կարի և մարթելւոյ նախանձ բերեալ այդպիսիք ամենարուեստ փոփոխմանց դիւցազնականին Յունաց և Հռոմոց, որում ոչ ոք կարէ հաւասարել. զի քսան և չորք ազգ են նորա զուգաչափ զանազանեալ տողից ։

Իսկ զձայնայանգիցն արուեստակեալ և բռնազբօսեալ աւելորդութիւն և զվնաս՝ վերագոյն ցուցեալ է բաւական, մանաւանդ 'ի նշանակեալ այլազգի մատենագրացն ։ Յաւելումք աստանօր, թէ և այնք ոչինչ վճարեն 'ի ներդաշնակութեանն խնդիր ։ Զի թէպէտ և եղանակաւոր յանգումն ինչ տողից կարևոր և քաղցր նուագումն ինչ իցէ ականջաց, սակայն ձայնայանգք չեն բնաւ ներդաշնակութիւն բուն իսկ յօրինուածոյ տաղին, որպէս և ոչ զուգավանկութիւնն ։ Այս թէ ոչ, հարկ լինիցի ընդունել, թէ ամենայն որ և է զինչպէտ ստանաւոր, յորում նոյնավանկութիւնն ճիշդ պահեալ իցէ և ձայնայանգքն յարմարեալ մածուցեալ 'ի ծայրս տողիցն, զարմանալի դաշնակութեամբ պարտիցին ունել. և որ ոչն այնպէս ինչ իցեն, աներաժիշտս գոլ ։ Որում հակառակ վկայեն հասարակաց միտքս և ամենայն ականջք՝ յընթեռնուլն և 'ի լսել թէ զարտանուագ ոտանաւորս ինչ նորոց, և թէ զայսր զհնագոյն ազգի չափոց քաղցրանուագ տաղս նախնեաց ։ Այս ուրեմն, որպէս այլ է տաղաչափ լինել, և այլ՝ բանաստեղծ, այսպէս այլ է ճիշդ և արուեստակեալ համար վանկից և ձայնայանգ տողից, և այլ ամենևին բարեյարմար նուագաւոր և երաժշտական քաղցրաձայնութիւն տաղից ։ Եւ ուր սա մերձ իցէ, ձայնայանգք կամ ոչինչ և կամ խուն ինչ ևեթ օգնեն, թէ և ստէպ ստէպ փոփոխիցին, որպէս և աւելորդ պաճուճեալ զարդք գեղեցիկ ։ Իսկ ճշդութիւն զուգավանկութեան՝ միայն է մանաւանդ անզուգախառն տաղտկութեանն վտանգաւ ։ Ոչ փոքր զարմանք են, զի զանփոփոխ նոյնայանգից ձանձրոյթ իմացան յապա եկեալ ականջք և փոխեցին, իսկ զնոյնավանկիցն ոչ, ուր զի և օրինակք հնոցն նախնեաց առ ձեռն կային ։ Եւ միւս ևս զարմանք այն, զի որ յարձակ շարագիրս առեալն է և տղայական և զգուշալի՝ յանգըն, նոյն 'ի բարձրագոյն 'ի քերթողական լեզուին փառս համարեացի և 'ի քաղցրութիւն ։

Այլ աղէ տեսցուք, գուցէ իցէ ինչ հնագոյն տաղիցս մեծագոյն

մնաս և առաւել անքերելի, որ զնա դատապարտ առնիցէ առ նորոմն։ Թերևս կարծեսցի ումեք, թէ հինքն զանաշխատ զիւրութիւն խնդրելով՝ զայնչափ ազատութիւն առեալ իցեն, որ նման անարուեստ և յանդուգն իսկ համարձակութիւն թուիցի և օտարացուցիչ 'ի քաղցրաձայն ներդաշնակութենէ և մօտ յարձակ բան, և խոտան գրիցէ իբրև զզեղծումն քերականական ազատութեանց կամ ձևոց 'ի շարագրութեան։

Այլ սակայն որ ընդ այսր փորձ ոք անցանիցէ միանգամ, տեսանիցէ անշուշտ՝ զի այս ազգ տաղից ոչ եթէ անաշխատ դիւրութիւն մատուցանէ տաղաչափին, այլ մանաւանդ՝ ազատութեանցն յընտրանս բառից և դարձուածոց և չափոց, և համարձակութեանցն տալով 'ի փոփոխել ըստ կարի՝ առ խորշելոյ 'ի նոյնաձև նմանութենէ, առաւել իմն կատարելութիւն և ողորկումն պահանջէ, և առաւել դժուարին գտանի քան զկապեալ կաշկանդեալ ոտս նորոյն, որ նովլին իսկ չներէ բնաւ այնուհետև քերթողին այլ ինչ ածել զմըտաւ. և մի անգամ տարրացեալ 'ի միտսն և յունկնն ընդելեալ, առանց երկանց և ջանից ինքնին ծնանի այնուհետև իբրև 'ի կաղապարի ձուլեալ. մինչև բազում ուրեք չմարթել իսկ այլ ևս ինչ առնել։ Վասն որոյ և ազատութիւնն այն հնոյն՝ ոչ եթէ անարուեստ և յանդուգն համարձակութիւն է առ յաշխատութենէ զերծանելոյ, այլ մանաւանդ խնամով և արուեստաւ սահմանեալ օրէնք տաղիցն, և խորհրդով յանձն առեալ տաժանելի աշխատութիւն՝ առ փոփոխմանցն ազատիլ 'ի նոյնաձայնութեանն անտանելի ձանձրութենէ, և ըստ իմաստից և կրից բանին և առոգանութեանն պատշաճել չափս յարմարաւորս 'ի մեծ ևս դաշնակումն և կատարելութիւն, և ոչ սակաւ ուրեք առ 'ի զոճոյն պահելոյ զընտիր վայելչութիւն և զվսեմութիւն, եթէ միայն ըստ արժանի յօրինեսցին։ Իսկ եթէ նոյնավանկութիւնն և ձայնայանգք առաւել դժուարութիւն համարիցին, սակայն անշուշտ չեն առաւել գեղեցկութիւն և կատարելութիւն, նա մանաւանդ բազում և մեծաց գեղեցկութեանց և կատարելութեանց խափանարար՝ հանդերձ տաղապարտ դժուարութեամբքն։ Լաւ իցէ թերևս գերիլ և կապել 'ի բարս ինչ, այլ ոչ եթէ և 'ի չար. լաւագունին խնդիր և զլաւն առ երբեմն կորուսանել. և ճշմարիտ է առակն, թէ Լաւագոյնն՝ լաւին թշնամի է։ Այլ մի թէ վաստակ ինչ և տաժանաւ անհնարին իցէ քերթողին, մանաւանդ

'ի ստեղծանելն յինքենէ զտաղսն իբրև զմերոյն նախնիս՝ զհարս չափոց այսոցիկ, զտանել եռավանկ ինչ կամ քառավանկ, և ապացուցանել 'ի տեղի երկավանկին կամ միավանկին, որպէս յայլ անթիւ տողսն, և լինել այնպէս միօրինակ զնիւթական թիւ վանկիցն, և չնորհել ըն-թերցանելեաց զցանկալի տաղտուկ ձանձրութեանն պարգև: Այլ ուր իմաստք կամ կիրք բանին և կամ բնական ուղիղ առողջութեանն եղանակ խնդրին լինել բաւականապէս զչափսն առ ականջս լսելոյ, և տողն ինքնին դաշնակաւոր է թուաւոր յարմարութեամբ անդամոցն 'ի մի միաբանութիւն, չմարթի այնուհետև իրաւամբք պակաս տե-սանել անդ զչափսն, և զտողն կաղ ասել, և զտողսն թերի 'ի դաշնա-կութենէ, կամ երևակայութեամբ և խօլական ցնորիւք կարծել լինել: Այլ թէ գուցէ ևս ինչ 'ի նոսա անհաւասարութիւն, ոչ այնու մերձաւոր արձակ բանի իցէ տաղն. և յայտ անտի է, զի քնարական խառն չափք՝ անհամեմատ քան զամենայն են, սակայն և նուագաւոր քան զամենայն և օտար յարձակ խօսից: Ներութիւնս այսպիսիս չտեալն 'ի տաղս յայսոսիկ նախնեացն ականջք՝ հմուտք քան զմեզ դաշանց և պայմանաց լեզուիս՝ ըստ դարս յոլովս, մինչև եկն եմուտ 'ի Հայս այլազգի չափոցն ախորժակ, և տիրեաց կալաւ օրինակ քերթածաց ինչ Ռ նորհաւրայն: Այլ ցայսօր նոյն լսելիք են ազգիս. զի թերութիւն ինչ այսպիսի կարեւոր՝ չտեսին և այժմու ականջք յոլովագոյն մտերմացս, որք լուանն միանգամ զտաղքս մեր զայսո-սիկ ուղիղ առողջութեամբ. և հազիւ թէ 'ի տասանց մին՝ երկ-բայութիւն ինչ յարոյց ընդդէմ. որով և մեզ քաջալերութիւն ե-ղև անվեհեր համարձակութեան, տեսանելով զմեծ հաճութիւն նոցա զանկեղծաւոր: Իսկ եթէ ճշմարիտ իցէ ինչ ուրեք այսպիսի, ոչ տաղիցն է մեղան, այլ անպատկանաւոր յօրինուածոյն կամ ան-արուեստ առողջութեանն: Այս մանաւանդ ունկն ընդելեալ 'ի հնագոյն տաղսն՝ իրաւամբք գտանիցէ 'ի նոր արուեստակեալ զու-գավանկսն ձանձրութեամբն հանդերձ և բազում տողս առաւե-լեալս կամ թերացեալս համեմատաբար 'ի չափոցն, վասն անյար-մարութեան նոյնավանկիցն ըստ ամենևին այլասեռ իմաստն և կիրս և ըստ նոցին սեփական և բնիկ առողջութեան: Իսկ քերա-կանական ազատութեանցն օրինակ անյարմար է առ խնդիրս. զի յարձակ բանի ոչ կարեւոր պիտոյ է ազատութիւն և փոփոխումն, և ոչ ներելի առանց հարկի. և դարձեալ՝ զի նոքին իսկ չափով և

համով վարեցեալք, 'ի մեծ գեղեցկութիւն են բանից և 'ի հեշտութիւն կիրթ լսելեաց. և զի բազում անգամ փոխանակ զնոյն նովին ոճով յեղյեղելոյ, յարձակ բանի ես ընտրելի է ճարտարաց և հարկ իսկ վարիլ ազատութեամբքն այնոքիւք՝ առ խորշելոյ յանարուեստ և 'ի տաղտուկ միաձևութենէ։ Իսկ զբոլորովին ազատասէր և զբօսասէր քերթողութիւն ո՛ գերեալ կապեալ կաշկանդիցէ, և ոչ տացէ ըմպահկել և կիցս ընկենուլ։ Ոչ շատ իսկ իցեն նմա այնքան կապանք, որքան զի յարձակ շարագրածոյ զանազանիցի, առանց ատելի զնա առնելոյ բանի և ունկան և գեղեցիկ ախորժակաց։ Կամակար ազատօրէն հպատակէ բանի և օրինաց հանճար, այլ զլուծ իշխանական բռնութեան զընկենու։

Բայց 'ի ներդաշնակութեան մասին՝ յամենայն լեզուս առհասարակ խոստովանեալ է, զի ոչ ամենայն ազգի ազգի տաղից նոյն դաշնակութիւն է, և ոչ յամենայն քերթածս նոյն պահանջի։ Որ, օրինակ իմն, այլ է քնարական կայթից և պարուց դաշնակութիւն ազդող և եռանդուն, և այլ՝ դիւցազնականին ոտից մեծավայելուչ և վեհափառ ձևոց. և 'ի դիւցազնականին զքնարականն պահանջել անկիրթ է և ընդունայն խծբիծ։ Եւ ոչ յամենայն տողս միոյ ազգի քերթուածոյ զնոյն և զմի միշտ միօրինակ ներդաշնակութիւն պահանջելի է՝ ըստ ցայս վայր ասացելոցս. զի ոչ այլ ինչ պահանջել է այդ, բայց զնոյնաձայնութեանն ձանձիր ատելի հեշտութեան կրից, յորմէ և այնչափ իսկ խորշի և մերժի ազգ տաղից։ Իսկ 'ի վեցոտանին Յունաց և Հռոմոց և 'ի դիւցազնականն իտալացւոց միշտ նոյն չափք են յամենայն տողս, այլ ոչ և նոյն դաշնակութիւն. որում անհնար իսկ է կալ ընդ պէսպէս փոփոխմանն, որպէս և ձանձրութեան անմարթ է որոշիլ յանփոփոխութենէ։

Խոստովանելի է դարձեալ, թէ ամենայն տաղք յինքեանս կամ 'ի գրին անկենդան են և մեռեալ. և քաջի առոգանութեան է կենդանացուցանել զնոսա՝ յազդել և յիմանալ զնուագաւոր դաշինս պայմանի չափոյն։ Իսկ այս կարևոր պիտոյ է՝ ոչ միայն յայսմ ազգի հին տաղիցս, այլ և յայլսն ամենեսին, այլ և 'ի նորսն առհասարակ։ Որ եթէ և զընտիրս անգամ 'ի զուգավանկ ճշդաչափ կարծեցեալ տաղիցն նորոց՝ ոչ բարւոք և ճարտար ըստ նոցին պայմանի ոք ընթեռնուցու, խանգարի բնաւ դաշնակութիւնն, և արձակ բան երևին, կամ այլ ընդ այլոյ չափք և նուագք լինին լսելի. զորոյ և

զփորձն տեսանեմք համապազօր, և դիւրին է ամենայն ումեք առնել զնոյն։

Բայց յայսմ իսկ կայ խտիր կարևոր ընդ նորն և ընդ հինն։ Ի նորն՝ որչափ ոք ըստ ճիշդ պայմանի բաժանման անդամոցն ընթեռնուցու, նոյնչափ յայտնի ևս առնէ և առաւել զնոյնաձայն ձանձրոյթն, օտարացեալ և 'ի բնական առոգանութենէ։ Իսկ 'ի չափոցն պայմանէ խոտորելն՝ առ փոփոխումն ինչ մուծանելոյ և զբնիկ առոգանութիւն պահելոյ, բնաւ և յոտիցն իսկ անկանի և խանգարին օրէնքն, և դաշինքն լուծանին՝ խանգարելով միաձևութեանն որ հոգին է այնց տաղից. զի տաղտկալին այն ձանձիր՝ կարևոր հանգամանք և պէտք են կարծեալ ներդաշնակութեանն. որ զի չէ իսկ ինչ այլ՝ բայց ձանձրալի նոյնաձայնութիւն։ Վասն որոյ կամ զչափսըն և զկարծեալ ներդաշնակութիւնն պարտի կորուսանել և փոխել յարձակ բան, կամ զխնդրեալ փոփոխմունսն և զանազանութիւնս տողիցն և զբնական առոգանութիւնն չգտանել, և սիրով համբուրել զսիրելին իւր զտաղտուկն տագնապող ձանձրոյթ։ Իսկ 'ի հինն ոչ այսպէս, այլ ազատասէր չափովքն ազատ է և 'ի վտանգից այտի. զի թէպէտ ըստ իւրոց անդամատութեանցն ընթերցցի, թէպէտ ըստ բնական առոգանութեան, միայն թէ բարւոք ընթերցցի, միապէս նուագաւոր է յիւրում պայմանին, և ինքնին փոփոխմամբքն քաջ 'ի բաց հեռի 'ի դժպհի լսելեաց նոյնաձայնութեանն պատերազմէ, առանց հարկելոյ կամ զանդամոցն և զչափոցն պայման թողուլ՝ առ խորշելոյ 'ի տաղտուկ նոյնութենէ և փոփոխմունս հայթայթել, կամ զբնական առոգանութիւնն խանգարել՝ առ 'ի չափոցն սահմանի անստերիւր մնալոյ։ Այս աւանիկ չափոցն և առոգանութեանն դաշինք անբաժան են 'ի նմա, և պէսպէս փոփոխմամբքն հանդերձ՝ 'ի մի գեղայարմար միաբանութիւն խառնեալ ըստ կարի, առանց սնոտի և վնասակար խղճմտութեան։ Ի այսր ազգի տաղից միւս ևս այն շնորհ է և միանգամայն դժուարութիւն, զի առաւել քան զայլսն պահանջէ՝ ըստ բնական ուղիղ առոգանութեան լեզուին ունել զյօրինուած չափոցն. սակայն և առանց խափանելոյ զտաղաչափն յօրինաւոր քերթողական ազատութեանցն, որ յամենայն լեզուաց քերթութիւնս շնորհեալք են։ Ուստի և ոչ միայն չերկնչի 'ի բնական ուղիղ առոգանութենէն, այլ մանաւանդ ըստ այնմ իսկ զընթերցումնն խնդրէ ճարտար՝ առ

անվրէպ ազդեցուցանելոյ զչափոյն զուգախառն նուագաւոր յարմարութիւն։

Յուսամք թէ բաւականապէս լուծաք զերկբայութիւնս և զդիմադրութիւնս, և միանգամայն առաւել ևս յայտ արարաք զշնորհս և զպարծանս կատարելութեան այսր ազգի հնագոյն տաղից, յոր և խոստովանիմք անշուշտ թէ մեք չկարացաք ժամանել. այլք լաւ ևս ջան տարեալ հասանիցեն. Ի մեծամեծս՝ և կամելն իսկ շատ է, որպէս ասաց ոմն 'ի հնոցն քաջաց քերթողաց։ (10)

10. 'Ի վախճան կարեւոր խնդրոյս, յորում զհին և զնոր ոտանաւորացս ընդ միմեանս հարեալ կշռեցաք զհանգամանս, թերևս ոչ անախորժ իցէ ընթերցողի տեսանել և զմի և նոյն բան երկոքումբք ոտանաւորօքն՝ առ համեմատելոյ ընդ միմեանս։ Վասն որոյ մտադիր յօժարութեամբ կարգեմք աստանօր զանկիզբն առաջին գրոցս փոխեալ 'ի նորն՝ 'ի Ճարտարէ ումեմնէ արդի տաղաչափից, որ և ինքն իսկ առ 'ի պէտս բաղդատութեան յօրինեալ է զնորն յետ տեսանելոյ զմերս։ Եւ այս է աւասիկ.

Ի՛ւ հունձք զուարթք առնիցին, ով Մեկենաս,
Եւ ընդ որում աստեղբ հերկել զարտորայս
Եւ զուգել զորթ ընդ նըշդարի իցէ անկ,
Սոից երգել. զինչ արջառոց հեթեթանք,
Եւ զինչ խաշին հոգ, և քանի՛ իսկ հըմուտ
Սակաւապէտ մեղուին 'ի բոյծ խընդրի փոյթ։
Որք ըղպահուն ով գուք վարէք ընդ երկին,
Ջահք աշխարհի լուսապայծառք, ըղտարին.
Սպանդարամետ և Դիւմետրէ կենսածիր,
Եթէ շնորհիւ ձերով երբեմըն երկիր
Ըղքաւոնեան գիտաց ատոք ընդ հասկին
Ըղմըլյրենի փոխանակել ըղկաղին,
Եւ ողկուզացն այն ինչ գտելոց 'ի կայլակ
Ջուրելովեանն ուսաւ խառնել ըղբաժակ.
Եւ գուք խնամողք գեղջկին շինից շահաւետք,
Փայք և պարիկք, յաւէրժհարսանց զուգահետք,
Աւ իս մատիք, 'ի նուագ զընծայս ձեր առնում.
Եւ դու ևս ով Պոսիդոնէ, որ 'ի քում
Կոփեալ երկիր յերեքարձէնդ 'ի յըստուար,
Հան նորատեղծըն զամեհին երիվար.
Անտառաբնակդ, ում ըղյուութիս երինջք բիւրք
Ըղքաղարիս Կէայ լիղէն ձիւնաթոյրք,
Ըղհայրենիդ քոյին 'ի բաց և դու ճն,
Թողեալ զանտառ և զծառախիտ Լիկէոն,
Մատիր հօտից տեղէացիդ պահապան.
Թէ հոգ ընդ քոյդ է ընդ Մենալքեղ ով Պան.

Այդ և այդպիսի է աւասիկ, կարճառօտիւք՝ այլ բաւականապէս տեսեալ նախնական Հայոցն տաղաչափութեանն տեսակ, որով վարեցաք մեք յայս քերթուած միրգիլեան: Այլ թէ ուղիղ և հանճարեղ ինչ գործեցաք և հաճոյ ունկան, զայն ընտրեսցեն անաչառ և քերթողական հմուտ լսելիք ազգիս: Որ և, յետ փոքր մի ժամանակաւ ընդելանելոյ յընթերցումն և 'ի լուր աշխուժական չափոցս, և յետ հեշտութեան ականջացն վկայելոյ 'ի շնորհս տաղիցս այսոցիկ՝ որպէս ասէն ունիմք, և որպէս անհնարին է միաբանել զուարճութեան ընդ տաղս աներաժիշտս, ապա այնուհետև եթէ նախնեացն որդիք իցեն հարազատք, և նոցին ոսկեղէն դարու բանարարութեանն և կիրթ ախորժակացն սիրելիք և նախանձայոյզք, և ոչ կանխակալոյ սովորութեան ծառայք, ոչ կարծեմք թէ դատապարտ զմեզ առնիցեն, իբրու նորաձեւս ինչ արարեալ մտացածին ինքնահնար գիւտիւք, և տարապարտ հերձուած յարուցեալ 'ի հայկական Պառնասոս՝ վեր 'ի վայր խռովել զհայ Մուսայսն: Զի մեք ոչ այլ ինչ արարաք 'ի սմա, քան թէ զնիկ հայրենականացն ընտրելագոյն տաղից նախանձու՝ նորոգել և եթ և 'ի լոյս պայծառութեան հանել զ'ի մթան մնացեալ և գրեթէ խափանեալ յանիրաւի զբուն վաղնջուց հայկեան տաղաչափութիւնս. և այն ևս՝ ընտրանաւ, սակաւս 'ի բազմացն առնլով տաղից նախնի տաղաչափիցն, զյաւէտ դաշնակաւորսն և զքաջավայելուչսն 'ի մի միաբանութիւն զուգաչափ գեղայարմար տաղից: Որպէս և 'ի չափական վեցոտանի ոտանաւորսն Հելլենաց և Հռոմոց ընթեռնումք զդոյն արարեալ 'ի հնումն նոցին ճարտարացն. յանկերպաւոր տաղից պատշաճից դելփական եռոտանւոյն ընտրեալ միայն զլաւսն, և օրինօք հաստատեալ: Սոյնպէս և այլոց և այլոց ազգաց իւրաքանչիւր յիւրեանցն:

Իսկ արդ իբրև այսպիսի հայրենաւանդ արուեստի արգասիս, և

Եւ ձիթենւոյն դու Աթենաս հեղինակ,
Եւ կոր մաճոյն բերող 'ի լոյս պատանեակ,
Եւ որ զմատաղ նոճոյն ըղբունն կարճովին
Շահարուանիդ բարձեալ բերես ըստ անձին,
Եւ ամենից ուսումնուհեաց դից երամ.
Ոյց հոգ 'ի պահ անդաստանաց է և խնամ,
Ըղնորաբոյս տածօղք անսերմնն զարգուցն,
Եւ որ տեղայք ցօղ յերկնէ յորդ 'ի սերմունս:

ոչ ի՛բրու զմերոց ինչ զիւտից, նուիրեմք ահա և զայս վաստակ 'ի փառս Հայկազեան դպրութեանց ։ Փոխանակ բազում բանից՝ արդիւնք իրացն այսուհետև 'ի մէջ անցեալ խօսեսցին զինքեանց առ անաչառատես միտս և առ վեհագունիցն ցանկացող կիրթ և փափուկ լսելիս հայակոյտ քերթողական ոճերոյն՝ այսպիսեաց ախորժակաց արժանաւոր եղելոց ։ Եւ եթէ վարդ մի փոքու իմն զուարճութեան դոյզն ինչ վայրկենի արկաք սովաւ 'ի շաւիղս փշալից կենաց իմաստնոց, համարեսցուք զանձինս ոչ ամենևին անարդիւն անցեալ ընդ առասպար կենցաղոյս ։



ՊՈԲԼԻՈՍԻ

ՎԻՐԳԻԼԵԱՅ ՄԱՐՈՆԻ

# Մ Շ Ա Կ Ա Կ Ա Ն Ք



ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## ԱՌԱՋԻՆ ԳՐՈՑ

ՍԿԻԶԲՆ գնէ զառաջարկութիւն բոլոր քերթուածոյն 'ի չորս առաջս, 'ի վար և 'ի ցան արմտեաց, 'ի տնկարկութիւն, յանդէորդութիւն և 'ի մեղուագործութիւն: Եւ կարդացեալ զգլխս նպաստամատոյցս ամենայն մասանց քերթածին, ընդ որս և զՈկտաւիանոս Աւգոստոս Կայսր՝ զաստուածարեալն 'ի ժամանակին ըստ հեթանոսական կարգաց, մտանէ այնուհետև 'ի ճառս առաջին գրոցս, որոյ են գլուխք վեց:

Ա. Այլ և այլ եղանակք վարոյ և ցանի ըստ պէսպէս բնութեան հողոյն և սերմանց:

Բ. Երկրագործութեան սկիզբն, և արուեստից գիւտք:

Գ. Անօթք և կահք և կազմածք մշակաց, և խրատք ինչ զգուշութեան:

Դ. Նշանակք մշակութեան այլ և այլ սերմանց. բաժնից երկրի հմտութիւն և դրից աստեղաց և շրջանաց. և թէ զինչ յանձրևի և 'ի ձմերան և 'ի տօնս վաստակք. և խտրանք աւուրց և ընտրութիւն տուընջեան և գիշերոյ:

Ե. Նշանք և գուշակութիւնք ժամուց և ժամանակաց յեղափոխութեան օդոց յանձրև կամ 'ի մրրիկ և 'ի ջեր, պատճառս առեալ նախ 'ի նկարագրութենէ ամառնային մրրկի:

Զ. Գրուագ վայելուչ զհրաշանշան սքանչելեաց՝ որ կարապետ եղեն սուսերահար սպանմանն Յուլիոսի Կայսեր, և որ զկնի գուշակ առտնին պատերազմացն հռովմայեցւոց: Եւ կատարի յաղօթս՝ վասն փրկութեան Աւգոստոս Կայսեր և հռովմէական ժողովրդեան:



ՊՈԲԼԻՈՍԻ

ՎԻՐԳԻԼԵԱՅ ՄԱՐՈՆԻ

# Մ Շ Ա Կ Ա Կ Ա Ն Ք

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

Ի՛ն զուարթ առնիցէն՝ բոյսք արմտեաց, ով Մեկենաս,
Յի՛մ արփի վարել զերկիր, զայգիս զուգել ընդ ծըռշտարիս,
Ո՛ր փոյթ 'ի դէպ անդէոյ, զի՞նչ հօտի պէտ 'ի հեթեթանս,
Տընօրէն մեղուին քանի՛ հըմուտ հանճար, առից երգել։

1. Մեկենաս էր մի յաւագին իշխանաց Աւգոստոս կայսեր, խնամակալ ճարտարաց ժամանակին, մանաւանդ Վիրգիլեայ և Որատեայ։ 'Ի խնդրոյ նորա առնու արարեալ Վիրգիլի զքերթուածս, որում և ընծայէ իսկ։

2. Ցի՛մ արփի, յորում աստեղատան, յորում ժամանակի և ամսեան տարւոյն 'ի դէպ իցէ արօրադրել զերկիր, և զորթս կապել ընդ ծըռշտարիս իբր 'ի զուգութիւն ամուսնութեան, որ առաւել ըստ Իտալացւոց սովորութեան է, առ որս երկայնին որթք և պատատին զծըռշտարեօք։ Համգոյն սմին բազում ինչ է 'ի քերթուածս, որ ըստ Իտալական երկրին և սովորութեան պատշաճեալ են. զայս մի անգամ ծանուցանել շատ լիցի։

3. Հոգ 'ի հայթայթանս հօտի զոր ունիցի ոք և դարմանիցէ, կամ կամիցի ոք ունել և դարմանել։

4. Թէ քանի՛ հմտութիւն պիտոյ 'ի դարմանս մեղուաց, կամ թէ ո՛րքան է ճարտարութիւն մեղուաց 'ի գործս իւրեանց, որ զամենայն ինչ բազում խնայութեամբ և իմաստութեամբ մատակարարեալ ամենեսեան 'ի յարկս իւրեանց։

Ո՛վ լուսապայծառ վեհ գերարփիք տիեզերաց,
Դուք՝ որ ընդ երկին սահուն զոլորտ վարէք տարւոյն,
Դեմետրէ կենդանատու, Ապանդարամետ ուրախարար,
Ձերով եթէ շնորհիւ ըզքաւոնեան վայրի կաղինս
Ընդ ատոք ոսկեփունջ հասկ երբեմն երկիր փոխանակեաց,
Ի բաժակս աքելովեան ըզնորագիւտ պարզեաց ողկոյզ.
Եւ դուք, վարսաւոր մայրեաց շինից հուպ շահապետք,
Հովասուն պայք և պարիկք և կուսագեղ յաւէրժհարսունք,
Ո՛ն եկայք երամովին, ըղձեր պարգեւսըն նըւագեմ:
Դու և ո՛վ, որում 'ի մեծ երեքարձէն կոփեալ նախկին
Զամեհին բըխեաց երկիր ձի փռընչելով ընդոստուցեալ,
Պիսիդոն, և անտառաց պետ պահապան դու բնակաւոր՝
Ում բիւր զուարակ ձիւնաթոյր ըզդեղ դալար լիզեն Կէայ.
Զհայրենիդ և քո թողեալ թաւ դարեւանդ լիկէական
Տեգէացիդ Պան հօտապետ, թէ սիրելի քեզ քոյդ Մենալ,
Հաշտ առ իս մատիր, և դու ձիթենւոյն կոյս արարչակերտ
Աթենաս, և կոր մաճոյն բերող 'ի լոյս պատանեկիկ,

7. Դեմետրէ աստուածուհի հնձոց, Ապանդարամետ դիք որթոյ և գինւոյ: Բայց ըստ կարծեաց հմտից՝ առաջնովդ զլուսին իմանայ, երկրորդաւդ զարեգակն, զորս և վեհագոյն լուսաւորս կոչեաց նախ՝ վարիչս տարւոյն. զի երկոքումբք այնոքիւք չափին ժամանակք՝ որովք ածեն զտարին ընդ երկինս:

8—10. Քանզի առաջին մարդիկն վայրի կաղնովք և ջրով ևեթ պարէնաւորէին. և 'ի կաղնաբեր անտառս նշանաւոր էր դոդոնեանն 'ի Քաւոնիա կամ յԷպիրոս, որպէս և 'ի ջուրս գետոց՝ Աքելովոս յԷտոլիա, զորոյ ափամբք ասի արկեալ զառաջին այգիս Ինէոսի էտոլացւոց արքայի, և նուիրեալ գինի Ապանդարամետին, և ընկալեալ 'ի նմանէ զարուեստ այգեգործութեան:

11. Շահապետք, պայք, պարիկք և յաւէրժահարսունք՝ դիք իմն կամ դիցազունք վայրաց և անտառաց համարէին առ նախնիս հելլենաց և հռոմոց, որպէս և առ մերսն:

14. Նախկին բղխեաց երկիր, իմա 'ի նախնումն, նախ զառաջինն 'ի սկզբանէ. կամ նախկին երկիր, նախաստեղծ, նորաստեղծ: Պիսիդոն կամ Պոսիդոն ծովական դիք՝ համարէր արարիչ ձիոյ: Զի 'ի վիճելն ընդ Աթենասայ դիցուհւոյն թէ ո՛ յիւր անուն կոչեսցէ զնորակերտ քաղաքն աթենացւոց, պատգամ ելանէր յաւագամեծար ատենէ երկոտասան դիցն վեհագունից, զի որ օգտագոյն ինչ պարգեւս շնորհեսցէ մարդկան, զիւր անուն տացէ քաղաքին: Յայնժամ Պիսիդոնի հարեալ զերեքարձէնն ընդ երկիր, եհան զձի պատերազմական. Աթենաս նիզակաւն բուսուցեալ զձիթենի՝ զառհաւատչեայ զնշանակն խաղաղութեան, և յաղթող եղեալ՝ ետ զանուն իւր 'ի վերայ քաղաքին:

16. Անտառաց պետ պահապան կոչէ զԱրիստէոս, զորդի Ապոլոնի և Կիւրենեայ, որոյ թողեալ զԹեբէ՝ եկն բնակեցաւ 'ի Կէա, որ մի է 'ի Կիւկլադայց՝ 'ի Բոլոր կղզեաց. և համարի հնարագիւտ մեղուաց և մեղրագործութեան և մակարդելոյ կաթին:

19. Պան դիք էին անդէորդութեան և խաշնարածութեան, յԱրկադիա գաւառէ՝ յորում էր Տեգէա քաղաք: Լիկէոս և Մենալոս պարարտարօտ և անտառախիտ լերինք էին Արկադիոյ. զորս թէ սիրես, ասէ, առ իս մատիր. զի տուարածական տաղիւքս փառաւոր արարից զնոսա և նոքօք զքերթուածս:

21. Մաճոյ և արօրոյ ճարտարապետ համարեալ էր Ոսիրիս եգիպտացի, կամ

Եւ բարձող կարձովլին մատաղ նոճոյն Շահարունի.
Դիք բոլոր և դիցամայրք արթուն դեհպետք անդաստանաց,
Որ զինքնեկ ըղձեռաբոյս արդիւնս անսերմըն մնուցանէք,
Եւ որ յորդ 'ի հարաւունս տեղայք յերկնէ ցօղ շառաչուն:
Եւ դու ինքըն Կեսար, ում երկեան է տակաւին
Յոր կաճառ աստուածախումբ լիցի ուրեմն ակումբ արկեալ.
Աշխարհաց թէ ոստիկան և քաղաքաց սիրես կալ դէտ,
Եւ ըզքեզ տիեզերաց ծիրն ընկալցի լայնակամար
Մըրգաբեր բարեաց ծընող, ժամանակաց իշխեցող տէր՝
Մըրտենեաւըրդ մայրենի արտախուրեալ քեզ զիրանունս.
Թէ անհուն ծովուն ծագես աստուած և զքո երես եւեթ

Տրիպտողեմոս Եղեւսինացի՝ 'ի Դեմետրեայ ուսեալ զերկրագործութիւն :

22 . Շահարունի կամ Սիլուանոս դիք էին անտառաց, որում սիրելի լեալ Կիպարիս մանուկ, որ նշանակէ նոճ. որ և իբրև հալէր և մաշէր առ գուժ եղին իւրոյ՝ վրիպակաւ յիւրմէ սպանելոյ, փոխեաց զնա աստուածն 'ի նոճ. և զայն նկարէին 'ի ձեռս նորա՝ նշանակ սիրոյն կամ սքանչելեացն :

24 . Փոխանակ ինքնեկ և անսերմն ասելոյ՝ կէս օրինակք այսպէս ունին զտողդ .

Որ արդիւնըս նորաբոյս սերմամբ իւիք սընուցանէք .

և իմանան՝ նորագիւտ և նորապարգև սերմամբ իւիք նոր արդիւնս ծնուցանէք, կամ պարկեալ ցանս գաղտնի իմն և ծածուկ զօրութեամբ ախտարակաց աճեցուցանէք : Բայց կիրթ ոչ թուի բազմաց, և ստուգագոյն գրչագիրք ունին որպէս եդաք :

26 . Հոկտաւիանոս Աւգոստոս կայսր, թոռն Յուլեայքեռ Յուլիոսի Կեսարու և որդեգրեալ իսկ 'ի նմանէ : Այս աներժան մարդահաճութիւն եթէ ստգտանելի է 'ի Վիրգիլիոս, ոչ այնչափ նորա է մեղ, որչափ հեթանոսական անպատեհ սովորութեան հռովմայեցւոց, որով զաստուածական պատիւ ընծայեցին Յուլիոսի Կեսարու և ըստ նմանէ Աւգոստեայ : Եւ թէպէտ չև էր տուեալ այն Հոկտաւիանոսի պատուիրանաւ ծերակուտոյն 'ի գրել Վիրգիլեայ զառաջին գիրս զայս, բայց զի որդի համարէր աստուածացելոյն Յուլիոսի Կեսարու և դիւցազն կամ աստուածազարմ և աստուածորդի կոչէր, և 'ի մեծամեծ յաղթանակացն նորա պակուցեալ առ հասարակ քաղաքք և գիւղք սկսեալ էին 'ի խնամս կալ դիցն կարգի պաշտօն մատուցանել նմա, յայտնէ և քերթողս համարձակէր յայս սուտակապատութիւն . ուստի ոչինչ դըժուարին գոլով նմա գուշակել 'ի հանդամանաց իրացն և ժամանակին՝ թէ առ յապա և վճառով իսկ և հրապարակաւ տայի նմա այն պատիւ . որ և եղև իսկ յետ իւր եօթն կամ ութից ամաց՝ յաւարտել Վիրգիլեայ զքերթուածս, տուեալ նմա և անուն Աւգոստոս՝ որ է վեհափառ, պաշտելի, քաջ արանց : Եւ թերևս ամին իսկ իւր տակաւին անյայտ ասէ՝ թէ յոր կարգ աստուածոց դասիցի :

29 . Իմա մեծ պարունակն երկնից, կամ ստոյգ եւ՝ լայնատարր գունտ աշխարհիս, զի և նախ երկրի և քաղաքաց պետ և տեսուչ ասաց :

30 . Ժամանակաց . լատին բառն նշանակէ և զամպրոպս կամ զմրրիկս, բայց ամենայն ոգջամիտ մեկնիչք իմանան զեղանակս տարւոյն : Զի և կարի իմն առաւելազանց լինէին շողոմքն և պատերազմօղ լսելեաց՝ զամպրոպայինոյն իսկ զԱրամազդայ զգահն և զգաւազան հանել տալ Հոկտաւիանոսի :

31 . Մայրենեօք և որդեգրութեամբ Յուլիոսի Կեսարու յէնիական սերնդոց գոլով Հոկտաւիանոս, իբրև զնա նախամայր ունել համարէր զԱստղիկ՝ զմայրն Էնեայ : Վասն որոյ մայրենի մրտենեաւ պսակեալ ասէ յաշխարհէ զգլուխ նորա կամ զճակատ և զքունս . զի Աստղկան ձօնեալ էր մրտենին անուշահոտ և անթառամ՝ վասն անմահութեանն և վասն հեշտասէր և ծովածին գոլ դիցն այնմիկ, որպէս մուրտ զծովեզերս սիրէ . և մանաւանդ վասն այլոյ իրիք զգալի և մարմնաւոր պատճառի :

Պաշտեսցեն նաւաստիք, քեզ հարկեսցի վերջին Թուլէ,
Եւ Տեթիս բոլոր ալեօքն ըզքեզ փեսայ իւր վարձեսցի.
Եթէ նոր աստղեօք նշան 'ի յամր ամիսս յաւելցիս
Ի խորանն երկնից ընդ Կոյսն և ընդ յաջորդ Կարճին ճիրանս
Որ 'ի ձեզ փայլակնընթաց ըզբազուկս իւր յինքն ամփոփեալ
Ըզան զարդար բաժինն երկայն թողու յերկինս քեզ ասպարէզ։
Որ զինչ և լինիցիս, զի ըղձոյք մի կալցին քեզ ակն

33 · Թուլէ կամ ըստ օրինակաց ինչ Թիւլէ, համարեալ ծագ աշխարհի։ Եւ էր կողմն այն Նորվեգիոյ՝ որ Տիլեմարքն կոչի, կամ մանաւանդ մի յԷմոդայց, այս ինքն 'ի շեթլանդեան կղզեաց կալեդոնեան ովկիանու 'ի հիւսիսոյ բրիտանացւոց՝ Թիւլենսէյն կոչեցեալ։ Են և որ զԻսլանդիա ասեն։ 'Ի կողմանս յայսոսիկ գնէ և Խորենացին զԹուլիս կղզի, որ նոյն թուի լինել. զի և ասէ իսկ թէ Մեկնէ զհիւսիսականացն և ծանուցելոյ երկրի. և թէ Որոյ հասարակն յանծանօթ երկիր համարելէ։

34 · Տեթիս՝ Ուրանոսի և Եստեայ կամ երկնի և երկրի դուստր, քոյր Զրուանայ կամ Կռոնոսի, կին Ովկիանու կամ ըստ այլոց Պիսիդոնի, մայր ծովային յաւէրժահարսանց։ Այլ է Թետիս դուստր Ներեւսայ և Դորիսի, մի 'ի ծովային յաւէրժահարսանց, կին Պելէոսի և մայր Աքիլլեայ։ Սակայն երկոքին յաճախ փոխանակ ծովու առեալ են։ Վարձել և վարձանք սովորաբար փեսային անկ են ըստ հնոցն օրինաց. բայց առ Հոմերոսի յիշատակին և վարձանք կամ օժիտք ծնողաց հարսին առ փեսայն. և աստ Վիրգիլ զՏեթեայ ասէ վարձել՝ մանաւանդ թէ ըստ լատին բառին՝ գնել զՀոկտաւիանոս ամենայն ջուրբք ծովուն, զմեծ փոյթ յօժարութեանն նորա առ այնպիսի փեսայն յայտ արարեալ։

35 · Նոր նշան, նոր աստեղատուն 'ի յամր ամիսս, յամառնային ծանրաշարժ երկարատեւ ամիսս, 'ի տեղի Կշիռ աստեղատան՝ ընդ Կարիճն և ընդ Կոյսն, որ էր Երիգոն դուստր Իկարոսի, կամ Աստրէա աստուածուհի արդարութեան դասաւորեալ ընդ աստեղս և Կոյս կարդացեալ։ Զի առ կարի հինսն անծանօթ էր Կշիռն, և 'ի հին աստեղագիտաց չէր ընդ աստեղատունս համարեալ. Ճանաչէին զվայրն միջակէտ երկնից հանդիպակաց Խոյին՝ զուգակշռող և հասարակօղ աւուրց, ըստ որում ապա կարգեցաւ անդ Կշիռն՝ զոր և Վիրգիլ ինքնին յիշէ զնի 'ի 214։ Բայց զի ոչ գոն 'ի տեղւոջ Կշռոյն աստեղք մեծամեծք և նշանաւորք իբրև յայլ աստեղատունս, դատարկ և թափուր թուի վայրն. և չկայր եդեալ կենդանի մի 'ի կարգի այլոց կենդանակաց կամարին, այլ առկաւէին յետ կարգելոյ Կշռոյն ևս ունէին զվայրն ճիրանք Կարճին. զորս և երկայնեալ. մինչև ցԿոյսն՝ վաթսուն աստիճանս համարէին նմա։ Որ այժմ, ասէ, ամփոփեալ զթևս իւր յերեսաց նորոյ աստուածոյդ՝ թողու (կամ ըստ ոմանց օրինակաց՝ եթող), այս քեզ առ մեծարանացն տեղի անգորր առաւել քան զոր պարտն է. կամ թողու քեզ զմասնն՝ զոր ցայժմ առաւել քան զարժանն և զիրաւ գրաւեալն էր, զբովանդակ միջոց Կշռոյն։ Եւ այս տեղի ընծայի Հոկտաւիանոսի Օգոստեայ, զի 'ի սկիզբն Կշիռ աստեղատան ծնեալ էր 'ի 23 սեպտեմբերի, և օրինակ արդարութեան են կշիռք։ Բայց արդեամբք անուն փառաւորութեանն նորա եղաւ աւգոստոս կամ օգոստոս ամսոյ, որ յառաջին վեցերորդ կոչէր, յաղագս 'ի նմա յաղթանակելոյ Հոկտաւիանոսի ամենայն թշնամեացն և խաղաղաբար ունելոյ զմիահեծան ինքնակալութիւնն. որպէս Յուլիոսի Կեսարուն՝ յուլիս ամսեան, որ հինգերորդն անուանէր 'ի մարտէ առաջին եղելոյ ամսոյ տարւոյն վաղնջուց հռովմայեցւոց։

39 · Յետ յիշատակելոյ զցամաքի, զծովու և զերկնից աստուածոցն գահս՝ ակնարկէ 'ի սանդարամետականս։ Բայց անարժան համարեալ Կայսեր՝ բացէ 'ի բաց հրաժարեցուցանէ. Մի կալցին ակն, կամ ըստ երկուց հին գրչագրաց՝ ոչ ունին ակն. թէ և Հելլէնք զմայլեալ են Է ելիսեան դրախտին՝ որ մերձ է 'ի սանդարամետս անդր, և Պերսեփոնէ դուստր Արամազդայ և Դեմետրեայ՝ յափշտակեալ 'ի սանդարապետէն՝ ոչ յօժարիցէ թողուլ 'ի սպառ զդժոխս և զտիկնութիւն իւր, և այսրէն դառնալ՝ կոչեցեալ 'ի մօրէն, որոյ չքջեալ 'ի խոյզ և 'ի խնդիր դստերն՝ եգիտ զնա 'ի սանդարամետս. այլ նա խնդրեաց յԱրամանդեայ գէթ ամիսս վեց առ մի առ մի անդնդաբնակ լինել։

Եւ հարցի մի այդ 'ի քեզ արքայութեան անձուկ դրժնեայ,
Ընդ Ե՛լիսեան թէպէտ ընդ դաշտ հե՛լլէնաստան պակշոտի,
Եւ ոչ 'ի կոչ մօրն ելանել ըզկնի փութայ Պերսեփոնէ,
Տուր դիւրին թեթեւ ընթաց՝ ակն 'ի յանդուգն արկեալ ձեռնարկս,
Եւ 'ի գութ ընդ իս եկեալ անառաջնորդ երկրագործին՝
Որ ըսկիզըն այժմէն ուսիր զուխտս ընդունել խընդրուածոց։

Նոր գարուն մինչ զալեւոր լերանց հալէ զպաղեալ ծորանս,
Եւ փըխրեալ ըզհողակոշտըն լուծանէն օդք քաղցրասիք,
Ըսկըսցի հեծել ինձ անդ ընդ խորամուխ արօրով ցուլ
Եւ շըփեալ խոփ ընդ ակօս լուսանըշոյլ շող արձակել։
Այլ ըղկամըս մըշակին ագահութեան հերկ այն լըցցէ
Որ կըրկին համբեր տօթոյ և կըրկնակի սառամանեաց.
Որայիցն իւր շեղջ անբաւ երգիծուցին զըշտեմարանս։
Բայց զերկիրն անծանօթ մինչ երկաթով չե՛ պատառեալ,
Հողմոց նախ և զանազան բարուց երկնին գոլ խելամուտ
Եւ հայրենի կրօնից վայրացն և վարուց մեզ փոյթ լիցի,
Եւ թէ զինչ իւրաքանչիւր բերէ գաւառ, զինչ զըլանայ։
Ասա ցորեան գայ հասկաթուռ, անդ տաշտագեղ ողկոյզ որթոյ,
Այլ ուրեք ծառոց ծընունդք և անհրաման սէզք արձակին։
Ո՞չ նայիս ըզքըրքըմահոտ որպէս բուրմունս յղէ Տմօլոս,
Ըզժանիս փըղաց Հընդիկք, զիւրդ Սաբայինք զկուրեանց կընդրուկ,
Զերկաթ Խաղտիք մերկանդամ, Պոնտոս ըզքեշկ անդղու մըշկոյ,
Եպիրոս զյաղթօղ պըրակս մատակ ձիոց ե՛լիսուհեաց։

51. Եթէ վարեսցի մօտ յելս աշնան, ապա դարձեալ 'ի գարնան, զկնի միւսան-գամ յամարայնի և ապա վերստին յաշ-նայնի. և այնպէս ապա ընկալեալ զսերմն՝ 'ի յաջորդ ամարայնի արասցէ պտուղ, ո-րով հերկն այն կրկին ձմեռն և կրկին ա-մառն տեսեալ լինի։

55. Սեփական, յատուկ բնութեան եր-կրին, և հայրենաւանդ օրինաց մշակու-թեան ըստ իւրաքանչիւր տեղեաց։

59. Տմօլոս գինեւէտ և քրքմաւէտ լեառն 'ի սահմանադլուխս Փռիւգիոյ մե-ծին և Լիւդիոյ։

60. Հնդիկք՝ ազգ արեւելեայ ասիական աշխարհի, որոյ փիղք մեծամեծք քան զա-փրիկեցիս, և փղոսկրն անուանի։ Սաբայե-ցիք յայտնի են ժողովուրդք երջանիկն Ա-րաբիոյ՝ խնկաբեր աշխարհին։

61. Խաղտիք ազգ Պոնտոսի՝ առ Թեր-մոդոն գետով, կամ ազգ Սպանիոյ առ Քալիբս գետով. զի զերկաթսն ազգքն Քա-լիբս կոչեն հոռոմք։ Եւ մերկանդամս ասէ վասն երկաթագործ գարբնութեան նոցա։

62. Եպիրոս կամ Էպիրոս գաւառ քա-ջաբեր ձիոց, որ պսակս յաղթանակի առ-նուին յոլոմպիական մրցանս յԷլիս կամ յԷլէա գաւառի Պելոպոնեսոյ, յորում էին Էլիս քաղաք առ Պենէոս գետով, և Ոլիմպիա առ Ալփէոսիւ՝ տաճարաւն Ա-րամազդայ և մրցանացն հանդիսիւք հռչա-կաւոր։ Եւ զմատակ երիվարսն յիշէ իբրև առաւել քաջընթացս։

Զայս 'օրէնս և զաշխնս յաւիտենից ուխտ անյեղլի
Սահման եդ տեղեաց տեղեաց իսկըզբանէ խնամոտ բնութիւն
Յորմէ հետէ Դուկալիոն ցընդեաց քարինս յունայն աշխարհ,
Ուստ 'ի վեր ելին մարդիկ՝ ազգ անհնարին և դըժընդակ։
Համպա եկ իսկ և իսկ զաւաջաւոր ամոլք տարւոյն
Հերկս 'ի պարարտ դաշտագետինն հարցեն հըզօր եզնամոլք,
Եւ որ անդ 'ի տապալեալ երես երկրին անկեալ կոշկոռք՝
Մըղեղեալ ամառն հասուն արեգակամբք եփեսցէ զայն։
Իսկ յուռթի և արգաւանդ թէ հող չիցէ անդաստանիդ,
Խարխարել յակօս ծանծաղ շատ լիցի յելս Արջապանին։
Անդ զի մի բերկրեալ արդեանց ինչ մեղիցեն մոլախոտք,
Աստանօր՝ զի դոյզըն հիւթ զամուլ երեզըն մի լըքցէ։
Այն տացես փոխանակաւ փետեալ անդոց դուլ և դադար,
Եւ տարտամ արտն 'ի խոպան դիւր ընկալեալ կազդուրեսցի.
Կամ ցորեան շիկակարմիր յարփւոյն շըրջել ցան անդ հանցես՝
Ուստի նախ զըւարճ սերմանս 'ի սօսափել շըրշել պատճաց
Կամ սերունդ ժողովեցեր զվըզին մանրիկ և նըկնաձև,
Եւ զդիւրաբեկ խարշափուն շամբ և մայրի ժանտ գերմաստոյ։
Զի կտաւոյ ցօղուն այրէ, խամրէ զերկիրն ոճ վարսակի,
Այիզուն խաշխաշք թաթաւուչք 'ի քուն թալկան ուշամոռաց։

65. Դուկալիոն և կին նորա Պիրրա կամ Պիւռա միայն ապրեալք 'ի համաշխարհական ջուրցն հեղեղէ ըստ առասպելեաց, և պատգամ ընկալեալ 'ի նորածնութիւն ազգի մարդկան զոսկերս մօրն մեծի ընկենուլ 'ի թիկունս կոյս, առին քարինս ընտիրս և ընկեցին. և 'ի Դուկալիոնէ արկեալքն փոխեցան յարս, իսկ 'ի Պիրրայն՝ 'ի կանայս։

70. Հասուն արեգակունս իմա զզօրաւոր և հուժկու արև ջերմին աւուրց ամարայնոյ, որով հողն մըղեղեալ փոշիանայ. կամ իմա ներգործաբար՝ հասուցանող, յոր միտս և եփել ասէ։

72. Այս է 'ի սեպտեմբերի ամսեանն, յորում աստեղք Արջապանին ելանէին ընդ առաւօտս՝ ըստ այնր ժամանակի. զի այժմ 'ի մուտս հոկտեմբերի ծագեն։ Արջապանն կամ Եզող՝ այլ է 'ի Սայլ կամ այլակերպ աստեղաց. մերձ կայ 'ի ձետ մեծի արջոյն կամ 'ի ծայր սամւոյ Սայլին, և է նորա աստղ մի մեծ արջոյ յետ աստեղաց յունարէն արկտուրոս։ Արջապանն կամ Եզող, թէպէտ և հիւսիսային, սակայն մտանէ և ելանէ. իսկ Սայլն՝ որ է արջն մեծ, ոչ ունի բնաւ ելս և մուտս՝ վասն կարի իմն 'ի բևեռն կոյս գոլոյ։ Տես և 250։ Արկտուրոսն՝ Սայլ թարգմանեալ է 'ի Յոբ, Թ. 9. ընդարձակ առմամբ. այլ մեզ չմարթէր ասել աստ ճշգիւ, ուր մտից և ելից խնդիրք են։

73—74. Անդ 'ի պարարտ գետնին. աստանօր՝ յանջրդողն։

75. Պատուիրէ փոփոխել զսերմանս անդաստանացն [illegible], 'ի դադարել տարւոյն։ Իսկ եթէ անձուկ ինչ արտ իցէ, մի ամ զամի զկնի ցորեան ցանել, այլ փոխանակաւ՝ մերթ զայն, մերթ զայլ թեթև արմտիս. զոր օրինակ զոլոռունս՝ զվիգն մանրիկ կամ զգերմաստ դառնահամ. և զգուշանալ 'ի կտաւոյ, 'ի վարսակէ և 'ի խաշխաշէ, մանաւանդ յանընդհատ արկանելոյ զայնս. իսկ փոխանակաւ՝ կայ և նոցա տեղի, եւ առաւել եթէ աղբով պարարտասցի գետինն։ Քնաբեր ասէ խաշխաշն, զի անտի կազմի թմբրադեղ աֆիոն։

Այլ սակայն 'ի կարգ անկեալ՝ դիւրին լինին երկք վաստակոց,
Թէ միայն զոյծ արտորայս յաղբ պարարել մի խորշեսցիս,
Եւ մի զմրրձոտ մոխիր ընդ անծընունդ անդ արկանել։
Եւ այսպէս 'ի փոփոխել երկանցն առնու գետինն ողի.
Համայն՝ կայ ինչ շընորհ և անարօր անդաստանին։
Զանդ անբեր՝ բազում անգամ և հրոյ ճարակ 'ի դէպ է տալ,
Եւ 'ի բոց կայծակնացայտ ըզսին խոզանըն տոչորել.
Զի սընունդ անտի պարարտ առնու երկիր և ոյժ Թաքուն,
Կամ կարիք նորա և ժահ հրածախ ցընդեալ մաշին ընաջինջ,
Եւ գիճինն անշայեկան ցամաքի հիւԹ երաշտացեալ.
Կամ Թէ տապն այն ծերպ յոլով և ըզկոյր խինձսըն փեռեկէ,
Ընդ որ Թօնք խոնաւականք յորդոր գնայցեն 'ի բոյս դալար.
Եւ կամ կուռ սերտեալ պընդէ, և զերակաց սեղմէ զպախուռն,
Զի տեղոյ ցուրտ մանրացօղք և սուր զայրուկք բարկ արևու
Կամ դառնահոտ հիւսիսոյ շունչ Թափանցիկ մի խամրեսցեն։
Մանաւանդ որ 'ի տըրմուխըս փըշրէ զգունդըն Թանձրահող
Եւ տանի ողորահիւս ցաքանս ընդ ունջ, օգնէ անդոց.
Ոչ նըմա զուր շէկ Դեմետրէ դէտակն ունի յերկնից բարձանց.
Եւ որ զխոր ըզյարուցեալ կոհակս 'ի դաշտ ակօսաբեկ
Նոյրէն շըրջան մաճոյն տըւեալ խոտորնակի պատառէ,
Եւ երկրին շտապ տաղնապի ածեալ ըստէպ՝ տիրէ արտոց։
Հայցեցէք, արդիւնարարք, Թօնուտ ամառն և պարզ ձըմեռն,
'Ի փոշի ձմերային խընդայ ցորեան, ցընծան ածուք.
Ոչ այլով ինչ Միւսիա պարծի այնչափ մըշակուԹեամբ,
Եւ ինքնին Գարգարոնիք ընդ իւրեանց հունձըս զարմանան։
Զինչ ասեմ, որ ետ ընդ ետ ընդ հանել սերմըն յարտավար՝
Զհետ պընդեալ փըլուզանել փոյԹ ըզհողակոշտըն Թանձրախուռն,
Յորդաբուխ զեռուն վըտակս ըզկնի սողոսկ ածէ 'ի ցանս.
Եւ մինչ անդ արևակէզ օրհասական տապի ծնըծղովք,
Նշադիկ 'ի գլուխ առուի առ 'ի Թաւալ դարևանդին

87. Այս է, և անվար երբեմն Թողուլն զանդս՝ օգտակար է 'ի զօրացուցանել զնոսա հանգստեամբն։

100. Ոչ յումպէտս ինչ այցելու լինի, այլ տայ պտղաբերել և յարդիւնս հայեցեալ ցնծայ ակնկալուԹեամբ նուիրաց։

106. Միւսիա՝ գաւառ փոքուն Ասիոյ ըստամաքակողմանցն Տրովադայ. Գարգարոնիք՝ կոչին ինչ Իդա լերին և աւան Տրովադայ. երկոքին վայրք արգասաւորք՝ ոչ այնչափ այլով իւիք, քան Թէ օգոյն բարեխառնուԹեամբ։

Այս շարժէ վիժակս ուղխից՝ որ Թափ ընդ ջինջ գըլեալ քարինս
Յորձանօք խոխոջաձայն շիջուցանեն զերկրին պասուք։
Զի և զայն՝ որ զի մի ծիլքըն ծանր անկցին հասկօք տապաստ,
Ըզչուայլեալ բոյս բողբոջացն 'ի դեռափթիթ տիս ճարակէ,
Նայն ինչ ելեալ սերմանիք դիւրեն զակօսս հարթ հաւասար.
Եւ որ զմօրից կարակումն ընդ ջըրակուլ քամէ 'նդ աւազ,
Մանաւանդ թէ 'ի յողդողդ ամիսս յառնէ գետ զայրագին,
Եւ մըրուր շուրջանակի արկեալ ծածկէ սիկ զընդհանուրս,
Ուստի խոր ճահիճք թօրեն ըզջերմահոտ աւիշ քըրտան։
Բայց թէպէտ զայս ամենայն՝ արանց հանդէս և արջառոց
Ձեռն 'ի գործ երկրին տըւեալ մըշակութեան դընիցեն զուն,
Ոչ սակաւ սագ անըզգամ և ստրիմոնեան խորդք կան վըրագ։
Եւ եղէգըրն դառնարմատ? կամ թէ փնասեն ծըմակ ըստուերք։

Ինքըն Հայր՝ ըզգործ երկրի ոչ կամեցեալ դիւրին լինել,
Նախ անդոյ հնարեցաւ վար, ըզմեռոտ միտս հոգովք սըրեալ
Եւ ափչել թանձր 'ի թըմբիր յանձն ոչ առեալ իւր տէրութեան։
Յառաջ քան զԱրամազդ ոչ շինական արտըս նուաճէր,
Ոչ նըշան կանգնել օրէն էր կամ սահման դաշտավայրի.
'Ի միջի դընէր վաստակք, և զըլխովին ինքըն իսկ երկիր
Անթախանձ յումեքէ առատաբուխ տայր զամենայն։
Նա 'ի փոր սևաթորմի օձից խառնեաց ըզչարաթոյն,
Ծուփս անդըընդոց ետ հրաման, հրոսօղ գայլոց հէն և աւար,
Զերծ ըզմեղր 'ի տերևոց և ծըրարեալ թաքոյց ըզհուր,
Եւ ըզգինեաց գետահետեալ վըտակս առ ոտս՝ ընկըրկեաց.

119. Յողդողդ ամիսք են գարնայնոյ և աշնայնոյ՝ ընդ ջեր և ընդ խոնաւայոյզս. յորս պարտ է զեկեալ լճացեալ ջուրսն քամել ընդ առուս և կորուսանել յաւազին տեղիս։

121. Ուստի ճահիճք, լիճք գոյանան։

124. Սագք կոչեն զոր և գտանեն 'ի մատաղ բանջարոց, և աղբ նոցա փնասակար է անդոց։ Ստրիմոնեան սաի կռունկ, զի բազում գտանի առ Ստրիմոն գետով Մակեդոնիոյ՝ առ եզերբ սահմանացն Թրակիոյ։ Իսկ եղեգք կամ դառնիճք և եղերդք գժոխարմատ զտակաբոյն տարածեալ մոլին, և սագաց ցանկալի են և այլոց ընտանի հաւուց։

126. Գարզաբար հայր կոչի Արամազդ կամ աստուած։

131. Ամենայն ինչ 'ի միջի դնէր, հասարակաց էր, չգոյր իմ և քոյ՝ յառաջ քան զԱրամազդ, յոսկեղէն դարու տէրութեանն Զրուանայ կամ Կռոնոսի։

138. Կամ զի ըստ բանաստեղծից յոսկեղէն դարու անդ այնչափ առատ գործէին մեղք մեղուք 'ի փապարս կաղնեաց, մինչև առուանալ ընդ երկիր. կամ զի տերևք ողոցեալ մեղք բղխէին իբրև զկաթիլս ցօղոյ կամ իբրև զքրտան կայլակս ոլոռնաձև վիժեալ. փոխանակ զի այժմ ստանձանեան հոյզ ինչ երևի 'ի նոսա 'ի Գլինխեակ մեղր կոչեցեալ։

Զի տակաւ երկնելով պէտք՝ համձարեսցէ զարուեստից հոյլս,
Եւ յակօսըս խընդրեսցէ ցորենաբեր բոյս հաստաջով,
Եւ յորձաքար երակաց նիրհեալ կայծակըն զարթուսցէ ։
Ընդ յայնժամ գետք ըսկըսան գոգեալ բարտեաց առնուլ ըզփորձ,
Նաւաստին աստեղաց թիւ և անուանս անդ իմացաւ,
Բոյլըն, զԱլաւսունս և զԱրջ պայծառ Լիկայոնեան.
Դաւ ոստեղն անդէն 'ի գիւտ, յորս երէոց հնարաւոր վարմ,
Երագազ տալ պառական սըփռել պատել ըզմեծ անտառս.
Ոմն անդուստ անդընդամուխ կարթիւ թոպէ զլայն հեղեղատ,
Եւ այլ ոք ծովաթաց ցանցէ զուռկանս յահեղ խորոց.
Ընդ երկաթոյ կարծրակուռք և սայրասուր սղոցի մաշար,
Քանզի հինք 'ի սեպ երիթ պատառէին ըզփայտ շերտեալ.
Ընդ ելին պէսպէս արհեստք, ամենայնի յաղթեաց ժիր ջան
Եւ անձուկ վիշտ վըտանգին 'ի տարակոյս հարկին տագնապ ։
Մահկանացուաց նախ Դեմետր ուսոյց ըզհող քըրքրել յերկաթ,
Նուիրական մինչ անտառին կաղին մաթուզ հատաւ 'ի սպառ,
Եւ ըզպարէն կենաց մարդկան արգել կարձեաց Դոդոնէ ։
Հապ անկեալ ցաւք 'ի ցորեան՝ դըժնէ զալուկ յոձ ձարակէր,
Եւ պըղերգ սոսկայր ոզոզ քըստմընափուշ 'ի դաշտորայս.
Սերմանիքըն կորընչին, յաջորդէ թաւ մացառամոլ,
Դազ դըժնիկ ընդ տատասկաց, համայն որոմն հէք և թըշուառ
Եւ վարսակք անբեղնաւոր գոռոզանան 'ի պերճ արարս ։
Որ թէ ոչ կաս ցանգ անդուլ տըրմուխ 'ի ձեռս վանել զերկիր,

142. Մեծ արջն հուպ 'ի բևեռական աստղն՝ ըստ առասպելին էր դուստր Լիկայոնի արքայի արկադացւոց Կալիստով անուն, սիրեցեալ յԱրամազդայ, 'ի Հերայէ փոխեալ յարջ, այլ յԱրամազդայ գասակարգեալ յաստեղս երկնից ։ Այսու զգիտաւորութիւն հիւսիսական բևեռին կամի ասել, որով առաջնորդին նաւազք. որպէս և Բոյլքն կամ Բազմաստեղքն՝ եօթն կամ վեց աստեղք 'ի վզի Ցլուն կամ 'ի թիկունսն՝ վճերոց գուշակեն նոցա, և Ալաւսունքն՝ այլ եօթն աստեղք 'ի ճակատ կամ 'ի գլուխ Ցլուն՝ զանձրևածաց յայտ առնեն ։

149. Կէս օրինակք ունին ամենայնի յաղթէ. բայց այլք ընդ լաւագոյն գրչագրաց յաղթեաց ։

152. Որպէս յիշեցաք 'ի 8, անտառին էր կաղնուտն առ Դոդոնէիւ քաղաքաւ Եպիրոսի, և նուիրական ինքն և մեհեանն որ 'ի նմա Արամազդայ ։ Ի պակասել կաղնոյ և այլոց վայրի մրգոց 'ի պէտս վայրենի մարդկանն, յայնժամ Դեմետրէ աստուածուհի ուսոյց նոցա զգործ մշակութեան երկրի ։ Սակայն և այնպէս, ասէ, եղեռն բազում բուսանի յարարս, եթէ ոչ ցանգ խնամով պատկառ կայցես գարման առնել ։

158. Զվարսակ անբեղնաւոր կամ ամուլ իմա՝ ոչ զի անսերմն և անծնունդ է, զի ահա 'ի վեր անդր (81) զգուշացուցանէր 'ի սերմանելոյ, այլ զի ոչ գայ 'ի պէտս օգտակարութեան մարդկան ։

159. Վոմէր ինէրէիր. օրինակք ինչ ընդ հնագոյն գրչագրի միում ասեն Վոմէր ըղխոփն ։

Զհովանիս նըսեմաստուեր հերկոց քըշտել 'ի սուր մանգաղ,
Զհաւս 'ի խօշիւն խուճապել և աղօթիւք կարդալ զանձրև,
Ահ, ընդ վայր զօտարին նըկատեսցես ըզմեծ գաղիշ,
Եւ ըզսով քո սփոփեսցես թօթափելով կաղնի յանտառս:

Արդ տեսցուք զինչ և անօթք իցեն և զէնք պնդ մըշակաց,
Յորց վըրէպ՝ ոչ վար և ցան և ոչ հընձոց յառնեն հասակք:
Գալարուն ծանր արօրոյ նախ և յառաջ կորով և խոփ,
Եւ սայլակք Եղեւսեան մօրն անուահոլով յամրընթացիկք,
Դահուկք և կամնասայլք և անհեղեդ բեռին տըրմուխք,
Նա և չերտանկու Կեղեան նըւաստ կահ և կազմած
Սաթղի տափան, և Նըքոյր Սպանդարմետին խորհըրդաւոր.
Զոր ուշ 'ի կուրծս անկեալ կանուխ հանդերձեսցես զամենայն,
Երկնաւէտ վիճակին եթէ պահին քեզ փառք հանդէպ:
Անդէն և անդ 'ի մայրիս մեծաւ ուժով թեքեալ յառեղ
Վարտի նըշդարենի և գայ 'ի ձև կոր արօրոյ,
Յոր սամին 'ի բընոյն ձիգ երկայնեալ յութ ոտնաչափ,
Զոյգ ունկունքըն պատշաճեալ և երկողնի առատամունք:
Հարկանի փոյթ և թըմբլին թեթև 'ի լուծ ուերկայն փիճի,
Եւ մաճ, որ 'ի թիկանց զյետոյս սայլին տանի բերէ.
Եւ զմայրիդ յակութ 'ի կախ ծուխըն փորձէ խարուկածին:
Այն առ իս բազում պատուէրք հայրենատուրք աւանդել քեզ,
'Ի հոգոց մանրակրըկիտ թէ չես խուսափ ծանրատաղտուկ:

160. Հովանի բազում ուրեք փոխանակ մերկոց առեալ է, գործ ընդ պատճառի, ծանօթ ձևով հռետորականաւ:

167. Եղեւսեան մայր նոյն ինքն Դեմետրէ է ուսուցօղն հողագործութեան, որ յԵղեւսիս քաղաքէ Ատտիկեայ՝ յորում նախ ուսոյց զարուեստ, Եղեւսեան ևս սա: Իսկ սայլք նորա, որով և զպատկեր նորա յանդաստանս շուրջ ածէին, անիւք էին ոչ խոզիւք և խեցիւ կազմեալ, այլ կունդք թմբկաձևք որ լիառամըն հետ դառնային, որպէս վարին ցարդ յարևելս 'ի Հայս, և անուանին ծկլիկք:

169. Կեղեան կազմած ասէ զզպաքանն. զի Տրիպտոլեմոս՝ որ առաջին ուսաւ զերկրագործութիւն 'ի Դեմետրեայ, էր որդի Կեղէոսի արքայի Եղեւսիս քաղաքի:

170. Նքոյրն կամ խարբալ 'ի տօնս և 'ի խորհուրդս Սպանդարամետին 'ի հանդիսի անցանէր. զի զկեղեքեալ անդամս նորա՝ 'ի մաղի ժողովեաց Իսիս, և շինականք մաղիւ նուիրէին նմա զերախայրիս պտղոց, և զի օրինակ է մաղ ընտրութեան բարեաց և չարաց, որպէս ցորենոյ 'ի յարդէ:

172. Եթէ կամիս պատիւ և գովեստ գիւղից և վայելուչ գտանել յագարակէդ:

173. Բանաստեղծական նկարագրութիւն կազմածի արօրոյն. ուր առեղ իմա զյետոյ կողմն նորա, զաւարտն:

177. Թմբի է օղամուր, tilia. և փիճի՝ ազգ կաղնւոյ, fagus:

179. Զի փորձ և ընտիր համարին փայտք պնդացեալք 'ի ծուխ վառարանի:

Յառաջինս ըղձալ հարթել 'ի դուղան մեծ սոսկալիթխար,
Եւ զընկեալ ձեռամբացի՝ կուռ և մածան բռնել կաւով,
Զի մի բոյսք արձակեսցին կամ պախիցէ լուծեալ յաճախուն:
Թաքթաքուր խաղան յայնժամ ազգի ազգի անդ ժանտաժուտք.
Երդ ըստէպ և մըթերոց եդ ընդ հողով մուկըն մանրիկ,
Կամ թէ կոյր խլըրդանին բրեցին խըշտի մըշտագիշեր.
Գըտաւ 'ի սորս և դօդօշ և որ ինչ այլ բերէ երկիր
Ճիւաղ բազմաձըձի խառնափընդոր 'ի ծոց իւրում.
Եւ աւար առնու մինոյ զլեռնակարկառ թեղ ցորենոյ,
Եւ մըրջիւն՝ ցականելոյ զառամութեան կասկածաւոր:
Մի՛տ դիր եւ՝ յորժամ նըշլին 'ի դարաստի փունջ խունկերամ
Յօրինեալ ծաղկապըսակ՝ զանուշահոտ ծըղիսն հակէ.
Թէ որդիքն են բազմաբիւր, տոհմականօք դայցեն ցորեանք
Եւ ընդ մեծ տօթոյն 'ի հետ հասանիցէ մեծ կալըրայ.
Իսկ թէ շռայլեալ վարսիւք յորդէ սաղարթազեղ հովանի,
Զուր կասուցու կալոտին ըղյարդաւէտ թափուր օրան:
Ես բազում սերմանահանս տեսի թըրմեալ ըզսերմանիս
'Ի բորակ նախ և 'ի թուխս ոռոգելով մըրուր ձիթոյ.
Զի արմըտիք յոյր ծընցին քան ըզպատեանսըն նենգաւորս,
Եւ 'ի հուր մեղմախառն ամոքեսցին դիւրապատրաստ:
Երկայնամիտ տըքնութեամբ թէպէտ իցեն փորձք հատընտիրք,
Տեսի սակայն զի խորթանան, թէ զպարարունս ամ ըստ ամէ
Մի առ մի ձեռօք իւրովք ոչ կըտուեսցէ մարդկեղէն ուշ:
Նոյնպէս համայնից՝ միշտ 'ի վատթար տապալել կոյս
Եւ յետս ընդ կրուկ սահել՝ ճակատագրեալ 'ի հրամանաց:
Ոչ ընդհատ քան որ հազիւ դէմ յորձանաց ղեկավարեալ
Մըղէ զլաստափայտն, եթէ երբէք ելք ըզթեւսն,
Նոդէն ըղնա դարավէժ յափըշտակէ սուր հեղեղատ:

Այլ և մեզ խոկ է զարփիս նըշմարելն զԱրջապանին,

188. Դօդօշ իմա զսամին գորտ մեծ և թունաւոր:

200. Զի բազում անգամ պատիճք ընդոց մեծամեծ երեւեալք՝ սին զհատան ունին և ոչ առողջս. զայս ասէ նենգաւոր և խաբեբայ: Դեղովքդ յօրինեալ սերմանք՝ կրկին օգուտ բերեն. զի առողջ գան, և զի դիւրաւ եփին մեղմ հրով:

210. Ոչինչ ընդհատ մեզ մշակաց քան նաւորդաց դիտել արժան է զելս և զմուտս վտանգաւոր աստեղաց: Զարջապանն տես 'ի 72. Ուլքն են աստեղք յուս Կառավա-

Զ Սայլոցըն ժամանակ և զվիշապ Օձըն շողշողուն,
Զերդ որ 'ի դաշտ մրրրկածուփ արշաւասոյր 'ի գաւառ
Ընկըրտելոցն ընդ ծովախոր յաբիւղեան ծոց ծիրանածին։
Իբր Կըշիռն ըզտըւընջեան և քընոյ ժամս հաւասարակեալ
Լուսոյ և ըստուերաց ըզտիեզերս հանէ 'ի կէս,
Մըշեք, արք, զհարկիս 'ի գործ, ցան յարտորայս արկէք գարի,
Մինչև հուպ յանբերելի ձմերան վերջին տեղատարափ.
Նա՝ և կըտաւոյ սերմն և խաշխաշ ըզդեմետրեան
Ժամ է 'նդ հողով ծածկելոյ և անկանել փոյթ 'ի յարօր,
Մինչ մարթունն է յերկիր չոր, մինչ ամպք 'ի թռիչս 'ի կախ կան դեռ։
Գարնանն ոլեռանց ցան, և զքեզ յայնժամ մեդեանդ առուոյտ
Ընդունին փըխրան ակօսք, գայ կորեկան հոգ տարևոր,
Յորժամ Ցուլ լուսապայծառ յեղջերս ոսկի բանայ զտարին,
Եւ Ակընդին ընդդիմամարտիպ աստեղըն խոյս տուեալ թաքնու։

րին, և Վիշապ են աստեղք հիւսիսայինք։ Աբիւղեան ծոց է ծովն և Նեղուցն Հէլլէսպոնտոսի, յորոյ ափակողմանն էր ամրոց Աբիւդոս, յեւրոպակողմանն Սեստոս։ Բերէր ծովն այն բազում խեցեմորթս և խեցընջունս, թերևս և յայնմ ազգէ՝ յորմէ զծիրանին առնուէին հինք. զի լաւին բառն երկդիմի է. և գտանէր իսկ 'ի ծովեզերս ինչ և առ կղզեօք եգեան ծովուն և միջերկրականին։ Ընտրելագոյն թուեցաւ մեզ յայս միտս առնուլ քան թէ զանարգ ոստրեաց, որ և ոչ այնմ ծովու միայն սեփական ինչ են։

214. Արեգակն 'ի Կշիռ աստեղատան գործէ հաւասարակած տուընջեան և գիշերոյ. և զաշխարհս հաւասարապէս հատանէ 'ի ցայգ և 'ի ցերեկ։

218. Դեմետրեան ասել զխաշխաշ յայն ակնարկէ, զի Նորա սափ գլուխ, և խորհրդաւոր զարդ և նշանակ էր աստուածուհւոյն, և զի այնու հնարեցաւ երբեմն մոռացօնս առնել ցաւոց կորստեան դստեր իւրոյ Պերսեփոնեայ, և զի յաճախ բուսանի յանդաստանս ցորենոյ՝ որ 'ի խնամս դիցուհւոյն յանձն էին. և դարձեալ զի սերմն սպիտակ խաշխաշի աղանձեալ՝ յաղանդերս հնոց մեղու հանդերձ գայր 'ի սեղան, և իբրև զարջնգեղ առ մեզ՝ հացհամեմ առեալ էր 'ի պէտս 'ի վերայ նկանակի ցանեալ, կամ ըստ այլոց՝ ընդ ալեր խառնեալ։ Եւ անտի այն հացեղէն՝ գեմետրեան կոչի։

219. Սովորական օրինակք ընդ երկուց հնագոյն գրչագրաց ասեն անկանել 'ի յարօր, որպէս եգաքս. իսկ ոմանք ընդ միում հնագունի ունին անկանել 'ի փըմախ։ Երկոքին յարմարին բանին. զի առ 'ի ցանել պարտ է վարել, և յետ ցանելոյ տրմուխք 'ի գործ անկանին։

220. Մինչ չև է ամպոց լուծեալ յանձրև և իջեալ յերկիր։

221. Զառուոյտ պարզաբար իսկ մեդեան կամ մարացի կոչէին. զի 'ի Մարաց բերեալ էր 'ի յունաստան։ Եւ միանգամ սերմանեալ՝ տևէ ամս տասն, ըստ Պլինիոսի մինչև ցերեսուն իսկ։ Առ այսու երկայնակեցութեամբ տարևոր ասէ զկորեկան ցանս, զի ամ ըստ ամէ սերմանելի է։

223. Ցուլ աստեղատունն լուսապայծառ ասի ոսկի եղջերօք, զի 'ի ծայրս եղջերացն և 'ի ճակատուն կան ճաճանչագեղ աստեղք. և զի արեւն ոսկի գարնայնի յայնմ աստեղատան գոլով ոսկեզարդէ զնոսա, մանաւանդ ըստ մտաց հռովմայեցւոց, որ զեղջերս զուարակաց յաղթանակի՝ ոսկւով օծանէին։ Իսկ բանալ ասէ Ցլուն զտարին, զի 'ի սկիզբն գարնան կալով յապրիլի ամսեան, մուտ 'ի գլուխ տարւոյն է՝ որ գալիստայնի 'ի Խոյէն սկսանէր, և ցարդ ևս անտի սկսանի աստեղաբաշխական տարին. և զի յայնժամ բանայ մշակական տարին և ծաղիկք և բողբոջք երկրի, ըստ որում և ապրիլն իսկ կոչէր անունն ամսոյն առ հռովմայեցիս՝ 'ի բանալոյ առեալ։

224. Ցանցանել Ցլուն զհասարակա-

Այլ զերկիր թէ ցորենոյ վարես 'ի հունձ ու 'ի յոյր աշորայ,
Հասկաթուռ որայից եղեալ եւեթ փոյթ 'ի մըտի,
Թող մինչեւ առաւօտինք սուզանին քեզ Ատլանդուհիք
Եւ գնոսեան մեկնի արփի բոցանըշոյլ վառ Պըսակին,
Ապա թէ դու զսերմանիսդ 'ի պատրաստի հանցես յակօս,
Եւ մի զյոյս տարւոյն ձեպիր դըժմիտ երկրին տալ յերաշխի։
Բան ըզմուտ Բազմաստեղաց նախ ձեռն յոգունց մըխեալ 'ի գործ,
Արուգ հասկօք ըզնոսին յուսապատար դըրժեաց որայն։
Իսկ թէ զվիզըն սերմանես եւ ըզդըրկուղըն դիւրագիւտ,
Եւ ոչ 'ի պեղուսեան ոսպան խնամոյ զակն արկանես,
Եզողն 'ի մայր դառնալ՝ տացէ նըշան քեզ անաղօտ.
Դու անտի մինչեւ 'ի սիրտ ցուրտ եղեմանց ըզցանըդ տար։
Յայդ 'ի պէտ՝ յամըստերիւր չափեալ բաժինս ըզտիեզերս
Արեւն ոսկի 'նդ երկոտասան վարէ արփիս աշխարհի։
Հինգ գօտիք ունին զերկիր, որ մին 'ի շող արեգական
Յանդ հրաշէկ եւ շանդեռանդ եւ բոցակէզ մըշտատոչոր.
Ըզնովիմբ յաջմէ բոլոր եւ յահեկէ պատին վերջինք
Կապուտակ սառամանեօք ձուլեալ ու 'ի լուրթ բըքաբերաց։
Ընդ սոսա եւ ընդ միջինն այլ եւս երկուք՝ դից պարգեւօք
Շնորհեալ հէք մահկանացուաց, ու 'նդ երկոսին հորդեալ շաւիղ,
Ընդ որ պար՝ աստեղատանցն առնուցու կարգ խոտորնաձեւ։

ծաւ երկնից կամ զմիջօրէիւ՝ Շնիկ աստղն 'ի հանդիպոյ նորա կացեալ և դէմ ընդդէմ երեսօք, որպէս նկարի 'ի գունտս, խոնարհեալ 'ի մուտս սուզանի. որպէս թէ 'ի սպառնալեաց եղջերց Ցլուն յետս յետս փախուցեալ։ Այս է բնական իմաստ տողից՝ բանաստեղծօրէն սեթեւեթեալ զտաղսն։ Բայց առ Վիրգիլեաւ յելս ապրիլի մտանէր Շնիկն, իսկ այժմ անագանի։

227. Բոյլքն կամ բազմաստեղք, որք համարէին եօթն դստերք Ատլասայ կամ Ատլանդեայ սփռեցեալք 'ի դէց և փոխեալք յաստեղս։ Իսկ գնոսեան պսակն յաջորդ տողիդ, է պսակն Արիադնեան՝ զոր Աստղիկ պարգեւեալ էր Արիադնեայ դստեր Մինովսայ արքայի Կրետայ, յորում էր և Գնոսոս քաղաք։ Ձայն պսակ, կամ ըստ այլոց զինքն իսկ Արիադնէ հանդերձ պըսակաւն, ընդ աստեղս դասեցոյց Սպանդարամետ։ Արդ առ 'ի ցանել ցորեան և աշորայ, որ է ձաւար, համբեր, ասէ, մինչեւ Բոյլքն մտցեն յառաւօտին պահու 'ի ծագել արեգականն, և Արիադնեան պսակն անջատեալ յարեգակնային ճառագայթից՝ ծագեսցէ մեզ ընդ առաւօտս։ Եւ լինէր այս յայնժամ մօտ յելս հոկտեմբերի, իսկ այժմ. անագան եւ։

234. Պեղուսեան ասել զոսպն՝ առեալ է 'ի Պեղուսիան աւանէ Եգիպտոսի, ուր առատ է։ Ձայս արմտիս, ասէ, սկսեալ 'ի սուզանելոյ Եզողին կամ Արջապահին ընդ արեւս, որ է 'ի նոյեմբերի, կարես սերմանել մինչեւ 'ի խոր ձմերանի։

238. Երկոտասան արփիք են երկոտասան աստեղատունք։

244. Շաւիղդ այդ է կենդանագրեալ կամարն երկնից, զորով պար առնու՝ պատի կարգ աստեղատանցն՝ կենդանակերպքն դասաւորեալք 'ի հիւսիսոյ 'ի հարաւ առ 'ի շեղ։

Իսկ 'ի Սկիւթ և 'ի ռիփեան բարձունս աշխարհ կանգնի կուտակ,
Մինչ թաւալ 'ի հարաւ կողմ Լիբիական կայ խորասոյզ։
Զայս գագաթն 'ի վեր համակ վըսեմաբերձ նըկատեմք մեք,
Զայն 'դ ոտիւք մըթին դըժոխք ուանդընդային սանդարամետք։
Աստ վիշապ Օձ կամակոր 'ի մեծ գալարըս սողի շուրջ
Գետօրէն զեռեալ պարոյր ոլորտապտոյտ ընդ Արջ կըրկին,
Կըրկին Արջ զարհուրեալք յովկիանու թանալ հոսանս.
Անդ յաւէժ, զերդ աւանդեն, լռէ գիշեր խաւարարգել,
Եւ 'ի ստուեր թաթաւեալ խոր՝ մութ ըզմըթով մածեալ պատի,
Կամ թէ զոտն առեալ 'ի մէնջ՝ տիւ ծագէ Այգ առաւօտեալ.
Եւ մեզ այն ինչ Արուսեակ շընչէ թասուն երիվարօք,
Զերեկորին լուցանէ ջահս անդ ատրաշէկ Գիշերավար։
Գուշակել աստի ունիմք զօդս 'ի յերկնից տարակուսի,
Աստի՝ զաւուրս հընձոց և սերմանացըն ժամանակ.
Եթէ երբ 'ի դէպ թեւօք զյողդողդ անդունդըս պատառել,
Եւ երբ ըզպընդակազմ իջուցանել նաւատորմիղ,
Կամ 'ի ժամ բարեպատեհ 'ի թաւ մայրիս հարկանել սոճ.
Եւ ոչ զուր ինչ զաստեղաց հետազօտեմք զել և ըզմուտ
Եւ զտարին հանգէտ պէսպէս քառահոլով յեղանակօք։
Եթէ ցուրտ անձրեւ երբէք երկրագործին լինի խափան,
Յամ է 'ի շատ ինչ ուշով այնուհետեւ բերել պարապ,
Որ ապա ճեպ 'ի ճեպոյ 'ի ջերս իցեն շուլթափելի։

246. Սկիւթիա և ռիփեան լերինքն Սարմատիոյ կարկառեալք 'ի ծոցն սկիւթական՝ զհիւսիս նշանակեն, կողմ Լիբէական՝ զհարաւ։ Որպէս հիւսիսային ծագ կամ բեւեռն բարձր է մեզ, նոյնպէս հարաւայինն սուզեալ աներեւակ։ Օրինակք ինչ ունին ափփեան, բայց ընտիրքն ափղեան. և Խորենացին Ռիփեայս դնէ 'ի սարմատացւոց աշխարհին։

250. Աստ, զհիւսիսիւ՝ ընդ վիշապին են և արջք կրկին, մեծ և փոքր արջքն, որ ոչ երբէք մտանեն մեզ. և մտանելն ըստ քերթողաց բազում ուրեք 'ի ծով կամ յովկիան մերձել ասի. և սոքա երկոքին իբրու հալեալք 'ի ջուրսն և սոսկացեալք դառնան այսրէն։ Իսկ Հոմեր զմեծն արջոյն՝ զոր և Սայլն կոչեն ասէ, նմանօրինակս բարբառի Իլ. ԺԸ. 489. ասէ,

Որ միայնն է անհաղորդ լոգարանացն ովկիանու։

253. Անդ, 'ի հարաւ կոյս, երկար գիշեր է 'ի մերում ամարայնի, կամ առաւօտն 'ի մէնջ առ նոսա դարձ արարեալ՝ տիւ գործէ նոցա. և յորժամ արեգակն քառաձի կառօքն՝ ըստ քերթողաց առեղծանելոյ՝ գայ հասանէ առ մեզ, անդ առ նոսա երեկոյ լինի։ Զայդոսիկ յերկուանօք ասէ ըստ անստուգութեան ժամանակին, որով և զդժոխս և զսանդարամետս յանդունդս խորոց աներեւակ բեւեռին դընէին, որպէս տեսաք 'ի 249։

258. Աստի 'ի տարեւորական ընթացից արեգական ընդ կամար կենդանաբերին և 'ի փոփոխմանց ամսոց և յեղանակաց ունիմք հանել զժամանակ զանազան գործոց. և ոչ անօգուտ ինչ է աստեղացգ և ժամանակացգ խորանք։

263. Սոճիւդ իմա զամենայն փայտս անտառի, զորս 'ի ժամու պարտ է հատանել։

267. Որ թէ ոչ պարապով գործեսցին

Աշօղ թեքէ զուռթ և գուլ խոփոյն ատամըն կարծրակուռ,
Փորէ 'ի ծառոց կուրըս խորեալ իւր գոգաձեւս,
Կամ հօտի դրոշմ հարկանէ կամ 'ի մըթեր թիւ և համար։
Մըրեն այլք ցից և խեչակ և զերկմատնին ձեղեալ եղան,
Կամ զամերեան հանդերձեն ձապուկ որթոյն ողորակապս։
Մ'որենի բարունակօք արդ դիւրաթեք հիւսցին սակառք,
Նարդ եղի յաղանձ 'ի մուրկ տուք, արդ 'ի քար խորտակեցէք։
Նա'ւանիկ և 'ի տօնուտ իսկ անդ աւուրըս պարապոյ
Զարարովք ինչ անկանել թոյլ տան օրէնք և իրաւունք.
Խըտրանք և ոչ մի՛ չըհրամայեն առուս հանել,
Ցանկապատ յօրինել զարտ, հաւերամին նիւթել դարան,
Հարկանել հուր 'ի փուշ, և զխաշնարօտըն բառաչոտ
Ընուլ քըշել լուանալ 'ի կենսաւէտ ջուր վըտակաց։
Մարիչ յամըր կըրմըղի յագգերս ըստէպ բառնայ թիկանց
Ձիթոյ կամ թէ մըրգոյ դուզնաքէի բեռն ինչ ըստուար,
Եւ յանդըրէն դարձ միւսանգամ՝ առեալ բերէ 'ի քաղաքէն
Կոփածոյ քար զերկանի կամ քըծուար սեաւ կըպրաձիւթոյ։
Ինք լուսինն եդ զայլս այլով կարգաւ զաւուրս յաջող 'ի գործ.

յանձրեւային ժամանակս խափանարարս դաշտական վաստակոց, հարկ լինի ապա շուլթափել և կատարել։ Եւ թէ զինչ են գործելիքն 'ի պարապութեան, աստ կարճառօտիւք։

270. Զթիւն և զհամար գրով հաստատէ 'ի շեղջս արդեանցն կամ 'ի քոռս կամ 'ի քուրձս, զոր 'ի ներքս առեալ և մթերեալն է։

272. Ամերեան ողորակապք են ողոքք ուռոյ 'ի կապել զորթս, յԱմերիա քաղաքէ Ումբրիոյ առացեալ, որ ոչ հեռի կայր 'ի Տիբեր գետոյ, և ուռիք առ նովաւ առատք։

274. Հինքն զեղի խանձեալ և մուրկ գործեալ ուտէին. իսկ ապա և զզարգացեալ աւուրց մարդկութեան իմանի, յորում փոքր մի խարակէին զցորեան առ 'ի դիւրաւ աղալ յերկանի կամ լեսուլ յանկանի, զոր քերթողաբար քարիւ խորտակել ասէ։

277. Առուս հանել իմա մաքրել, բանալ զաղտեղեալ և զխցեալ առուամէջս, կամ զժահահոտն ցամաքել, որում ներէին օրէնք. այլ ոչ և նոր առուս հատանել կամ առոգանել զանդս համարձակէին կրօնք 'ի տօնական աւուրս։ Զի 'ի վնասուց միայն պահել օրէն էր. վասն որոյ և զհաւուցն երամ զկնի յիշատակեալ իմանալի է զյափշտակիչ և զաւարառու թռչնոց, և զխաշինս լուանալ 'ի գետ 'ի գեղ և 'ի դարման քոսոյ նոցա, և ոչ 'ի սպիտակացուցանել զգեղմն։ Ցայս միտս խորհրդով կոչէ զջուրսն կենսաւէտս կամ փրկաւէտս։

285. Աւանդէ զլուսնախօսիրս. զի սնապաշտութիւն հնոց՝ ընտրութիւն առնէր աւուրց ամսոյ ըստ ազգի ազգի խորանաց հարցն, զոմն ախտարաց ասելով և զոմն ապախտարաց։ Զհինգերորդն զգուշալի ասէ, վասն զի 'ի նմա ծնան անդնդեհպետն դժոխոց կամ սանդարապետն, երեքին ժանտքն կատաղիք՝ սկզբնամարք ըլկանաց և դահիճք պաշտօնեայք դիցն վրիժուց, մթածին դստերք Գիշերոյ և Աքերոն գետոյն դժոխոց, օձախռիւք հերովք և ջահ 'ի ձեռին. 'ի նմա և խոլ սկայքն անուանիք՝ որդիք Երկրի և Տիտանայ, յորոց զոմանս միայն զգլխաւորսն յանուանէ յիշատակէ։ Որոց 'ի պատերազմ գումարեալ ընդ դիս 'ի Փլեգրա դաշտի Թեսալիոյ՝ ձգնեցան առնուլ կառուցանել 'ի վերայ միմեանց զլերինսն Պելիոն, Ոսսա, Ոլիմպոս, զի ատտիճանեալ ելցեն յերկինս

Քա՛ւ քեզ հինգն, 'ի նմա սերեալ խոժոռադէմ Սանդարապետ
Եւ մոլիք դըժոխածնեայք, անդ տոսկալի երկամբք երկիր
ԸզԿիոս ծընաւ՝ զՅապետ և ըզՏիւփոն վայրենամիտ
Եւ զեղբարսըն կաճառեալս 'ի դըղորդել քանդել զԵրկին,
Որ եդին երիցըս գուն կանգնել զՈսսա 'ի Պելիոն
Եւ յՈսսա զանտառախիտըն թաւալել զՈղիմպոս.
Երիցս անդ Հայր շանթառաք զկարկառակոյտ հոսեաց լերինս ։
Եօթներորդն ըզկնի տասին բարենըշան 'ի տունկ այգեաց,
Սամետիւք ցուլս ընդունել և հինելոյ աղբին յառեջ.
Իննն 'ի դէպ գոլ փախըստեան, և դըժպըհի՝ գողօնէից ։
Նա շատ ինչ զով գիշերի պատեհագոյն 'ի ճահ դիմէ,
Կամ մինչ այգ նոր արևով ցօղէ յերկիր լուսացընցուղ ։
Գիշերի թեթև ծըղօտք՝ գիշերի չոր մարգագետինք
Լաւ ևս հընձին, գիշերաց ոչ պակասէ շաղ զովարար ։
Եւ ուրեմն 'ի ձմերային անագանի հրատին ճաճանչ
Տըքնեալ սուր երկաթով չերտէ 'ի շեշտ ըզջահանին.
Ընդ ամուսնոյն ըսփոփեալ զերկայն վաստակն յերգոց մրրմունջ
Նուրբ 'ի բէճ 'ի սրաձայն սահեալ յոստայն երթևեկէ,
Կամ զանոյշ խաղմըղջ բոցով յեռանդն ածէ զծորանս
Եւ զփըրփուրըն տերևովք առնու յալեաց կայտառուն սանին ։
Իսկ 'ի հունձ գայ կարմրորակ ցորեան 'ի տապ տօթաժամու
Եւ կամնէ զմըրկեալ արդիւնս 'ի միջօրէ տօթ կալոյս.
Մերկ վարեա, սերմանեա մերկ, երկրագործին ծոյլ է ձըմեռն ։

և որկցեն զգիս յաթոռոց. բայց հայրն աստուածոց և մարդկան Արամազդ փայլակնահար տապալեաց զգործ նոցա և ըզնոյս ։ Հոմերոս զՊելիոն կոչէ εἰνοσίφυλλος զոր մերս Դաւիթ Անյաղթ 'ի գիրս Սահմանաց տերևաշարժ յեղու ըստ ձայնին. բայց Վիրգիլիոս ըստ մասցն անտառախիտ կամ տերևախիտ թարգմանէ զնոյն ձայնն հելլենական զՈլիմպոսէ ասացեալ ։

293. Տարակուսեն քննիչք՝ արդեօք եօթնուտասներորդ օր իմանալի իցէ, եթէ եօթներորդն և առաւել քան զայն տասներորդն ։ Հեսիոդոս ուրոյն ուրոյն յիշատակէ զեօթներորդն և զտասներորդն ընդախտաւրս ։ Նոյնպէս իններորդն զկնի յիշատակեալ՝ երկբայելի է թէ պարզաբար իններորդ իմանայցի, եթէ իններորդ զկնի տասին կամ իննուտասներորդ ։ Որպէս զի մարդ ինչ և իցէ, նախրահաւատ զառանցանք են, զոր և ոչ Վիրգիլիոս 'ի հաւանութենէ մտաց առնէ զայդոսիկ, այլ 'ի զարդ տաղիցն, յոր միտս ոչ խղճեն քերթողք զիջանել ըստ կարծեաց ռամկին ։

295. փախստեան ծառայից գնացականաց հատուածելոց 'ի տերանց կամ ամենայն գաղթականութեան և ուղևորութեան գիպաւոր. իսկ գողութեան դըժպատեհ ։

297. Նոր արև ասի ըստ քերթողաց արեգակն իւրաքանչիւր առաւօտեան, յորում ժամու և ցօղ մանրացող արկանէ երկինք և շաղն փայլեալ 'ի գալարիս գայ յերևան ։

301. Շերտս շերտս հատանէ այրն ըզփայտ պատրաստեալ 'ի ջահ գիշերոյ. իսկ կինն կտաւ գործէ կամ եփէ գինի առ 'ի լինել ռուպ կամ մաթ ։

308. Կանխաւ յաշնայնի, մինչդեռ օ_

'Ի ձմերուն՝ մըշակք սովոր 'ի համբարոց են վայելել
Պարապեալ զըւարթ կոչնոց այր ընդ ընկեր խրախճանակից,
Յորդորէ հեշտ և կամակ ձըմեռն ըզհոգսըն փարատեալ.
Իբր ակաղձուն լաստափայտք երբ ըմբըռնեն զնաւահանգիստ
Ուրընդալից պըճնէ նաւաստ խելս ըզնաւին պըսակազարդ։
Այլ յայնժամ և կըլթոց կաղնի բալուտ դէպ ժամանակ,
Եւ ձիթոյ և եզըրեղոյ պըտուղ ընդ մուրտ արիւնաքուխ.
Կըռունկանց անդ որոգայթ և եղջերուաց դամըս դընել,
Եւ նապաստակս ակընջեղ վանել, հարուլ անդ այծեմունս
Ճախր 'ի ձոպան տըւեալ 'ի թոպ բալէարեան պարսատկաց,
Մինչդեռ ձիւն թանձր է դարեալ, մինչ գետք հատորս վարեն սառինս։

Զի՞նչ ապա զաշնային ոգեմ մըրրիկս և զարփից պար,
Եւ թէ զի՞ փոյթ որերոյն 'ի մեղմանալ ամարայնոյ
Յոր կարճատեալ կամ մինչ գարունն անձրևայոյզ անկանի.
Երբ 'ի դաշտ հունձ հասկագեղ վէտ վէտ ձօձի քըստմընադէզ,
Եւ ցորեան 'ի ծիլ դալար կաթնապարար մինչ ուռճանայ։
Յանդաստան խարտիշագեղ մինչ գերանդի տանէր մըշակ
Նարդ 'ի բարդ որայ զգարին 'ի դիւրաբեկ կապեալ ծըղօտ,
Տեսի ստէպ զայսոց գուպար 'ի մարտամբուխ գոռ ոստուցեալ,
Ընջըւլին արմատաքի զխիւրաբեղուն օրանն յապշոպ
Վեր և տար ցընդեալ ընդ օդ վըրդովելով հիմն 'ի յարև.
Որպէս 'ի թուխ փոթորիկ մըրըրկախառն յափըշտակէր
Տանէր բուքն ըզչյարդ թեթև և զունգ թըռչուն սըրավար։
Եւ սաստիկ ջուրց 'ի յերկնուստ բազում անգամ դիմեն սահանք,
Եւ ամպք գունդագունդ գումարտակեալք 'ի յանդընդոց

դոյն ամրքախաանութիւն ներէ գոգցես մերկանդամ գործել մշակին 'ի դաշտի. իսկ ձմեռն 'ի վերայ հասեալ՝ անգործ կացուցանէ զնա։

312. Նաւորդք զբարեյաջող դարձ իւրեանց 'ի հայրենիս յայտնի առնէին պսակելով զխելս նաւին, ուր և որբարանն իսկ էր, և կառուցեալ կային դիքն խնամակալք և պաշտպանք նաւին։

318. Բնակիչք բալէարեան կղզեաց՝ որ առ երի Սպանիոյ, անուանի պարսաւորք էին։ Եւ հինք ձգէին պարսիւ ոչ քարինս ևեթ, այլ և գնդակ կապարեայ, որ ըստ վկայելոյ Ովիդիոսի՝ 'ի սրաթաւիչ գնացիցն ջեռեալ հրանայր, իբրու յայժմու հրացանիցս արձակեալ. և այնպէս կարօղ էր զայծեմունս անգամ առ 'ի մահ վիրաւորել։ Նա և 'ի մարտս պատերազմաց նմանապէս վարելոյ կայ այգմ օրինակ և յԷնէականին Վիրգիլեայ, Է, 687. Թ, 588։

320. Զի զպատճառս մըրկաց յելս և 'ի մուտս արփիցն համէին. և մրրիկք յաճախեն 'ի սկիզբն աշնայնոյ և 'ի կատարած կոյս գարնայնոյ։

333. 'Ի յանդնդոց խմա 'ի ծովէ, մանաւանդ 'ի շնչել հարաւոյ, որ ըստ իտալա-

Թաւալեն՛ ահեղ մրրրիկ մառախլապատ հեղեղաստատ.
Տապալին երկինք բարձունք, և յանձրևաց ուխ յորդահոս
Ողողեալ քերեն գերփեն զերկս արջառոց և զանդ կայտառ.
Լեղուն գուբք, և խորաձոր գայրանման գետք դղրդչելով,
Ծովածուփ յորձանք եռան խուռն 'ի խոխոջ կայտռել ալեաց։
Հայր ինքնին 'ի մռայլ գիշեր անդ ամպրոպաց աջով հրաշէկ
Թափէ շանթ որոտընդոստ, դողայ թընդմամբ երկիր անդորր,
Գազանք խուճապեցան, և զսիրտ ազանց մահկանացուս
Կոր 'ի գլուխ արհաւիրք ընդ տիեզերս արկին տապաստ.
Բոցաթռիչ հարկանէ նա նետիւ զԱթովս կամ զՌոդոպէ
Կամ զերկնապիշ Շանթայինս, յորդեն հարաւք թանձրատարափք,
Մերթ մայրիք մերթ ծովափունք 'ի դիւաշունչ հողմ մրրընչեն։
Յայսմանէ զանգիտեալ՝ դէտ կաց յամիսս յարփիս երկնի,
Յոր վայր՝ ցըրտասառոյց աստղըն կռոնեան մըտեալ դօղէ,
Կիլլենեան բոց փայլածու յոր մոլորի կամարս երկնից։
Գլից պաշտօն տար մանաւանդ և տարևոր համն պատարագս
Մեհին Դեմետրեայ 'ի զուարթափթիթ ձօն դալարիս
Յեղանել հուսկ ձըմերան և գարնայնոյն 'ի ջեր խայտալ.
Յայնժամ պարարտ որոջք, և անդ յայնժամ գինիք համեղ,

կան կողմանցն 'ի ծովէ գայ . ըստ որում և զկնի ասէ յորդէն հարաւք : Բայց Լատին բառն ունի եւս նշանակել 'ի բուքանց, զոր անն խմանայ 'ի հիւսիսոյ՝ որ բարձր բևեռն է ըստ մեզ (246), և անն խմանայ 'ի վերին օդոց : Եւ հարաւք 'ի բանաստեղծական լեզուի ոչ միշտ զհողմ հարաւոյ նշանակէ, այլ զպայմանին փոխանակ անյայտի առեալ՝ զօր և է հողմս և զփչմունս օդոց . յոր միտս համարձակեցաք և մեք բազմաբար առել հարաւք :

341 . Խուճապեցան, և զկնի արկին փախուստ, կատարեալ ժամանակք բայից են փոխանակ ներկայի խուճապին, արկանեն . քերթողացն սովորութիւն է վասն պէսպէս փոփոխութեան դարձուածոյ բանին և կենդանի նկարագրութեան :

343 . Աթոս՝ լեառն է Մակեդոնիոյ կարկառեալ 'ի ծով եգեան , Ռոդոպէ կամ Հռոդոպէ՝ Թրակիոյ լեառն . իսկ Շանթայինք և հելլէն ձայնիւ բարձր Կերաւնեանք կամ կերաւնեան բարձունք՝ են երկնաբերձ լերինք Եպիրոսի, յաճախ ամպահար եղեալք առ անհնարին բարձրութեանն : Բայց Խորենացին Շանթայինն լե-
րինս դնէ և 'ի սարմատացւոց աշխարհին :

347 . Կարծէին հինքն և 'ի մոլորական աստեղացն գուշակութիւնս հանել անձրևաց և այլոց փոփոխմանց օդոց, ըստ որում յայս նիշ կամ յայն տեղիս երկնից գտանիցին . յորոց զերկուս ևեթ յիշատակէ վիրգիլեան չափաւորութիւնն, զԿռոնոս կամ զՋրուան, որ է Երևակ, ցրտասառոյց աստղեալ վասն զառամ ծերութեանն ըստ առասպելին, իսկ ըստ ճշմարտութեան՝ վասն կարի բացարձակ հեռաւորութեանն յարեգականէ . և զփայլածու, զոր կիլլենեան բոց կոչէ, զի ըստ առասպելին աստղն այն էր Հերմէս, Տէր կամ Տիւր դիք, դից դպիր և թարգման կամ պատգամաւոր և հրեշտակ կարծեցեալ, ծնեալ 'ի Կիլլենէ լերին Արկադիոյ :

351 . Կրկին պաշտօն ցուցանէ Դեմետրեայ . մի յելս ձմերայնոյ և 'ի մուտս գարնայնոյ, և միւս յառաջ քան զհունձս, զոր փոքր մի զկնի դնէ 'ի 359 տողին : Եւ այն էին խրախ օրհնութիւնք անդաստանաց, զորովք 'ի թափօր ելեալ հանդիսիւ շրջեցուցանէին զդաշտն :

Յայնժամ քուն քաղցր և անոյշ և թաւ 'ի բլուրըս հովանիք ։
Նըրբուն շիւին մանկերամ ըզԴեմետրէ պաշտեսցեն քեզ,
Որում դու խորիսխ 'ի կաղնի և 'ի փափուկ պարգեա գինւոջ,
Եւ երիցս ըզնոր բուսովք երանաւէտ պատեսցի զոհ ·
Պարաւոր գունդ ամոխախ դըրդեալ ըզհետ յերգ ցընծութեան,
Եւ 'ի յարկս ըզԴեմետրէ ձայն կարդասցեն մեծաբարբառ ·
Եւ հուպ ոք հասուն հասկաց մանգաղ 'ի յօձ մատուսցէ մի,
Մինչ կաղնի զիրանաւք բոլորելով հիւս՝ Դեմետրեայ
Զև դոփեալ թինդ անյարդար և ըզլեզուն լուծեալ 'ի շախնչ ։
Եւ զայդ 'ի ստուգագէտ նըշանակօք առնուլ 'ի միտ,
Ըզխորշակ՝ ըզթօնըմնկէցս և զդառնահոտ օդոց փըչմունս,
Ինքըն Հայր ետ ամսաւոր լուսնին պատուէր զինչ ազդիցէ,
Յիմ նըշմար լռեն հարաւք, զի՞ շինականք տեսեալ յաձախ
Ըզ դադարս հանդըրուանին զհօտ և զանդեայ մօտ արածեն ։
'Ի խըլըրտել մըրըրկաց՝ ծովու զբօսանք հարեալ վըրդով
Ուռնուլ առնուն անդէն 'ի մէտ 'ի մէտ սահուն կոհակս,
Եւ շեշտեալ ձարձատիւն ընդ երկնաձեմ ձայթէ լերինս,
Կամ ծովեզերք 'ի ծըփան խռովեալ յուզին ահեղագոչ,
Եւ մըռմըռեալ խուլ մըռընչիւն թանձրանայ թաւ անտառաց ։
Ընդ ուրեմն անսաստ ալիք 'ի կոր նաւաց չառնուն նահանջ,
Յորժամ 'ի խոր անդընդոց թեւս համբարձեալ սուր հողամաղք
Դառն թափին բերեն կարկաչաձայն կանչիւն յափունս,
Եւ ծովասէր մինչ որորք խայտան պարեն 'ի ցամաքի,
Եւ ձայ զիւր եղտիւրսն ընդել լըքանէ 'նդ ամպս արփեգընաց ։

355. Սովոր էին նուիրել չինական գիւց կաղնի, մեղր և գինի, և զոհ մի 'ի պատրուաձակաց ։

358. Մեծաձայն կարդասցեն զԴեմետրէ 'ի յարկս տանուտեանն, օրհնել զտունն նորա և զարդիւնս երկրին ։ Թող զի և ցորեանն ինքնին 'ի գլխովին Դեմետրէ անուանի. որպէս թէ զառատութիւն ցորենոյ կոչել 'ի տուն անդր ։

359. Եւ մի ոք մանգաղ 'ի հունձս արկանիցէ՝ մինչ չև 'ի պատիւ Դեմետրեայ պար առեալ գեղջկական կայթիւք, պսակ ունելով կաղնի 'ի գլուխ՝ 'ի յիշատակ վաղուեան կերակրանաց մարդկան, զկաղնոյ ասեմ, յորմէ շնորհիւ Դեմետրեայ փոխեցան 'ի ձաշակաւորութիւն ցորենոյ և հացի ։

364. Կրկին օրինակս գուշակութեան օդոց ցուցանէ ։ Մի՝ աստեղաբաշխական, յամսահոլով լուսնոյն՝ յորում աստուած ետ զինչ ազդիցէ, և յիմ նշմար՝ յորմէ այլոյ նշանէ լինիցին փոփոխմունք ։ Եւ միւս՝ 'ի փորձոյ իրաց և 'ի հմտութենէ մարդկան, զոր նկատեալ շինականաց՝ ըստ այնմ և գուշակութիւնս առնեն ։ Սկսանի նախ 'ի գուշակութեանց փորձոյ և հմտութեան մինչև 'ի 436. ապա այնուհետև զկնի բերէ զլուսնին և զարեգական ։

367. Աստի մինչև 'ի 381 զնշանակս հողմոց և փոթորկաց պատմէ. ապա անտի յառաջ՝ զանձրևաց մինչև 'ի 406 ։

Տեսցես զամու զամու 'ի մօտալուտ փոթորկի բօթ
Եւ թռուիչ աստեղս յերկնից թափեալ 'ի սող սաղապաճեմ
Եւ 'ի մըթան գիշերին բոց ծիր 'ի հիգ շողեալ ըզհետ,
Փըրթըռուն ըստէպ թեթև յարդ և սաղարթըս վայրահոս,
Կամ 'ի ջուրց մըկանունս փետուրս 'ի լիւղ խաղալ ծածան։
Իսկ մինչ այն ինչ 'ի մարզէ ժանտ հիւսիսոյ զեռան շանթիք,
Եւ յորժամ արևելից ուարևմըտեանն որոտայ տուն,
'Ի բուն բոլոր արտորայք լուղին 'ի փոսըս հորալիր,
Եւ նաւազն անդընդահերձ ամփոփէ զիւր թուրմ առագաստ։
Ոչ երբէք յանըզգաստից վըտանգաբեր եհաս տարափ.
'Ի յառնելն՝ 'ի հովտազոյն փախեան 'ի հորս յիւր երեսացն
Օդային խորդապարք, կամ թէ դէտակն յերկինս երինջ
Լայնաքիթ փեռեկ ռընգամք սիք 'ի վերուստ ծըծեաց 'ի շունչ.
Կամ ծիծեռըն նըրբենի առ լըճափամբ քերեալ թևեաց,
Եւ գոյտեանն 'ի ճախին մըրմընջեցին ըզհին կեղերջ.
Յաճախ ևս և մըրջիւն յարկածածուկ սըրսկապանէն
Բարձ գըթովք տարաւ ըզձուս հարկանելով ըզնուրբ կածան.
Ըմբեցաւ կարակնաձև երկնից աղեղըն լայնալիճ,
Եւ հոյլ առ հոյլ տարմատարմ 'ի գիշամուխ ճաշոյն հրաժեշտ
Կերկերեալ ագռաւուց թուխ թևակուռ հընչեաց բանակ։

378. Ոչ եթէ ճշմարտիւ աստեղք անկանիցին, այլ ըստ կարծեաց և խօսից ռամկին, որ զգիշերային երևոյթն զայն զդժուարաթարգմանելին բնագիտաց զաստս՝ կոչեն սահեալ կամ թափեալ աստղ, թռիչ աստղ։ Եւ զաս ևս նշան մըրկի ասէ։

386. Այնչափ յայտնի և հաւաստի են նշանք անձրևաց, զի ոչ երբէք յանկարծահաս և անակնկալ եկեալ վնասեն։ Եւ նշանք՝ բաց յասացելոց փայլատականց և որոտմանց հիւսիսոյ, արևելից և արևմտից, են և զորս յառաջիկայդ թուէ. այն զի 'ի յառնել նոցա՝ խորդք փախուցեալ պատըսպարին 'ի անկախիտ հովիտս, և այլն։ Որոյ թէպէտ 'ի լատինն երկդիմի է իմաստ, և յոմանց իմանի փախչել կռնկանց 'ի ձորոց, բայց Արիստոտէլի և Թէոփրաստեայ բանք առաւել հաւանեցուցանեն յոր եդաքս. զի ասեն, յոդապարել խորդոց՝ իմացեալ զմօտալուտ անձրևածս, փախուցեալ 'ի վայր իջանեն. և թէ անդրէն ըզդարձցին 'ի թռչանացն, զջերոյ նշանակէ. զի թէ ոչ նախ տեսանիցեն զօդոյն յստակութիւն, ոչ սլանան։

390. Նըրբենի իմա նրբաձայն, սրաձայն, այլ և ըստ ձևոյն նրբին։

391. Թուի ակնարկել յառասպելն, զի իբրև Լետով աստուածուհի բարձեալ զմանկունսն զԱրտեմիս և զԱպողոն գնայր 'ի լիճ ուրեք ըմպել ջուր, հայհոյեցին զնա գեղջուկք Լիւկիոյ, և աստուածասաստ պատուհասիւ փոխեցան 'ի գորտս։ Բայց ինքնին իսկ առանց առասպելիդ 'ի բնէ հին և միօրինակ է գորտոցն աղաղակ։

394. Ռամկաց կարծիք էին և այս, թէ ծիածանն երկոքումբք ծայրիւքն ծծեալ խմիցէ զջուրս 'ի ժամանակս անձրևաց։ Բազում են առ քերթողս բանք որ 'ի սոյն միտս հային։ Առ Պղաւտեայ լատին կատակերգակի տեսեալ ուրուք զպառաւ մի կարկամեալ զի ըմպէ, ասէ.

Աւադիկ աղեղն ըմպէ, կարծեմ այսօր անձրև գայ։

Ընդ ծովային հաւուց երամ և որ ընդ մարգս ասիածին
Զարմազանք՝ շուրջ կըրկըռեն քաղցր ՚ի ճահիճըս Կայիստրի,
Ի գմփմեամբ խուռն յեւեւել ցանել զուսովք ցօղ յորդառատ,
Մերթ ըզգլուխ մատնել յողող՝ մերթ ընդ ալիս վարգել ՚ի սոյր,
Այլ ՚ի կիրթ լոգարանացըն վայրապար տեսցես կայտռել.
Ընդ սակուրն չար՝ ձայն անձրեւի կոկորդալիր տայ հագագաւ,
Միհաւոր խնքն յինքեան ՚ի ծարաւուտ ճեմեալ աւազ։
Նա և ոչ աղջկունք տըքնեալք ՚ի նիւթ· սակին ցայգավաստակ
Տըգիտացան ըզտարափ՝ տեսեալ ՚ի վառ ճըրագ ըզձէթ
Զի շաչէ կայծակնացայտ և գընդի փուտ քոս ՚ի պատրոյգ։
Այլ ընդհատ ՚ի մըրըրկէ զարև ու զջեր ջինջ պարզական
Նըշմարել կարասցես և հըմայիւք գիտել անշուշտ.
Զի յայնժամ ոչ աստեղաց անշամանդաղ բըլշակնին բիբք,
Այլ լուսին ճառագայթից յառնէ եղբօրն աւանդառու,
Մանրակիզն ասրածըլէնք յօդ վէր ՚ի վայր թափառին ոչ,
Զըկընկուլք Թետեայ սիրունք յարև ափանց մարմանդաշող
Զհողմնեն սաւառնաթեւս, և ոչ զաղիր մախիզ խոզեանն

397 · Զամենայն ջրային հաւուց խմա, և առանձինն զկարապից, որ և փոր և ձկնաքաղ, յաճախեալք յոյժ յափունս Կայիստր կամ Կայիստրոս գետոյ Փռիւգիոյ և Լիւդիոյ։ Իսկ ասիածին ասատանօր առեալ է յԱսիա անուանեալ վայրէն Լիւդիոյ առ Կայիստրիւ՝ ոչինչ հեռի ՚ի Տմոլոս լեռնէ, յորում և էր մարգ կամ եղափիւր նեղ և երկայն, այլ և աւան մի համանուն, և ճահիճ ՚ի նմին գետոյ զեղեալ։

404 · Եւ աղջկունք որ հսկեն ՚ի ըստուլ զսակ ասուն մանելոյ՝ խմանան զխոնաւայոյզս, տեսեալ զի կայծակունք հատանին ՚ի ճրագէն, և գնտանայ քոս սանգանման ՚ի բուծինն։ Զայս յիշատակէ և մերս Եզնիկ (էջ 187) ՚ի նշանակս անձրեւի։

407 · Աստի ց436 զգուշակութիւնս ջերոյ և պարզի ՚ի փորձոյ ուսուցանէ։

410 · Այսինքն այնպէս պայծառ ջահաւորէ, զի ոչ ՚ի փոխ առեալ թուի զլոյս իւր յեղբօրէն յարեգականէ, այլ ինքնալոյս գոլ։ Ոմանց թուեցաւ ասել, աստեղք այնպիսի լուսանշոյլ ծագեն, զի և ոչ լուսինն ճառագայթիւք եղբօրն առնանել ինչ կարէ փայլմանն նոցա։ Ըպաքէն բառք բնագրին և ՚ի սոյն միտս հարկանեն, սակայն ոչ կիրթ թուի հմտագունից։

411 · Մանր գեղմանս ասէ խմանան ոմանք մանրիկ ամպս ցիր և ցան թափառեալ ընդ երեսս երկնից, որ աղա գումարին յամպրոպս։ Բայց մարթի հակառակն լինել վերագոյն ասացելոցն ՚ի գուշակս մրրկաց, տող 380, 381։

412 · Զկնկուլք որ և խոթք՝ հաւք ծովայինք, յոյն ձայնիւ ալկիոն ասացեալք, սիրելիք ասին Թետեայ (34), զի ՚ի նստել նոցա ՚ի թուխս՝ խորին խաղաղութեամբ հանդարտեն ծովք, որպէս թէ գթացեալ ՚ի ծնունդս նոցա. յորմէ և յառակս էր ասել զաւուրց անհողմութեան՝ Ալկիոնեան աւուրք, կամ որպէս թարգմանիչն Վեցօրէից սրբոյն Բարսղի ասէ՝ Ալկիոնի տեսակ աւուրք։ Իսկ առասպելըն զրուցէ, թէ Ալկիոնէ կին էր Կէիքսայ արքայի Տրաքինիոյ, զորոյ զնաւաբեկեալ մարմինն տեսեալ ՚ի ծովեզերին՝ առ սիրոյն ընկէց և զինքն ՚ի ծով անդր առ գիրկն առնն իւրոյ, և երկոքեան փոխեցան ՚ի հաւս՝ յանուանէ կնոջն ալկիոն ասացեալք։ Եւ ՚ի փոխարէնս այնքանոյ սիրոյն՝ յաւուրս ծննդոց նոցա խաղաղանան ծովք։ Իսկ մինչ թեւատարած կան թռչունքն ՚ի ծովափունս, զօդոյն ամբոխումն գուշակեն. իսկ թէ ոչ, զջերոյ յայտ առնեն։

Ի ժըպիրհ օցտեալ կընձիթ ցըրուել խըրձունս ած ըզմըտաւ ։
Գա՛ւադիկ դիմեալ 'ի ստոր միգատարր ամպք նըստին 'ի դաշտ,
Ոչ կասկամ բարձր 'ի դիտից ընդ երեկ կոյս ակնարկելով
Բուքս երեկորինս ողբերգարկեալ եղանակէ ։
Երեւեալ անօսր օդովք շողայ բազէ բարձրաթըռիչ
Եւ լուծանէ անդ արտուտ ընդ ծիրանի ծամին վըրէժ ․
Յոր կոյս սա հերձու թեւովք ըզսիք թեթեւ տըրւեալ խուսափ,
Ընդդըր ընդ հետ գոռ թըռչնամին յահեղ կանչիւն հարեալ խըրախոյս
Խոյանայ բազէն ընդ օդ, և յոր ընդ օդ պընդի բազէն
Նա հապճեպ տըրւեալ խուսափ հերձու թեւովք ըզսիք թեթեւ ։
Ընդ 'ի նեղ որկոր ագռաւք եռակ քառեակ վըճիտ բարբառ
Ի յեղյեղուկս արկանեն, և 'ի վըսեմ սենեակս ըստէպ
Ոչ գիտեմ թէ նորագիւտ խընդիւ յանձինըս զուարճացեալք
Խօշիւն հանեն սաղարթուց, քաղցր է նոցա թօնիցն 'ի դուլ
Ըզմանրիկ մանկըտեակն և զանուշակ բոյնըն այցել ։
Ոչ կարծեմ 'ի նոսա ես աստուածատուր մըտաց հանճար,
Կամ էիցըս խելամուտ գերաքաստիկ իմաստութիւն ․
Այլ յորժամ օդք և շարժումն հիւթ երկնընթաց փոխեն շաւիղ,

414․ Եւ այս ընդ բնածին ազդմունս կամ ընդարբոյս բարս խողաց է, զի յորժամ իմանան զօդոյն փոփոխմունս և զմըրկաց ելս՝ երթան քայքայեն և ցրուեն զխրձունս կապեալս մշակացն ։

416․ Կասկամ կամ հաւասպատիր թըռչունն՝ ազգ ինչ բուոյ, իբրև նստեալ 'ի գըտակս ծառոց և դէտ ակն կալեալ 'ի մուտս արեւու և յելս գիշերոյ երգէ տխրագին, գուշակ է փոփոխութեան օդոց․ ապա թէ չերգիցէ այնպէս, ջերմ աւուրք ոչ փոփոխին ։

418․ Ըստ առասպելին բազէ էր Նիսոս արքայ Մեգարացւոց, իսկ արտուտ՝ դուստր նորա Սկիւլլա, որոյ հատեալ զծիրանեփեան հրաշալի մազ գլխոյ հօր իւրոյ՝ յոր կախեալ կայր ամենայն բաղդ նորա, մատնեաց զնա 'ի ձեռս թշնամւոյ նորա Մինովայ իւրումն տարփածուի, և երկոքին փոխեցան 'ի հաւս ։ Վասն այսորիկ ասի հալածել բազէի զարտուտ առ 'ի խնդրել զվրէժ մահառիթ հերոյն իւրոյ ։ Ոմանք զՍամփսոնի և զԴալիլեայ վէպսն իմանան յառասպելիդ ։

424․ Ագռաւուց ազգ, որպէս տեսաք 'ի վերդ 396, 402, յորժամ կերկերեալ և կոկորդալիր ձայնիւ յերկար աղաղակեն, նշան անձրևի է․ իսկ յորժամ սուր ձայնիւ և յատակ բարբառով երիցս կամ չորիցս միայն, զջերոյ տան նշանակս ։

425․ Վսեմ սենեակք ագռաւուց են բարձրակատոյց բոյնք նոցա յոստս ծառոց ։

429․ Ես ոչ կարծեմ, ասէ, ըստ պիթագորէից, պղատոնականաց և ստոյիկեանց՝ թէ իցէ յանբան կենդանիսդ յաստուածուստ հանճար կամ իմաստութիւն գերաքաստիկ, այսինքն գերագոյն իմն գգօնութիւն 'ի բաղդէն բաշխեալ, կամ գերագոյն քան զբաղդն՝ մինչև կանխագէտ լինելոյ հանդերձելոց ճակատագրին․ զի և լաւին բառքն յերկոսին միտս հարկանեն ։

431․ Յորժամ երկինք և օդք փոփոխեն զոճն՝ յեղափոխին, և խոնաւ օդք մերթ հոծին խտանան, մերթ անօսրին և անդայտանան յազդեցութենէ Արամազդայ՝ այսինքն է 'ի զօրութենէ բնութեան, փոփոխումն լինի յոգիս և 'ի բնաւորութիւնս հաւուցդ, և այլ ընդ այլոյ շարժմունք զարթնուն 'ի նոսա՝ յուրախութիւն կամ 'ի տրտմութիւն, 'ի հալածել կամ 'ի փախուստ ։

Եւ տամուկ շընչմամբք ըղթոյլ սեղմէ, մաղէ զգլխով Արամազդ,
Շըրջին դիմակ դիմակս ոգիք, և այլ Թընդիւնք և մարմաջք
Նաժամայս ազգին 'ի սիրտ և այլ յամպոց մէգ հողմայոյզ.
Նաւատատ՝ հաւուցն 'ի դաշտ նըւագաւարն այն դայլայլիկք,
Եւ խայտալ անասնոց և ագռաւուց փողից կայտիռք:
Իսկ յարևըն բոցաթև և 'ի լուսնի կարգեալ ծագմանս
Թէ դիտես, ոչ ժամ վաղուի լըցի երբէք 'ի քէն զանխուլ,
Եւ ոչ յորոգայթ ըմբըռնիցիս պարզ գիշերոյ:
Մինչ լուսին ըզնորադարձ այն խնչ ճաճանչըն ժողովէ,
Թէ մըթարս 'ի միգապատ պարունակէ մահիկ եղջերսն,
Նախընթաց և մըշակաց շարժին շառաչք հեղեղատատ.
Իսկ կարմիր թէ կուսական սըփռէ զայտիւքըն վարդագեղ,
Փուքք յառնեն, միշտ 'ի հողմոյ շիկնի լուսինն ոսկենըշոյլ:
Այլ թէ յելըն չորրորդ, և այս անվրէպ միշտ նըշանակ,
Պայծառ յանխռով մահիկս և յանըստուեր ճեմի 'նդ երկին,
Այն օր 'ի գլուխ համօրէն և որ անդուստ անկցին 'ի կարգ
Մինչ յամսոյն բոլոր պըսակ լըցին անհողմ և անանձրև,
Եւ փըրծեալ նաւաւորուղակք ուխտս 'ի ծովափըն հատուսցեն
Գլաւկոսի և Պանոպէ և Ինովեան Մելիկերտեայ:
Եւ արեգն ընդ ելանել և 'ի ղուղել յալեացն 'ի ծոց
Տացէ նըշան, անպատիր պատին նըշանք զարեգակամբ
Երևեալք ընդ առաւօտս և 'ի ծագել աստեղաց:
Իբրև նա զնորանըշոյլ ծընունդն 'ի խայտ գունէ պիսակ,
Ամպայարկ և առ միջով բոլորակին ղօղեալ թաքուն,
Խէթ 'ի թօնից դիր 'ի միտ, զի տագնապէ բուռն 'ի ծովէն
Ծառոց և սերմանեաց և անասնոց վիրագ հարաւ:
Իսկ յորժամ ընդ աշալուշն 'ի թանձրախիտ ամպոց փապարս

437. Աստի յառաջ զաստեղաբաշխական նշանաց են բանքն, զորոց 'ի լուսնոյ և զորոց յարեգականէ:

440. Նորածին լուսին եթէ մթին իցէ, զանձրևաց յայտ առնէ. եթէ շառագոյն, զհողմոց: Եթէ քառօրեայ լուսինն վճիտ իցէ, ընդ ամիսն ողջոյն ջեր լինիցի:

449. Յաջողակ ծովելով նաւորդաց 'ի ցամաք ելեալ՝ կատարեսցեն զուխտս իւրեանց ծովային գիցն՝ Գլաւկոսի, Պանոպեայ յաւերժահարսին և Մելիկերտեայ որդւոյն Ինովայ:

454. Արեգակն 'ի ծագելն եթէ բծաւոր և պիսակոտ իցէ, ամպով մածեալ, յարտաքին կողմանց եւթ երևելի և 'ի միջին խորու գոգացեալ խոռոչաւոր, անձրևածս ցուցանէ՝ զոր վարէ բերէ հարաւ 'ի ծովէ: Տես 333, զի և սաստիկ նոյն լատին բառ է:

458. Եթէ 'ի ծագել արևու ինքն նսե-

Յայտին ցոլք վայրավատինք, կամ Նշաւօտն այլագունեալ
Ըզ Տիթոնի զքըրքմացան լըքեալ մահիճս յառնէ տըմոյն,
Ո՛հ, յայնժամ ուռ սաղարթուն ոչ փըրկեսցէ զփափկիկ ողկոյզս,
Մինչափ ընդոստ դղոյթ ընդ տամալ տայ կուռ կարկուտ գոռ բարկաձայթ։

Նա և զայն ևս առաւել օգուտ բերէ արկանել յուշ,
Մինչդեռ այն ինչ զասպարէզն երկնից հատեալ անցեալ գնասցէ,
Զի զդէմսն ըստէպ տեսանեմք յերփն երփն հարեալ երանգ պէսպէս։
Ըրթագոյնն ազդէ տարափ, բոցատեսիլն ըզհիւսիսակ.
Իսկ պիտակք թէ խայտափիտ անկանիցին 'ի բոց հրաշէկ,
Տեսցես զհանուրս անդ փոթորկեալ մըրըրկաշունչ անձրևով։
Ո՛ի որք ինձ 'ի գիշերի անդ մատուսցէ յորդոր խրախոյս
Ընդ անդունդըս նաւ խառնել և ոչ յերկրէ առնուլ ըզլար։
Իսկ 'ի գալ թէ տուընջենի և վերըստին ծածկել անդըէն
Փայլակէ գունտ լուսալիր, զուր զանգիտես 'ի տարափոյ.
Ըզմայլիս պարզ հիւսիսիւ ակնարկեսցես ձօձեալ 'ի ձեմ։
Նա հակիրճ, զինչ ածիցէ Գիշերավարն երեկորեայ,
Հողմ ուստի վարեսցէ զամպըս ջերին, զի՛ գէձ հարաւ
Կայ խորհի մըտայոյզ, լիցի գուշակ քեզ արևակն։
Յարեգակն ո՛ ժըպըրհեսցի խաբէութեան շըփել եպեր.
Նա սպառնալիս իսկ մօտալուտ լուռմուռ խազմից առնէ ստէպ ազդ,
Դաւաճիր նենգ և թաքուն մարտից այտուցին կուտակեալ։

Նոյն և Կայսերն 'ի մահու յողորմ 'ի գութ հարեալ Հռովմայ

մացեալ՝ զճառագայթսն շուրջանակի 'ի կողմանց 'ի դուրս արձակիցէ, կամ լոյս առաւօտուն տժգոյն իցէ, սպառնալիք կարկտի են։ Զառաւօտն դուստր ասէ առասպելն Տիտանայ և Երկրի, և կին Տիթոնի որդւոյ Լաւոմեդոնի արքայի Տրովադայ. և այնքան սիրեալ զայր իւր, մինչ զի բժշկական արմատոց զօրութեամբ զանմահական ծերութիւն նորա 'ի մանկութիւն փոփոխել, ամենևին իսկ անապական առնել ոչ կարացեալ։

463. Անցանէ 'ի նշանս որ երևին յարեգակնն 'ի մտանել նորա. զի 'ի պէսպէս գոյնս երևի և յայնժամ, և ըստ այնմ այլ և այլ ինչ նշանակէ։

471. Իսկ թէ յելանելն և 'ի մտանելն լուսապայծառ իցէ անիւ արեգական, ջերոյ և պարզոյ նշանք են՝ հանդերձ պարզող հիւսիսիւ։

475. Զինչ արդեօք չարիս մեքենայիցէ հարաւ՝ իբրև անձրևաւոր ոք։

478. Արեգակն և զմտանելոյ գաղտնի աղմուկս և զդաւաճանութիւնս և զուռնուլ և զաճել թաքուն պատերազմաց իսկ ազդ առնէ, ասէ, որով մուտս տայ բանին 'ի դրուագ աղետից անակն պատերազմաց իւրեանց։

480. ԶՅուլիոս Կեսար, որպէս յայտ է, սպանեալն 'ի տաճարին խորհրդոց, և ընդ ամին ողջոյն ընդ այն՝ աղօտանալ երևե-

Ըստուերածս արկեալ մըթին սքօղեաց ըզգլուխըն սըրբափայլ,
Եւ անկաւ յամպարիշտ դարս առ խաւարին յաւիտենից։
Թէպէտ անդ ընդ այն աւուրս երկիր ինքնին և ծով ծաւալ,
Վատաշուէր շունք և թռչունք իսկ չարաշուք՝ տային նըշան։
«Բանիցս անգամ զԱշտանէ 'ի Կիկլոպայց անդոց վըճակ
Հալոցացն 'ի պայթել տեսաք զեռեալ եռանդընապտոյտ,
Բոցեղէն շըռընչանունս և հրահոսան հոլովեալ վէմս։
Ընդ երկինս ողջոյն լըւաւ Գերմանիա շաչիւն զինուց,
Ահագնագըղորդ երերմամբ Ալպք շարժեալ սասանեցան,
Եւ ըստէպ ընդ անխուլ անտառս հատեալ արեկ բարբառ,
Եւ երեւոյթ կերպարանօք մեռելատիպ ուրուականք
Տեսեալ ընդ մութ գիշերայնոյ և, ո՛վ սոսկումն, երունք խօսեալ.
Կան գետք ոտնակառեալք և պատառին յատակք 'ի վեր,
Տըրտում փըղոսկր 'ի մեհեանս արտօսր հոսէ, քիրտըն պըղինձք։
Մոլեգին յորձանօք շըրջան առեալ պըտուտկելով
Ըզպուրակըն հեղեղեաց գետոց արքայն Երիդանոս,
Եւ ընդ դաշտս աղխաղխելով զումս և անդեայս եհար աւար։

ցաւ արեգական ըստ վկայելոյ և Պլինիոսի և Պլուտարքեայ։ Զայս առ աչօքն ածեալ սքօղել տայ զգլուխն, պաշտօն խմն առնելոյ Հոկտաւիանոսի Աւգոստեայ՝ որ որդեգրեալն էր և ժառանգ կարգեալ Յուլիոսի և պայազատեալ իսկ զինքնակալութիւն նորա. յոր միտս ամպարիշտ եւս կոչէ զդարն, որ յայնպիսի ոճիր սպանութեան յանդգնեցաւ։

484. Վատաշուէր շունք են չարագուշակքն, որպէս և չարաշուք թռչունքն։ Ապպիանոս աւանդէ զժամանակէն, թէ Շունք առհասարակ ռանային իբրև զգայլս. և Պլուտարքոս զթռչնոց, թէ հաւք անապատաւորք գային անկանէին 'ի հրապարակն։

485. Յայտ ուրեմն է թէ զայն ամ երբեմն երբեմն բարբառեալ և հուր շնչեալ է հրահոս լեառնն Եթնէ 'ի Սիկիլիա. և ո՛ գիտէ անտի էր միգամածր ճայրոտութիւն արեգականն։ Առ լերամբք էր գարբնոց Կիկլոպայց պաշտօնէից Հեփեստեայ 'ի գործել Արամազդայ շանթս ըստ առասպելին. զորս Դիոդորոս նախնի բնակիչս ասէ Սիկիլիոյ, իսկ առասպելն՝ ուստերս Պիսիդոնի և Ամփիտրիտեայ, և բոլորակնեայս՝ զոր կիկլոպսն նշանակէ 'ի յոյն. որպէս թէ մի ևեթ ակն բոլորշի 'ի ճակատուն ունել։ Հալոցք նոցա են խառնելիք հրահոս լերինն այնմիկ, յորմէ հոսէ գունտս կամ անիւս հրեղէնս, և զխանձողն՝ որ է նիւթ հալածոյ և շանթացեալ, և այլա կարծրացեալ 'ի քար վիմատառ։

488. Բաղում ուրեք պատմին զէնք և շաչիւնք ընդ երկինս երեւեալք և լսելի եղեալք. և աստանօր 'ի Գերմանիա, զոր և Ապպիանոս յիշատակէ։ Կարծի ոմանց թէ հիւսիսայգն առացեալ երեւոյթ պատճառս իցէ տուեալ այսպիսի կարծեաց ցնորից։ Զայս և որ զկնի գան անհաւատ պատմութիւնք՝ յիշատակեն և այլ մատենագիրք ժամանակակիցք կամ որ փոքր մի կրտսեր ժամանակաւ. որպէս և զբարբառելոյ անասնոց այսպէս գրէ Ապպիանոս. Արջառ ձայն մարդկեղէն արձակեաց, և մանուկ գեռածին խօսեցաւ։ Զնոյնս երգէ զժամանակէն և Տիբուլլոս քերթող հասակակից Վիրգիլեայ. Եղեր. Բ. Ե, 71–78։

489. Ալպք կամ Ալպեայք. Ալպեանք, են բարձրաբերձ լերինք Եւրոպայ, որ զհիւսիսիւ Իտալիոյ ձգեալ ընդ արեւելս և ընդ արեւմուտս։

494. Փղոսկր և պղինձ խմա պատկերս փղոսկրեայս և պղնձիս։

Նա և ոչ 'ի գուժաբեր յայնժամ ընդերըս փոփոխեաց
Ջիլք և նեարդք ըսպառնակամք դադարեցին 'ի հըմայից,
Կամ 'ի խոր ջըրհորոց արեան վըտակք յորդ ապաժոյժ,
Եւ 'ի շինից՝ բարձր ոռնաձայն գիշերընթաց գայլոց հրոսակ։
Ե՞րբ այս խուռն հատան անկան 'ի պարզ երկնից փայլատակունք,
Կամ այսչափ ահեղ վարսամք վառեալ 'ի բոց բորբոքեցան։
Վասն որոյ սպառազէն զոյգ՝ հռովմէական կըրկին ճակատ
Փիլիպպէք տեսին միմեանց անդըրէն ընդդէմ դառնալեալ 'ի ռազմ․
Ոչ անդէպ թուեցեալ վերնոց՝ եթէ կըրկին մերով արեամբ
Լայնալիր դաշտք Հեմոսի ու Էմաթիա պարարտասցին։
Նա'ւանիկ գայցէ և ժամ՝ զի առ վայրօքն արդիւնագործ
Զերկիրն 'ի կորափիտ առնելն արօր ակօսաբեկ
Ուռճահալ տէգ և նիզակս 'ի բիրտ խոժոռ գտցէ ժանգէն,
Կամ թէ թափուր սաղաւարտս ընդ անարի բախեալ տըրմուխ
Պակնուցու շիրմացն 'ի բիր ընդ ոսկրոտին սոսկալիթխառ։
Ո՛վ դիք հայրենաբռունք և Հռոմուլէ, և Վեստա մայր

498 · Ըստ լերդահմայութեան օրինաց՝ եթէ պակաս գտանէր ինչ յընդերաց զոհից կամ այլ ընդ այլոյ, չարի գուշակ էր․ և այսպիսի ինչ երևեալ ասանդէ Կիկերոն առ նոյն ինքն իսկ Յուլիոսիւ Կայսերբ։

502 · Ե՞րբ այսչափ փայլատակունք, ասէ, անկան 'ի պարզ և անամպ երկնից․ զի 'ի պարզի որոտք և փայլատակունք հրաշանշանք համարեալ էին, է որ 'ի բարի և է որ 'ի չար․ սոստանօր ընդ այլ տարախտարա միաբանեին 'ի չարի գուշակ։ Ընդ այնչափ ասացեալ գիսաւորսդ Պլուտարքոս և Սուետոնիոս պատմեն երևեալ և զմեծ իմն և զահագին ընդ աւուրս եօթն յետ մահուն Յուլեայ Կեսարու․ և խաժամուժն հռովմայեցւոց հաւատաց թէ հոգի նորա իցէ երկնաքաղաքացի եղեալ։

504 · Զհետ նախասացեալ հրաշիցդ յարեաւ առանիին պատերազմն բրուտոսեանց։ Զոյգ սպառազէնս ասէ՝ զայն նըշանակէ, զի երկոքեան կողմանքն նոյնպէս հռովմայեցիք էին հաւասար զինուք և զինուորութեամբ։ Իսկ կրկին ճակատս, ասէ, տեսին Փիլիպպէք, ոչ մի և նոյն քաղաք, այլ կրկին։ Մի 'ի Թեսալիա առ երի Մակեդոնիոյ՝ Փիլիպպուպօլիս կամ Փիլիպպէք ասացեալ յանուն Փիլիպպոսի որդւոյ Դեմետրի, մերձ 'ի Փարսալ, ուր նախ Յուլիոս Կեսար յաղթեաց Պոմպէեանց։ Եւ միւս 'ի սահմանս Մակեդոնիոյ և Թրակիոյ յանուն Փիլիպպեայ Մակեդոնացւոյ՝ առ Հեմոս լերամբ, ուր յետոյ ուրեմն Հոկտաւիանոս Աւգոստոս վանեաց զԲրուտոս և զԿասսիոս։ Բայց Մակեդոնիա ընդարձակագոյն առեալ առ հռովմայեցւոց տիրապետութեամբ՝ ձգէր երկայնէր 'ի Հեմոս լեռնէ մինչև 'ի Թեսալիա, որպէս և գօտի Հեմոս լերին․ և մանաւանդ քերթողք նոցա զամենայն երկիրն զայն կոչեն Էմաթիա, որ մասն է Մակեդոնիոյ։ Եւ տիրապէս ոչ Թեսալեան Փիլիպպէք կամ Փարսալ և ոչ Թրակեան Փիլիպպէք յԷմաթիա անկանին․ սակայն ընդարձակ առմամբ և մանաւանդ քերթողաբար երկոքին քաղաքքդ և ճակատքն երկոքեան ասին յԷմաթիա և առ ստորոտովք Հեմոս լերին։ Ուստի պակասեն առ այսոսիկ հաւանութիւնք յայլ և այլ գրոց Յունաց և հռովմայեցւոց, զորովք զանց առնեմք։

510 · Զզէնս իմա զհռովմայեցւոցն կոտորելոց 'ի անանկան պատերազմին յեմաթեան դաշտս․ զորոց և զմեծամեծ ոսկերսն, ասէ, տեսեալ 'ի բրել գերեզմանացն՝ սոսկասցի վասն սկայաձև մեծութեան նախնի քաջացն մարտուցելոց և անկելոց։

513 · Հայրենաբռուն դիք՝ են նախնի

Որ զտոսկեանըն Տիբերիս և զՀռոմական պահես տաճարս,
Այսըմ գէթ պատանեկի ձեռն 'ի կործան տալ յաւիտեանս
Մի՛ կասէք ընդդէմ, շատ իսկ արդ լուծաք յարեան մեր ճապաղիս
Ըզվըրէժ խարդաւանաց Լաւմեդոնեանըն Տրովադայ։
Արդ երկնից արքունիք ըզքեզ, Կեսար, խանդան 'ի մէնջ,
Եւ ըղկէտ մըրցանակի փառաց մարդկան բաւրեն 'ի քեզ.
Ուր իրաւն և անիրաւ զի արդ Հարեալ կան վեր 'ի վայր,
Այքան մարտք ընդ տիեզերս, այսչափ անչափ եղեռանց դէմք,
Ոչ շուք ինչ անկ արօրոյ, մերկ յեզողաց խըրթնացեալ արտք,
Լուսնաձև գերանդիք ձուլին 'ի սուր մարդախոշոշ.
Պատերազմ աստի Եփրատ՝ անտի շարժէ Գերմանիա,
Նըերաց դըրժեալ դաշին դըրացի քաղաքք 'ի զէն դիմեն,
Եւ ամպարիշտ մոլի Արէս ծագաց 'ի ծագս աշխարհի։
Ի գըլխոց ասպարիսին իբրու Հոսեալ քառաձիոց

ընիկ դիւցազունք երկրին աստուածա-րեալք, ընդ որս և Հռոմուլոս նահապետ ազգին Հռոմոց և կանգնօղ քաղաքին և տէրութեանն։ Իսկ Վեստա, և ըստ Հեղլենացւոց Եստիա կամ Հեստիա, կրկին էր. մին մայր Կռոնոսի կամ Զրուանայ, որ և Կիւբելէ, և նշանակէր զերկիր. իսկ միւսն՝ դուստր Կռոնոսի կամ Զրուանայ, և այն ինքն էր հուրն տարրական՝ մեծաւ խնամով պաշտեցեալ առ Հռոմս և 'ի կուսից սպասաւորեալ իբրև կոյս ոմն և սրբական դիք։ Բայց բազում ուրեք այլ ընդ այլոյ առեալ գտանին։

514 . Տիբերիս գետն Հռովմայ տոս-կեան ասի, զի 'ի կողմանց Տոսկիոյ կամ Ետրուրիոյ յապեննեան լերանց ելեալ, և զանուն իւր առեալ 'ի Տիբրիս արքայէ Տոս-կիոյ, երթայ թափի 'ի ծովն տոսկեան կամ ետրուրական, բաժանելով զաշխար-հըն զայն 'ի Լատինէ։ Կոչի և Տիբերինոս՝ յանուն արքայի ալբայեցւոց որ 'ի նմա հեղձաւ։

515 . Պատանւոյն Հոկտաւիանոսի Աւ-գոստեայ, որ իբրև քսան և եօթն ամաց ե-րիտասարդն էր, և դրեթէ զինքնակալու-թիւնն ունէր յետ սուսերահարն լինելոյ Յուլիոսի Կայսեր՝ Յուլիոս Կայսր Հոկ-տաւիանոս անուն առեալ և ինքն, կտակաւ որդեգրեալ 'ի նմանէ և ժառանգ կար-գեալ։

517 . Լաւոմեդոն կամ Լաւոմեդ արքայ Տրովադայ, հայր Պրիամու, զըկեաց զՊո-սիդոն և զԱպողոն դիս 'ի սակ արկեալ վարձուց շինութեան պարսպի քաղաքին։ Այսպ ուրացութեամբ և հեղեղօք պատ-ժեալ, պարտ բաշխի եւ ըստ պատգամաց զդուստր իւր Հեսիոնէ ծովական նհանգի. յորմէ Հերակլի ազատեալ զնա, գրժեաց և նմա Լաւոմեդոն և չետ զխոստացեալ զիւցազարմ երիվարսն։ Ընդ այս ուխտա-դրժութիւնքս ցասեան բազումք յաս-տուածոց և ոխս պահեցին ընդ տրովա-դացիսն, յորոց էր և ԷՆիաս նախահայրն հռովմայեցւոց, վասն որոյ և սոցա ևս հա-մարէին մեղանքն։ Այս են Լաւոմեդոնեան կամ Լաւոմեդեան խարդաւանքն։

518 . Երկինք կամին հանել զքեզ 'ի մէնջ՝ յաստուածութիւն վերառեալ, և չհաճին խնդրել քեզ զմարդկային փառս, յորում արդարութիւն և անիրաւութիւն աղմկեալ կան, և զմեզ յերկբայս արկա-նեն՝ թէ գուցէ դու ինքնին տաղտկայցես 'ի սոցանէ, և երկնից խնայեալ զքեզ յայս-քան ապականութենէս՝ յափշտակիցեն յաշխարհէ աստի չարէ։ Ակնարկէ 'ի հան-գերձեալս ակտիական պատերազմին Հոկ-տաւիանու ընդ Անտոնիոսի յարևելից և յարևմտից՝ զոր Եփրատ և Գերմանիա յայտ առնեն, որպէս և զկնի 'ի կռիւս նո-րին իսկ Իտալիոյ քաղաք ընդ քաղաքի. ո-րով Արէս աստուածն մարտի ընդ ամենայն երեսս երկրի երևէր մոլեալ։

527 . Անսանձելի կործանական գնացից պետութեանն և ժամանակին օրինակ առ-

Արրաթուիչ ասպատակեն, և կառավար զուր կոծեալ սանձ
Յափրշտակի երիվարօքն, երեսանաց անկուշեն կառք ։

Նու զապերասան արշաւանս քառաձի կառաց 'ի ձիարձակարանին, որոց միանգամ սրացեալ 'ի Թղարանէն՝ ոչ ևս այնուհետև գոյ հնար ընկրկել զնոսա. Նա և կառավարն ինքնին 'ի գլխովին վարի ընդ նոսա ։ Որով մեղմով իմն մարդահաճելով արգարացուցանել Թուի զՀոկտաւիանոս իբրև ակամայ և բռնի ձգեալ 'ի մարտսն ։



# ՊՈԲԼԻՈՍԻ

# ՎԻՐԳԻԼԵԱՅ ՄԱՐՈՎՆԻ

# Մ Շ Ա Կ Ա Կ Ա Ն Ք



## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

# Ն Ա Խ Ա Դ Ր Ո Ւ Թ Ի Ւ Ն

## ԵՐԿՐՈՐԴ ԳՐՈՑ

ՅԱՅՏ արարեալ զառաջարկութիւն իրացն, որ այն ինքն է տնկագործութիւն առհասարակ, և առանձինն այգեաց և ձիթենեաց, և կարգայեալ յօգնութիւն զՍպանդարամետ դիս որթոյ՝ գլխաւորագունին 'ի տունկս մշակելիս, անցանէ 'ի ճառս երկրորդի գրոցս, որ յեօթն գլուխս հատանի։

Ա. Ամենայն ազգի ազգի օրինակք տնկագործութեան, որ 'ի բնութենէ և յարուեստէ։

Բ. Զանազան տեսակք ծառոց, և իւրաքանչիւր ազգի դարման՝ որոց ինքնեկ 'ի բնէ և որոց ձեռատունկ։

Գ. Զտեղեաց իւրաքանչիւր՝ յորս ծառք բարգաւաճին այլ քան զընկեր. յորում և գովեստ իտալական աշխարհին։

Դ. Արուեստ ընտրելոյ զբնութիւն անձնիւր հողոյ, և զիւրաքանչիւր զպէտսն։

Ե. Մշակութիւն որթոյ. յորում և յաղագս ժամանակին գարնայնոյ և զսպանդարամետական խաղուց։

Զ. Մշակութիւն ձիթենւոյ և այլոց ինչ ծառոց, հանդերձ նոցին օգտակարութեամբ։

Է. Մերջաբան 'ի դրուատ երջանկութեան շինական կենաց։

## ՊՕԲԼԻՈՍԻ

# ՎԻՐԳԻԼԵԱՅ ՄԱՐՕՎՆԻ

# Մ Շ Ա Կ Ա Կ Ա Ն Ք

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

*ՄԻՆՉԵՒ ցայս անդաստըն վար և երկնաձեմ աստղից կաճառք.*
*Նըրդ ըզքեզ, Ազանդազարդաւետ, և զԹաւաթուփս անտառախիտ*
*Նաև զմեղմաբոյս ձիթենւոյն զարմ և զաւակ երգեմ ընդ քեզ:*
*Եկ այսր, ով հընձանեան Հայր, աստ ամենայն շնորհիւ քով լի,*
*Ուռուէտ քեզ աշնայնով ծանրաբեռնի ծաղկեն մարմանդք,*
*Եւ եռան այգեկութք 'ի փրփրադէզ տաշտըս գեղուն,*
*Եկ այսր, ով հընձանեան Հայր, ըզմոյկըդ հան արի եկ ծօ,*
*Եւ ընդ իս 'ի նոր գինի ներկեա զսըրունըսըդ բոկանիս:*

*Տընկոց իսկըզբանէ կարգի սերմանդ է այլազան.*
10 *Բանզի կէսք անբռնադատս 'ի մարդկանէ գոլ ինքնաբոյս*

2. Ազանդազարդաւետաւ խնա զորթ և զգի. նի, որոց գինք՝ այն էին, զոր և փոքր մի ըզ. կնի հնձանեան հայր կոչէ, զի հնձանաց իշխեցող էր և նորքք ցնծայր:

3. Մեղմաբոյս ասէ զձիթենի, զի յաճախ աճել անկոյգ յայտնի է ամենեցուն՝ եթէ սերմանեալ հասս նորա. և 'ի յաճախ աճե. լոյ անուն ունի և զերկարակեցութիւնն:

4. Այսր մատիր, հասս յօգնութիւն այսր՝ ուր ամենայն պարգևք քո գեղուն, և աշնային ուռոյք և պտուղք քեզ ծաղկէ երկիր զուարճացեալ: Նա գինեգործութ. նականութիւնն գեղեցիկ այլաբանէ 'ի հըն. ձանահար ընդ խաղ լինել, որ զայգեգոր. ծութիւն նուագելով և զգինեացն յօրի. նուած պատրաստէ:

10. Ծառոց կէսք ինքնեկ են առանց 'ի մարդկանէ սերմանելոյ. և ոմանք սերմանեալ աճեցեալ 'ի խնամոց մարդկան: Այս է ա. սացեալն, և ոչ թէ զի կէսք սերմն ունի. ցին և այլք անսերմն իցեն: Բայց սերմն առ Վիրգիլեայ և առ այլս ևս նշանակէ ուրեք և զածս և զշառաւիղս և զարմատս իսկ:

Զաշտորայս ծածկէն ըսփիւռ և զգալարուն վըտականին.
Որպիսի գողտրիկ մոշի և ցարասին դիրգ և փափուկ,
Կաղամախ և ուռենտան լըմնակապոյտ սաղարթացեալ.
Իսկ ոմանք յառնեն կանգնին 'ի սերմանէն արկանելոյ,
Զերդ երկնուղէշ շագանակ, և 'ի մայրիս յաղթ վարսաւոր
Տերևեան Արամազդայ շոճ և կաղնիք հելլէն դաբիր.
Այլոց շուրջ յարմատոյն թանձրամայրի բըխեն անտառք,
Կընձնեաց պէս և բալից, և պառնասեան դափնենւոյն ձետ
Զարգանայ մանուկ 'ի մօրն հովանի մեծ լայնածաւալ.
Զայդ օրէնս ետ նախ բնութիւն, ու 'ի դոյն ալըրակք ազգի ազգի
Ու թուփք և դիցանուէր դալարանման թաւուտ մայրիք.
Են և այլք՝ որց պէտք ինքնին հնարաւորեալ եկաց ճարտար.
Մին հատեալ մին շառաւիղս 'ի նորատունկ մարցըն մարմնոց
Այս յաւանդ 'ի ծոց հողոյն, միւսն արմ և տակ ընդ ունչ վարէ,
Քառասայր ձեղքեալ հեծան և սըլաքեալ ցից հաստաբուն.
'Ի ծառոց կէսք կըքելոյ բարունակացն աղեղնաձև
Ու կենդանւոյն 'ի բնիկ երկրին ակն ունին տունկ տաշտաթաղ.
Այլք արմանց են անկարօտ, և ոչ յօտեալ ոք երկմըտէ
Ի գլխատակն ամբարձուղէշ մատուցանել անդրէն 'ի հող.
Այլ յոստաքանց կոճղեալ կոճեղս արմատաքըն ձիթենւոյ,
Զարմանք նորատըքանչ, 'ի չոր փայտէն առնէն շաքեղ.
Տեսանեմք և յայլ ըստէպ զայլոց շըրջեալ ձիւղաւորանդըթար.
Զի տանձի փոխաբերեալ՝ խընձոր անպտուղ բերէ պատուաստ,

16. Ըռձի ծառ կաղնաբեր՝ Արամազդայ սուրբ, զի առաւ էր 'ի գոգոմէնեան անտառին նմա նուիրելոյ. որպէս և կաղնիք նոյն անտառին, որ անուանի պատգամատեղին էր հելլենացւոց.

17. Զայլոց արմատն անկելով 'ի գետին՝ ելեալ ծառանան, զոր օրինակ կընձնիք, կեռասենիք և գաղփնիք, որ պառնասեան ասին, զի բազում էին 'ի Պառնասոս լերին Փովկիս գաւառի Աքայիոյ, կամ զի նուիրական էր Ապողոնի՝ որում սրբեալ էր և լեառն ինքնին Պառնասոս.

20. Այդ դէպք են բնական օրինակք աճման անկոց. բայց են և այլք զորս պէտքն որութեամբ հանճարեցին. Զի ոմն անտ կամ շառաւիղս հատեալ արմատովքն տընկէ, և այլ ոք զձող բնոյն ձեղքեալ կամ սրեալ յերկիր հարանէ արմատովքն.

26. Այլք տաշտաթաղ լինելոյ կարօտին՝ շըջել զձիւղսն և կենդանւոյն առանց հատանելոյ թաղել անդէն 'ի հողն խորում յորում և մայրն է. Եւ այս տաւաւել որթոյ յատուկ է.

28. Այլք չկարօտին բնաւ արմատոց. զի հատեալ զձողիկս կամ զգիտակս ծառոյն՝ անկեն 'ի հող և արմատանայ. Նա աւանիկ և կոճղն իսկ ձիթենւոյ քըշտեալ յոստոց և յարմատոց և ծայրատկաւ եղեալ, և անկեալ այնպէս, արձակէ արմատս 'ի չոր կարծեալ՝ այսինքն 'ի հատեալ անկեալ փայտէ անտի.

32. Իմա պատուաստելով, որով տանձին խնձոր բերէ, և գաղձոյս կամ հոյն կաղձեալ և քարուտ վասն կարծր զերօրեայն ունելոյ և յատուկ տեղիս բուսանելոյ՝ ազնուականացեալ բերէ սալոր.

Այս զաւլաքս ապառաժուտ 'ի կարմրորակ շիկնի շըղըր։
  Արդ եկայք զազգի ազգի անձնիւր դարմանս, ով երկրագործք,
Ուսարուք և զդաժան բերս ամոքեսջիք յանձանձելով.
Մի դերև կացցեն գետինք, անկ է յԻսմար արկանել ուռ
Այս ըզմեծըն Տաբուռնոս ձիթաստանեօք պըճնազարդել։
  Հաս և դու՝ զոյգ ընթացիր 'ի միջամուխ յայս ասպարէզ,
Ով պարծանք, ով համբաւոյս մեր բաժին մեծ արժանափառ,
Մեկենաս, և թռուցեալ սուր զառագաստդ 'ի ծով անդորր։
Ինձ 'ի տաղս իմ ոչ է կամ բովանդակել զամենայն, ոչ,
Ոչ՝ և գոյր յիս հարիւր բերան՝ լեզու հարիւր ձայն երկաթի.
Հասիր մն և մօտ քերեաց՝ երկիր առ ձեռն՝ առ ծովափամբք.
Ոչ ես ըզքեզ աստանօր երգապաձոյձ առասպելեօք
Ոչ 'ի հիւս մանուածապատ յերկար նուագօք կալայց առ դուրս։
  Որ կանգնին կան ինքնօրէն 'ի քաղցրասիք արև լուսոյ,
Անծընունդ ապաքէն՝ սակայն հըզօր յառնեն ուամբթ,
Զի ախտարակք տարրին 'ի հողն. այլ և զսոսին թէ պատուաստէ
Կամ 'ի նոր տեղափոխեալ ոք արկանէ բրածոյ խոռոչ,
Մերկանան զհոգին վայրագ, և անձանձրոյթ հոգով խնամոյ
Յոր արուեստ և կոչեսցես՝ զայցեն ըզհետ փոյթ անվեհեր։
Զնոյն՝ և որ 'ի խոր ստեղնին արմանց ամուլ և ստերջ
Առնիցեն, եթէ նոր արձակ անդոց երես ջոկին 'ի կարգ.
Արդ մօրն ելեալ ջով առեալ՝ թանձրախիտ ոստք ածեն ծըմնակ,

37. Իսմար լեառն էր այգեւէտ 'ի ծո_վեզերս Թրակիոյ. Տաբուռնոն կամ Տա_բուռնոս՝ լեառն Կամպանիոյ 'ի սահմանս Սամնիտացւոց՝ ձիթենեօք նշանաւոր։ Կամի ասել հաստատակապար զօր և է լեառն, և զայլ ամենայն վայրս ըստ իւրաքանչիւր յարմարութեան մշակել, և մի ընդ ունայն տեղի ինչ զատարկ թողուլ։

39. Յետ յորդորելոյ զմշակն 'ի գործ ժրութեան՝ հրաւէր կարդայ այժմ աս_տանօր առ Մեկենաս ընդ իւր հատանել անցանել զայս եւ ասպարէզ, զայս ծով անդորր։ Բայց ոչ 'ի խորս միջոյ, ասէ, և ոչ զբովանդակն ասել. այլ զեզերաւոր մա_սունսն միայն, և զայն 'ի հարևանցի եւեթ, որչափ քերթութեանն 'ի դէպ. այս է ա_սելն մօտ քերել առ ծովափամբք՝ զցա_մաքն հուպ առ ձեռն ունելով։ Նա և ոչ առասպելօք և ոչ յերկար կանխաբանու_թեամբք յամեցուցից զքեզ աստանօր առ_դուրս կալեալ. այլ ահա աստէն և աստ միտիմ 'ի ճառս։

49. Ընդակեաց կան 'ի հողն ախտարակք, բնական ոյժ և զօրութիւն սերմական և կարեւոր յաճման անկոց, որով ինքնեկքն վայրենիքք հզօրեղապէս ջոկացեալ հաս_տահարուստ կանգնին։ Եւ թէպէտ ան_պտուղք իցեն, բայց պատուաստելով 'ի նո_սա զյաւուն կամ յայլ դուրս փոխադրելով եւեթ՝ զվայրենութիւնն մերկանան. և յոր պէտս և մշակեսցես, հպատակեն և յա_ջողեսցին։

53. Նոյնպէս ընտանեկան 'ի վայրենու_թենէն և շառաւիղք բուսեալք զարմատովք ծառոց, եթէ 'ի դաշտ արձակ և յարև փո_խեսցին. զի անդ ընդ ստուերաւ մօրն 'ի ծմակի ոչ բարգաւաճին, և անպտուղ մնան։

Եւ ՚ի զարգուն հասակին զունոյն անձիտեալ և զինք խամրեն։
Իսկ այն՝ որ ՚ի սերմանց արկանելոյ համբառնայ ծառ,
Յամօրվ գայ յերեկածին որդիս որդւոց տալ հովանի,
Եւ բերոցըն մոռացեալ զառաջին հիւթոցն խորթանան,
Եւ բերէ որթատունկ մրգուզ ողկոյզս հաւուց ապուռ։
Սա՚ւասիկ ամենեքին պահանջեն քիրտըն երկասէր,
Բնաւք յակօս գաս խընդրեն և նըւաձուրդ յօգնավաստակ։
Այլ արմանց են ձիթենիք քաջադէպ, որթ ՚ի տաշտաթաղ,
Մըրտենիք պատուսեան ՚ի ստուարաբուն շեշտեալ կըտրօն.
Կարծրատորր արքայկաղնիք սերըն ստեղամբք և հացին մեծ
Եւ հերակլեան պըսակին հովանաւոր ծառ վարսագեղ,
Եւ կաղնիք՝ քաւոնեան հօր ուարմաւենի բարձրահասակ.
Ծընաանի և եղեւին ձակատագրեալ ծովուց ՚ի վտանգս։
Իսկ ՚ի խոշոր մաթղենի պատկին կեայ տոհմ ընդուզաբեր,
Եւ սօսոյք անզաւակք բարձեալ բերըն առոյգ խընձորս,
Կասկենիք՝ փիձիս, ազատ հացին տանձւոյ սպիտակ ծաղկամբ

57. Կամ ըստ դիպաց անկեալ սերմն, կամ մշակի սերմանեալ, երկոքին եա յամր աճեն. և պտղոցն փոխեալ յառաջին ընտանի բնութենէն, օրինակ իմն՝ որթն բերէ զածած և ծմրեալ խաղողս, ոչ յայլ ինչ պիտանացուս՝ քան թէ յաւար լինել թռչնոց։ Վասն որոյ զամենայն խնամով մշակելի է. յայլ գուբս գասելի, և բազում քրտամբ ՚ի վայրենութենէն նուաճելի։

63. Զիւրաքանչիւր ծառոյ զոձ սերնդեանն ասէ ըստ նախ կարգելոյն։ Ձիթենիք յարմանց կամ ՚ի կոճեղէ և ՚ի մեծամեծ ոստոց յառաջ գան՝ անկելով յերկիր. որթք տաշտաթաղիւ. մըրտն պատուսեան, այսինքն նուիրեալ Աստղկան (տ. 31) որ ՚ի Պափոս կիպրացւոց աւագամեծար պատուեալ, ՚ի ստուար բնոյ կամ յոստոյ ձողաձև մխելոյ յերկիր։ Իսկ շառաւիղք աճեն արքայկաղնին, հացին, կաղամախին՝ Հերակլի նուիրեալ և նմին պսակ եղեալ, կաղնի՝ քաւոնեան կամ դոդոնեան Արամազդայ նուիրական, արմաւենին, եղևնափայտն կարգեալ ՚ի լինել նաւ և վտանգել ՚ի ծովս։

65. Արքայկաղնի իմա զայն ազգ կաղնւոյ, որ ոչ բալուտս՝ վայրի կաղինս տայ, այլ կաղին բարի ՚ի կերակուր երբեմն արքայավայելչ։ Զայս երաշխաւորեսցէ ԻԴ առակն Մխիթարայ Գոշի։

69. Եւ սմանք պատուաստի են ընդունակք. մաթղենին՝ ընդուզոյ, սօսին՝ խընձորոյ, կասկենին՝ փիձւոյ, ազատ հացին՝ որ և քարհացի ասի առ երկրագործս մեր, այսինքն՝ վայրի հացին՝ տանձի, և նշագործն կամ կնձնին՝ վայրի կաղնոյ, որ է բալուտ ձարակ խոզից։ Զմաթղենին, այն ինչն է թուփն որ բերէ մաթուզ հօձս էէփւ, ընդուզաբեր եղեալ ասէ լատինն հասարակ անուամբ՝ որ նշանակէ ընդոյզ, կաղին, նուշ և խողակ շոձւոյ կամ թեղօշի, են։

71. Խորհեցեալ սմանց ՚ի մեկնչաց, թէ անտեղի է զանարգ ծառն փիձի պատուաստել ՚ի կասկենին՝ զի կասկենին փիձի բերիցէ, զհայցականն բնագրին fagos հակառակ ամենայն գրչագրաց փոխեցին յուղղական fagus, որով խնամոյ փիձին կասկենւոյ սպիտակ ծաղկամբն ձիւնացաւ, որպէս քարհացին տանձւոյ։ Թէպէտ և յայս միտս իսկ կալով չկայր ինչ հարկ փոխել զմիաբան ընթերցուածն ամենայն գրչագրաց, այլ մարթ էր թողուլ երբեմն os յանգիւ ուղղականն, որպէս սովոր է ուրեք ուրեք առնել հռովմէականն լեզու՝ մանաւանդ ՚ի հելլենական ձայնս, յորոց մի է և φηγός և ըստ դորացւոց φαγός, և Վիրգիլ ինքնին վարի այլ եւս ուրեք ՚ի քերթուածի աստ նոյնպիսի յանգիւ. բայց սակայն և զայն

Ձիւնացաւ, և խոզերամ ընդ նըշդարեօք եբեկ բալուտ։
Այլ ոչ մի ակն արկանել է և պատուաստ 'ի ծառատունկ.
Օի ուստի զբարակ մըզանսն հերձեալ պըտկանց 'ի դուրս ցըցուեալ
Արձակին 'ի կեղեւոյն՝ անդ 'ի ծընկին խէնձ առնի նեղ,
Ընդ յօտարածին ծառոյն ընձիւղ յեռեալ 'ի ներքս
Այլ 'ի տամուկ թաղանթին ուսուցանեն բարդաւաճել.
Կամ դարձեալ ողորկ մայրանք ճեղքին ու 'ի սիրտ խոր ճանապարհ
Սեպիւք պատառեալ՝ մորձ երիթ ուռ բերրի վարի։
Այլ ոչ հարուստ ինչ ժամանակ՝ և ահա ծառ քաջաբուն
Կանգնեցաւ մինչև յերկին ոստս ամբարձեալ գըւարճալից,
Այլ զարմանայ սաղարթս 'ի նոր և ընդ ոչ իւր երախայրիս։

Թող զայդ, այլ և հըզօր ճըշդարք ոչ ազգ են համասեր,
Ոչ ուռի և ոչ ներգիւն՝ ոչ իսկ նոճեացն իդայազարմ,
Այլ ոչ պարարտ ձիթենիք նոյնազգիմի գան 'ի ծընունդ՝
Բոլորշին՝ բարաքեննին և դառնահամ ճընչեան 'ի ձէթ,

եւ պարտ էր զնոսա ածել, թէ ծառքն շագանակի չեն սովոր իբրև զսանձեայ, այլ զեղնաշորթ, որով ոչ յայժ 'ի գէտ 'ի մի ընտրգեին ընդ միմեանս։ Թող զայդ, և ըստ չափոյ ոսկըն հարկ լինի զսուզ վանկն ուղղականին ՈՏ կամ ՕՏ ավաստորէն բանագաղութեամբ ձգտեալ երկարել հատածիւն։ Այսպ լուսադոյն էր պահել զհարազատ ընթերցուածն հայցական, և ոչինչ անպատեհ համարել զփիճոյն պատուաստ 'ի կաղնենին, 'ի Վիլինոսէ ուսեալ՝ զի հաւաստեայեցիք ոչ առ առաւել պատուականս ինչ ունէին զշագանակ քան զպտուղ փիճայ, որով կերակրէին իսկ առաջին մարդիկն։ Զի աշա Վիլինոս զարմացեալ կայ, թէ առ ինչ բնութիւնն այնքան խնամով փշալից պատսպարեալ է զշագանաքեայ միրգն շագանակ։ Եւ այլուր դարձեալ զխողակս փիճայն քաղցրաճաշակս ասէ, և զգիտացեան այնու կերակրեալ երբեմն 'ի բազմաժամանակեայ պաշարման։ Յարգոյ էր և փայտ նորա 'ի սպասս պաշտաման Հռոմայ, մինչ զի և զդրհանոցս ամպամ զկից 'ի Նոմանէ կաղմէին, և զպտուղ նորա առնուին 'ի պէտս գեղոց բժշկականութեան։

73. Օրինակ պատուաստելոյ ոչ նոյն և մի է, այլ զանազան, յորոց զերկուս ևեթ յիշատակէ. մի՝ ակն կամ պտուկ և բողբոջ արկանել, և միւս՝ բուն յատուկ պատուաստ։

74. Ակն արկանել է, յորժամ զփիճն կեղևոյ բողբոջացն բացեալ, ծակ կամ խոց գործի անդ. և հանեալ անտի զպըտուկն կեղևովն հանդերձ, 'ի տեղի նորա արկանի 'ի ներքս ակն կամ պտուկ այլ՝ խառնել և միանալ ընդ բնիկ կեղևոյն։

78. Իսկ յատուկ պատուաստն լինի ճեղքելով զբուն ողորկ՝ ուր չգուցէ ինչ ծունր կամ ծնկակապ վարսակ, և 'ի ներքս վարելով 'ի սիրտ ծառոյն մի կամ յոլով մորճս կամ շառաւիղս։

81. Ոստս զուարճալիցս ասէ վասն նորոյ քաջաբերութեանն։

84. Ներգիւն միրթ առեալ է իբր խոռ վայրի սպառժելի անանկոց, միրթ իբրև ճախինայինն՝ յաղգէ անտի որ հարանմանա կամ կոկոան կոչին։ Իսկ ասատանօր ազգ ծառոյ է և քաղցրապտուղ, 'ի պէտս հացի և գինւոյ առեալ առ ափրիկեցիս. յորմէ և ներգիւնակերքն կամ լոտոսակերք կոչեցան առ Հոմերոսի։ Իգա լեառն կրետէ է. մի 'ի Փռիւգիա, և միւս 'ի Կրետէ կղզւոջն՝ ուր ինքնեկք են նոճիք, որոց և բնիկ գաւառ ասէ զնա Վիլինոս։

86. Յանհամար տեսակաց ձիթենեայ երիս ևեթ թուէ զբոլորականն, և զերկայնաձեւ 'ի նմանութիւն բարաքայ կամ կնգի՝

Եւ խընձորք և դարաստանք ա՛կնոյեան միաձեռնիք
Եւ ոչ տանձք ասորնեայք, կրոստոմայինք և բըռնալիրք :
Եւ նոյն այգեկութք 'ի տունկըս մեր կախեալ ձօձին
Ուր և Լեսբոսըն ժողովէ 'ի մեթիմնեան ազուրեաց.
Ան թասուն այգեստանիք, են և սպիտակ մարէոտեանք,
Այլք յերկիր արգաւանդ՝ նուրբ 'ի ըմպել յանօսրահող.
Եւ փսիթեանն 'ի չամչեղէն պիտանեգոյն, և նուրբ լագոսնն
Որ ապա դեդևէ զոտս, և ըղլեզու կապեալ կարկէ.
Նիրանիք, վաղահասուկք, և յո՞ր նըւագ ըզքեզ երգեմ
Ո՛վ ռետեան, այլ մի դու մի գեր զփալեռնեան խըռոխատար մնասցես :
Են և որթք ամինեցիք՝ տոկուն գինիք երկարատևք,
Այց 'ի շուք յառնէ Տմոլոս և Փանէոսըն թագաւոր.
Եւ կըրսեըն արգենի՝ ում չելանէ ոք ախոյեան

ընտիրս 'ի կերակուր, և զերրորդ ազգ՝ որ մինչդեռ տակաւին կանաչն են և խակ և դառնահիւթ՝ քաղեալ ճնշեն :

87 · Ակինոյոս էր արքայ փէակեցւոց, որոյ էին պարտէզք ծառոց պտղաբերաց երգեալք 'ի Հոմերոսէ յՈդիսականին Է :

88 · Ասորի տանձք էին Թխաակերք, առէլին և տարենտեանք՝ յԱսորւոց 'ի Տարենտոն փոխադրեալք : Կրոստոմայինք 'ի Կրոստոմ աւանէ Տռակիոյ կոչէին, և էին կարմրորակ : Իսկ բռնալիր անուանեին հռովմայեցիք զազգ ինչ ասուար և թանձրամէն տանձի, որ մեծութեամբն լնոյր ըզբուռն մարդոյ :

89 · Ցուցանէ խնամ կամ զնոյն ինքն զորթըս, կամ զկնձնիս՝ զորոնք պատին որթք յիտալիա : Եւ այգեկութս խնամոյս զբեր որթոյն փառաւոր :

90 · Լեսբոս կղզի է եգէական ծովուն, և 'ի նմա էր քաղաքն Մեթիմնա կամ Մեթիմնէ : Գինի լեսբեան կամ մեթիմնեան յոյժ հռչակեալ է առ հինսն :

91 · Թասոս կղզի է նոյնպէս յեգէական ծովուն, համբաւեալ յոյժ այգեօք և գինեաւ : Մարէոտեան խաղողն բարւոքն 'ի մերձակայ տեղեաց Մարէոտիս ծովակի եգիպտական աշխարհին, մօտ յԱղեքսանդրիա : Զի են և այլ տեսակք համանունք :

93 · Փսիթեան որթ ուստի ունիցի զանուանս՝ անյայտ է . բայց յարմար գոլով 'ի գինի չամչեղէն, այսինքն որ լինիցի 'ի խաղողոյ չամչացելոյ յարևէ յայգւոջ անդ, կամ առ հրով : Իսկ լագոսնն՝ 'ի նապաստակի գունոյն առեալ զանունն, բարկ և ազդու գինւոյ տուող, որ ապա խըղէ ըմպեցի՝ դեդևէ զոտս սխալակաց և առնէ գանգաղել և համրանալ :

96 · Ռետեան 'ի Ռետիա գաւառէ Իտալիոյ, որ յեւս սահմանաց ռետեան և որիգենտեան Ալպեանց . որ թէպէտ և յարգի էր յոյժ առ բազումս, բայց փալեռնեան գինւոյն հաւասարել ոչ ունէր, որ ելանէր 'ի Փալեռնոս լեռնէ Կամպանիոյ :

97 · Ամինեցի որթք են հնագոյնք յիտալիա և կանխածանօթք ամինեցւոն, յամինեցւոց 'ի Թեսալիոյ ժողովրդոց տարեալք անդր, և 'ի փալեռնեան գաւառս և յամենայն կողմանս սփռեալք զորոց գովեսցն մանաւանդ զերկարատևութիւնն, կամ ըստ ոմանց զթանձրութիւնն և զծանրութիւնն, գովէ Վիրգիլիոս, մինչև 'ի պատիւ նոցա տայ յառնել յոտն կալ Տմոլոսի (տ. 89), և Փանէոսի՝ որ է լեառն ասպարաւանդեալ 'ի ծով կամ հրուանդան Գիոս կղզւոյ եգէական ծովուն, որոց և համբաւաւոր էին գինիքն : Լերինքն փոխանակ այգեաց և գինեաց եդեալ են : Ուրեմնակք ինչ ընթեռնուն փոխէան, և ըստ այնմ խնամեան յայնժամ մեկնիցք ոմանք և զխուսն ֆանէանն . և գինիք, ասեն, լաւլեայն նշանակին հեղ լենւոյն զեղչմանք ընդ արքական ածականդն :

99 · Արգենի կամ արգիտացի՝ յԱրգոս քաղաքէն Պելոպոնեսոյ առացեալ, որպէս հաւանելի թուի . որոյ կէին տեսակք էին, մեծ և փոքր, և փոքրն քան զմեծն պատուական, որում և չհաւասարէր ոք այլ՝ ըստ առատութեան և ըստ երկարատևութեան :

Ոչ ՚ի ծաւալ ծովափանց և ոչ ամաց ՚ի մրցանակ։
Ոչ ես ՚ի քէն, գինդ ընտրական և ՚ի սեղանս աղանդերաց,
Հռոդոսեան, ատոքրեդ զանց, ուռուցիկդ ողկուզաւէտ։
Այլ խուռն այգեաց չէք և անուանց ՚ի չափ հանդէս համարոյ.
Եւ զի փոյթ է զնոսին ՚ի սակ հաշուի արկանել առատ.
Զոր թէ ոք գիտել կամի, նոյն խնդրեսցէ ՚ի միտ առնուլ
Զհողմայոյզ աւազակոյտն ՚ի Լիբիական դաշտ անկայուն,
Կամ թէ զնաւուց բռնաշաւինչ մինչ ալեւէրք խոյանայցէ,
Համարել քանի յափունս՝ յոնիական դիմեն կոհակք։

Բայց և ոչ կողմանք համայն գիտեն բերել զամենայն ինչ.
Ըստ գետովք ուռիք բուսնին, ըղլօռաւէտ խաղխուք բարտիք,
Եւ ամուլ վայրի հացուտք ՚ի լեռնավայրս առապարին.
Ծովեզերքը՝ ծաղկաւէտ զբուարձանան մրտաստանեօք,
Այգի զբլրոց սիրէ մանմանոս և ցուրտ ըղջութ և զհիւսիսի։
Բարձ ձն ակն ՚ի ծագս երկրի զոր ընթացրեն վերջին մշակք,
՚Ի Գեղոնացն նորկարէնս, յարաւօտին տունս Արաբկաց.
Մեկնեցան ծննդոց զաւառք, Հնդիկք լոկ տան արջն սանխալ

102. Հռոդոսացի գինին պաշտէր յերկրորդ սեղանս, և զայն յայնժամ նուէր հերոսացն՝ որպէս ասէր էին՝ ՚ի պատիւ գինւոյ։ Իսկ ապերասուկն կամ ժոխուր՝ խաղող էր ողկուզաւէտ և մեծահատ իբրև զպտուկունս սալորաց կովու։

105. ՚Ի դփ սանոյլ, կէս օրինակք ունին քանի- ճառել կամ ՚ի քան յհել։

106. Լիբիա առ հինսն բաղում անգամ փոխանակ բովոր Աֆրիկէի առնուլ է. բայց տիրապէս մասն է նորին՝ յինչս բովանդակեալ զծովն միջերկրական, զԵգիպտոս, զայնկարչն Տրիպոլի կամ Տրիպոլիս և զԵթովպիա։ Վասն որոյ առս անկայուն դաշտ Լիբիոյ՝ թէ զաւազուտն ծովն ունի նշանակել, և թէ զանապատն Լիբիոյ՝ յորս յերկոսին իսկ յողդողդեալ տարուբերին աւազք ՚ի հողմոց։

108. Յոնիական ծով է որ կայ ՚ի մէջ յունաստանի և Սիկիլիոյ։ Իսկ զի հարաւակողմանք Իտալիոյ եւ մեծ յունաստանն կոչէին առ վաղնի ազգաց ՚ի հնումն, յայս սակս թուի և զծովն պարագրել Յունական ասել և անտի անուանել նախնեաց յոնիական կամ յունական։

113. Լատինականն taxus թուեցաւ ոմանց զերձ ՚ի հայումս լինել։ Բայց զերձն ՚ի մեզ պատուաստուկ իմն է իբրև զբաղեղն. իսկ taxus ծառ, որում տառել համեմատ զտանեմ առ մեզ զղրձի կամ զնորին նմանն զյակրի։ Անտի կարծեմ մոլորեալ զմեկնչսն, զի հանդէպ հելլենականին σμίλαξ առեալն եդեալ առ մեզ զերձ. բայց σμίλαξ ոչ զատուցեալ ծառոց միայն նշանակէ զtaxus, այլ և զպատատուկն։

114. Փոխանակ ասելոյ ՚ի վերջին ծագս երկրի զոր նուաճեն, վարեն մշակք. յոբոց յիշատակէ զԳեղոնս, որ առ առհասարակ նակցութեանն՝ ՚ի սկիւթացւոց և ՚ի սարմատացւոց էին համարի բնակելոց յայնկոյս Բորիսթենէն գետոյ, և զմարմինսն պէսպէս նկարէին. և զարուեստիւ այսինքն զարդարեալս ազգ արեւելեան։

116. Արջն ասելով զսանխալ՝ այսինքն է սեաւ, թերևս անկնարկէ և յայլ երկուս տեսակս փայտից, ՚ի կարմիր և ՚ի կանաչ, որ ընդ սեւոյն ՚ի Մադագասկար գտանին։ Այնպէս սեւական է փայտդ հնդկաստանեայց, կամ մանաւանդ Եթովպիոյ՝ որ և այն հնդկային կոչի աշխարհ առ հինսն, զի և հնդիկ փայտ կոչի պարզաբար։ Զաս_

Այլ միայն Սաբայեցւոց են ձաղկ ոստոց խընկաբերից։
Ո՜ր քեզ յիմ վէպ՝ անուշահոտ փայտին ծառայք քրքմնածորան,
Նպրասանք, և անթարշամ մըշտափըթիթ ականթի հասք.
Ո՜ր մայրիքն եթովպացւոց քրքըմուշ սատու սպիտակափառք,
Այլ զխմոր մանրիկ գեղմանս 'ի սաղարթուց գըզիցեն Սերք.
Կամ անտառք հնդկաստանեայց ծովուն մերձի հուպ առընթեր,
Խորշ յափին տիեզերաց՝ ուր նետ և ոչ մի զօրացաւ
Նշանել յաղթական զվերին օդովք ծայրից ծառոց.
Այլ սակայն արք աղեղանց յառնուլն 'ի գործ են կապարճից։
Բերեն Մարք ծանըր ճաշակս և օշարակըս տըտպահամ
Ո՜ երջանկաւէտ նարընջին՝ քան զոր ոչինչ աջողագոյն,
Թէ երբէք դըժնեայ մօրու դեղեաց բաժակ 'ի ժահ պըղտոր

բայեցւոց տես ա. 60. և զի խունկն հոյզ է ծառոց կամ թփոց, և այն յայտ իսկ է։

119. Նպրասամ կամ ասպրսամ իմա ըղթուփն դեղեցիկ և անուշահոտ որթանման, մինչ առաւել 'ի հրէաստան աշխարհին, կամ զբղխեալն անտի զապրասադ և զուեոին՝ որ այն ինքն է բալասան, զի առ երկոսին իսկ հայր բնագիրն։ Իսկ ականթն, է որ բանջար վայրի է, երկայն և լայն՝ թանձր և ճապուկ՝ փափուկ և գեղեցիկ տերևովք և սպիտակածաղիկ, 'ի պաճոյճս և 'ի սեթևեթս պաշտաճեալ ակսպէս յօրինուածոց և նկարուց ասղնեգործաց և քանդակաց. և է որ ծառ չնաշխարհիկ մշտադալար, և թուի լինել ակակիա եգիպտական, որոյ են ծաղիկք վայելուչք, սպիտակք, և պարկուճք կամ պատեանք և 'ի նոսա հասք սերմանց, և 'ի նմանէ ծորէ ասաձիկ կաեղն ասացեալ խիժ։ Թէպէտ փշոտ է 'ի վերին ծայրսն, ըստ որում և յունական անուանքդ 'ի փշոյ առեալք են, սակայն չէ պարտ խառն 'ի խուռն առնուլ զսա, եւ առաւել զգեղեցիկ բանջարն ընդ անարգ փշոյն ակքանթ՝ որ և ոքող, որոյ ոչ այլ ինչ հաւաստութիւն է ընդ սմա բաց 'ի պատահական գոյզն նմանութենէ ձայնին։

120. Զբամբակենեայ և զբամբակէն ասէ, որ էր նիւթ բեհեզոյ։

121. Հասարակաց կարծիք էին մինչև յաւուրս Յուստինիանոսի կայսեր, թէ Սերք՝ ժողովուրդ հնդկաստանեայց մերձաւորք Ճենաց՝ 'ի ծառոց ժողովիցեն իբրև բերս նոցին զկերպասն գործեալ 'ի շերաս զեռնոյ, որ յաղգէ իսկ անտի ունել թուի 'ի մեզ զանուն իւր։ Այսպէս առ նոքին կայսերբ սակին շերամք ածեալք 'ի Կոստանդնուպոլսեան քաղաքն։ Բայց Արիստոտէլ և Պլինիոս յիշատակեն զառասպելականութիւն կերպասուց գիւտ լինել կնոջ միոյ Պամփիլեայ 'ի Կով կղզւոջ եգէական ծովուն. յորմէ և առ քերթողսն գոլլին հանդերձք կովացիք։

122. 'Ի ծովեզերեայս և 'ի ծոցն Գանգէս գետոյ ակնարկէ առ արևելեան ովկիանոսին, որ հռովմայեցւոց վերջին ծագ երկրի համարեալ էին, և 'ի նոսա ծառք երկնաբերձք՝ զորովք անհնար էր նետ անցուցանել։

126. Բնագիրն խնձոր մեդացի ասէ, որ է պարսիկ և ասորի խնձոր ասի, որով հասարակաց անուամբ սովոր է լատին լեզու յորջորջել զամենայն բոլորշի պտուղս ծառոց։ Չիք երկբայութիւն թէ 'ի կիտրոնաբեր ծառ ինչ ակնարկէ Վիրգիլիոս. այլ թէ յոր ազգ, այն յերկբայս մնայ։ Հաւանելի թուի նարինջ լինել կամ թուրինջ. զորոյ և զհիւթոյն ասրս և զխաորդահամն ասել խմանի թթու և փոթոթահամ կամ դառնորակ։ Երջանիկ ես ասէ, որ թէպէտ սովորաբար զքաղցրութիւն ծառոց յայտ առնէ, այլ աստանօր զառողջարարութիւն. զի և դեղթափ համարեալ էր առ հինսն, զոր քերթողաբար պաճուճէ Վիրգիլիոս՝ ջատուկ մօրուի գործ առնելով զդեղատուութիւն, զոր և յաճախ սովոր իսկ էին առնել մօրուք։ Զ129 տողն եկամուտ համարին ոմանք առ՝ յերրորդ գրոցն 286. սակայն ունին ամենայն գրչագիրք։

Խառնեալ տոգորս 'ի բուսոյ և ժանտագործ յուռթից մրրմունջս,
Հասանել գալ զօրավիգ և զդառնաթոյնս յանձնէ թափել:
Ինքըն ծառ մեծ անարդիլ՝ կերպարանօք սաղարթնաւոր,
Եւ թէ ոչ շուրջանակի սփռէր բուրումն այլանման,
Գոյր սարդի, ոչ ծաղկընկէց և ոչ հողմովք տերևաթափ:
Նովին Մարք զօղի և շունչ և զգարշահոտ խռնկէն բերանս,
Եւ հեւհեւեալ ալևորաց բոյժ դարմանոյ յօրինեն:
Սակայն ոչ Մարաց աշխարհ պուրակազեղ արգասաւոր,
Ոչ Գանգէս գեղեցիկ կամ թէ Հերմոս ոսկեթաւալ
Մրցասցեն ելանել ըզպարծանօք Իտալիոյ,
Ոչ Հնդիկք, Բակտրիացիք և կամ բոլոր Պանքայիա
Յաւազոյս կնդրկաբերս առ հասարակ պարարտացեալ:
Այս երկիր՝ ոչ զցլուարակք հրաշունչք 'ի քիթս հատին ակօս,
Եւ ոչ ժանիս զանարի վիշապ օձին սերմանելով.
Բուսեցին սաղաւարտեալ նիզակախուռն արանց հասակք.
Այլ առլցուն զեղուն բերք ուռխք մասիկեան Սպանդարամետին,
Եւ կայտառ դառակք անդեաց և ձիթաստանք ծածկեն ըզսա:
Աստի ռազմիկ պոռ գեղազատ 'ի դաշտ դիմէ բարձրավիզ,
Անտի հօտքըն լուսակիզն և զըւարակ պատարագ մեծ
Լուացեալք ըստէպ, Կլիտումնէ, 'ի քո վըտակըս սըրբանուէր

136. Արեաց աշխարհ ըստ մեզ իմանալ զնոյն իմն զՄարացն կամ զՄարապարսացւոցն: Գանգէս գետ ոսկեբեր է Հնդկաց, Հերմոս Լիւդիոյ՝ յոր բերեալ խառնէ Պակտոլ զոսկեխառն աւազ իւր:

139. Բակտրիացիք ազգ էին սահմանակից Պարթևաց և Հնդկաց, առ որս և Բակտոս գետ ոսկեբեր ասի լեալ, և երկիրն ինքնին բարեբոյս: Խորենացին նոյնացուցանէ զԲակտրիացիս ընդ Մեդաց, և մեգացիք նոյն համարին ընդ Մարս: Պանքայիա կամ Պանքէա է Արաբիա կամ Սաբա գաւառ երջանիկն Արաբիոյ, յորում բուսանի թուփն խնկաբեր:

141. Ընդ հեթոսն իմն ակնարկէ 'ի կոլքիսական կամ եգերական առասպելն; որ ցուլս իմն բոցաշունչս ասէ լծեալ 'ի Կոլքիս կամ յԵգեր, և Յասոնի նուաճեալ զնոսա, և վարեալ զերկիրն, և ցանեալ զատամունս վիշապին՝ որ պահէր զգեղմն ոսկի կամ զոսկեգեղմնակ գզաթն, բուսան ելին 'ի նոցանէ նոյնչափ զօրականք: Փոքր մի յառաջ քան զեգերական առասպելդ՝ և Կադմեայ ցանեալ ասի 'ի Բիովտիա զժանիս վիշապի միոյ յերկիր ըստ պանելոյ, և նոյնպէս սաղաւարտեանց բուսանել: Կամի ասել, Իտալիա ոչ յառասպելս ճոխանայ, այլ 'ի ստոյգ բարիս, 'ի ցորեան, 'ի գինի, 'ի ձիթենիս, 'ի հօտս և յանդեայս:

144. Մասիկոս լեառն Կամպանիոյ այգեւէտ և գինեւէտ. վասն որոյ մասիկեան ուռխք Սպանդարամետին՝ են մասիկեան գինեաց առատութիւն:

148. Կլիտումնոս գետ Իտալիոյ յՈւմբրիա գաւառին: Ոչ զենուին զոհս կապիտոլեանն Արամազդայ 'ի յաղթանակս՝ մինչև լուացեալ զնոսա 'ի գետ անդր, և աստուածեղէն իմն զօրութիւն 'ի ջուրսն համարէին՝ սպիտակ առնել զնոսա: Եւ զոհն էր ցուլ, որ առաջի յաղթական կառացն ընթանալով ածել ասի զյաղթանակն 'ի տաճար:

Յաստուածոց ածին տաճարս ըզյաղթանակս հռովմէական։
Աստ գարուն յաւէժական և յօտարին ամիսս ամառն,
Հօտք երկիցըս սաղմնաւորիկ, երկիցըս ծառք արդիւնաւորք.
Իսկ մոլեգին վագերք քաւ և ամեհի ձետք առիւծուց,
Եւ ոչ խընդրամոլիք խաբէն երբէք ըզհէք կըթողս.
Ոչ անբաւ քըմթըռնոցս ընդ սող յերկիր յափըշտակէ
Ուոչ յայնքան պարոյրս առնու զիւրև ոլորս օձ թեփամորթ։
Յաւել զայնչափ հոյակապ քաղաքս և զերկըս վաստակոց,
Ըզդըղեակըս դաստակերտ կարկառակոյտ 'ի սեպ վիմաց,
Եւ որ քերեալ առ վաղեմի պարըսպօք գետք անցանեն։
Ըզծովն որ 'ի վերոյ և որ ներքուստ ողողանէ,
Եթէ զլիճս յիշեմ բազումս, ըզքեզ ըզմեծըդ Լարիոս
Եւ ըզքեզ ծովակուտակ ալեօք գոչմամբ յոխորտ Բենակ.
Թէ զլաստից դադարս յիշեմ, ըզԼուկրինեայ եղեալ փականս
Եւ ըզծովըն խոժոռեալ մըռընչելով ցասմամբ մեծաւ,
Ուր յուլեան ծըփանք հընչեն 'ի յանդընդոց յետս ընկըրկեալ,
Եւ յորձանք տիւռենականք ընդ աւեռնեան խաղան ներքուց։
Զարծաթոյ սա հիւքս առուս և զպղընձոյ բովըս քըրայից
Յերակունսըն ցուցանէ և յորդաբուխ ոսկւով զեղու։
Սա զարի արանց զըրոհ՝ զՄարսիկս եհան, զարքաուն սաբեան,

150. Յօտարին ամիսս, այս է յամիսս ձմերայնոյն։

159. Վերին ծով ադրիականն է՝ որ 'ի հիւսիսոյ կայ Իտալիոյ. ներքին՝ տիւռենականն որ 'ի հարաւոյ. երկոքին 'ի տուր և առ մարդկան պատեհաւորք։

160. Յամենայնի չափաւորն Վիրգիլիոս զերկուս ևեթ յիշատակէ 'ի ծովակացն Իտալիոյ. զԼարիոս՝ ընդ Ալպեօք 'ի վիճակին Մեդիոլանու, զոր և մեծ ասէ վասն երկայնութեանն. և զԲենակ 'ի սահմանին Վերոնայ, որ վասն լայնութեանն իբրև զծով հողմակոծի։

162. Լուկրինոս ասացեալ գոգն՝ որ 'ի պուտէոլեան մեծի ծոցին Կամպանիոյ, վաղուց նաւահանգիստ էր բայեան կոչեցեալ, և ամբարտակաւ մեծաւ պաշտպանեալ ընդդէմ տիւռենական ծովուն։ Կից նմին կայր 'ի ցամաքի աւեռնեան լիճն նուրբ առուիւ բերանացեալ 'ի նաւահանգիստ անդր։ Առ Հոկտաւիանոսիւ Աւգոստեաւ խարխարեալ ամբարտակին, նորոգեալ ամրացոյց զայն կայսր՝ Ագրիպպայ խորհրդով, և զաւեռնեան լիճն խորացուցեալ և լայնեալ զբերան նորա՝ խառնեաց միացոյց ընդ Լուկրինեայ, և նոր իմն անդորր և անքոյթ դադար կազմեաց նաւաց իւրոց, որ և յուլեան նաւահանգիստ անուանեցաւ այնուհետև (տ. 515)։ Յայս ունին դիտաւորութիւն ասացեալքդ. փականք են ամբարտակն և թումբ ընդդէմ ծովուն, ընդ որ իբր գժգմի և զայրանայ, և ստիպի յետս ընկրկիլ անտի՝ ուր յուլեան ամրացեալ ալիքն ծփին, և ընդ այնս տիւռենականքն խորտակեալք՝ մեղմով գնան մտանեն մինչև յաւեռնեան երբեմն լիճն։

168. Այժմ զազգս Իտալիոյ և զմեծամեծ արանցն հռովմայեցի յիշատակէ։ Մարսիկք, սաբեանք կամ սաբինեցիք, Լիգուրացիք և վոլսկեանք՝ ազգք էին զօրաւորք. իսկ դեկեանք՝ տոհմ մի, Մարիոսք երկու և կրկին Սկիպիոնք՝ արք աւագք հռովմայեցիք։ Կամիլլոս մի ևեթ է 'ի պատմութեան անուանի, թէպէտ և բնագիրն առ բազմաւոր ունի զանունդ. թեր-

ԸզԼիգուրըն վըշտամբեր և ըզՎոլսկեայս մըկընդաւոր.
Սա զԴեկոսս և զՄարիոսս սոյն և զմեծըն Կամիլլոս,
Զանվանելի Սկիպիոնանս և զքեզ, վեհազըն Կեսար,
Որ զարդիս յասիական ծայրից ոլորտս յաղթանակեալ
Զապազէն վանես զՀընդիկ 'ի հռովմական բերդորէից։
Արմտեաց ծընօղըդ մեծ՝ մեծ և արանց, ողջոյն ընդ քեզ,
Կռոնեան երկիր, քեզ 'ի հանդէս հին դըրուատից և արուեստի
Ս՚ըկսիմ համարձակեալ ըզսըրբըութեան բանալ զաղբերսն,
Եւ զասկրեան պաշտեմ նըւագ ընդ շինանիստ հռովմէական։

Ժամ է արդ ախորժակաց արտոց, աստիք թէ զինչ անձնիւր,
Որ երանգ և որ 'ի բերս իւրաքանչիւր են ախտարակք։

ևս 'ի պատիւ միոյն՝ զազգատոհմն բովանդակ պատուեալ, կամ որպէս սովորութիւն է երբեմն զբազմաւորականն փոխանակ եզականի առնուլ. զի և յԷնէականին Զ. 842, միաբար վարէ զԿամիլլոսդ. վասն որոյ և աստ միաբար եդաք մեք 'ի թարգմանութեանս։

171. Կեսար աստ է Հոկտաւիանոս Օգոստոս կայսր։ Իսկ թէ զոր յաղթութեանէ նորա ասիցէ, չէ յայտ։ Են որ կարծեն զթեթև յաղթութիւնս ինչ նորա նշանակել 'ի վերայ Կլէոպատրայ և եգիպտացւոց, որ յառաջ քան զակտիական պատերազմն։ Եւ են որ զնոյն ինքն զակտիականն կամ որ յետ այնորիկ աղեքսանդրեան պատերազմն, յորս և Հնդիկք կային ընդ Անտոնիոսի։ Կամ զի յԵգիպտոսէ ընդ Ասորիս յԱսիա անցեալ կայսեր, և ձմերեալ առ Եփրատաւ, յօրինեաց զիրս ասիացւոց. Հնդիկս իմացեալ ըստ հնոցն ոճոյ զամենայն բնակիչս տապախարշ աշխարհացն արևելից զթխամորթս, և քերթողաբար անձնացուցեալ զգոյզն իրսն։ Եւ զի ատեան կալեալ և որ յետ այնորիկ անցք կրտսեր համարին ժամանակաւ քան զգըրութիւն այսր գրոց, յետոյ ուրեմն 'ի Վիրգիլեայ յաւելեալ թուին ոմանց տողքդ։ Բայց ոչ ճշգիւ գտանկաւ յայտնի ինչ են հաշիւք ժամանակացդ։ Տես և Գ. 26։

173. Կռոնեան կամ սատուռնեան երկիր է Իտալիա, ուր Կռոնոսն՝ որ և Զըռուանն և Սատուռնոս՝ հալածեալ յերկնից և փախուցեալ եկն ապաւինեցաւ. և առ իւրև ժամանակք՝ ոսկեղէն համարեցան գոլ։ Վասն քո, 'ի քո փառս, ասէ, մտիմ 'ի գործ զովելի առ նախնիսն և 'ի վայր արկեալ 'ի նոցանէ, առաջին լինելով 'ի մէջ հռովմայեցւոց 'ի բանալ զսուրբ աղբիւրսն այսր քերթողութեան։ 'Ի Հելիկոն լերին աղբիւր Ագանիպպէ կամ Հիպոկրենէ որպէս և կաստաղեանն առ Պառնասաւ, համարէր բղխել ըմպելեացն զամենայն ծորանս բանաստեղծութեան։ Աղբիւր այսպիսի 'ի մէջ խաղացուցեալ, ասէ, զասկրացի տաղերն երգեմ, այս ինքն է հեսիոդեան ըստ համարակաց մեկնութեան. զի Հեսիոդոս կումացի, ծնեալ յԱսկրա գեղջ Բէովտիոյ առ Հելիկոնիւ և առ աղբերբքն, վաղնջական քերթող հելլենացի, արարեալ էր նախ քան զինքն քերթուած ինչ մշակական։ Բայց ոչ եթէ 'ի Հեսիոդեայ առնու Վիրգիլիոս զառաջս իւր, այլ զմեր 'ի վերոյ նմանութիւն միայն նիւթոյն իմանալի է, մանաւանդ ըստ այժմու առ մեզ հասեալ գրոցն Հեսիոդեայ՝ որ Գործք և տիւք կամ Վաստակք և աւուրք մակագրեալ, ուր հազիւ թէ սուղ ինչ պատուէրք մշակութեան երևին խառն ընդ խրատս վարուց. մինչ զի կարծել ոմանց թէ այն քերթուած Հեսիոդեայ ոչ բովանդակ հասեալ իցէ առ մեզ, այլ կրճատ. և կամ թէ այլ ինչ գոյր նորա մշակական քերթուած՝ որ այժմ չէ 'ի միջի։ Եւ այսր կարծեաց գտանեն նշմարանս ինչ հաւանութեան առ 'ի նախնեացն գրոց։ Սակայն մարթի ևս ասկրացի տաղս իմանալ որպէս աւանեանս կամ կաստաղեանս, այս ինքն պարզաբար քերթողականս. յոր միտս և Պրոպերտիոս ասէ ճանաչել զասկրացի աղբերսն, բնակել յասկրային անտառին. (Եղեր. Բ. Ժ, 25. ԺԳ, 4)։

Նախ խոշոր և առապար գետինք և բլուրք ժանտ և դըժնեայք
Ուր անօսր 'ի խառն է կաւ և խիճ ընդ անդ մացառամոլ,
Պալլասեան խայտան մայրեօք կենդանազուարճ ձիթաստանին.
Նըշանակ քեզ վայրենւոյն բոյս խունձախիտ 'ի նոյն տեղիս
Եւ վայրի հատքըն սըփռեալ թանձրատարած 'ի դաշտորայն։
Այլ պարարտ երկիր և քաղցր հիւթով յուռթի և բարգաւաճ
Եւ դաշտ խոտաւէտ առատաբուխ և արգաւանդ,
Զոր դիտեմք յաճախ լերանց 'ի խորաձորս և 'ի ծործորս
Ուր խաղացք ջուրց վըտակաց 'ի բարձրաբերձ ծորեալ ժայռից
Սարէն զան սիկ երջանիկ, և որ պարզեալ 'ի հարաւ կոյս
Զատելին կոր արօրոյ մնուցանէ զսէզ դըժոխարմատ.
Դա քեզ հըզօր գինեւէտ երբեմն այգեաց մատակարար,
Ողկուզից դա քաջաբեր, դա լինիցի քեզ վիժակաց
Զոր դից ոսկի նըւագօք դաշխուրանօք հեղումք նուէր
Մինչդեռ յոյր տիւռենացին փըչէ զփըղոսկըր առ բագնաւ,
Եւ գոգեալ սկաւառակօք ըղջերմաջերմ հանեմք ընդերս։
Իսկ անդւոյ թէ փոյթ յաւէտ է և որթուց դարմանելոյ,
Կամ զօդեաց ըզծընունդս և զփաղաղիչ հերկոց այծիս,
Զանտառս և զյագ Տարենտոնի զհեռաստանեայս խընդրեսջիր,
Եւ գետին՝ զորպիսի կորոյս Մանտուա թըշուառական,
Ուր ձիւնաթոյր ճարակին կարապք 'ի գետ իւր լռաւէտ,
Ոչ աղբիւրք ականակիտք՝ ոչ դալարիք կարճին հօտից.

182. Պալլաս է Աթենաս աստուածուհին՝ արարիչ ձիթենւոյ, որում և նուիրեալ իսկ էր. տես ա. 14. և երկարայաւէտ կենդանութիւն ձիթենւոյ յայտնի է։

190. Սէզ ատելի առի արօրոյ, զի դժնդակ արմատովքն կռուեալ ընդ խոփին արգելու զընթացս նորին, մանաւանդ որ կազնուան կոչի 'ի մշակաց։

192. Վիժակաց գինւոյ, զոր դից նուիրեմք 'ի հանել մատուցանել զընդերս զոհից 'ի սեղանս, առ որովք թանձրամարմին փողար տիւռենացի, այսինքն ետրուրացի կամ տոսկացի, հարկանէ փող կամ սրինգ փըղոսկրեայ։ 'Ի զոհագործութիւնս սովոր էին ունել փողար ետրուրացի, որ և գերապարարք էին սովորաբար կամ յազգին ախտարականց կամ զպարարտունս զոհիցն ուտելով։ Եւ որ զգիրութիւնն 'ի փքոցուոյց թռալիր այտս փչելոյ որնգահարին առնուն։

197. Այծք մասանն անդոց՝ ատամամբքն խածատելով կամ լորձամբքն այրելով, որով խամրին բոյսքն։

198. Յագեալ ասել զՏարենտոն վասն առատութեան արգաւանդն է։ Յարոտ անասնոց խնդրեա, ասէ, երկիր իբրև զհեռաւոր անդաստանսն Տարենտոնի. կամ որպիսի ինչ կորոյս տառապեալ հայրենիքն իմ Մանտուա, զորոյ զարտորայս Հոկտաւիանոս Կայսր 'ի միաբան հաւանութենէ եռապետացն բաշխեալ ետ հինաւուրց զօրականին 'ի պարգևս։ Եւ Վիրգիլիոս ինքնին չև ծանօթացեալ աւագանւոյն 'ի Հռոմ՝ կողոպտեցաւ յայն ագեստ 'ի հայրենի վիճակէն իւրմէ. բայց ապա կայսր դարձոյց 'ի նա զամենայն՝ Մեկենասայ բարեխօսելով։

Եւ որչափ ինչ կըծանեն յերկարատեւ աւուրս անդեայք,
Նոյնչափ 'ի սուղ գիշերի հասուցանէ ցօղ զովարար։
Աւազորչ երկիր պարարտ 'ի մուղ 'ի վար հատու խոփոյ,
Եւ քըրքէր անօսրահող՝ յոր նախանձիմք յարօրադրելն,
Ի վայելուչ ցորենոյ, և ոչ յայլում տեսցես անդէ
Բազմագոյն 'ի տուն դարձեալ սայլս յամրաշարժ զըւարակօք.
Կամ թէ այն՝ յորմէ զանտառսըն սըրտմըտեալ խըլեաց մըշակ,
Եւ զմայրիս՝ զապաժամանսըն բազմամի՝ հար տապալեաց,
Ըզվաղեմի տունս հաւուց տակակոտոր խըզմամբ քանդեալ,
Այց լըքեալ ըզբոյնս իւրեանց՝ արփաթեւեալ սլացան 'ի տար,
Իսկ արտըն բիրտ՝ 'ի մաճին 'ի կիրթ 'ի ճեմ պայծառացաւ։
Զի երեգըն ծարաւուտ 'ի զառ 'ի թափ հովտաց եմակս
Հազիւ թէ մատուցէ նըկուն նարդոս մեղուաց և ցօղ։
Եւ տունկ քար չէչաքար և կաւ ճարակ սեաւ վիշապաց
Ոչ ումեք առնուն քեզ յանձն այնչափ այլոց դաշտորէից
Պատրաստել որջ կամակոր և քաղցր օձից պաշտել պարէն։
Որ շընչէն նուրբ. շամանդաղ և գոլոշի օդապարիկ,
Եւ զհոսանս ըմպէ ցօղոյ և երբ կամի ցընդէ 'ի դուրս,
Եւ որ իւրով դալարեօք կանաչազեղ միշտ զարդարի,
Եւ ոչ 'ի քոս, ոչ յաղտաղտին զերկաթ 'ի ժանգ հարկանէ,
Նա քեզ՝ զըւարթ այգեօք պաճուճեսցէ զնըրշդարենիս։
Նա բերուն ձիթաստանեաց, ըզնա գըտցես 'ի մըշակելն
Համբուրասէր պաճարի՝ նոյն և կռածագ խոփոյ ժուժկալ։
Զայսպիսի ճոխն հերկէ Կապուա և պարագայք լերին Վեսուէ

205. Ջորոյ զնախանձ նմանութեան բերեմք 'ի վարելն զերկիր և յակօս կոտորել, զի քըքրեալ անօսրեալ փափկասցի։
207. Ցամբաշարժ բնութեամբ են արջառք, և ես ծանրաքայլ լինին առ 'ի ծերութենէ բեռինն, որով տառապութիւն հնձոց արդեանցն նշանակի։
214. Նարդոսն բոյս և ծաղիկ է վայրի՝ սիրելի մեղուաց։ Իսկ ցօղ ըստ հմուտ մեկնչաց Վիրգիլեայ՝ քաղցր շաղն է զոր 'ի բուսոց և 'ի ծաղկանց ծծեն մեղուք, և նոյն իսկ ծաղիկք՝ յորս նստի ցօղն։ Իսկ ոմանք նմանաբար բոյս խնկենի իմանան և զայն։
215. Գետինք որ սունկ քար և կաւ են, այնչափ 'ի նոսա ճարակին օձք, մինչ ոչ ումեք յայլոց դաշտաց թողուն՝ դադար լինել օձից քան զինքեանս և կերակուր քաղցր պատրաստել նոցա. այս է՝ քան յամենայն հողս 'ի նոսա զարանին օձք և սնանին։
218. Շոգւով պատեալ է և ըմպէ ցօղ 'ի շոգւոյ անտի կամ յերկնից. և զնոյն ապա վերստին ջերմութեամբ ցնդէ 'ի գոլոշի։ Թուի ակնարկել 'ի կողմանս Կամպանիոյ, որ ընդ ժամս ինչ տուրբինջեան ծածկեալ է մգով. և թէպէտ ոչ ջրարբի իցէ երկիրն, սակայն յուռթի է միշտ և բերրի։
225. Կապուա մայր քաղաքաց Կամպանիոյ, և Վեսուէ լեառն այնր գաւառի, որոյ շըջակայքն առհասարակ զարմանալի էին արգաւանդութեամբ յառաջ քան

Եւ ամայի Մեգերեայց անկարեկիրըն Կլէմնիոս։
Արդ զկարգ զիւրաքանչիւր առցես ծանօթըս՝ պատմեցից։
Նօսր իցէ խընդրես, թէ թանձրահող քան զորէն.
Որ քանզի մին ցորենոյ՝ միւսըն գինւոյ 'ի շնորհ եկեալ,
Թանձրըն յաւէտ Դեմետրի, Սպանդարամետին անօսրահողն.
Արկանեալ ըզվայրըն նախ՝ վիրապ մ' 'ի տրամ խոր յատակին
Հատանել տացես հրաման, և զհողն ողջոյն արկեալ անդրէն,
Ոտն 'ի վերայ տրոփելով զերես գետնոյն կոխեսցես 'ի հարթ։
Պակասեալ, անգայտ իցէ, և անասնոց պարարտարօտ,
Եւ յայգի կենսակայլակ 'ի դէպ երկիր բերրի հիւթեղ։
Իսկ թէ հողն յանձն ոչ առնու գնալ յիւր տեղին պատըսպարել
Եւ 'ի կուռ խորխորատէն վըտարանդեալ կացցէ 'ի բաց,
Ծանրախիտ է դաշտավայր, ժիր արջառօք բեկցես ակօս,
Կոշտքըն քեզ թանձրադանդաղ ուղղունքն երցեն բիրտ և դըժնեայ։
Իսկ երկիր աղտաղտուկ և դառնաքեր համբաւելի,
Արդեանց անբարեփորձ՝ ոչ քաղցրանալ գիտէ յարօր,
Ոչ գինեաց ըզզարմ խուրեանց և ոչ զանուանս պահէ պտղոց։
Այս լիցի իւր հանդէս. դու զսերտ հիւսկէն ըզտառաղանս
Եւ ըզպարզուտս հընձանին 'ի ծըխամած հան 'ի յարկաց,
Եւ անդր 'ի ներքս արտըն չար և քաղցրահոս աղբերց ալիք
Ի լիակոխ արկեալ 'ի վեր՝ ջուրն ամենայն ներկըրտեսցի,
Մեծամեծ գնասցեն կաթիլք ընդ ուռենի հիւս կողովոց,
Այլ ճաշակ համոյն յայտնի բերցէ յանձին տխալ տարացոյց,
Եւ զքիմս 'ի փորձ դառնալըլուկ մորմոքեսցէ զճաշակելեաց։
Իսկ թէ ոյր պարարտ է հող՝ 'ի սոյն պայման ուսանիցիմք.

զհրայրեացս և զհրահոսանս լերինն որ առ Տիատոխւ եղեալ, յորում և կործանեան Պոմպէա և Հերկուլանոն քաղաքք և բնախօսն Պլինիոս յեօթանասուն և ինն ամի հասարակաց թուականութեանս։

226. Մեգերայք էր քաղաք Կամպանիոյ մինչ հեռի 'ի Նէապօլսէ, առ որով անցանէր գետն Կլանիոս։ Յոյժ արգաւանդ էին արտորայք ընդ որ անցանէր գետըդ՝ մշակեալք 'ի շրջակայ բնակչաց նորա. այլ առէպ ողողմունք նորա աւերականացուցեալ փախուցին զնոսա. և ամայացաւ քաղաքն Մեգերրայց. սմին իրի անկարեկիր կամ անխնայ առ նա ասէ զգետդ։

230. Սրացեալ եղև Դեմետր զցորեան լինել, Սպանդարամետ զորթ և զգինի։

234. Եթէ ամփոփեսցի հողն 'ի գուբն և պակասիցի ևս 'ի լնուլ զայն, անօսր է. իսկ թէ ոչ կարասցէ ամփոփիլ բովանդակ և 'ի գուբս մնասցէ, խիտ է, և զօրաւոր արջառոց պէտք են 'ի վարել զայն, և հողակոշտքն կամ գուղձն թանձր լինի, և ուղղունքն՝ այս է մեծամեծ կոշկոռքն կամ կոհակք պատառեալ ակօսիցն՝ կորդ և բիրտ։

242. Խորթացուցեալ զնոսա և յայլաբուն սեռ օտարացուցեալ, մինչ ոչ ևս պատշաճել նոցա առ այլին ծանօթ անուանցն։

Ոչ ձեռաց այն 'ի գլխին շօշափական խորխոլեսցի ,
Այլ իբրեւ ձիւթ 'ի մատունս դանդաղաճած կըառնի յունեսն ։
Յուռթին 'ի ջոյլ բուսարձակ է քան զարժան բերկրապատար .
Բաւ յինէն , ո՛հ մի լիցի նա ինձ անչափ առատամիտ ,
Այլ ցուցցէ մի զինքն ուժեղ 'ի նախաբոյս բողբոջ հասկաց ։
Նանր եւ թեթեւն ինքնին կըշռով գայ լռելեայն յերեւան .
Զարջնաթոյրն աչօք գիտել եւ զմէն միում առ ձեռն է գոյն .
Այլ զոճիր ցուրտն անօրէն հարցափորձել է դըժուարին ,
Բայց միայն կըւենիք՝ մերթ եւ յակրիք եղեւնաւորք
Կամ սեւադէմ բաղեղունք ըզնորին հետս յանդիմանեն ։

Յետ այսըր քըննելոյ՝ միտ դիր երկրին յառաջագոյն
Կակղելոյ եւ հատանել փոսս 'ի լերինըս մեծամեծ ,
Նախ ըզկոշտսըն յորսայսեալըս հողանել դէմ հիւսիսոյ
Մինչ չեւ այգեստանեաց ազըն տընկեալ զըւարթամիտ .
Քաջ է արտ փըխրան գետնի՝ յոր ցուրտ եղեամն եւ հողմք հօգան
Այլ կորովին երկրագործ ըզխախտեալ անդ խարխարելով ։
Այլ սակայն թէ զգուշութիւն ինչ յորերոյն չիցէ զանխուլ ,
Այսըս ընտրեն նըմանս յառաջ՝ ուր նախ տընկոցն հանդերձի բոյս ,
Այլ ուր եւս այնուհետեւ փոխեալ 'ի կարգ յօրինեսցին ,
Զի լինիցին մի յուրաստ որդիք ըզմայրն երագափոխ .
Նա՛ւանիկ 'ի կեղեւին նըշանակեն եւ զերկնի մարզ
Զի զմէն մի՝ որպէս եւ կայրն՝ յայնըմ կուսէ եւ կացուսցեն
Ուստ առնոյր տապ միջօրէ եւ զոր շըրջէր թէկն 'ի բեւեռ .

254 . Զի երկիր՝ որոյ զօրութիւն իւր 'ի խոտ եւ 'ի տերեւ ծախեալ սպառիցի , ապիկար գտանի 'ի պտղաբերութիւն ։

258 . Զվնասակար ցրտութիւն գետնոյն կամ զցուրտ հողն դժուարին ասէ 'ի ճանաչել , բայց միայն նշանակեալ ցուցանեն զայն երբեմն կուենիք կամ հերձիք , եւ յակրիք կամ ցրգիք , եւ սեաւ բաղեղունք , այնու զի յայնպիսի վայրս բուսանին ։

262 . Վասն զի 'ի լերինս կամ 'ի բլուրս տնկին սովորաբար այգիք ։ Բայց վերագիրն Մեծամեծ՝ աւելորդ իմն թուեցեալ տառանոր զլերանցն , կարծիս տայ ոմանց լերինս մեծամեծս իմանալ զպեղեալ հողակոյտս բլրաձեւս , ըստ որոց եւ մեծութիւն փոսիցն կամ գբոցն նշանակի ։ Եւ այս՝ զի չոր հողմով հիւսիսի փուխ լիցի գետինն . զի այնպիսի հողն լաւ է այգեաց , զոր եւ կատարեն ցուրտ եղեամն եւ հողմունք , եւ ժիր հողագործն քրքրելով ։

268 . Տնկոց իմա որթոցն եւ առ հասարակ իսկ ամենայն ծառոց . որոց երկուս տեղիս նմանակս ընտրեն , ասէ . մի՝ յորում բոյսն պատրաստեսցի , եւ միւս՝ ուր ապա փոխեսցին ։ Եւ նմանք ընտրին տեղիքն , զի մի յետ փոխելոյն՝ չճանաչիցեն տունկք զնոր մայրն՝ զփոխեալն անդէն 'ի մատաղութեան , եւ խորթացին՝ չաջողեսցին անպտուղ եղեալք ։ Ցայս սակս եւ զգիրս եւ զհայեցուածս անգամ կողմանց տնկոցն նշանակեալ 'ի կեղեւին՝ 'ի նոյնս եւ փոխեն զդէմսն , որ 'ի հարաւ՝ 'ի հարաւ , եւ որ 'ի հիւսիս՝ 'ի հիւսիս ։

Այսպիսի կարեւոր մատաղ տիոցն է սովորոյթ։
Տես նախ՝ զայգիս 'ի բլո̂ւրս լաւ է դնել թէ 'ի դիւրի։
Ոչ է զպարարտ չափես դաշտացըն զանդաստան, խիստ տընկեաջիր.
'Ի թանձրախիտ արտորայ՝ չէ որթատունկ տարտամագոյն.
Իսկ թէ զվայր կոհակաւէտ և զզարեանգս առ 'ի կողեալ,
Եր 'ի շարսըն ներող, սակայն 'ի կարգ սահմանաչափ
Տողեալ փայտից բոլոր շաւիղք կըշխ 'ի ճահ ճըշգըրտեսցին։
Իբր 'ի մեծ ռազմի յաճախ, ուր բոլորեալ երկար բանակ
Տարածեալ լաստեալ ըզգունդս 'ի դաշտ արձակ եկաց գումարտ,
Ճակատք կարգեալ յօրինեալք, և բնաւ 'ի բաց շողայ երկիր
'Ի փայլուն պըղընձոյն, չեւ են ահեղ մարտին խառնուրդք,
Այլ Մըրես տարակուսեալ կայ թափառեալ 'ի մէջ զինուց.
Միենայն ճանապարհքըն զուգաթիւ անկցին 'ի չափ,
Ոչ զի սիրտ եւեթ ունայն ճարակեսցի յաչաց տեսիլ,
Այլ զի այլ ինչ ազգ չըտայ բնաւից երկիր ոյժ հաւասար,
Եւ ոչ բարունակք սըփռել ընդ օդ կըռն ձեռընհաս։
Զինչ զըբոցն և վիհք խորոց իցեն արդեօք կամիս գիտել։
Զորթատունկ 'ի դոյզն ակօս իսկ աւանդել համարձակիմ.
Իսպառագոյն յանդունդս երկրի հարըստի ծառ, շօճ մանաւանդ,
Որ որչափ թեւակոխէ գագաթն 'ի սիք արփիաճեմ,
Նոյնչափ 'ի խոր սանդարամետս արմատք դիմեալ ընթանան.
Ոչ խըլէն զայն ձըմերունք՝ ոչ փուքք և ոչ տեղատարափք,
Այլ ահա կանգնի անշարժ յորդւոց որդիս անցեալ յաղթօղ
Զյօգնահոլով յաւիտեանք դարուց ազգաց յաւէրժացեալ,
Եւ բազուկս ամրաստեան շուրջանակի յայսկոյս յայնկոյս
Արձակեալ՝ ինքն 'ի միջի անդ հովանի մեծ ամբառնայ։

275. Այս ընտրութիւն դիւրի կամ բլրոյ իմանալի է ըստ մասնաւոր կողմանց երկրի կամ դրից այգեստանին կամ յատկութեան որթոցն. ապա թէ ոչ՝ դաշտ և բլուր հաւասարակ պատշաճին այգեաց։

276. Չափէս, այսինքն տէր ես, ունիս ընդ ձեռամբ և ձեռս պատշաճս յայգի։

279. Ներող լինելն է անօսր անկել զնոտս։ Բայց օրինաւոր կարգաւ, սակ, տընկեաջիր, զի միջոցքն համեմատ լինիցին. և այսմ օրինակ առնու զտողեալ շարս դաստակաց զօրու։ Եւ այս ոչ 'ի զուարճութիւն եւեթ, այլ զի և ամենեցուն հաւասար ոյժ մատակարարեսցէ երկիրն, և տեղունքն քաղձանս արձակեսցին։

285. Արէս աստուած պատերազմի կամ մարտն ինքն յերկբայս կայ տակաւին՝ յորմէ կուսէ և երբ 'ի կռիւ արշաւիցի և խառնուրդք լինիցին։

296. Հնագոյն գրչագիրք ունէին յորդւոց որդիս, այլք յամայր ամս. բայց անդէպ թըւի Վիրգիլեան կշռութեան, որ ահա անդէն իսկ ասացեալ է զամսն և առաւել քան զամսն յօգնահոլով յաւիտենիւքն։

'Ի խըրթինըն մանանամուտ դէտ մի կայցէ քեզ այգեստան,
Եւ մի յայգեաց 'ի մատմաննդս արքայկաղնի տընկեր բընաւ.
Մ'ի զվերին խընդըրեր զըննդակս եւ կամ ծայրիցն ըղխաւարծիլս
'Ի ծառոյն կըծուեսցես, այնչափ ինչ է հողոյն տարփանք.
Զըստեղունըն մի յերկաթ վիրաւորեր 'ի բութ ու'ի գուլ,
Եւ զձիթենւոյն վայրենի կոճեղըն մի տընկագործեր.
Զի յաճախ հուր իմն յանկարծ յանըզգաստից խանձեալ հովուաց,
Սըպըրդեալ զաղտագողի նախ ընդ կեղեւն իւղապարար,
Ճարակեալ 'ի բունս արմին եւ բարձր 'ի վարսըն սողոսկի
Ահեղ շաչիւն շառաչիւն յերկինս 'ի վեր առաքելով.
Անդ կողերըն անտի յաղթօղ դիմեալ տիրէ ծայրից բարձանց,
Եւ լափլիզօղըն բոցովք զանտառն ողջոյն շըրջապատեալ
Թանձրամած 'ի մուր ձիւթոյն հոսէ'նդ արփի ամպ մըթագին,
Մանաւանդ թէ 'ի մայրիսն անկցի մըրրիկ 'ի հիւսիսոյ
Եւ առեալ հողմ ըղհըրըղեհըն փաթորկեալ պըտուտկեսցէ։
Յայնժամ ոչ յարմանց զօրեն եւ ոչ կըտրուեալք կարեն դառնալ
'Ի հողոյն 'ի ծոցոյ ծաղկել 'ի գեղ ըսկըզբնատիպ.
Թշուառական ձիթենին դառնատերեւ արձանանայ։

Հանճարեղ ոք առաջնորդ մի զքեզ ածցէ գալ 'ի հաւան
'Ի շընչել խիստ հիւսիսոյ պեղել զերկիրըն կարծր եւ քիրտ.
Պընդէ զանդ սառամանեօք ձըմեռն, եւ ոչ տացէ վարել
Սերմանն արկանելոյ զպաղեալ արմատն 'ի խորս երկրին։
'Ի վարդագոյն գարնայնի քաջ է այգեաց մըշակութիւն,

300 · Այգիդ, ասէ, մի յարեւմուտս կոյս ունիցի զհայեցուածն, բայց առաւօտ եւ ոչ մի ինչ պատճառս նշանակեալ պատուիրանին. եւ գիտեմք զի հինքն յոյժ երկպառակք էին զերից այգեաց։ Եւ մի տընկեր 'ի նմա արքայկաղնի 'ի նեցուկ որթոցդ, որպէս սովորութիւն է յիտալիա զծառովք պատել զբարունական, զի բազմախուռն արմատովքն ծծէ ապառէ կաղինք զզօրութիւն երկրին։

302 · Յորժամ շառաւիղս խնդրեսցես տնկելոյ, մի զվերին բարձր գիտակսն կամ սաեղունսն հատցես, այլ զխոնարհագոյնսն, որ 'ի մօտ գոլով հողոյն՝ դիւրաւ արմատանան եւ աճողին, զի յոյժ սիրեն զհողն։ Ոմանք կրկին պատուիրան իմանան զայդ. մի՝ չխնդրել զվերին գիտակսն, զտնկելի շառաւիղացն զծիլս ծայրիցն ընդ վայր հարկանել, հատանել ընկենուլ. եւ միւս՝ զտնկելի շառաւիղսն մի 'ի բարձր սաեղանց տնկոյն առնուլ։

313 · Մըրրիկ 'ի հիւսիսոյ. բնագիրն ասէ 'ի Գոգաւնոյ. կէսք իմանան 'ի հիւսիսոյ, զոր վասն բարձրութեան քեւռին՝ գագաթն ասեն. տես ա. 246, 248. իսկ այլք իմանան 'ի բարձանց երկնից կամ 'ի գագաթանց ծառոցն։

316 · Յայնժամ 'ի լինել այսպիսի հըրդեհի՝ ոչ եւս յարմատոցն կարեն շառաւիղել հըրկիզեալ այգիքն, եւ ոչ թէ յատոցն. եւ մնայ միայն ձիթենին վերընձիւղեալ։

Յորժամ գայ լուսափետուր հաւն ոխերիմ երկայն օձից,
Կամ առ դուրս աշնանային ցըրտոյն և յելս ամարայնոյ,
Մինչ սըրաթռիչ երիվարօք չև արեգակն 'ի ձմեռն հասեալ:

Գարուն վարսից անտառաց՝ գարուն մայրեաց է շահաւէտ.
Գարնային ուռնու երկիր, ծընընդական ժըռտէ սերմանս.
Ընդ յայնժամ ամենազօր հայրըն Եթեր իջանէ գայ
Բերրի ցօղոյն տարափովք 'ի բերկրալի ծոց ամուսնոյն,
Եւ մեծին խառնեալ 'ի մեծ մարմին ըզբնաւս կենդանածնէ.
Ընդ անմարդի թաւաթուփք 'ի քաղցրաձայն հընչեն հաւուց
Եւ անդեայք ըստ նըկատեալ աւուրց 'ի խառնըս դարձ առնեն:
Երկնէ երկիր կենսատու, և քաղցրասիւք ջերմն օդովք
Լայնեն անդք զիւրեանց արգանդ, յորդէ բնաւից հիւթ փափկասուն.
'Ի նոր արևս անվեհեր բուսակք զանձինըս հաւատան,
Զերկընչի ուռ որթոյ թէ յառնիցէ հարաւահողմ
Կամ յերկնից թէ շարժեսցեն տեղ և տարափ բուռն հիւսիսակք.
Այլ բողբոջս արձակեալ ստեղնեալ փըթթի տերևախիտ:

Ընդըստին 'ի սկըզբանէ նորածընունդ տիեզերաց
Ոչ տիւս այլ կարծեմ ծագեալ կամ այլ իմն ազգ վարեալ ոճով.
Գարուն էր այն, գարուն անդ ընթանայր ընդ մեծ աշխարհս,
Եւ հողմունք անխայէին 'ի ձմեռական բըքոց շընչմունս,
Մինչ դեռ նախ բոյլք երէոց տեսին զարև կենդանութեան,
Եւ երկաթի զարմ արանց 'ի կորդ դաշտաց ամբարձ ըզգլուխ,
Եւ գազանք սըփռեալք յանտառս, աստեղաց դասք յերկնից կամարս:
Եւ ոչ զայս նոր արարածք համդուրժէին բերել վըտանգ,
Թէ ջերմոյ ցըրտոց 'ի մէջ չէր տիրեալ խոր խաղաղութիւն,
Եւ երկնից քաղցրահայեաց յերկիր աչօք չէր ակնարկեալ:

Բայց սակայն զոր միանգամ տընկես յանդի անդ շառաւիղ,

323. Օձասպան հաւն արագիլ կամ տառեղն:

328. Ամենազօր, կամ որպէս ասէ գնի ըստ Ճշմարտութեան՝ Եթեր, այսինքն ամպախաղաց պարունակ օդոյս, հայր էից է. ամուսինն նորա Հերա, և ըստ Ճշմարտութեան երկիր. և բերրի ցօղքն այլաբանեալք՝ են անձրևք շայեկանք, զի առանց խոնաւութեան հիւթոյ ոչինչ ծնանի: Այլուր Ամենազօրդ կամ Եթեր իմանի արփին և երկին, իսկ Հերա կամ Օդոյն՝ օդս երկրալիր, ընդ որ խառնի երկին յերկիրս:

341. Վերգիլեայ, որպէս գրեթէ ամենայն բանաստեղծաց, կարծիք են թէ 'ի գարնային ժամանակի ստեղծեալ իցէ աշխարհ: 'Ի սոյն կարծիս է և Խորենացին 'ի գիրս Պիտոյից 'ի ներբողեան գարնայնոյ:

344. Խիստ և պինդ մարդիկ ըստ կարծեաց նախնեաց ծնեալք կամ բղխեալք 'ի կարծր երկրէ, կամ 'ի քարանցն Դեւկալիոնի և Պիւռայի. տես ա. 65, ուր և ազգ դժնդակ կոչեաց:

Երկցես ազգ պարարտութեան ու'ի հող բազում յուշ լեր ծածկել.
Կամ սունկ քար ծարաւուտ կամ խորտաքորտ թաղեա խեփորս,
Ուր ջուրք ընդ մէջ գետացեն և թափանցցէ շունչ մանրաւոք,
Եւ ընծիւղք տընկագործեալք ոգի առեալ կազդուրեսցին:
Են որ ճընշեն և վիմաւ և ընդ խեցւոյ բեռին ծանու.
Այդ ընդդէմ ապաւէն տեղատարափ յորդ շառաչմանց,
Այդ յորժամ Շուն տապեռանողըն զարտ հերձու ծարաւահիւծ:
Յետ ուղէշս արկանելոյ մընայ շարժել խիստ երկմատնեաս
Եւ բստէպ ածել բստէպ ըզհողակոյտն արմանց ընդ ունջ,
Կամ 'ի մաւր արօրոյ զդաշտագետինն առնել աշխատ
Եւ զարջասըն զոգորեալս յայգեստանեն տարուբերել.
Ապէնի ողորկ եղեգունս և կեղևեալ փայտից մահակս
Եւ հացի պատրաստել ձողս և երկճղի մայթըս խեչից,
Յոյց յենուլ 'ի զօրութիւն և քամահել ըզհողմ ուսցին,
Եւ ճըշղարից առ 'ի յատաղ մինչ 'ի գիտակըն հետևել:
Նորև այն ինչ դեռափթիթ ծաղկէ վարսիւք առոյգ հասակ,
Խնայեսջիր 'ի մատաղ տիս, և բարունակ զլուարթ կայտառ
Մինչ ընդ օդս ապարխեալ անարատն դիմէ յերկինս,
Մանգաղացըն սայրասուր բերան չէ յայն է մըխելի,
Այլ մատանց ճիրանաւնք քաղ ըզտերևսըն հանիցեն:
Ապա գիրկս արկեալ կընճռեաց ամփոփ բազկօք մինչ ամբարձցին,
Ազատս յայնժամ սափրեսջիր, յայնժամ ըզթևսըն քըշտեսցես.
Յերկաթոյ սոսկան յառաջ, իսկ յայնժամ սաստ իշխանական
'Ի ձեռս առեալ և զուռոցըն շռայլութիւն կոճոպեսջիր:
Հիւսեսցի և ցանկ 'ի փակ և անասնոց արգելցին սեռք,
Մանաւանդ մինչ փափուկ են դեռ տերևք ուանփորձ վըշտի,
Յորս 'ի վեր քան զկարևոր ձմերունս և զտուռն արև սաստիկ
Գոմէշք վայրի խաղ առնեն և հետայծք այծք հանապազ,
Ոչխարակին և օդիք և շըւայտոտ անյագ երինջք:
Եւ այնպէս եղեմնարկու սառամանեացըն մածեալ պաղ

356. Շնիկ աստղն յորդաբորբ աւուրց ամարայնոյ:

360. Տանել բերել արօրագիր առնե-լով զմիջոցս որթոցն, որպէս ցարդ եւս գործի ուրեք յիտալիա:

362. Օրինակք ինչ ընդ երկուց գըչա-գրաց ն հասարակէ ծայթ:

364. Ջի տմորաբար նշխարքք կամ կնճիռք անկին ծառք'ի յենարան այգեաց:

Կամ թէ ծանր ըզձամպքուտ խոկ պարեխիւք անկեալ խորշակ,
Որպէս այն մեղանչեցին Ջոկք և դըժնիկ ատամանն Թոյն,
Եւ յուղեշիցն 'ի խածուածս անդ երաշխէպ ըսպխացեալ։
Ոչ այլում մեղաց փոխան Սպանդարամետին 'ի բնաւ բագինս
Հարկանի նոխազ և հին խաղք անցանեն 'ի հանդիսի,
Եւ մըրցանակս հանճարոց ընդ գիւղս և յանցս եդին Թեսեանք,
Եւ 'ի նուագըս բաժակաց 'ի հեշտալի մարգագետինս
Հարին կայթըս ցընծութեան վազեալ ընդ տիկսըն իւղաթուրմս։
Եւ աւսոնեան գաղթականք, ազգ եկամուտ 'ի Տրովադայ,
Անհեղեդ տաղիւք խաղան և քըրքջաձայն լուծեալ ծաղու,
Եւ դիմակըս սոսկալիս առեալ գոգեալս 'ի կեղևոց՝
Ընդ քեզ, Սպանդարամետ, կարդան զուարթ երգաձայնիւք,
Քեզ ճօճեն ճապուկ պաճոյճս 'ի բարձրաձաղկըն թեղօշէ։
Աստի՝ այգիք բոլոր բարգաւաճին ճոխ ծընընդովք,
Եւ խոխունք երկայնաձիգք և գոգաձև խըռնին հովիտք,
Եւ յոր կոյս և դարձուսցէ դիօշեալն ըզգլուխ իւր նազելի։
Վասն որոյ Սպանդարամետին հայրենական տաղիւք ըզփառս
Երգելով ըստ օրինի աթերս 'ի տաշտըս մատուսցուք,
Եւ նուիրական զեղջերուց ձըգեալ կացցէ քօշ առ բագնին,
Եւ ըզկոյր փորոտիս խորովեսցուք կաղնի շամփրօք։

383. Ոչ վասն այլոյ իրիք մեղաց, բայց միայն վասն այսպիսւոյ վնասակարութեան այծիցն առ որթս՝ զենեալ լինի Սպանդարամետին նոխազ յամենայն սեղանս, և հին խաղք ողբերգութեան 'ի տեսարանս հանդիսանան։ Եւ զի գամ մի քօշ և քաղ նըզովեալք էին գիցն այնմիկ, 'ի հին ողբերգութեան նոխազ նուիրէին 'ի պարգև քերթողին Թեսեանքն՝ որ են աթենացիք 'ի Թեսէոսէ արքայէն յորջորջեալք. յորմէ և նոխազերգութիւն քերթածքն կոչին մինչև ցայսօր ժամանակի։ Փոխանակ հանճարոյ բազում օրինակք ունէին ընդ մեծամեծ գիւղըս և յանցս։ Եւ վասն նոյն վրէժխնդրութեան, ընդ գինիս մտեալք 'ի սպանդարամետական տօնսն խաղային և ոստոստէին միով ոտամբ 'ի վերայ իւղեալ տկոց այծենեաց փչելոց, իբր 'ի քամահանս և յաղթահարութիւն։

388. Աւսոնեան է իտալական, իտալացի գաղթականք, գաղութք՝ հաստուած եկեալք 'ի Տրովադայ՝ բնակեալք յԻտալիա, այսինքն են հռոմայեցիք, զորոց սպանդարամետական տօնիցն խեղկատակութիւնս յիշատակէ. այն զի մանկունք 'ի գիւղս և յագարակս առեալ յերեսս խափերս չինեալս 'ի կեղևոց, և խաղ արարեալ զանցաւորօք՝ քնցեղս 'ի նոսա ընկենուին և տաղս անհարթս առ յածոյ յանպատրաստից վիժէին, կարդային զԲաքոս՝ որ այն ինքն է Սպանդարամետ, կախէին զծառոց պաճուճեալ կերպարանս զնորա, և կարծէին թէ այսու տօնիւքս քաղցրաբերութիւն այգեաց շնորհեսցեն գիքն, և յոր կոյս զերեսս իւր դարձուսցէ պաճուճապատանքն՝ յայնմ կողման առաւել լինիցի առատութիւն։

397. Աթեր և աթերայ էր բլիթ ինչ, կարկանդակ կամ քաքար և կոտոյ 'ի զոհս գիցն. զոր մատուսցուք, ասէ, սկաւառակօք, և նուիրեսցուք նոխազ 'ի նոյն խորհուրդ. և զանէլորդ մասունսն որ չեղանեն 'ի զոհ սեղանոյ՝ խորովեսցուք 'ի կաղնի շամփուրս առ 'ի կերակուր, զերկուսին վնասակարսն այգեաց 'ի միասին կորուսանելով զնոխազ և զկաղնի. տես 300։

Այն և այլ 'ի խնամս այգեաց քըրտունք անբաւ և անըսպառ.
Զի հարկ երիցս և չորիցս ամի ամի զհողըն գետնին
Ի ցելուլ, և զերկմատնիսըն շըրջելով յաւէժաբար
Փըշրել ըզկոշտըս և զանտառն 'ի տերևոց տեռապերծել:
Շըրջան առեալ դառնայ առնէ հողագործին աշխատութիւն,
Այլ տարին ընդ իւր շաւիղ պարայածեալ պատի զինքեամբ:
Այլ ահա մինչդեռ ընկէց այգի զսաղարթսըն զանազան
Այլ զմայրեացըն թօթափեաց զարդ պարծանաց խիստ հիւսիսակ,
Մըշակ յայնժամ ժըրագլուխ հոգ տանի յամն առաջիկայ,
Զըրուանեան կոր ատամամբ 'ի մնացականն անկեալ այգի
Այլ սըրբեալ յապաւեալ՝ յատանելով կազմ յօրինէ:
Նախ զերկիրըն բըրեա, դյօտսըն տարեալ այրեսջիր նախ,
Եւ յարկաւ նախ արա զձողս և հուսկ ուրեմըն կութս այգւոյդ:
Երկիցս որթոյ գայ հովանին, մացառախիտ մոլախոտք
Երկիցս առնեն զանդ զաղձնաւոր, կըրկին տաղնապ տաժանականս:
Գովեալ ըզլայն ագարակս՝ խակ դու զանդեակ մըշակեսջիր:
Հատանին և չիչխանի դաժանաբոյս ոստք յանտառս
Այլ եղէգըն գետածին 'ի ջրարբի պրակս ափանց շամբից,
Տառապէ և անդադրման ուռեստանին հոգոց անձուկ:
Մերդ ահա կապեալ են որթք, ահա զմանգաղըս թող տան թուփք,

402. Շրջելով, զի յետոյ կողմանքն խորտակքն հողակոշտքն:

405. Ընդ իւր շաւիղ, ընդ նոյն. Նովին ոճով և կարգաւ և յեղանակաւ տարեորական աշխատութեանց որ 'ի գնացելում ամի գնալոյ անդրէն ուստի սկսաւ:

406. Ցորժամ մերկանայ զհուսկ յետոյն տերեւն որ առեալ ցվերջս աշնայնոյ: Զարդ մայրեաց նոյնպէս տերեւքն են որ և 'ի հերս կամ 'ի վարսս այլաբանին:

409. Զըրուանեան ատամն է յօտոյն կամ մանգաղն, որ և նշանակ 'ի ձեռս նկարէ Կռոնոսի կամ Զըրուանայ: Մնացականն այգի խնամ զմերկացեալն և զխապալուած կողոպուտ մնացեալ 'ի բերոց և 'ի տերեւոց, որ թերևս թէ կոչմանցն է ուռաւնայ գեղապարդ անկոյն:

411. Փութկոտ լեր և առաջին 'ի բրել, 'ի յօտել և 'ի ծածկել զխերչակն ընդ յարկաւ, զի մի փտեացին յանձրեւաց. բայց հուսկ յետոյ ամենեցուն կթեսցես զայգիդ. զի լաւագոյն լիցի գինիդ:

413. Երկիցս անբնակախիտ լինի որթ, և քաղելի է 'ի գարնան և յաշնան. և երկիցս մոլախոտք գետնին 'ի նոյն ժամանակս, և մաքրելի է. երկոքին դժուին աշխատանք են: Զայդքան հոգս և զտաժանմունս գիտելով գովեսջիր զմեծամեծ անդս, բայց դու զփոքրիկ մշակեսջիր, զի կարող լինիցիս քաջ պտղաբեր առնել:

416. Չիչխան ըստ մէջգի մշակացն մերոց է աղց թփոյ, որոյ առեղունքն լինին կապ որթոյ: Նոյնպէս և եղեգունք և ուռիք հատանելի են 'ի պէտս այգեաց բազում հոգովք և տառապանօք:

419. Ահա ամենայն ինչ վճարեալ է, որթք կապեալ և 'ի բաց արձակեն զյօտոցս յինքեանց անկարօտ նոցա եղով. և այգեգործն 'ի վերջին ծագս այգեստանին վաստակէ ուրախութեան երգովք հասալ 'ի կատարած գործոյն հասեալ. սակայն և այնպէս տակաւին գործելի է հողն, և հաստատ ողկոյզք խակ պտղոյն երկնչել յԱ-րամազդայ, այսինքն յարկածից օդոց, յանձրեւաց, 'ի կարկտոյ, 'ի մրրկաց, եւն:

Բռնանախանձ այգորդ ահա զեզերական նաւագէ զոլորտս .
Այլ սակայն քըրքըրել ըզհողն և ըզփոշին է պէտ դըրդուել ,
Այլ հասուն ողկուզաց յԱրամազդայ լինել զանգէտ :

Իսկ ընդդէմ՝ չիք ինչ բնաւ ձիթաստանեայց մըշակութիւն ,
Ոչ մընան կոր յօտոցի , ոչ գետնակալու ծանրըր փոցխից ,
Իբրև զամ մի զերկրէն վակժոյժ եղեալ խայտան 'ի լոյս :
Ինքնին իսկ երկիր եւեթ կռածագ ժանեօքըն փեռեկեալ
Հիւթ բըխէ տընկոց ու 'ի խոփ ըզկըշռաւոր պըտուղս արդեանց :
Յայս ըզպարարտ և զհաշտութեան հաճոյն սընո զձիթենին :
Նա և միրգք մինչ հաստարմատ ըզբուննս իւրեանց դեռ իմացան
Այլ հասին յաստիս ուժի , յանկարծակի յաստեղս երկնից
Ձըգտին անձին զօրութեամբ 'ի նըպաստից մեր անկարօտք :
Այլ ոչ ընդհատ ինչ անտառք հակին պըտղովք առ հասարակ ,
Այլ թըռչնոց վայրի դադարք յարիւներանգ կարմրին խընձոր :
Խուզին սինձք , և ըզմարս մայրիք բարձունք մատուցանեն
'Ի լուցկիս հրոյ գիշերի և 'ի ցընցուղըս ճաճանչից :
Իսկ մարդիկ երկմըտիցե՞ն տընկել և հոգ խնամոյ տանել :
Զի՞ զմեծամեծսըն թուիցեմ . ուռիք՝ խոնարհ և ցարասիք
Կամ հօտի տերև շնորհեն և կամ հովուաց քաղցր հովանի ,
Այլ ցանկ սերմանեաց և խիւս անոյշ ճարակ մեղու .
ԶԿիւտորոն հեշտ է հայել ըզտօսախիւք վէտ վէտ ճօճան ,

420 . Կէս օրինակք բացայայտագոյն իմն այսպէս ունին զտողս :
Աւասիկ այգորդ յեզերսն ըզվըճարեալ նաւագէ զոլորտս :
423 . Իսկ ընդ հակառակն գրեթէ չիք ինչ բնաւ մշակութիւն ձիթենւոյ առ այգւոյ համեմատութեամբ : Այսմ վկայէ և խորհնեան մերս քերթող 'ի գիրս Պիտոյից (Ներբ . ձիթ . և պարաւ որթոյ) :
426 . Ժանեօք եւեթ բահին և երկմատնոյն ցելեալ՝ բղխէ հիւթ , և խոփովն պատուեալ միանգամ՝ ըծանրակշիռ պտուղս բղխէ անաշխատ : Վասն այսորիկ մշակեա զձիթենին պարարտ և հաճոյ հաշտութեան . զի և էր իսկ նշանակ ուետաբեր խաղաղութեան ձիթենին և Աթենասայ ձօնեալ :
429 . Միրգս իմա զծառսն մրգաբերս :
433 . Խնձորս ոչ զպտուն խնձորն եւեթ ասեմք , այլ և զամենայն բոլորաձև պտուղս :
434 . Սինձք անգամ գուգնօսքեայք որ թուփ ինչ են կամ բանջար վայրի բազմապիսի , խուզին 'ի պէտս անասնոց , և մայրս 'ի կրակ և 'ի ջահ լուսոյ :
435 . Յետ այսչափ շահից տնկոցդ՝ տակաւին զանգաղիցե՞ն մարդիկ 'ի մշակութիւն :
440 . Կիւտորոս լեառն և քաղաք Պափղագոնիոյ յեզր սահմանաց Պամփիլիագոնիոյ : Լեառնն անտառախիտ թաւացեալ էր տօսախիւք՝ որ 'ի շնչելոյ հողմոց ծածանէին 'ի նմա : — Նարիքս և Նարիկէ կամ Նարիկոն և Նարիկիոն քաղաք է Յունաց և Իտալիոյ . յեափնս անուանի կուենի և հերձի ծառոյք . — Կաւկասական լերինքն յայանի են որ կան 'ի հիւսիսակողմն Վրաց և Հայոց . բայց սատանօր եղեալ են փոխանակ որ և է բարձրաբերձ լերանց :

Զնարիկեան կուենեաց մայրիս, քաղցր է և զանդրս տեսանել
Ըզմարդկան տըրմըխաց կամ ընաւ հոգոց անպարտակիրս։
Նոյն իսկ հիւթն ամուլ մայրիք 'ի կաւկասեան լերանց 'ի տարս
Զոր անդուլ այսք բըռնաշունչք ջաղխեն փըշրեն և փոթորկեն,
Այլք զայլըս տան արգասիս՝ ըզպիտանիս նօթաձեալ աստաղձ,
Ըզգարդն 'ի լաստափայտ և տանց 'ի նիւթ ըզմայրն և նոճ։
Աստի խոզս ամուլց մըշակք տաշեալ յըղկեն, կանտըս սայլից,
Եւ նաւաց զիստ գոգաւոր կառուցանեն և ողնափայտ։
Ուռենիք բերրի յողոս, նըշդարենիք 'ի սաղարթուց,
Մուրտ 'ի հաստ նիզակաբունս և հոյն ընտիր 'ի զուպարած.
Յակրիք կորանեան 'ի լայնալիճս խոնիուրացիս.
Եւ թըմբի ողորկատարր ու'ի քեր տօսախ ձախարակեալ
Կռան 'ի յարդ ու'ի կերպարան և գոգ աննուն սուր երկաթով.
Եւ բարտին փոքըրոգի որ ընդ Պադոս սըրավարեալ
Թեթև յիւղայ յուխ յորձանուտ, և պարք մեղուաց կապեն զխնդակ
'Ի խոռոչըս կեղևոց և 'ի քօսոտ սղոցուոյն 'ի փոր։
Զի՞նչ համգոյն քարոզելի դիոնիսեան բերին պարգևք.
Ո՞չ և պատճառըս մեղաց ետ ապաքէն Սպանդարամետ.
Նա պշամբուշս 'ի մահ վարեաց յուշկապարիկս՝ ըզՀռեկոս և զՖոլ

447. Առփի իմա յատաղձէ ստուի փայտից։ Կունտս սայլից ասէ և ոչ անիւս, զի 'ի հնումն սայլք գեղջկաց վարէին անուօք թմբաձևօք 'ի միահարթ միապաղաղ տախտակէ առանց խեցից և խողից կամ շառաւիղաց, և ընդ լխաւանն 'ի միասին դառնային. որպէս և ցայսօր յարևելս առ գիւղականս մեր երևի։

449. Զնշդարին օգտաբեր 'ի սաղարթուց ասէ, զի տերևք նորա քաղցր են յոյժ 'ի կերակուր արջառոց, և զհոյն ընտիր 'ի պատերազմ՝ զի անտի կազմեն նետք, տէգք և նիզակք։

451. Խոնիուրացիք կամ խտուրացիք ազգ էին արաբացւոց աղեղնաւորք, յայնկոյս Յորդանանու գետոյ, յիշատակեալք 'ի Ղուկայ աւետարանագրէ և 'ի Յովսեպոսէ։ Ընդարձակագոյն առմամբ և Ասորիք իմանին։ Ամենայն գրչագիրք Վիրգիլեայ ընթեռնուն Իտիւրացի։

454. Պադոս որ և Երիդանոս, մեծագոյնն 'ի գետս Իտալիոյ։

457. Դիոնիսեան կամ բաքոսական, որ է սպանդարամետական պարգևք որթոց և գինեաց զի՞նչ բերին իբրև զայսոսիկ արժանագով. նա մանաւանդ ո՞չ ապաքէն մեղաց պատճառք են կամ ըստ մերոյ քերթողահօրն հաւ չարեաց (Պիտ. ներբ. ձիթ.) առ որ և օրինակ մատուցանէ 'ի յուշկապարկացն արբեցելոց, և 'ի Լապիթեայցն՝ ժողովրդոց Թեսաղիոյ, որոց ընդ միմեանս 'ի կռիւ կարգաւեալ 'ի հարսանիս Պիրիթեայ վասն հափշտակելոյ կամելոյ յուշկապարկաց զհարսնն Հիպպոդամէ և զայլ կանայս, հարին զմիմեանս. բայց վանեցան յուշկապարիկք, յորոց Վիրգիլիոս ըստ սովորութեանն զգլխաւորսն եթէ յիշատակէ, զՀռեկոս կամ Հռետոս և զՖոլոս, և զՀիւլէոս կամ Հիւլէա՝ զոր և առաջի առնէ իբրու ահագին իմն բաժակաւ յարձակեալ 'ի Լապիթայսն։ Իսկ յուշկապարիկք կամ ձիացուլք և իշացուլք՝ մարդաձիախառն առասպելեցան, որպէս յայտ է, զառաջին ձիաւորեալ մարդիկն արագես պլլարանելով։

Եւ զԼապիթեայց ահագին խառնարանաւ սպառնողն Հիւլէս ։

Վա՜շ երջանիկ մըշակաց՝ զիւրեանց նըսիհ թէ գիտիցեն ,
Ոյց ինքնին երկիր արդար 'ի մարտամբոխ զինուց փարատ
'Ի ծոցոյ հողոյն բղխէ դիւրապատրաստ պարէն կենաց ։
Ապարանք բարձրաձեղունք աշխարհամուտ դրամբք հոյակապ
Թէ հոսեն ոչ 'ի դաւթաց զայգորելեացն ուղխից կոհակս ,
'Ի դրանդիս ոչ պակշոտին կամարաշէն պերճ նըկարէնս ,
Ոչ 'ի պղինձս եփիւրացիս և 'ի հանդերձս ոսկեճամուկս .
Եւ ոչ առըր լուսաներկ յասորնական դեղ շըպարի ,
Ոչ ծորածոյ իւղոյն պարզուածք կասեաւ 'ի պէտս ապականին .
Այլ հանգիստ յապահով, կեանք անպատիր ձոխ ընչաւէտ ,
Այլ անդորր 'ի դիւր վիճակս , անձաւք և լիճք ջուրց կենդանի ,
Այլ հովիտք հովանաւորք և անդէոց մեղմիկ բընչիւնք ,
Եւ ընդ ծառով հեշտալի քուն հանգըստեան ոչ պակասեն .
Անդ արօտք և անտառք և երէոց որջք և մորիք ,
Եւ արբուն ժիր մանկութեան սակաւապէտ և երկասէր ,
Աստուածոց պաշտամունք և սրբանուէր հարց ալեոյթք .
Արդարութիւն զվերջին հետս առ նոսին արկ մեկնեալ յերկրէ ։
Ո՜խ սակայն անոյշ Մուսայք գեր 'ի վերոյ քան զամենայն ,

462. Երկիր արդար ասի, զի զհաւատացեալն 'ի նա զաւանդ սերմանեացն առաւելեօք հատուցանէ, և զընկալեալն դարձուցանէ։

466. Կամարաշէն. շատին բառն կարէ եւս նշանակել յօրինեալ նկարակերպ 'ի խեցեաց կրայից. մեք զայն ընկալաք որ հասարակաց ընդ ամենայն տեղիս և յամենայն ազինս մեծագործն է համարեալ։

467. Պղինձ եփիւրացի է կորնթեան պղինձ, զի Կորնթոս կոչի և Եփիւրա կամ Եփիւրէ, որոյ և պղինձն յարգի էր յոյժ։ Եւ աստ պղնձով իմանին անօթք և սպասք և դրօշեալք պղնձիք։

468. Ասորնական դեղ է ներկն ծիրանւոյ, որ Փիւնիկէաստանի և Տիւրոս քաղաքի Ասորւոց գիւտ ասի լինել։

469. Կասիա է ազն դարիձենի կամ դարիձենեկ թուփ նման կինամոմոնի. զորոյ զկեղեւն մանր աղացեալ խառնէին անուշահոտ յօծանելիս անոյշ իւղոյ, զոր ապականել ասէ առ պարզ և անպաճոյճ իւղովն՝ որով ռամիկն օծանէր։

470. Կեանք անպատիր որ ոչ երբեք խաբէ յակնկալութիւնս իւր, ոչ վրիպի 'ի յուսոյ բարեաց, զորս և առ ձեռն ունի։

471. Դիւր վիճակ են դաշտք ընդարձակք և բլուրք հովասունք։

477. Վաղուց հեռացեալ 'ի քաղաքաց, յարքունեաց և յապարանից մեծամեծաց, առակաւին դեգերէր առ շինականսն, և հուսկ յետոյ 'ի նոցանէ մեկնեցաւ եւ յերկինս. որ է ասել՝ ընդ երկար ժամանակս զարդարութիւն պահեցին պարզամիտ շինականք քան զքաղաքայինս։

478. Մուսայք էին ինն դստերք Արամազդայ և Մնեմոսինեայ, կուսանք, աստուածուհիք ամենայն հանճարոյ և ճարտարութեան և գիտութեան և իմաստասիրութեան, ընդ որս և քերթութեան։ Կամի ասել, քան զմշակութեան խաղաղական և երջանիկ կեանս՝ գիտնականն և իմաստասիրականն միայն է ինձ առաւել սիրելի, այլն ամենայն անարգ և խոտան առ նմա։

Որոց կամ պաշտօն տանիմ յանհընարին 'ի սէր հարեալ,
Ընկալցին նախ և ցուցցեն զերկնից շաւիղս և զարփից պար,
Ըզպէսպէս զալեգական նըւազութիւն և զլուսնի կիրս.
Թէ ուստի դողումն երկրի, ծովք ըզթումբս իւ փլուզեալ ուժով
Ուռնուն կուտակադէզ և յինքն անդրէն իջեալ նըստին.
Զի այնպէս ձըմեռնական ձեպին արեւք թանալ յանդունդս,
Եւ կամ ընդդէմ ինչ արգել զի յամրային կայ գիշերաց։
Իսկ թէ յայդ ոչ զօրեցից ժամանել լինել բնութեան սահմանս,
Զի ցուրտ արիւն զառագաստ սըրտիս պատեալ անկցի կըրծիմ,
Գեղօրէք, գետք 'ի հովիտս ինձ քաղցրասցին վըտակահոսք,
Ըզխոխոջ ջուրց սիրեցից և ըզմայրիս՝ անփառունակ։
Ո՛հ, ուր դաշտք և ըՍպերք և Տայիգետ գեղապարեալ
'Ի կուսից լակոնուհեաց, ու՛ 'ի հովասուն ծործորս Հեմեայ
Ո՛վ տարցի զիս և ստուերք պաշտպանեսցէ մեծ հովանեաւ։
Երանի ում պատճառաց էից գիտաց գոլ խելամուտ,
Եւ զարհաւիրս ամենայն և զանողոք ճակատագիր
Եւ զանյագ տարտարոսի շառինդ և շըշուկ առ ոտն եհար։
Նա և այնմ իսկ երանի որ զդաշտային ծանեաւ ըզդիս,
ԸզՊան, ըզծեր Շահարիկ և զքոյր հարսունս յաւէրժական։
Ոչ ըզնա խուրձ ամբոխին, ոչ թագազանցըն ծիրանիք
Եւ դրուժան հարազատից ընկճեաց երբէք վըրդովիչ խազմ,

484. Ընդէր ձմեռնային արեւք փութով մտանեն, և կարճ է տիւն։

485. Ցայս տող՝ մեկնիչք իմանան առլորաբար զպատճառս յամելոյ, յամր հասանելոյ ամառնային գիշերաց վասն երկարութեան տուընջեանցն։ Բայց բանն յերկուս միտս հարկանէ, զի և զերկար գանդաղանաց ձմեռնային գիշերացն մարթի իմանալ, որ երկարութեամբն յամեն լուսանալ։ Զի թէպէտ և յամրն կամ գանդաղ բազում ուրեք յայսպիսիս զամառային նըշանակէ, ոչինչ հարկ է միշտ 'ի նոյն միտս առնուլ, որպէս և վկայեն լեզուագէտք յայլ տեղիս քերթածաց։

487. Զափշութիւն և զտարտամութիւն մնաց 'ի խելամտութիւն իւրաց՝ 'ի ցրտութենէ արեան ներգործեալ համարի քերթողն ըստ ոմանց նախնի իմաստասիրաց։

490. Սպերքիոս կամ Սպերք գետ է Թեսաղիոյ 'ի Պինդոս լեռնէ իջեալ 'ի դաշտս աշխարհին։ Տայիգետ կամ Տայգետ՝ գօտի լերանց յԱրկադիոյ ձգեալ ընդ ամենայն Լակոնիա, յորս օրիորդք լակոնացւոց պարաւորք կատարէին զտօնս Սպանդարամետին, որոյ և մեհեանն իսկ կայր առ ոտս լերանցն։

497. ԶՊան տես ա. 19. զՇահարիկ կամ Շահարունի՝ ա. 22. զյաւէրժահարսունս ա. 11։

498. Նուիրակք կամ պայիկք վարոցաւորք և սակրաւորք երթային առ բդեշխիւք հռովմայեցւոց՝ բարձեալ խուրձ մի գաւազան և 'ի նմա վաղր կամ տապար 'ի նշանակ պատուոյ իշխանութեանն 'ի ժողովրդենէն տուեալ, այլ և 'ի սաստ և 'ի պատուհաս չարագործաց։ Վասն որոյ խուրձն աստ զհռովմէական պատիւս և զիշխանութիւնս նշանակէ, ծիրանին զարքայական փառս և զպերճութիւն այլոց ազգաց։

499. Թուի ակնարկել տողիւս 'ի յայտնի ինչ դէպս իւրոյ ժամանակին, որպէս և յամենայն ժամանակս ոչ պակասեն։

Եւ Դակեանն հինախաղաց 'ի դաշնաւորն իջեալ Իստրեայ,
Կամ հռովմէական պերճութիւնք ուարքայութիւնք կորըստականք.
Եւ 'ի գութ հեծեաց մուրկին կամ մախացաւ ընդ գոյաւոր։
Զոր ուղէշք մրտաղիւր և զոր բերին անդք ինքնակամ
Զարդիւնսըն ժողովեաց, և ոչ օրէնս ինչ երկաթիս,
Եւ զատեանն աղխատորոյզ կամ զաշխարհին ետես դիւան։
Այլք թիակօք ըզկոյր յորձանս յուզեն ու'ի զէնըս խիզախեն,
Մըպըրդեն 'ի դահլիճս և 'ի տաճարս արքունականս։
Նա որ սուր ածէ չինից և չուառական երդումարդաց՝
Ըմպել ակամբք ու'ի ծուրացի նընջել 'ի քուն ծիրանիս։
Այլ ոք ըզգանձսըն խորեալ և յորջասոյզ ոսկին գըրգայ,
Որ յակճիռս 'ի բեմն է պիշ, որ 'ի թատերս բերանաբաց
Ընդ կըրկին ծափս ըզմայլեալ՝ ժողովըրդեան ուաւագանւոյն։
Խընդան թաթաւեալք 'ի ճապաղիս արեան եղբարց,
Եւ ըզտունս և զանուշակ դըրանդըս սեմոց փոխեալ յաքսորս՝
Ընդ այլով արեգակամբ ըզհայրենին խընդրեն յատակ։
Մըշակն արդիւնարար կոր արօրով վարէ զերկիր.
Անդուստ ամին արարք, անտի զթոռնեակս և զհայրենիս
Տածէ անտի զջոկ նախրաց և զըլուարակս արժանաւորս։
Եւ ոչ դուլ առնու երբէք՝ մինչև տարին մըրգովք զեղու
Կամ որդւովք խաշանց և կամ 'ի դեմետրեան հասկաց որայս,
Եւ ծանրէ տոհմականօք զակօսս՝ յաղթօղ լեալ համբարաց։

500. Դակեանք կամ Դակք էին ազգ 'ի մէջ կարպատեան լերանց և Իստրոս գետոյ, որ այն ինքն է Դանուբ գետ, որոյ 'ի ծով մերձեալ և ընդ Դակիս անցեալ Իստրոս կոչի անդ մանաւանդ։ Սոցա բազում անգամ միաբանեալ ընդ շըջակայ բնակիչս գետոյն՝ նեղէին պատերազմաւ զհռովմայեցիս։

502. Ոչ թէ անգթութեամբ չհեծել աւէ ընդ տառապանս աղքատին, այլ զի 'ի գեղս և յագարակս մնացեալ՝ յամենայն վշտաց անանկին և 'ի նախանձուէ մեծատանց ազատեցեալ են աչք նորա և սիրտն։

504. Օրէնք երկաթիք վասն խստութեանն և անաչառ սաստկութեանն, որ ոչ ողոքանաց ինչ երեսս առնեն, և ոչ յերկիւղէ իմիքէ սասանին։

505. Զատեանն աղխայոյզ դատաստանաց, զդիւան հարկաց և տրոց, մաքսից, բաժից և կապալաց։

506. Կոյր յորձանք ծովուց վասն անյայտ թաքնութեանն կամ վասն վտանգին։

509. Ակամբք ըմպելն է ականակուռ բաժակաւ, կամ որ 'ի միապաղաղ քարէ պատուականէ։ Իսկ Ծուր է Տիւրոս, յորմէ ելեալ ասի ընտիր ծիրանին. տես 468։

511. Ոմն հրապարակախօս առեւտրականութեան ցանկայ, ամն զգովեստ 'ի թատեր խնդրէ՝ որոյ նշանակ էր ծափ զծափի կայթս հարկանել ռամկին և իշխանացն։

515. Ընդ այլով բաժնիւ երկնի խնդրէ զհայրենի երկիր իւր. այսինքն կարօտի, տառապի և ցանկայ, այլ ոչ գտանէ։

517. Հնագոյն գըրչագիր մի ունի՝ անփոփ զթոռնս և զհայրենիս։

520. Դեմետրեան, ցորենոյ և այլոց ուտելի արդեանց արմտեաց։

521. Առաւելեալ և զեղեալ քան զմեծութիւն ամբարանոցացն։

Յորըն ձըմեռն, 'ի մամուլս՝ հատքըն լեառն սիկիոնեանք,
Խոզք դառնան կաղնով բերկրեալ, անտառք մաթուզ մատուցանեն,
Եւ աշունն առաջի զազգ ազգ պըտղոց հասուցանէ,
Եւ 'ի մարմանդըս բըլըոց եփին անոյշ բարձր այգեկութք:
Մինչ քաղցրիկ մանկըտեակք շուրջ 'ի համբոյր կախին շըրթանց,
Պարկեշտ և ծընդասէր պահէ տընակն ըզսըրբութիւն:
Կաթնաբուխ տարածեն ըստինս երինջք, և գէր ամիկք
'Ի գըւարթ մարգագետին կան ոգոյեալ խեթկիչ եղջերբք:
Նա զտօնուտ խըմբէ զաւուրս և զանձն հեղեալ 'ի դալարիս,
Ուր հըրատ անդ 'ի միջի, ըլնուն ընկերք տաշտ թաթաղուն,
Քեզ, Ապանդարամետ, ձօնեալ նըւէր՝ ըզքեզ կարդայ,
Եւ հովուաց սուր սըլաքաց դընէ հանդէս 'ի նըշդարին,
Եւ զգիրտ անդամն հոլանէ 'ի շինական ըմբըշամարտս:
Զայս երբեմըն վարեցին կենցաղ նախնի սաբինեցիք,
Զայս Հռեմոս և եղբայրն, այսպէս աճեաց քաջըն Ետրուրէ,
Եւ Հռոմ քան զամենայն գեղեցկագոյն էից ցուցեալ՝
Եօթնաթիւ 'ի մի բըլուրս յինքըն պատեաց շուրջ պարըսպաւ:
Եւ յառաջ քան զգաւազան դիկտէական թագաւորին,
Մինչ չև ազգ ամպարիշտ 'ի զուարակաց շուայտեալ ըսպանդ,
Զայս ոսկեղէնըն Զըրուան անցուցանէր ըզկեանս յերկրի.

522. Սիկիոն քաղաք Աքայիոյ էր, որոյ ձէթն նշանաւոր. սիկիոնեան հատք են հատք ձիթենւոյ որ ճնշին 'ի մամուլս 'ի մզել զձէթ:

527. Տնակ իմա աստ զտնարար և զերդաշէն կինն:

530. Նա՝ մշակն յաւուրս պարապոյ խրախուտնս կատարէ 'ի վայրի դալարւոջ, ուր կայ 'ի միջի անդ սեղան վառեալ առ 'ի զոհ և 'ի պատրաստութիւն կերակրոց, և ըմպէ զեղուն բաժակաւ՝ զոր մատուցանեն նմա ընկերք իւր ամոխանք և թայրաթոռք, և նուէր հեղլով 'ի գինւոյ անտի՝ կարդայ զԱպանդարամետ դիս խրախութեան, եւհ, եհէ ձայն արկեալ ցնծութեան աստուածարելոց 'ի գիւց անտի:

533. Խաղս նետաձգութեան և ըմբշամարտութեան տայ առնել հովուաց իւրոց:

534. Այլ օրինակք ընթեռնուն հոլանէն:

535. Սաբինացիք նախնի ժողովուրդք Իտալիոյ: Հռեմոս և եղբայրն նորա Հռոմուլոս նահապետք ազգին հռովմայեցւոց: Ետրուրիա, որ և Տոսկիա, այսպէս բարգաւաճեցաւ 'ի մեծութիւն և 'ի հարըստութիւն. և նոյն ինքն Հռոմ այսու եղև գերապանծ քան զամենայն քաղաք և զթագաւորութիւն, և պարսպաւ փակեաց 'ի միում յինքեան եօթն լերինս: Եւ արդարև իսկ մինչև ցայսօր եօթնեակ բլրովք պարունակի Հռոմ:

539. Դիկտէական թագաւոր է Արամազդ՝ սնեալ 'ի Դիկտէ կամ Դիկտէոն լերին կամ 'ի Դիկտիս այրի Իդա լերին Կրետէ կղզւոյն: Ժամանակք որ յառաջ քան զնա՝ դարն է ոսկեղէն, դար Կռոնոսի կամ Զրուանայ, մինչ չև էր տակաւին սովորեալ մարդկան 'ի շաղակերութիւն, այլ յարդեանց երկրի կերակրէին, և չև էր լեալ լսելի բարբառ փողոց պատերազմի, և չև կազմեալ զէնք 'ի սալս երկաթագործաց:

Նա 'ի լոյս չև էր եկեալ փըքոցուռայց փողոց գոչիւն,
Նա յանուատ սալըս դարբնաց կայծակնացայտ շաչել սուսերց ։
Ո՛յլ անեզր և անպարոյր հատաք անցաք մեք ապարէզ,
Կամ է արդ զերիվարաց մըրըրկաշունչ վիզ լուծանել ։

545. Ժամ է վախճան առնել գրոցս ։ ապարիսին ։ Օրինակք ինչ ունին ըռէլը. Այլաբանութիւն առեալ 'ի ձիընթացից երթեւեկին լուծանել։



ՊՈԲԼԻՈՍԻ

ՎԻՐԳԻԼԵԱՅ ՄԱՐՈՎՆԻ

# Մ Շ Ա Կ Ա Կ Ա Ն Ք



## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## ԵՐՐՈՐԴ ԳՐՈՑ

ԻՍԿԶԲԱՆ անդ գրոցս կարգալով զգիս հովուութեան և զարօտի անասնոց՝ նովին իսկ յայտ առնէ զիրացն առաջարկութիւն։ Այլ նորութեամբ նիւթոյն խրախուսեալ նոր պարծանս անձին ստանալ 'ի փառս հայրենեաց և բարերարին իւրում Ոկտաւիանոսի Աւգոստեայ, պաշտօն առնէ նմա աստուածավայելուչ հանդիսիւք։ Ապա զՄեկենայն հայցեալ պաշտպանութիւն՝ որ պատճառն եկաց քերթուածոյս, մխի 'ի ճառսն զոր առաջի եդ զանասնոցն դարմանս՝ բովանդակեալ 'ի գլուխս հինգ։

Ա. Յաղագս սերնդեան և սննդեան արջառոց և ձիոց. յորում և ձիոց մրցանք, բոռոյ նկարագիր, ցլուց քինացելոց ոգորումն և տափանաց մոլեգնութիւն։

Բ. Յաղագս ոչեաց և այծեաց. ուր և սկիւթային ձմերայնոյն նկարագիր։

Գ. Յաղագս շանց։

Դ. Յաղագս օձից զգուշութեան 'ի փարախսն և արտաքոյ։

Ե. Յաղագս որ ինչ անասնոց ախտք վնասակարք, որպէս քոս, տենդ, և ժանտախտ տարաժամ խաշնամահու, որոյ ճոխագոյն նկարագրութեամբ աւարտէ զգիրսն։

# ՊՕՊԼԻՈՍԻ

# ՎԻՐԳԻԼԻԵԱՅ ՄԱՐՕՆԻ

# Մ Շ Ա Կ Ա Կ Ա Ն Ք

---

## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

ԸԶՔԵԶ իսկ մեծըդ Պալէս և զքեզ յԱմփրիս հռչակելիդ
Ըզհովիւդ երգեսցուք, ըզձեզ անտառք և գետք Լիկեայ:
Որ ինչ այլ ըզպարապորդ գերիցեն միտս երգոց մըրմունջք՝
Աշխարհալուր կան բըռնաւք. ո՞ զչըր ժպըրհին Եւրիսթէոս
Կամ թագինս ըզչարաշուքըն Բուսիրեայ գիտիցէ ոչ:
Ո՞ւմ չհըռնչեաց Հիլաս մանուկ, Լետեան Դեղոս, Հիպպոդամէ, Պ.

1. Պալէս էր աստուածուհի հովուաց և արօտից: Իսկ հովիւն անուանի յԱմփրիս գետ Թեսալիոյ՝ է Ապողոն, որում սըրտմտեալ երբեմն Արամազդ յաղագս սպանանելոյ նորա զԿիկլոպեայսն զգործիչս շանթից իւրոց՝ մատնեաց զնա 'ի ծառայութիւն Ադմետայ արքայի, և նա արածէր զանդեայս նորա: Բայց Կալիմաքոս քերթող առ սէր Ադմետայ ասէ զայն արարեալ Ապողոնի:

2. Լիկէոս պարարտաւոր լեառն յԱրկադիա 'ի գաւառ խաշնաւէտ և տաւարածականօք համբաւաւոր:

4. Եւրիսթէոս էր թագաւոր Միկենաց, որոյ գործակից լեալ տէրութեանն Հերայ՝ վարեաց զՀերակլէս 'ի բազում մեծամեծ վտանգաւոր նախատակութիւնս. յորս և ակնարկէ իմն Եւրիսթեայ չէշտակութեամբն:

5. Բուսիրիս էր թագաւոր Եգիպտոսի, որ 'ի սեղանս գից իւրոց զոհէր զհիւրս. և 'ի Հերակլէէ սպանաւ անդ 'ի նոյն սեղանսն մինչդեռ և նմա նիւթէր նոյնօրինակ մահ:

6. Հիլաս էր մանուկ կամ պատանեակ մի գեղեցիկ, սիրելի Հերակլի և ուղեկից նորա ընդ Արգոնաւորդս. որոյ երթեալ ուրեք զջրոյ՝ ընկղմեցաւ յաւազան աղբերն կամ 'ի գետն Ասկանիոս. և համբաւեցաւ 'ի յաւէրժահարսանց յափշտակեալ առ գեղեցկութեանն: Իսկ լատինն իբրու զհայց Ո՞ւմ չհըռնչեաց երկգիմի է, առ ո՞ կամ յումմէ՞ չհնչեաց: — Դեղոս մի է 'ի Բոլոր կղզեաց յեգէական ծովուն, զորմէ ասէ առասպելն թէ յառաջին երերեալ տատանէր յերեսս ջուրց, մինչև Լատոն աստուածուհի չըգտեալ ուրեք իւր տեղի՝ ծնաւ 'ի նմա զԱպողոն և զԱնահիտ կամ զԱրտեմիս, և փոխարէն այսր հիւրամեծարութեան և մար-

Եւ ուսով փղոսկրեիւ պայծառ Պեղոփսըն ձիախրոխտ ։
Ճանապարհ նոր հորդեցից՝ վերաբերել յերկրէ և ինձ
Եւ 'ի լեզուս ճախրել ազանց յաղթանակաւ պարաւոր ։
Նախկին ես 'ի հայրենիս, եթէ միայն բաւեսցեն կեանք ,
Յաւոնեան 'ի գագաթանց իջեալ՝ ածից ընդ իս զՄուսայս .
Նախկին քեզ բերից , Մանտուա , զիդումական արմաւենիս ,
Եւ 'ի դաշտ կանաչագեղ կանգնեցից վեհ կըճեայ տաճար
Առ ուխիւք , ուր Մինկիոս մոլորի մեծն 'ի յամր ոլորս
Եւ յամուրս առոյգ շամբից ըզգետեզերս պարածածկէ ։
'Ի միջի անդ Կայսրըն ինձ արձանացեալ կացցի զտաճարն .
Ես յաղթօղ և տիւրացի ճոխ ծիրանեօք երևելի՝

դասխրութեան կառուցեալ առկայացաւ կղզին. յայս սակս Լետեան կոչէ զնա ։ — Հիպպոդամէ կամ Հիպպոդամիա դուստր էր Ինոմայոսի արքայի Էլիսացւոց և պիսացւոց. որոյ պատգամ ընկալեալ՝ թէ որ փեսայասցի ոք նմա սպանանելոց է զինքն, պայմանեաց տարփաւորաց դստերն՝ զի որ յաղթեսցէ ինքեան 'ի կառարշաւ մրցանս, նա փեսայասցի իւր , և պարտեալն սպանցի . զի յուսացեալ էր յերագութիւն երիվարաց իւրոց ։ Յետ բազմաց պարտելոց և սպանելոց, յարեաւ Պեղոփս և կաշառեալ զՄիրտիղ կառավարն Ինոմայոսի՝ ետ խորտակել զկառսն և ընկենուլ զԻնոմայոս . յորմէ և մեռաւ իսկ . և այսպէս յաղթանակ տարեալ էառ զմրցանակն զՀիպպոդամէ . և զՄիրտիղ 'ի վարձ նենգութեանն ետ ընկենուլ 'ի ծովն եգեան յորմէ և մասն այն ծովուն Միրտովական յորջորջեցաւ ծով ։ Ըստ ոմանց հնախօսաց Հիպպոդամիա էր և բուն իսկ անունն Բրիսանուշայ աղջկանն Աքիլլեայ, որոյ վասն քինացեալ սորա ընդ Ագամեմնոնի՝ պատճառ եղև մեծագոյն աղետից Իլիականն մարտին ։ — Իսկ Պեղոպայ առասպելն այսպիսի ինչ է ։ Հայր նորա Տանտաղոս հիւրընկալեալ երբեմն զդիսն՝ 'ի փորձել զաստուածութիւն նոցա զենեալ զորդին զՊեղոփս և խորովեալ եդ խորտիկ առաջի նոցա . յորմէ Դեմետր միայն եկեր զուսն յանգէտս ։ Իսկ Արամազդայ ընդ այլ դիսն իրազեկ եղեալ՝ կենդանացոյց զՊեղոփս , և 'ի տեղի կերեալ ուսոյն՝ փղոսկրեայ շինեաց նմա ուս . և զՏանտաղոս դատապարտեաց 'ի դժոխս՝ 'ի լլկութեան կերակրոց և ջուրց տոչորելով և ծարաւի տանջեալ ։

11 . 'Ի Հելիկոն լեռնէ Բիովտիոյ յառաջըն Աւոնիա կոչեցելոյ ։ Եւ Հելիկոն լեռն էր նուիրական Ապողոնի դից քերթութեան և մուսայից , զորոց տես ա . 478 ։

12 . Մանտուա քաղաք Իտալիոյ առ Մինկիոս գետով , երկիր ծննդեան Վիրգիլեայ . որում առաջին փառս հիւթել ասէ բերելով նմա զիդումական կամ զեդովմական արմաւենիս . զի չիք նախ քան զինքն այլ քերթող մանտուացի ։ Իդումէ կամ Եդովմէ է գաւառ Ասորւոց՝ յԵդովմայ որդւոյն Եսաւայ անուանակոչեալ , և արմաւենիք երկրին ազնիւք ։ Եւ արմաւենին էր առ Հելլենս մրցանակ երաժշտական հանդիսից ։

16 . Կայսրն Հոկտաւիանոս Աւգոստոս , յորոյ 'ի փառս նուիրել ասէ տաճար կամ մեհեան , որպէս սովոր էին յաղթօղքն 'ի հանդէսս հանճարոյ և քերթութեան յիշատակ կանգնել յաղթութեանն . առ որ յաւելու և խաղս ողոմպիականս և նեմեանս ըստ հելլենական հանդիսից , պաղատանս և զոհս , խաղս թատերականս , ախոյեանս յաղթանակի , պատկերս և դրօշեալս ։ Են որ տաճարաւդ զԷնէականն քերթածն իմանան՝ զոր 'ի փառս յուլեան ցեղին և Աւգոստեայ և Հռոմոց ազգին կանգնեալ է Վիրգիլի յիշատակ յաւերժական ։

17 . Յաղթօղ ամենայն քերթողացն հելլենաց ։ Եւ զյաղթանակն ձևացուցանէ ըստ օրէնս հռովմայեցւոց և հելլենացւոց . ըստ որում զի առ հռովմայեցիս հանդիսադիր մրցանացն զգենոյր պատմուճան ծիրանի վերջաւորօք պաճուճեալ . և ինքն իբրև այսպիսի նախատակադիր՝ հարիւր կառս ասէ տալ շարժել , այսինքն բազումըս ։ Եւ ըստ հելլենաց պսակ ունել ասէ 'ի գլուխ իւր , և 'ի ձեռսն բերել արմաւենիս՝ զորս 'ի վերդ յիշատակեաց ։

Պատանիս հարիւր նըմա շարժեցից կառս առ հոսանօքն ։
Այլ բոլոր թողեալ զԱլփեւս և ըզմայրիսըն Մօլորքեայ
Յարշաւ՝ 'ի խիստ կըռփամարտս ինձ մըրցեսցի հելլենաստան ։
Իմ սաղարթուն ձիթենւոյ պըճնեալ ճակատ 'ի սուրբ ոստոց
Պարգեւըս բաշխեցից · արդէն լցիւ զհանդիսին ձեմս
'Ի մեհեանըս հըռչակաւ տանել և զպաշտ դիտել ցըլուց ,
Կամ թէ տեսլեանցն 'ի շըրջել որպէս տեղի տայ տաղաւարն ,
Այլ զխորդ նըկարակերպ բարձցեն Բրիտանք ըզվարագոյրս ։
'Ի դըրանդիսն ըզպատերազմ դըրուագեցից ըզԳանգարեանց

19 · Զորք էին խաղք Հելլենաց · ոլոմպիականք կամ ոլիմպիականք , պիթեանք , իսթմեանք և նեմէականք ։ Ալփէոսիւ գետով Եղիսեայ որ մօտ յՈլոմպիա կամ Ոլիմպիա քաղաք՝ ակնարկէ յոլոմպիական մըրցանսն յորում յաղթօղք ձիթենեաւ պսակէին · և անտառօքն Մօլորքեայ՝ 'ի նեմէականս ։ Զի Մօլորքոս հովիւ առաջնական եղև Հերակլի 'ի գնալ սորա 'ի նահատակութիւն նեմեան առիւծուն · և 'ի յիշատակ այնր քաջութեան խաղքն հաստատեցան ։ Զայլ երկուս մրցանսն ընդ երկուք այսոքիւք լռելեայն իմանայ Վիրգիլիոս · յորս և յամենեսին 'ի նոսա յաղթօղքն բառնային 'ի ձեռս արմաւենիս ։ Եւ կամի ասել , թէ բովանդակ հելլենաստան թողեալ զիւր խաղսն՝ 'ի նորա յայս իբրև 'ի փառաւորագոյն եկեսցէ · առ որ երկուս եւեթ յիշատակէ , զարշաւ և զբռնամարտութիւն յորում ձեռս իւր և գաստապանս ագուցեալ 'ի բազուկս՝ այնպէս կռուէին մըրցօղք զմիմեանս կռփեալ ։

21 · Սուրբ ոստս իմա ինձ առատանօր՝ որ ոչ թէ լցէ և թանձրախիտ ոստովք վարսկեալ , այլ հարթ , ողորկ , կոկ յարգարուն , կամ սրբեալ , հարթեալ , ըստ որում և սրբել ասեմք զծառս , զհերս , զմօրուս ։ Է որ զլայեկին բառն իմանայ պարզապար իբրև հատեալ եւեթ 'ի ծառոյ · բայց ոչ կերթ թուի և ոչ 'ի դէպ վիրգիլեան ընտրութեան , զի աւելորդ իմն վերադիր լինէր ։

22 · Փոխանակ պարգևս բաշխելոյն յաղթականաց՝ է որ իմանայ պատարագս կամ զոհս և զենլիս բերել իբրև թէ 'ի մեհեանն ։ Սակայն ոչ 'ի դէպ թուի մինչ չև տարեալ զհանդէսն 'ի աւարտ · զիր զինի բերէ՝ ըզձական զբանն առնելով , զպարապ լինելոյն այժմէն ցանկացեալ տեսանել , կամ թուեցեալ քերթողին զցանկութիւն սրտին արդէն իսկ տեսանել յարդիւնս եկեալ · յորում և նկատել իսկ առէ զընծայանս ցլուցն , որ այն ինքն են պատարագքն և զոհքն մատուցեալք ։

24 · Զթատերական խաղսն իմա զոր հանդիսացուցանել կամի 'ի պատիւ յաղթանակին · յորս 'ի դառնալ եռանկիւնաձև նկարուց խաղետեղն՝ փոփոխմամբն տեղի տալ թուի բոլոր տաղաւարաձև խորանայարկն թատեր , և այլ պատկեր և տեսարան 'ի տեղին փոխանորդել ։

25 · Վարագոյրն անջրպետ արկեալ ընդ խաղետեղն և ընդ հանդիսատեսս՝ 'ի սկսանել գուսանացն 'ի վեր կոյս ամբարձեալ լինէր · և յամենայն յայնոսիկ առ Վիրգիլեաւ նկարակերտեալ կային 'ի վարագոյրն ասղնեգործ կամ անկուածոյ բրիտանացիք՝ 'ի յիշատակ յաղթութեանցն Յուլիոսի Կեսարու · և թուէր տեսանելեացն՝ 'ի վերանալ վարագուրին՝ որպէս թէ նոքին ինքեանք յաղթանդամ բրիտանացիքն բառնայցեն զնոսա 'ի վեր ։ Ոմանք համարին թէ բաց 'ի նկարէն բրիտանացւոց վարագուրին՝ էին իսկ և ոմանք ճշմարիտ բրիտանացիք 'ի գերեացն ածելոց , որ զպաշտօն ծառայութեանն այնորիկ հարկանէին յայնժամ արգեամբք 'ի թատերսն Հռովմայ ։

26 · Գանգարեանց պատերազմ է Հընդկացն որ առ Գանգէս գետով , զորս ընդ Պարթևաց պարտեալս համարին Հոկտաւիանոսի , կամ մարգարէանալով յուսացուցանէն , կամ զի յաղթելովն Անտոնիոսի յակտիականն և յաղեքսանդրեան մարտին՝ յաղթել համարիցի և Հնդկաց որ ընդ նմա 'ի թիկունս օգնականութեան գումարեալ էին ։ Որ զյետին կարծիսդ ունին՝ յետոյ յաւելուած համարին զառոգդ · տես Բ · 171 ։ Եւ կամ զի արդեօք իբրև Արեաց և Պարթևաց յաղթօղք Հռովմայեցիք յաղթել համարիցին և Հնդկաց նուաճելոցն երբեմն ընդ նոքօք · բայց որպէս զխորդ ինչ և համարիցի , քերթողաբար աճեցուցանել է զիրսն 'ի պաշտօն կայսեր · զի ոչ երբէք

Յոսկւոյ ու՛ի սերտ փղոսկրոյ և զյաղթողին Կուիրինեայ զէնս ·
Ընդ և ըզՆիլն կուտակադէզ ալեօք 'ի մարտ յորդախաղաց,
Եւ ըզսիւնսըն յարուցեալս 'ի նաւական կուռ պղընձոյ ։
Յաւելցին ասիական ապատք նըկուն, ՝Նըփատ վանեալ,
Եւ Պարթեւն 'ի փախուստ՝ 'ի յետս ընդ կրունկ նետս ապաստան,
Եւ յայլ և յայլ Թըշնամեաց բազկաւ Թափեալ կըրկին նըշանք,
Եւ կըրկին ձաղեալ ազինք յերկաքանչիւր ծագաց երկրի ։
Պարոսեան կացցեն և վէմք կենդանակիր տիպք շընչաւորք,

մինչև 'ի Գանգէս ձգեցին Հռովմայեցիք զաշխարհակալութիւնն. այլ միայն հրեշտակութիւն խօսեցեալ Հնդկաց 'ի ձեռն Աւգոստեայ ընդ Հռովմ՝ դաշինս կռեցին և ուխտ խաղաղութեան հաստատեցին, ածեալ և պարգևս և պատարագս կայսեր ։ Սակայն չէ այս պատերազմ. և իրքդ յետ բազում ամաց կատարման քերթածիս եղեն ։ Վասն որոյ և աստ դարձեալ զայսոսիկ յետոյ ուրեմն 'ի սոյն միտս յաւելեալ կարծեն ոմանք 'ի Վիրգիլեայ ։ Բայց գիւտք ժամանակաց մառայլ բազում ունին, որպէս ասացաք և 'ի յ. 171 ։

27. Կուիրինոս յորջորջէր Արէս դիք մարտի և Հռոմուլոս մեծ նախահայրեան Հռոմոց ։ Նոյին անուամբ մեծարէ աստ զՀոկտաւիանոս, որում և տենչայր նա, զոր և արգեամբք իսկ յետ ամաց երից խորհեցաւ տալ նմա ծերակոյտն. կամ թէ և յետ այնորիկ գրեաց զայսոսիկ Վիրգիլիոս ։ Զորոյ և զզէնսն գրուագել ասէ 'ի դրունս անդ տաճարին, զէնս իմացեալ զնոյն ինքն զկայսրն սպառազինութեամբն, կամ զզինուորութիւնս նորա և զմարտս և զյաղթութիւնս ։

28. Նիլոս կամ Նիլ գետ է Եգիպտացւոց՝ ողաւաղանօք Նեղոս անուանեալ. որպէս յայտ է ։ Բայց կայ 'ի գիրս նախնեաց և ուղիղ գրութիւնն Նիղոս կամ Նիլոս, յորմէ զեղջեալ զյունական յանգն ս որպէս յայլ բազում անուանս, ըստ արևելեայց ասի Նիլ ։ Եւ այնու զաղէքսանդրեան յաղթութիւնն Հոկտաւիանոսի զեկուցանէ 'ի վերայ Անտոնի և Կղէոպատրայ, որով տիրեաց Եգիպտոսի ։

29. Աւգոստոս տիրապետեալ Եգիպտոսի, 'ի պղնձոյ նաւացակայն գերելոց ետ ձուլել սիւնս չորս, և նուիրեալ կանգնեաց զնոսա 'ի տաճարի ։ Դնէ զայդ իբրու տրոպեան նշան յաղթութեան կայսերն ։

30. Յաւելցից, ասէ, 'ի գրուագս դրանցն և զքաղաքս Ասիոյ 'ի պարտութիւն մատնեալս, և զոր զՆիփ ։ Նփատաւ լեռանքն հայաստանեայց զպարտութիւն Հայոց նշանակէ ընդ Անտոնի 'ի Հոկտաւիանոսէ, և զՊարթևացն նոյնպէս ակնարկէ, կամ խոստանայ գուշակաբար ըղձապատում լինելով, որ յետոյ կատարեցաւ ։ Զպարտեալ և զնուաճեալ ազգս հռովմայեցւոց առ հասարակ յիշատակէ, և ոչ թէ զի անձամբ յաղթեալ իցէ նոցա Հոկտաւիանոս. որ և չէ իսկ ինչ հարկ 'ի ճշմարտութիւն բանիցն. զի որ յաղթելովն Անտոնիոսի և միահեծան միապետութեամբն տէր եղեալ էր աշխարհի, և նոցա ամենեցուն յաղթող համարէր ։

31. Պարթևք 'ի պարտիլն յուսային 'ի սրտավար փախուստ ձիոցն, և 'ի նետս աղեղանցն՝ զոր 'ի փախչելն անդ յետս ընդ դէմ դարձեալ արձակէին ։

32. Կրկին նշանք յաղթութեան, ախոյեանք, յաղթանակք յայլ և այլ թշնամեաց՝ պէսպէս իմանին 'ի մեկնչաց ։ Կամ են կրկին յաղթութիւնք կայսեր 'ի վերայ արևելից և արևմտից առ հասարակ, կամ որ 'ի վերայ ասիացւոց և ափրիկեցւոց պարտութեամբն Անտոնիոսի և Կղէոպատրայ յերկուս ճակատամարտս՝ յակտիականն և յաղէքսանդրեանն, կամ որ յառաջին 'ի վերայ Բրուտոսի և Կասսիոսի և որ առ յապա 'ի վերայ պարթևաց՝ դերեդարձ առնելով հռովմէական դրօշուցն ։ Միով բանիւ՝ զպարտութիւն տիեզերաց ասէ առաջի կայսեր ։ Եւ բազկաւ թափեալ ասէ կամ յափշտակեալ, զի զոյժ պնդութեան և զստատկութիւն յաղթողին և զերագութիւն յաղթութեանցն ցուցանիցէ. և զի կայսր 'ի ճակատուն զոր ետ՝ անձամբ նահատակեցաւ և յաղթեաց, և ոչ 'ի ձեռն զօրավարաց իւրոց ։

33. Վասն կրկին յաղթութեանցն կրկին և հանդէս արար յաղթանակի, ելեալ 'ի Ճեմելիս և ձաղեալ առաջի իւր զպարտեալ ազինս երկաքանչիւր կողմանց թշնամեացն ։ Թող զայլ յաղթանակս ։

34. Պարոսեան վէմք են սպիտակ կիճք ազնիւք 'ի Պարոս կղզւոյ, որ մի է 'ի Բո-

Զաւակն Ասսարակեան և իշխողն յԱրամազդայ
Զարմին անուանք, հայրըն Տրովս և Տրովադայ հաւակ Կիւնթեանն։
Նախանձն ՚ի Ճիւաղաց զարհուրեսցի վատախտարակ,
՚Ի գետոյն դղրդոխական ՚ի կարկաջուն կականաւոր,
Եւ ՚ի Ճապուկ մանուածապատ իքսիոնեան վիշապաց,
Յահագին Ճախրեալ անուոյն ու՚ի խարակէն անպարտելի։
Այլ զարդիս՝ դեռ յանմատոյց անտառս ՚ի վայրս յաւէրժհարսանց
՚Ի քումմէդ, Մեկենաս, անցցուք ՚ի ծանր ՚ի հրամանէ։
Առանց քո վըսեմական ինչ և ոչ մի ձեռնարկեն միտք.
Ո՛ն առեալ մի յապաղեր, ձայն Կիթերոն տայ մեծագոչ
Եւ բարակք Տայիգետեայ և ձիավարժն Եպիդաւրոս,
Եւ՚ի միաշունչ մայրեաց ըստէպ կրրկնեալ բարբառըն մրըրնչէ։
Այլ ուրեմն ըղըռոցաշունչ մարտըս Կայսեր հանդերձեցայց

լոր կղզեաց եգէական ծովուն։ Յայսմ ազնիւ կճոյ կանգնել ասէ ՚ի տաճարին պատկերս կամ արձանս իբրև կենդանիս, որ յանգիման ռանիցեն զզաւակն Ասսարակեան, այսինքն զէնիական, և այնու զյուլեանն։ Զի Էնիայ տրովադացւոյ նախահաւ էր Ասսարակոս, և սորա հաւուն հաւ էր Արամազդ, և հայր՝ Տրովս. ամենեքեան նախահարք յուլեան ազգատոհմին որ յէնիական ծննդոց համարեալքն էին։ ՚Ի նոցանէ իջանէր և Հոկտաւիանոսն Աւգոստոս ՚ի մօրէն կողմանէ՝ յԱտտիայ դստերէն Յուլեայ քեռ Յուլիոսի Կեսարու։ Թող զի և որդեգրեալ ևս էր ՚ի Յուլիոսէ կայսերէ, և յետ մահուան նորա՝ Յուլիոս կայսր Հոկտաւիանոս անուանեալ։ Իսկ Կիւնթեանն հաւակ Տրովադայ՝ է Ապոլոն ծնեալն ՚ի Դելոս՝ ուր է Կիւնթոս լեառն. զի նա էր շինիչ Տրովադայ և պաշտպան տրովադացւոց, և ՚ի Հոկտաւիանոսէ առանձին խնամով պաշտեցեալ, մինչև ռամկին որդի Ապոլոնի զնա առձայնել։

37. Նախանձն կարկեալ սասանեսցի, ասէ, յերեսաց կայսեր. յայլում կողման տաճարին ձևացեալ և այս, յայտ արարեալ թէ ոչինչ զօրեսցէ ստանանել կայսեր. զմտաւ ածեալ որ ինչ յաչաղկոտաց մախացելոց պահին պատուհասք ՚ի դժոխս, այսինքն են Ճիւաղքն ժանտք և կատաղիք՝ դաժնիճք մեղաւորաց (տ. 288), և գետ կարկաջուն կականաւոր՝ զոր հելլէն բառիւ Կոկիտոս կամ Կոկիւտոս ասեն, և զօղձս և զհեծութիւնս դատապարտելոց յայտ առնէ. վիշապ օձքն որովք Իքսիոն կապեալ կայ յանիւ մեծ ՚ի սանդարամետս և ընդ նմին հոլովեալ տանջի վասն նենգաւորութեան և պղծագործութեանց իւրոց և ամբարհաւաճ պարծանաց. դարձեալ և ապառաժ վէմն անընկճելի, որով մարդադաւ հուղկահար աւազակն Սիսիփոս տառապեալ տագնապի ՚ի դժոխսն՝ պարտաւորեալ թաւալել հանել զայն ՚ի գլուխ լերին, այլ նորա միշտ անդրէն վերստին ՚ի վայր գլորեալ։

41. Զայսոսիկ յիւրում ժամանակին, ասէ, արասցուք. բայց այժմ, ո՛վ Մեկենաս, եկեսցուք քով դժուարին հրամանաւ յանմատոյց անտառս յոր չև ուրուք քերթողի ոտն հասեալ է. որով ՚ի նորութիւն տաղիցն ակնարկէ։

44. Կիթերոն լեառն Բիովտիոյ անուանի անդէովք. Տայիգետ կամ Տայգետ լեառն Լակոնիոյ նշանաւոր յորսոցն և ՚ի շանց։ Եպիդաւրոս քաղաք Պելոպոնիսոյ յԱրգոլիս ձիաւէտ գաւառի։ Սոքա ամենեքեան, ասէ, ազգի ազգի բարբառովք անտառոցն ձայն բարձեալ հրաւէր կարդան առ իս երգել զնոցանէ։

47. Յետոյ ուրեմն այլուր լիցի ինձ երգել զպատերազմունս կայսեր, և ընդ այնչափ ամս զկնի եկելոցն հռչակել զանուն նորա՝ որչափ կայսրն հեռի է այժմ յառաջին ծագմանէն տրովսեկի, այսինքն ՚ի սկզբանէ աշխարհի։ Ոմանք տրովսեակ կամ ըստ բնագրին Տիթոն (տ. 458) իմանան զորդի Լաւոմեդոնի՝ որդւոյ Իլոսի՝ որդւոյ Տրովսայ նախահօր յուլեան տոհմին.

Նուագել, և զհրաշակ անուանն ընդ ամս հանել այնչափ,
Որչափ 'ի նախ ծագմանէն ընդհատ է Կայսր Տրուսեկի:

Արխրացեալ ընդ մրցանակս ոլոմպական յաղթանակին
Եգձիս ոք թէ սնուցանէ, թէ ոք յարօր ըզպինդ եզինս,
Ի վեր քան զամենայն զանձն և զկրանն ընտրեսցէ մարց:
Լաւագոյն են կերպարանք խոժոռագեղ թանձրըր կովու.
Գլուխ անճոռնի անհեդեդ և պարանոց սոնք և ըստուար,
Եւ մորթ 'ի կըզակէն երեօքըն չափ անկեալ 'ի կախ,
Ուր բաւ ինչ երկայն կողից և ամենայն ինչ յաղթանդամ,
Եւ պըճղունք ու՛նդ կորափիտ եղջերքք ականջքըն թաւամազ:
Ոչ անհաճոյ ինձ լիցի սպիտակախայտ նըշանաւոր,
Կամ ըմբոստ 'ի սամետից և մերթ արի վըիժակօք խեռ,
Եւ տեսիլ հանգոյն ցըլու, ինքըն բոլոր լեռնաբերձ,
Եւ ստորոտք ագւոյն ընդ քարշ՝ 'ի քայլմն ածեն հետոցն աւել:
Որինաւոր հարսանեաց և հըպատակ երկանց հասակ
Յետ չորրորդ ամի սկըսեալ՝ նախ քան ըզտասըն դադարէ.
Այլն ամէն ոչ 'ի ծընունդ 'ի դէպ և ոչ յարօր զօրեղ:
Անդէն իսկ մինչ անդէոց յորդէ զըւարթ առոյգ արբուն,
Լոյծ զարուս և փոյթ ըզհօտն յամուսնութեան 'ի խառնըս արկ,
Եւ այլ յայլմէ սերընդեամբ զաւակ 'ի լոյս ընծայեսջիր:
Վայելուչ աւուրք տիոց հէք մահացուաց փախչին վաղվաղ,
Եզկընի զան մըտանեն ցաւք և ծերոյթ ծանրաթախիծ,
Եւ տաժանք և խիստ մահուն յափըշտակէ անգըթութիւն:
Իցեն միշտ զորոց մարմինս ախորժեսցես փոխանորդել.
Վասն որոյ միշտ նորոգեա, և զի մի զտոյժդ յետոյ խընդրես,
Կանխեսջիր ամի ամի ածել նախրիդ մանուկ 'ի գոյ:
Նոյն նըման և ընտրութիւն է ձիականըն պաճարի:

բայց ոչ յոյժ 'ի դէպ: Զի Տիթոնդ այդ եղբայր Պրիամու՝ հազար ամօք ևս յառաջ էր քան զՀոկտաւիանոս. իսկ քերթողն՝ յաւիտենական յիշատակ յապայս կանգնել խոստանայ նմա: Այսպ ըստ կարգի ևս է իմանալ արև կամ արուսեակ՝ որոյ սկիզբն ծագմանն ընդ առաւօտս անյայտ. և զայն իսկ նշանակէ երբեմն Տիթոնն անուն:

50. Ոլոմպական կամ ոլոմպիական յաղթանակ է ձիընթացիկ արշաւանացն մրցանաց որ յՈլոմպիա կամ յՈլիմպիա կատարէին (19):

68. Անդէն իսկ 'ի հնգեմեան ժամանակին, զոր 'ի դէպ ասաց յամուսնութիւն:

71. Զի հետ զհետէ ծերանան կամ տըկարանան, զորոց զտեղին պարտ է լնուլ. զի մի անազան կարօտեսցիս պակասելոցն և կորուսելոց:

Զոր գամ մի զատուցանես 'ի յոյս ազգին գոլ պայազատս ,
Ընդըստին 'ի տղայ տիոց հոգ մեծաջան խնամոց տարջիր ։
Նախուստ իսկ մրտրուկ քաջազն երիվարի ելեալ 'ի դաշտ
Ուղղաբերձ սօս ընթանայ , զաքսըն թեթեւս առնու դընէ ․
Ջեռներէց 'ի ճանապարհ եւ սպառնալից ուղխից 'ի փորձ
Դիմագրաւ նահատակի եւ յանծանօթ դիպեալ կամուրջ ․
'Ի խըրտուիլ սուն սօսաւիւն՝ ոչ սոսկալի ահիւ շըրթնու ։
Բարձրավիզ եւ գըլուխ նուրբ , սուղ որովայն , գաւակ առոյգ ,
Եւ արի կուրծք քաջալանջ 'ի թանձրամիս թամք յօրանայ ։
Գոյն ընտիր՝ շէկ եւ պիսակ , իսկ յոռեգոյն՝ գորշ եւ աշխէտ ։
Իսկ եւ իսկ եթէ երբէք շաչիւն զինուց հընչէ հեռուստ ,
Ոչ գիտէ հանդարտել , ականջք կանգուն , անդադար 'ի դող ,
Եւ ընդ քիթս ըզմըրթերեալըն փըրնչելով մըրըրկէ բոց ։
Բաշքըն թաւ եւ զաջ ուսոյն իւր ազբախումք անկեալ խաղան ,
Եւ կըրկէն ընդ թիկնամէջս ողունք ելեալ սըփռէն 'ի վայր ,
Եւ թաթուլ սալասըմբակ դըփեալ թընդայ դափր հատանէ ։
Այսպիսի էր յամիկլեան Պոլիդեւկեայ նուաճեալն 'ի սանձ ․
Կիլլարոս եւ զորս հելլէնքն յիշատակեն երգաբանիչք ,
Եւ ամոլք երիվարացն Մարեայ եւ կառք մեծն Աքիլլի ․
'Ի սոյն տիպ եւ ինքն ըզբաշն 'ի ձիակերպ արկ ուլանէն
Զըրուանըն սուր 'ի փախուստ 'ի հասանել գալ ամուսնոյն ,
Եւ 'ի խոխոզ խըրխընջիւն ելից ըզբարձրըն Պելիոն ։

80 · Կէս գրչագիրք ընդ միում հնագունի ընթեռնուն և յանծանօթ ծովուն անդունդս ։

81 · Զքաջազգի ձին անխիրտ և անհարթչելի ասէ · իսկ զվատազգւոյն զհակառակն վկայէ Խորենացին ('ի գիրս պիտ · պատսաւ ձիոյ · ժա) ։

84 · Լաւագոյն ձիոյ գոյնք են , ասէ , շէկըն կամ կարմիր , փաղառ · պիսակն կամ ճարտուկ ճանճկէն , մըրճան գըլուլ · իսկ յոռի՝ գորշն կամ մողոշիկ , ըղնճող · և աշխէտըն կամ երաշխ որ և խարտեաշ՝ ու և գուլա ։

87 · Կէս օրինակի զհանչելովըն ունին հաւկէլեալ ։

89 · Կրկէն ողունք են , յորժամ առոյգագաւակ և թանձրամիս ձիոյ թիկնամէջըն սնեքացեալ գիրութեամբն՝ յերկաքանչիւր կողմանց ողնաշարին բարձրացեալ երրուկրկին ողունք թուին տարածեալք մանաւանդ 'ի գաւակն կոյս · և ակօսաձև խորութիւն 'ի մէջն անդ երեւեցուցանեն ։

91 · Կաստոր և Պոլիդեւկէս եղբարք համամարք՝ ձիավարժք , ծնեան և սնան յԱմիկլայս 'ի քաղաքի Լակոնիոյ · սոցա առլեալ երիվար մի գեղեցիկ Կիլլարոս անուն ։

93 · Արէս աստուած պատերազմի յորժամ հեծանէր 'ի մարտ՝ լծէր երիվարս ամեհիս · որոց և անուանք յիշատակին ։ Իսկ Աքիլլեայ կառքն և երիվարքն սքանչելի պատմեալ կան յԻլիականին Հոմերի · ԺԶ · 148 ։

95 · Այսպիսի ձի եղև և Զրուանն կամ Կռոնոս ըստ առասպելին , որ երբեմն այն ինչ յըմբռնիլ էր 'ի գաղտագործութեանն ընդ Փիլիրայ դստերն Ովկիանու 'ի կնոջէն իւրմէ 'ի Ռէայ կամ Ոպեայ , փոխեցաւ 'ի ձի և փախեաւ 'ի Պելիոն լեառն Թեսալիոյ ։

Եւ ըզգոյն՝ թէ յախտ տարտամ կամ մեղկ ամօք կընատեսցի,
Արգել՚ի տան և մի ներեր անաւագեալ ծերութեան։
Յուրտ է ծեր ՚ի զուգութիւն, զուր տառապի յամուլ վաստակ,
Եւ թէ երբէք ՚ի հանդէս այնմ արութեանց ելանիցէ,
Իբրև հուր ՚ի յարդի մեծ, այլ ապիկար, ընդ վայր մոլի։
Այսուհետև ըզհոգիսն և ըզհասակ տեսցես յաւէտ,
Եւ ապա զայլ ևս արուեստն և ըզսերունդըն հայրենեաց,
Եւ թէ զինչ ցաւ պարտելում, փառաց զի տենչ գուպարայաղթ։
Եթէ ոչ նըշմարիցես յարշաւաստյր մըրցարանին,
Մինչ ոստուցեալք ՚ի գըլխոց ասպատակեն կառք ՚ի կըրկէս,
Մանկըտւոյն մինչ յոյս խիզախ՝ ահ սըրտաթունդ թափէ զոգիս,
Ի կարկամ մըտրակ ըստէպ կան կորովի հարեալ խրախոյս,
Եւ թոյլ տըւեալ ըզպախուցս՝ անիւք թըռչին եռանդնապտոյտ.
Մերթ ՚ի ստոր, մերթ ՚ի վեր բարձր օդաչու թըւին վարեալ
Եւ սլացեալ ՚ի թեւս հողմոց, չիք ինչ հանգիստ ոչ դուլ դադար.
Իսկ մըրրիկ խարտեաշ փոշւոյն փոթորկելով ամպ ցոլանայ.
Տամկանան ՚ի փըրփուր և ՚ի շընչոյ խուռն հասելոց.
Այնչափ սէր.է պըսակի, այնչափ խընամ ՚ի յաղթանակ։
Երիքթոն նախ զառաջին կառըս լըծել և քառաձիս
Խիզախեաց և քաջայաղթ աշտանակել՚ի սուր անիւս.
Պելեթրոնեան Լապիթեայք ելեալք ՚ի նիւս երիվարաց
Ըստեղծին սանձ և ձախրանս և ուսուցին վերելակի
Ըսպազէն տրոփել՚ի դաշտ և ոլորել ըզխրոխտ ընթացս։
Երկոքին ջան հաւասարակ, նոյն և ճարտարք մանր որոնեն

97. Բայց, ասէ, և զայգպիսի քաջ և ընտիր երիվար՝ յախտանալն կամ ՚ի տկարանալն հասակաւ՝ արգել ՚ի խառնից, և մի տար թոյլ։

103. Ցետ ոգւոցն աշխուժից և առոյգ հասակին՝ գիտասցես զայլ ևս արուեստն, այսինքն զօրութիւնս, քաջութիւնս յովանակին, և զայլ ծնունդս ծնողաց նորա, թէ որպիսի իցէ բարուք և ուժով, և թէ որչափ տրտմիցի ՚ի պարտիլն ՚ի մրցանս ընթացից, և որպէս ցանկանայցէ փառաց։ Եւ զի մի զարմանայցես ընդ այսպիսի իմաստս ունել ասելոյ անբանիցդ ձիոց, հայեաց և տես յառաջարէս ձիընթացիցն։

110. Է զի ՚ի զիջագոյն տեղիսն ստորիջեալք՝ և է զի ՚ի վեր երևեալք ընդ դարականն՝ ըստ գար և փոս վայրացն կոհակաձև փոփոխմանց։

115. Երիքթոն փռիւգացի որդի Դարդանայ առինախ հնարեալ զերկձի կառսն, և միւս ոմն Երիքթոն թագաւոր աթենացւոց՝ զքառաձին։

116. Կէս օրինակք այսպէս ունին, և [illegible]։

117. Պելեթրոն էր անտառ կամ քաղաք ՚ի Պելիոն լերին Թեսալիոյ, յորմէ յորջորջէ զԼապիթեայսն՝ զԹեսաղական ժողովուրդս, և նոցա ընծայէ զգիւտ հեծելութեան և սանձից և այլ ևս արուեստից ձիավարութեան։ Այլք այլոց համարին։

120. Երկոքին ջանքդ՝ հեծելութեան և կառավարութեան, և զորս յառաջին եդ՝

Զառոյգամանձն և ջերմոգի աժխոյժ 'ի վազս և եռանդուն,
Թէ և ըստէպ 'ի փախուստ ըղձըլչնամիս իցէ տարեալ
Եւ իւր տուն պատմեսցէ զարի Միկէնս և զԷպիրոս,
Եւ ըղձեւտն իջուցէ իւր՝ 'ի սերմանէն պոսիդոնեան։
Նայեսցիկ միտ եդեալ՝ ըսպաս առնեն հասեալ ժամուն,
Եւ զոր իշխանն ընտրեցին և եդին այր ասպաստանացն,
Ըստէպ կան ամենևիմբ թանձրաթաղանթ պարարելոյ.
Հընձեն խոտըս ծաղկաւէտ, պաշտեն ցորեան ջուրց հոսանօք,
Զի մի անօսր ունատակ 'ի հեշտալի մնասցէ ձըգուն,
Եւ վըտիտ ծընգատ ծընունդք զհարցըն քերցեն ծամեալ տուայտանս։
Նայն սակայն ըղմատակաց ազգ մըտադիւր հիւծմամբ ծիւրեն,
Եւ յորժամ խըտղանաց համբ դըրդեն 'ի նոր խառնից ճաշակ,
Ընդուազ 'ի տերևոց թողեալ մերժեն և յաղբերաց,
Եւ ըստէպ լըլկեն յարշաւ և 'ի տօթի առնեն աշխատ՝
Յորք ընդ ծանըր թոպմամբ կասեալ արդեանց կալըքըն հեծեն
Եւ 'ի շունչըս Զեփիւռին հոսեալ ցընդին ունգք չըքոտի։
Զայս առնեն, զի սոնքացեալ մի ծնընդական անդին վըտառ
Նա 'ի պէտսըն բըթեսցի և խընուցուն ուրդքըն անգործ,
Նայն պասքով զուխս հեշտանաց ծըծեալ 'ի խորս ամբարեսցէ։
Մերուստին հարցըն հոգոց անցելոց՝ մարցըն յաջորդէն։
'Ի լընուլ աւուրցն ամսոց մինչ սաղմնաւորիկ ծանըր շըրջին,
Մի զնոսա 'ի խըստաքեռն 'ի լուծ սայլից ոք մըտանել
Մի վազիւք ոստմամբ ընդ հետ ինչ անցանել տացէ երբէք,
Կամ քուռն 'ի մարգս ըշտապաւ դիմել, լուղել 'ի սուր հեղեղ։
Յամայի ճարակեսցին արօտ և յեզր յորդ վըտակաց,

զաւակասերութեան և ասպարիսական մըցանաց, հաւասարապէս գժուարին են և գոմելի, և հաւասարապէս ճարտարքն առ երկոսին իսկ խնդրեն զառոյգահասակն և զեռանդնոտն։ Որ թէ չիցէ այնպէս, ոչինչ օգնէ այնուհետև, թէպէտ և քաջութեամբ գերազանցեալ գտանիցի, և հայրենեօք 'ի Միկենից և յԷպիրոսէ՝ յաղթարհէ քաջընտիր երիվարաց, և թէ և զզարմ իւր ձգիցէ 'ի նախաստեղծ ձիոյն Պոսիդոնի (տ. 14), կամ իմա 'ի նմին իսկ 'ի Պոսիդոնէ, յորմէ և 'ի Դեմետրեայ 'ի ձի փոխելոյ ծնաւ առասպելեալն Արիոն երիվար։ Այս ամենայն կամի ասել, թէ յորմէ ազնիւ զարմէ և իցէ, ոչինչ օգնէ՝ եթէ առոյգ հասակ և եռանդնոտ ոգիք մերձ ոչ իցեն։

125. Հասեալ ժամու խառնիցն ամուսնութեան. և պարարեն զհաւատոր երիվարն հայր սահմանեալ սերնդեան որդւոց։

135. 'Ի խոր ամբարայնի, յորժամ 'ի կալս կասուն ցորեան և հոսեն առ աջի հողմոյ։

137. Զայս առնեն զի մի անցք արգանդին փակեսցին գիրութեամբ, այլ դիւրապատրաստ գտանիցի 'ի սաղմնաւորութիւն։

Ուր մամռուտք և 'ի դալար կանաչաբոյս փըթթեալ ափունք,
Ապաւէն անձաւք լցին և հովանի վիմացն անկցի:
Ըզ Ալիլարեայ պուրակօք և 'ի սըզոցիւք Նյջեռուն ամեթ
Խըստ թըրթուէն զոր բոռն ասեմք մեք, Յոյնք յԻստրոս ձայն փոխեցին,
Դըժընդակ, ճիւաղ շառաչ՝ յորմէ բոլոր ահիւ սարսեալ
Խուճապին ջոկք 'ի մայրեաց, և 'ի մռընչիւնն առեալ դըղորդ
Երկինք գոռան և անտառք և ափն ոստինըն Տանագրի:
Զայդ հըրէշ 'ի ձեռն առեալ զոխըն թաւեաց զահագնացայտ
Ինաքեան երընջոյն ժանտ նիւթելով երբեմն Հերայ:
Եւ ըզգա զմոլեգնախանձն 'ի միջօրեայ տօթ տապախարշ
'Ի յըղի երամակէն փարատեսցես՝ զհօտն արածեալ
'Ի զըւարթ արւածայըս կամ յաստեղաց ըզցայգն ածել:
Ամենայն յետ ծընընդոց 'ի պէտս որթուց երթայ խընամ.
Եւ անդէն զանուանս ազգին և ըզկընիքս հարեալ դըրոշմեն,
Եւ թէ զոյս 'ի սերունդ աճման հօտին հանցեն յընտիրս,
Կամ բագնաց սըրբանըւէր, կամ ակօսից 'ի կոտորել
Եւ ըզդաշտըն կուտակեալ կոշտիցն 'ի դէզ՝ ցըրուել 'ի հարթ:
Այլ ջոլիրքն արածին յարօտ դալար գարնանադեղ:
Զորս 'ի փոյթ և 'ի հրահանգըս շինական կըրթես վարուց,
Դու զընջուղս յորդորեսջիր և կաց ըստէպ նըւաճելոյ,
Մինչ ոգիք մանկանց հըլու և մինչ հասակ է դիւրամէտ:
Եւ նախ թոյլս 'ի նուրբ ուռոց մանեակս 'ի վիզն արկանիցես.
Եւ երբ ազատ պարանոցք մըղլին 'ի հարկ ծառայութեան,
Յայնմհետէ յանրոց անտի ամոլս 'ի զոյգ կապեալ լըծեա,
Եւ զզըւարակս հարկեցո զուգաց խաղալ յոտիցն 'ի ձեմ:
Եւ ըստէպ դատարկ անիւք 'ի նոցանէն ածցին 'ի քարշ
Ընդ երեսըս փոշւոյն հազիւ գըծեալ զհետըն թեթև:
Ծանրաբեռն ապա ճըգնեալ սռնըն փիճի ճըռընչիցի

148. Սիլարոս գետ է Կամպանիոյ յԻտալիա, յոր մտանէ վտակն կամ հեղեղատն Տանագրոս յԱլբուռնոս լեռնէ իջեալ, բայց 'ի տապոյ ամառայնի ցամաքի:
154. Ինաքեան երինջ է Յով դուստր Ինաքայ արքայի արգոսացւոց, զոր Արամազդ առ 'ի թաքուցանել զառափանս իւր ընդ նմա 'ի Հերայ կնոջէն իւրմէ՝ փոխակերպեաց զնա 'ի կով. բայց Հերայ իրազգացեալ եղեալ՝ և 'ի ձեռն բոռոյ մոլեցուցեալ հալածեաց զնա և փախոյց մինչև յԵգիպտոս, ուր և փոխեցաւ նա յԻսիս աստուածուհի եգիպտական:
157. Աստեղք ածել առին զգիշերն, զի 'ի ծագել նոցա լինի գիշեր:
171. Դատարկ անիւք են դատարկ սայլք. այնպէս թեթև իցեն սայլքն, զի հազիւ թողուցուն նշմարանս հետոց: Ապա յետոյ իբրև զարգացեալ զօրացին, ձըգեսցեն սայլս ծանունս:

Եւ զագուցիկ շրջանակըն ձըգեսցէ պղընձի առեղ։
Նըստ տըրմուղ համբակացն ոչ դեղ դալար միայն եւեթ,
Այլ զուռեաց ոսին սաղարթ եւ կամ ըզլօռըն Ջըրասուն,
Նոյն ցորեան դեռաբուսիկ քոյով ձեռօքըդ քաղեսցես.
Եւ զձիւնաթոյր դոյլըդ զօրէն հարց մատաղորթ պառակամանք
Ի լընուցուն, այլ զըստինս ողջ ջամբեսցեն քաղցր որդեկաց։
Իսկ թէ փոյթ մարտից յաւէտ եւ ձիախրոխտ իցէ սպայից,
Կամ յանիւս առ Ալփէիւ զՊիսեայ սահել գնացիւք գետոց,
Եւ թռուցիկ կառս յանտառին տարաբերել Արամազդայ,
Առաջին ջանն՝ ըզմարտկաց տեսանել զոռս եւ զառնազէնս,
Հանդուրժել զալարփողոց եւ 'ի շարժումն կառաց շաչիւն.
Սանձուց եւ շրուշակաց յասպաստանին շկահիւն լըսել,
Պեր 'ի վեր 'ի վարժողին հեշտ փաղաքուշ խայտալ դըրուատ,
Եւ սիրել ըզծափաձայն շօշափ ուլանն ուժգնահընչակ։
Յայդոսիկ՝ այն ինչ 'ի ստեանց մօրն հատուցեալ՝ խրախուսեսցէ.
Նա նըմին տացէ զկըզակն եւ 'ի փափուկ դանդանաւանդ,
Դեռ եւս անզօր դեղեւկոտ, անփորձ դեռ եւս աստեացն ուժի։
Սակայն յելս երրորդաց՝ 'ի մուտ չորիր ամարայնոյ
Սկիզըն տացէ ճախր 'ի ճեմել, ճեմքն 'ի կըշիռ թընդել դըրնդիւն,
Եւ զկարթիցն 'ի ճօճ կըրկնեալ տացէ թողցէ ճապուկ մանուած
Տագնապելոյ իմն հանգոյն, ձայն յասպարէզ այնուհետեւ
Արընթացիւք տացէ հողմոց, եւ իբր արձակ յերեսանաց
Ի հարթարդակ թռուցեալ 'ի դաշտ՝ հազիւ դիցէ հետս յաւազին։
Որպէս ինչ 'ի սառնասէր ծագաց յորժամ բարկ հիւսիսակ
Խոյացեալ՝ զըսկիւթական ցըրուէ ձմերունս եւ զերաշտ ամպս.

177. Ցորեան իմա զառաջին խոտ բուսոյ ցորենոյն, զոր եւ դեռաբուսիկն եւ ձեռօք քաղելն յայտ առնէ։

178. Եւ մի ըստ հնոցն օրինի կթեսցես զստինս մարցն, այլ թողացո դիել որթուցն։

181. Պիսա նահանգ էր մասն Եղիսի կամ Եղէայ 'ի Պեղոպոնէս, յորում էր Ողոմպիա քաղաք եւ Ալփէոս գետ, եւ մեհեան և անտառ Արամազդայ և նուիրեալ տեղիք մեհենին, առ որովք կատարէին ողոմպիական մրցութիւնք ասպարիսաճեմ արշաւանաց կառաց։ Եթէ 'ի մարտս կամ 'ի կառարշաւս կամիս կրթել զերիվարդ, սաէ, առաջին փոյթ լիցի զի տեսցեն զզէնս եւ զխրախուսանս մարտուցելոց, այլովքն հանդերձ։

192. Սկսցի շրջան առնուլ. հիռ զալ. եւ քայլքն թռուով եւ կշռով 'ի դաշնակաւոր ելեւէջս բախեսցեն զգետինն։

197. Սառնասէր ծագք են հիւսիսական ձմեռնացեալ աշխարհք, յորոց շնչեալ հողմ հիւսիսի հալածէ զձմերունս՝ զքուքս, եւ զանջրդի ամպս Սկիւթիոյ որ ոչ լուծանին յանձրեւ յերեսաց չոր ցրտոյն։ Եւ Սկիւթիա ըստ նախնեաց իմանին յաճախ ամենայն ցրտային աշխարհքն որ 'ի Դանուբ կամ Խառոս գետոյ եւ անդր մինչեւ 'ի հիւսիս եւ յարեւելս հիւսիսոյ։

Ընդ հունձք բարձրադէզք և արտորայք քըստմնածածան
Մարսափեն 'ի մեղմ շընչոյն վէտ վէտ ծօծեալ կոհակաւէտ,
Ընչեն մայրիք երկնածայրք, երկայն ալիք կոծին յափունս.
Նա սլանայ զանդ և զանդունդս համայն 'ի թափ փոթորկելով։
Այդպիսիդ յեղեան դաշտին 'ի կէտ՝ 'ի լայն մեծ հրապարակ
Ընդ քիրտն հարցի, ու'նդ փրփուր գայցեն երախքն ընդ ապաժոյժ,
Կամ կակուղ պարանոցաւ լաւ ևս անցէ զբելճգացի կառս։
Ընդ ապա զգօնացելոցն յաշտիպ աւոք զկրամն աճուն
Թոյլ տուր պարարել, որ զի յառաջ մինչ չև են մուղ՝
Մեծամեծըս ըղըտմըտեալ և փըքնկայցեն չառացեն 'ի յանձն
Իզձապուկ մըտրակ 'ի կուշտ և հետեւսցեն կարծըր ճըմնաց։
Այլ ոչինչ ըզկորովսն այնպէս գիտէ պընդել հանճար,
Որպէս մերժել զԱստղկան և զկոյր տարփիցըն խըտրղտանս,
Թէ անդեայց և թէ ձիոց իցեն ումեք ըսպասք հաճոյ։
Վասն որոյ հեռի ուրեք վարեն ըզցուլս յարօտ 'ի զերծ
Յետ կուսէ լերին և յայն կոյս յորդահոս ծաւալ գետոց,
Կամ 'ի ներքս արգելեալ առ պատարուն պահեն մըսուրս։
Զի հաշէ մաշէ զոգիսն էգն 'ի տեսիլ և տոչորէ,
Ոչ պուրակս ընդ միտ ածել ներէ և ոչ ըզդեղ դալար.
Այլ աղու հրապուրանօքն ըստէպ դըրդէ զգոռոզ տըռփողս
'Ի գուպար գոռալ միմեանց և ոգորել բուռն եղջերօք։
Կայ երինջ գեղեցիկ ճարակաւոր 'ի մեծ մայրիս,
Նոքա գազանաբար ճակատ տըւեալ խառնին 'ի կռիւ
Կուռ կոփմամբ խեթկելով, մարմինք ներկեալ յարիւն 'ի թուխ,
Այլ վըժակք յոտնս հանդէպ մըղեալ վարսին լայն թառանչմամբ,
Անտառք անդրէն մըռընչեն և որոտայ մեծն Ոլիմպոս։

203. 'Ի դաշտին Եղէայ կամ Եղիսի, յասպարէզ ողոմպիական ձիընթացից։

205. Բելճգացի կառք էին կառք ինչ պատերազմիկ, որով վարէին բելճգացիք և բրիտանացիք. իմա որ և է կառս։

206. Իբրև այսպէս մղեալ և վարեալ զգօնանան 'ի արմղութենէն, մատուցեա նոցա զօրաւոր կերակուր. զի յառաջ խորոխանն, ըմբոստանան և խեռեալ ընդվզեալ ըմպահկեն, և խստերախ լինեալ չառնուն յանձն զճիման ճմլիչս և ճնշիչս կղակացն։

211. Աստղիկ, որ և Ափրոդիտէ, էր աստուածուհի սիրոյ և տարփանաց և խառնից և հեշտութեանց. և բազում անգամ փոխանակ այսոցիկ առեալ է։

220. փոխանակ բառից բնագրին in magna silva, 'ի մեծ մայրիս՝ հնագոյն գրչագիրք մի ևեթ գրեալ նախ silva և ապա քերեալ զի առնէ in magna Sila, 'ի մեծն Սիլա. թերևս յԷնիականէն առեալ որ 'ի ԺԲ. 715։ Եւ է Սիլա լեառն և անտառ մեծ 'ի մէջ ապեննեան լերանց Իտալիոյ 'ի սահմանս կալաբրացւոց։

224. Ոլիմպոս լեառն Թեսալիոյ. դիցն կայեան, Դիցընկեց ևս կարգացեալ 'ի մե-

'Ի վըսեր եկելոցն ոչ ևս օրէն կալ երդակից ,
Այլ պարտեալն 'ի բաց գընայ վըտարանդի յօտար սահմանս
Յոգոց ելեալ դառնապէս ընդ հարուածոց սէգ յաղթողին ,
Ընդ կորստեան , ընդ սիրուհւոյն՝ յորմէ առանց վրիժուց անկեալ
Եւ 'ի գոմէն ակնկառոյց լըք զհայրենիսն արքայութիւն :
Արդ ամենայն պընդութեամբ թեքեալ սըրէ զոյժն և ըզջիլս ,
Եւ ընդ խիստ քարինս 'ի տուկ անկեալ դըժնի գետնախըշտի ,
Ծաւարծի տերևովք ըզքաղցն հարեալ ու 'ի սուր կընիւն
Եւ կըշռեալ զանձն 'ի հանդէս և ընդ ծառոց մըրցեալ կոճեղս
Ուսանի ամեհել եղջերբք և զհողմըս կոծելով
Ագրի և հող հանէ յառհաւատչեայ մարտին 'ի փորձ :
Եւ այսպէս առեալ ըզզօրն՝ 'ի ծոց զոգիս իւր ժողովեալ
Խաղայ շտապաւ անկանի յանակընկալ 'ի թըշնամին .
Որպէս ալի փըրփըրադէզ սպիտակացեալ ծովուն 'ի խորս
'Ի հեռուստ և յանդընդոց զոգ առեալ գայ թաւալգըլոր ,
Յափըն կոյս ահեղ գոչէ վայրենացեալ ընդ քարաժայռս ,
Եւ ոչ ընդհատ լեռնակուտակ փնջօք տապալ կործանի ,
Իսկ խորոց ուխք յորձնեռանդն 'ի վեր ժայթքեն ըզսեաւ աւազ :
Ամենայն երկրակենցաղ ազինք մարդկան և գազանաց
Եւ ազգ ծովալուղակ , պաճարք և հաւք երփնանըրկարք
'Ի կըտղանս ու 'ի հուր գըլլեն , յամենեսին նոյն են տըռփք :
Ոչ յայլում ժամանակի կորեանցն անյուշ մատակ առիւծ
Շըրջեցաւ ամեհագոյն 'ի դաշտ , և ոչ այնչափ յաճախ
Արջք անտիպք մահուանս յանտառս և ճոխ նախճիրըս գործեցին .
Յայնժամ վարազ կատաղի , յայնժամ և վագր է դըժընդակ .
Ահ , եղուկ որ թափառին յայնժամ յամայս Լիբէական :
Ոչ տեսանես ընդ ձիոց առ հասարակ զխառըդ սարսուռ
Կըննայ 'նոց անդամս՝ եթէ սիք ըզհոտն ևեթ բերէ զծանօթ .

րոց նախնեաց , ուր ընկեցան գիքն զերծանել և ապրել 'ի ձեռաց · սպայիցն , և ուր կեցին և սնեալ զարգացան և կալան բնակութիւն : Բազում ուրեք , որպէս և աստանօր , փոխանակ երկնից առեալ է , կամ փոխանակ մերձակայ լերանց . զի և գըլխագիր մի ունի Երկայնն Ոլիմբ :

231 . 'Ի փոլ , այսինքն մինչև 'ի սպառ յամառեալ պնդեալ , pernix. այսպէս ընթեռնուն ամենայն գրչագիրք : Իսկ pernox, փոխան , անփոյթ հսկելով զգիշերն , որ 'ի տպագիրս ինչ երևեալ , գիտէ Սկալիգերեանց՝ որ այնպէս ուղղելի գտանեցան ըզբնագիրն , այլ ոչ հաճոյ եղև հմտագունից :

250 . Անապք լիբէական են անապատքն Ափրիկէի :

252 . Եթէ օդն կամ հողմն բերէ նոցա զծանօթ հոտ մատակացն :

Ոչ քաջաց վարապանք և ոչ մրտրակք դաժանագոյնք,
Ոչ ժայռք, ոչ քարանձաւք ըզգէմ ունին յայնժամ նոցա,
Եւ ոչ ուխք յափրշտակեալ լերինս յալիսն հոլովելով։
Այնձ՛ ինքնին սաբէլացի դիմեալ ժանիս զիւր յեսանէ,
Վըրդովէ զերկիր ոտամբ, և զկողըս իւր շըփեալ ընդ ծառ՝
Եւ աստի և անտի զուսան 'ի հարուած պընդէ վըրաց։
Զի՞նչ ապա երիտասարդ յոյր ոսկերս հուր բոցածաւալ
Բորբոքէ զուլթ անմըռւէր. ընդ փոթորկաց հրոսօղ խուժան
'Ի խոր 'ի կոյր գիշերի նա՚նդ ծով լիւղի մըրըրկածուփ.
'Ի վերուստ որոտընդոստ Ճայթէ երկնից դուռն ահագին,
Եւ 'ի խուլթսըն խորտակեալ մաղնչէն ալիքըն բարկացայտ.
Ոչ ծընօղք թըշուառական կարեն ըզնա յետ նահանջել,
Եւ ոչ՝ կուսին անգամ յողորմ օրհաս մահ մօտալուտ։
Զի՛ քաւթառք լուսակունք Սպանդարմետին խայտախարիւք,
Եւ գայլոց քանսասարիկ վոհմակ և շանց Ճետ ամեհի.
Անարի թէպէտ և ազգ եղջերուաց զի՞նչ տան պատերազմ։
Այլ Ճայկաց մոլեգնութեան աւիւն զըլէ քան զամենայն.
Եւ զայդ միտս Աստղիկ ինքնին էարկ՝ յորժամ պոտնեան զամբիկք
Ըզ Գլաւկեայ մարմինս առին ատամանցի գէշ գէշ ծըրծեալ։
Սէր ըստ Գարգար տանի զնոսա և ըստ Ասկան կարկաչուն,
Ըզսարօք խրոխտեալ վազեն և հատանեն ըզգետս 'ի լիւղ.
Եւ անդէն իբրև յուղեղըն անձկայրեացս հարկանի բոց,

256. Վարազ լերանցն Սաբինեցւոց յիտալիա, որ ասին և սաբէլացիք։

258. Օրինակք ինչ ընթեռնուն չըփեալ ընդ ծառ Աստի և անտի, զուսան 'ի հարուած պընդէ վէրաց. այլ ոչ կիրթ թուի քաջ քննողաց։

260. Ակնարկէ 'ի կիրս Լէանդրի երիտասարդին, որոյ սիրեալ զՀերոյ կոյս՝ որ յայնմ կողմանէ կրճի Հելլեսպոնտոս ծովուն բնակէր 'ի Սեստոս աւանի Թրակիոյ, յԱբիւդոս աւանէ ափակողմանն ուր ինքն էր՝ 'ի լիւղ անցանէր գիշերի ընդ ծովն առ տարփածուն։ Եւ յաւուր միում 'ի մրրկէ ըմբռնեալ և պարտասեալ՝ հեղձաւ 'ի ջուրսըն. զորոյ տեսեալ կուսին զդիակնն վարեալ յափն Թրակեան՝ առ աղետիցն արկ զինքն 'ի վայր 'ի բերդէ անտի և մեռաւ։

262. Դուռն երկնից է նոյն ինքն երկինք, որոյ արքունիք և տաճար գոլով Արամազդայ՝ հարկաւ և դուռն իմն իմանային նմա, ընդ որ և զփայլատակունս իւր առաքէր աստուածն սրտմտեալ։

266. Քաւթառքն ազգ են գայլոյ կամ կատուի սրատեսյոյժ, յորմէ և լուսակն, լուսակունք ասացեալ են։ Զսոսա որպէս և զվագերս 'ի կառս իւր լծեաց Սպանդարամետ կամ Դիոնիսոս Բաքոս։

270. Զայդ բնութիւն և զբարս կատաղութեան Աստղիկ կամ Ափրոդիտէ ետ նոցա, յորժամ Գլաւկոս՝ որ 'ի Պոտնիա գեղջէ Բիովտիոյ՝ արգել 'ի խառնից զձիս իւր մատակս. և Աստղկան ցասուցեալ ընդ այն՝ արկ մոլեգնութիւն 'ի նոսա մինչև գէշագէշ ցրցատել զտէրն իւրեանց։

272. Գարգար մի է 'ի գագաթանց Իտայ լերին Տրովադայ. Ասկան կամ Ասկանիոս գետ Բիւթանիոյ. քերթողաբար առեալք փոխանակ որ և է լերին և գետոյ։

Պառնայնի մանաւանդ, զ՚՚ի գարնան տապ ղառնայ յոսկերս,
Բացեալ առ հասարակ նոցա բերան ՚ի զեփիւռ կոյս՝
Կանգնին բարձր ՚ի պարեխս և սիք ծըծեն նուրբ և թեթև,
Եւ յաճախ առանց իմիք ամուսնութեան յօդոյ յղացեալ,
Ո՛ր զարմանք, ընդ վէմս ընդ վախս և զիջագոյն սրանան հովիտս,
Ոչ, ծըմանկ, առ ելըս քո և ոչ առ դըրունս արեգական,
՚Ի հիւսիս և ՚ի խըրըթնին, և մըթագինն ուստի հարաւ
Յարուցեալ ցօղագին հողմով զերկինըս խոժոռէ։
Աստ ապա ստուգագէտ յորջորջանօք կոչեցան հովուաց
Ձիամոլըն մակարդուն ընդ ցայըս ընդ հաճըն կաթէ ժահ,
Ձիամոլըն զոր ըստէպ ՚ի պէտս առին ջատուկ մօրուք
Խառնեալ տոգորս ՚ի բուսոց և ժանտագործ յուռթից մըրմռնջս։
Այլ փախչի արդ աւասիկ փախչի անդիւտըն ժամանակ,
Ուր և մեր սիրով վարեալ կամք դեգերեալ զամենեքումբք։

Այսչափ ինչ շատ անդէոց, վաստակոց մասն այլ կայ մընայ,
Զասրաբեր հօտըն զըննել և զթաւագէս այծից հօրանս.
Այս է գործ, աստի ժրագլուխ մըշակք առէք յոյս պարծանաց։
Գիտեմ քաջ՝ մեծ քանիօն իցէ դոցա յաղթել բանիւք
Եւ զիրացդ անօսրութիւն ՚ի սոյն պըճնել շուք և պատիւ։
Սակայն զիս սէր անուշակ ընդ պառնասեանն յափըշտակէ

276. Կարծիք էին հնոցն անվաւերականք՝ ՚ի զեփիւռէ կամ ՚ի հողմոյ յղանալ ձիոց մատակաց. և այն բաւական էր քերթողին ՚ի պաճուճանս տաղիցն։ Զնոյն և զթռչնոց ոմանց ընկալաւ կարծել մեծն Բասիլիոս ՚ի վեցօրեայ արարչութեան ճառսն. յէջ 171։

280. Իբրև այսպէս յղանան, ասէ, ՚ի զեփիւռէ, այնուհետև ոչ յարևելս կոյս գիմեն, այլ ՚ի հիւսիսի և յարևմուտս և ՚ի հարաւ։ Մեկին ես Արիստոտէլ. ընթանան, ասէ, ոչ յարևելս և ոչ յարևմուտս, այլ ՚ի հիւսիս և ՚ի հարաւ. ուր Հայնը՝ քաջ մեկնիչն Վիրգիլեայ ասէ. Ցայսմ ևեթ չմիաբանի իմաստասէրն ընդ քերթողին, զի և զարևմուտս ՚ի բաց տանի։

283. ՚Ի ջեռնուլ այսպէս մատակացն և ՚ի յղենալ ընդ ծննդանոցան թորէ, ասէ, հիւթն այն զոր հովիւք հաւաստի անուամբ ձիամոլ կամ ձիաւիւն կոչեն. և դեղատուք ՚ի պէտս սիրելական դեղոյ պաշտէին առտարփածուս սիրելեաց ՚ի կախարդել գերել զնոսա։ Զայս անուն հաւաստի այսմ նիւթոյ համարի, զի պէտակաբար ՚ի նոյն անուն կոչէր երբեմն և միս ինչ սպնգանման բուսեալ ՚ի ճակատու և ՚ի լեզուի յովանակի այն ինչ ծնելոյ, զոր և կարծէին թէ առժամայն կլանիցէ մայրն ծննդական. և գեղատուաց աճապարեալ շորթէին վարել ՚ի նոյն պէտս յուռթից և բժժանաց։ Զայս տիրապէս սէր մոլորութեան կամ պարզաբար իսկ սէր կոչէին, որպէս և Վիրգիլիոս ինքնին յԷնիականին, Դ. 516։

288. Մինչդեռ և մեք ՚ի սիրոյ իրացս զհետ վարիմք ամենայնի մանրամասնաբար։

294. Գիտեմ զդժուարութիւն քերթողաբար զարդարելոյ իրացդ, սակայն սէր դոցա կամ տաղից առնու վարէ զիս յանմարդի և յառապար անապատս Պառնասու լերին բանաստեղծութեան, ուր ոչ միոյ ուրուք հետք յառաջ քան զիս երևի ընդ հեշտալին զառ ՚ի վայրն դիմել ՚ի Կաստալ֊

Ընդ անկոխ ափափայս , քաղցր է ձեմել զգահաւանդօք
Ուր ոչ մի հետք առաջնոյ ընդ դար դիւրին գնայ 'ի Սյատաւն :
Այժմ, ով Պալլէս նազելի , այժմ է հընչել վեհ բերանով :
Սկիզբն առեալ ղընեմ պատուէր՝ օդեաց 'ի հեշտ մանկաղատեղս
Ունել խայր մինչև այսրէն սաղարթագեղ դարձցի ամառն ,
Եւ բաղում յարդ և սիզոյ բարդըս սփռել կարծր 'ի խըշտիս ,
Օ՜ մի ցուրտ սառամանիք մեղանչիցեն քընքուշ հօտին
Եւ քոսիւ հարկանիցեն և դըժպատեհ խոչառութեամբ :
Հրաման այնուհետև տամ ըզմաթուզ տերևախիտ
Այծից մատուցանել ուականակիտ ջամբել վըտակս ,
Եւ զփարախն 'ի հողմոց 'ի միջօրեայ կոյս դարձուցեալ
Արկանել 'ի ձմերային ակն արևու , մինչև անկցի
Ջըրհոս սառամանուտ և զտարւոյն վերջս ոռոգեսցէ :
Եւ դոցին յանձանձանք՝ չեն մեզ թեթև ուչ դոյզըն պէտք ,
Միլետեան թէ և զըզաթք 'ի տիւրացի ներկեալ կարմիր
Մեծագնի վաճառիցին , աստ սերմըն ձոխ , կաթն յորդաբուխ .
Ըստ քամել ըստեանց սոցուն և կըթոցացն եռալ փըրփուր
Նոյնչափ պըտկանցն 'ի ձըմլել զըւարթառատ գնայցեն միժակք :
Նա 'ւանիկ աստանօր և զկինիփեանըն նոխազի
Ըզմօրուս և զալեոր կըզակ փոքրեն և զգէս վարսից
Առ 'ի պէտըս ձամբարաց և 'ի ծածկոյթ հէք նաւազին :
Իսկ ձարակ՝ ծայրից Լիկեայ զգխտակս առնուն և ըզթըփուտս ,
Ըզմորենիս քըսմնափուշ և ըզմացառըն լեռնասէր .

կամ կատաղիս և կատաղեան աղբիւր՝ որ զատորատով Պառնասոս լերին՝ Ապոլոնի և Մուսայից նուիրեալ , որոյ և ջուրք բարեհամք՝ քերթողս յարդարէին որք ըմպէինն :

297 . Ի Պալէս գիցն հովուաց հայցէ զօրութիւն մեծավայելուչ ոճով ձառելոյ զնուաստն :

307 . Մինչև մօտ յելս փետրուարի , առուրով անկանի կամ մտանէ Ջըրհոսն աստեղատունն ձմեռնային և ցուրտ ջրոյ հոսօղ, որով իբրև թէ առոգանէ զկատարած ամիս . որ 'ի փետրուարի վախճանէր և 'ի մարտի սկսանէր առ հին հռովմայեցիս :

308 . Դոցին այծիցդ զոր 'ի յետին տեղւոջ յիշատակեաց փոքր մի 'ի վերոյ :

309 . Միլետոս քաղաք էր 'ի սահմանակցութեան Յոնիոյ և Կարիոյ՝ առատաբեր ազնիւ ասու . բայց աստ հասարակաբար զբուրդս կամի նշանակել : Թէ և , ասէ , բուրդք ոչխարաց ներկեալք 'ի ծիրանի՝ ծանրագին իցեն , ոչ այնու այծիք քան զոգիս անարգ իցեն կամ անշահ ինչ . զի սոցա սերունդն առատ է , և այլն :

313 . Կինիփեան է լիբիական կամ ափրիկեան . զի Կինիփս կամ Կինիփոս է գետ Լիբիոյ 'ի սահմանս Տրապօլսի առ Գարամանտօք , ուր գիտաւոր յոյժ են քաղք , որովք խմա զայծիս առ հասարակ . յորոց մազիցն գործէին յայնժամ խարազն և քուրձ և չուանս :

316 . Զլիկէոս տես ա . 19 . և խմա փոխանակ որոյ և է լերին :

Եւ ինքնին ուշիմ մըտօք դառնան 'ի տուն՝ և զիւրեանս ածեալ,
Եւ ըստեամբ ծանու թեւին հազիւ ընդ սեամըն անցանեն։
Արդ զանքոյթս 'ի հողոց մահկանացու կարօտանաց՝
'Ի ցըրտոյ և 'ի հողմոց ըղքաբերաց պինդ պահեսցես,
Եւ ռոճիկ բերցես 'ի բուռ և թուփ դալար զըւարթամիտ,
Եւ մի զձըմեռն ողջոյն՝ փակեսցին քեզ մարագք համբուն։
Իսկ զարուն երբ հըրճուալից 'ի քաղցրասիք օդոց հրաւէր
Յարօտ զերկաքանչիւր հօտն և 'ի մարգս արձակեսցէ,
Ընդ կանուխ արուսեկի աստեղն հասցուք յանդ ցօղազին՝
'Ի զըւարթ առաւօտուն 'ի ճաճանչել դալար սիզոյ,
Մինչդեռ շաղ 'ի բոյս փափկիկ անուշահամ է պաճարի։
Իսկ ժամ չորրորդ երկնաճեմ մինչ ծարաւոյն հօծէ զփափաք
Եւ ճիպռունք ճըռուողականք հնչեն երգով ըղթաւաթուփս,
Առ ջըրհորս կամ խոր ճահիճըս տուր հրաման երամակիդ
'Ի սղոցի խողովակս ըմպել ալիս կարկաջաահ,
Եւ 'ի տապ տօթաժամու հովանաւոր խընդրել հովիտ՝
Ուր հինաւուրց զօրութեամբ յաղթ ինչ կաղնի Արամազդայ
Մեծամեծ ձըգէ բազուկս, կամ ուր մայրի նըսեմաստուեր
Յանտառախիտ սըղոցեաց ըղհովանին սըփռէ իւր սուրբ.
Ապա կըրկին 'ի փափուկ տանել վըտակս, յարօտ կըրկին,
Ընդ արեւմուտս ուր զովագին գիշերավար զօդս ամոքէ,
Եւ լուսին ցօղատարափ կենագործէ զմայրեաց թաւուտ,
Ծովափունք 'ի խոլթս հընչեն և մացառուտք 'ի ցախս սարեկս։
Ո՜չ քեզ տաղիւք ըղտուարածսըն Լիբական նըւագեցից,
Ո՜չ զարօտս և զցան և ցիր հանգըրուանաց բնակեալ վանկունս.
Բազում այն է զի զամիսն ողջոյն 'ի գըւխ տիւ և գիշեր

318. Ընդ երեկս դառնան 'ի տուն անսխալ 'ի մտի պահելով զճանապարհն և զտեղին. և ընդ ինքեանս բերեն և զիւրեանցն, այսինքն զիւրեանցայինսն՝ զորդիս, զորս մարք տանին և բերեն։

320. Արդ քանզի այսպէս սակաւ հոգ և աշխատութիւն հասուցանեն այծք վասն այլոց պիտոյից, պարտ ամենայն խնամով փոյթ կալջիր զէթ բարւոք պահպանել 'ի ցրտոյ և 'ի հողմոց. և առատաբար կերակրեսջիր, և մի զլասցես նոցա խոտ և խաւր զձմեռն ողջոյն։

329. Չորրորդ ժամ է երկու ժամաւ յառաջ քան զօր հասարակ։

334. Կաղնին Արամազդայ ասի իբրև նմա նուիրեալ։

337. Ապա հրաման տայր տանել վերըստին յարօտսն և արածել միւսանգամ։

341. Զծովեզերեայ ափրիկեցւոց զնոմիդացւոց կենցաղն ասէ, որ հովուական ապաճարակական կենօք արօտական ճարակաւոր շրջէին հօտիւքն հանդերձ զամառն ողջոյն՝ առանց բնաւ ընդ յարկաւ ուրեք մտանելոյ, և Նոմադքն վասն այնր անուանեալքն հելլենաբար։

Շըրջի արօտական խաշն ընդ երկայնս անապատաց․
Այնչափ դաշտք ընդարձակք և ոչ ուրեք ինչ վանատուր։
Անդէորդ ափրիկեցին ընդ իւր վարէ զամենայն ինչ,
Զարկ, թերափ, կազմած զինուց, շուն ամիկլեան, կրետեան կապարճս,
Իբր արի հռովմայեցին վառեալ 'ի զէնսըն հայրենի
Ըստ անձին յորժամ բարձեալ բեռն անարգիլ խաղայ 'ի չու,
Եւ յանկարծ հարեալ բանակ 'ի ճակատու կայ թըշնամւոյն։
Ոչ այսպէս՝ ուր սկիւթացւոց ազինք, ալիք միովտական
Եւ Իստրոս յորձանահոս պըղտոր յաւազ շիկակարմիր,
Եւ ուր դառնայ Ռոդոպէ կարկառէլով 'ի սեւըն կոյս։
Ըզպառակս անդ 'ի ջերմնեակ փակեն մակաղս ամրապահեստ,
Ոչ խոտ 'ի դաշտ երեւեալ՝ ոչ մի տերեւ 'ի ծառատունկ․
Այլ անարդ դընի երկիր 'ի ձիւնեղէն կարկառակոյտս
Եւ 'ի պաղ թանձրախոր յեօթըն կանգուն շուրջ դիզացեալ,
Միշտ ձըմեռըն սառնային, ցանգ ցըրտաշունչ հողմ հիւսիսի։
Եւ ոչ երբէք արեգակն 'ի լըրթագոյն թափի ստուերաց,
Ոչ յորժամ ձիավարեալ բարձր 'ի յերկին ասպատակէ,
Ոչ յորժամ զվայրաբեր կառս 'ի շառագոյն լուանայ 'ի ծով։
Կեղեւանք յական քըլթըթել ձուլեալ հոծին յուխս 'ի գնայուն,
Եւ ալիք 'ի մըկանունս երկաթապատ բառնան անիւս,

347. Ցամիկլայս 'ի լակոնական քաղաքին նշանաւոր և անուանի էին բարակք որսականք և ասպականիք յորսս ականաւորք։ Եւ կրետացիք՝ աղեղնաւորք կորովիք և հաստաձիգք էին. վասն որոյ 'ի նոցանէ առնու զվերադիր կապարճիցն, և ոչ թէ արդեամբք կրետականօքն վարեցեալք։

349. Զօրականք Հռոմոց, անհնարին բեռն 'ի յուս՝ կահի և կարասւոյ և կազմածի, խաղային 'ի պատերազմ. իբրու վաթսուն լտերաց չափ։

351. Ընդ հակառակս Նոմադացդ, որ վայրաբնակք վայրագք և բացօթեագքն են, հիւսիսական ձմեռնացեալ ազինք միշտ ընդ յարկաւ պահեն զանասունս։ Սկիւթացիս կոչէն հինք տիրապէս զամենայն հիւսիսական ազգս Ասիոյ, որոց ինչք և ստացուածք էին միայն հօտք և անդեայք, և վաչկատուն սայլատուն շրջէին կանամբք և մանկտւով։ Միովտական ալիք նշանակեն զՄիովտիս ծովակն 'ի հիւսիսակողմն Սեաւ ծովուն, յոր մտանէ Տանայիս կամ Տօնաւիս գետ։

352. Իստրոս է գետն Դանուբ կամ Դանոբ, մանաւանդ ծովակողմանք նորա, որպէս և յառաջին ասացաք։

353. Ռոդոպէ լեառն Թրակիոյ երկայնեալ յարեւելս կոյս կցի ընդ Հեմոս լերին, և անտի ապա զհիւսիսեաւ դառնայ 'ի բևեռըն կոյս։ Զնկարագրեալ սաստկութիւն ձմերայնոյդ՝ զխոր հիւսիսոյ իմանալի է, և թերեւս քերթողական առաւելազանցութեամբ փոքր մի անցեալ ըստ չափ ըստ աւելեաց։

359. Ոչ երբէք փարատէ արեգակն 'ի ստուերացուցիչ ամպոյ և 'ի մառախլոյ, ոչ յառաւօտէ մինչև ցմիջօրեայ յոր բարձրանայ, և ոչ անտի 'ի մուտս իւր՝ յորում թուի ողողանել զկառս իւր 'ի ծովն արևմտեան կարմրացեալ յերեկորին ճառագայթից նորա։ Քերթողք ըստ դիցաբանութեան կառս իմն քառաձիս ընծայեն Արեգական։

Պոգեալ լաստից այնք երբեմն՝ այժմ վաշից ասպընջական.
Հերձոտին պըղինձք ըստէպ և ձործք զուսովք մածնուն 'ի պաղ,
Եւ նամէտ գինեաց հատանք յօշին հատմամբ տապարատաշ.
Լըճակք առ հասարակ փոխին 'ի սառըն միաձոյլ,
Եւ կարծրակուռ պաղըրակ ընդ խըռուացեալ կախի մօրուս:
Եւ սակայն ոչ ինչ ընդհատ երկինք բոլոր բուք յորդորեն.
Ոչխարակք մեռանին, կան Թանձրակոյտ եզանց հասակք
Սառուցեալ եղեմնապատ, և եղջերուք 'ի մի ջոկի
Նոր բեռամբ Թըմբրեալ դընին՝ ծայրիւք եղջերց հազիւ յայտնեալ:
Ողս և ոչ պառականս արձակելով, ոչ գահողովք
Կամ յակընհար կարմրափայլ փետրոյն զերկչոտսըն խուճապին.
Այլ 'ի զուր մըրցել նոցա լանջօք ընդ լեառըն դիմակաց՝
Մօտ հասեալ սրով սատակեն յաղխաղոր նոցին պոչիւն,
Եւ զուարթագին խընձոյիւք հընչման ձայնից առեալ տանին:
Ինքեանք յայրըս գետնափորս հանգչին անքոյթ յալուցս երկրի
Ազկաղնեաց չեղջակոյտ և զնըրշգարեաց բունս ողջանդամ
Թաւալեալ 'ի կրակարանն՝ արկեալ 'ի բոց հրոյ խարուկին.
Անդ ըզցայգն 'ի խաղս հանեն, և ըզխըմոր և զսին Թըլթու
Յայգեբուխ բաժակս հիւթոյ ձեւակերպեալ զըւարճանան:
Այսգունակ յեօթնարփի հիւսիսաճեմ 'ի Սայլըն կոյս
Սկիւթեան ըրբովք կոծի ապերասան արանց գըրոհ՝
Անդամքն յերէոց ծածկեալ 'ի սաե. խարտեշագոյն:
Թէ կըտրոց է քեզ փոյԹ, մացառ մայրիք փուշք և տատասկք

370. Եւ զխարդ այս, եթէ յամենայն ժամ 'ի գոմս փակեալ պահէին հօտք նոցա և անդէոյք: Զայս՝ զյանկարծահաս ըքոց և սառամանեաց իմանալ է յասուրսն՝ յորս փոքր մի մեղմացեալ դառնութեան ձմեռնայնոյն, յարօտ ելանեն և յանկարծ 'ի բուք ըմբռնին:

372. Նոր խիա անսովոր, անակընկալ յանկարծադէպ, և հետզհետէ նորանոր զմիմեամբք կուտակեալ:

374. Անհնար էր խրտուցիլ չուանեալ կարմիր փետրովք 'ի միասին անկեալ. որով ընդոստուցանէին զերէս երթալ անկանել 'ի վարմն կամ յերասդաղանն:

375. Լեառն դիմակաց է լեռնանման կուտակումն ձեանն առաջի նոցա:

381. Խմոր աստ իմանան մինինչ զխմոր բուն գարեջուրն կամ զկասկաջուրն. և 'ի սինն՝ իմանան զայլ ևս Թթուահամ պտուղս, յորոց յօրինեալ ազգ ինն օղույ՝ ըմպէին փոխանակ մրոցս գինեաց:

383. Զսայլն և զսկիւթեան սահմանած լերինս տես ա. 72, 250, 246: Զեօթն աստեղս Սայլին լատինն ասէ փրիոնս, և անուն ստորոգական զհիւսիս՝ եօթն փրիոնս. զոր Վարրոն ըստ հին լեզուի իւրեանց եօթն փէրիոնս այսինքն եզինս սայլին մեկնէ: Սակայն, թող զփոքր մի անպատեհութիւն եօթն եզինս այնպէս 'ի մի սայլ լծելոյ, եթէ եօթնեքին երևելի աստեղքն եօթն եզինք են, իսկ ապա սայլն ո՞ւր մնայ: Զգիտեմ ընդէր չկամիցի հանել 'ի τείρεα փէրէա կամ τέρεα փէրէա հէլլէն ձայնէն, որ է աստեղք, արփիք կամ արփիք:

Հեռի լիցին նախ, խոյս 'ի յատոց տուր ճարակաց.
Ընտրեսջիր փութանակի փափկիկ գեղմամբք հօտ ըսպիտակ։
Իսկ որ թէպէտ լուսակիզն ինքըն համակ խոյ բարեփառ,
Բայց լեզու լոկ սեւաթոյր ընդ խոնաւուտ քիմըն կայցէ,
Հան 'ի բաց, թուխ պիսակօք մի խայտ արկցէ յորդւոց գըզաթ,
Այլ զայլ ոք նըկատեա 'ի բազմամբոխ հրապարակին։
Այսպէս 'ի ձիւնափայլ ասուն ընծայ, թէ ստոյգ են վէպք,
Ըմբռնեալ ըղձեղ, Լուսնեակ, խաբեաց Պան դիք արկադական՝
Կոչելով 'ի խոր անտառս և քո զհրաւէրն ոչ անտեսեալ։
Իսկ ում կաթին են տենչանք՝ սինձ և ներգիւն առատապէս
Այլ աղի բանջարս ինքնին բերցէ ձեռամբ 'ի մըսուրս,
Որով յաւէտ փափաքեն յաղբերս, յաւէտ ձըկտեն զըստինս,
Բերելով 'ի կաթին զթաքուն աղին համեղ ճաշակս։
Բազմաց հատուցեալ 'ի բաց քեցեն զուլս առ 'ի մարց
Այրախճան երկաթագամ արկեալ նոցա շուրջ ըզգըռուկով.
Այլ զոր ընդ այգըս այգուն և 'ի տուընջեան կըթեցին ժամ՝
Մակարդեն գիշերի, զոր ընդ երեկս և նըսեմաւ՝
Ընդ աշալուշըն տանին, գընայ հովիւ կայթիւք 'ի շէնս.
Կամ 'ի ձմեռըն մըթերեն դոյզն ինչ աղիւ համեմելով։

Մի և շանց 'ի քէն խընամք յետնեալ ապախտ ինչ եղիցին,
Համայն և ժիր Սպարտայ բարակս և զամեհի հուժկու մոլոսեան

387. Ի պարարտ ճարակէ զգուշացուցանել ասէ զհօտն, զի հիւթն ամենայն 'ի ճարպ փոխի և ոչ յասր։

388. Զի սպիտակ ասրն առաւել յարգի և պատուական է։

394. Պան դիք 'ի խոյ փոխեալ երբեմն ըստ առասպելին, ձիւնափայլ գեղմանն սպիտակութեամբ հրապուրեալ ձգեաց զԼուսին զկնի իւր 'ի խորս մայրեաց առ 'ի կամս խոյզողութեան. կամ որպէս այլք զրուցեն, առ սէր նորա զկէս հօտին շնորհեալ նմա 'ի պարգեւ, և նորա զսպիտակն առեալ և խաբեցաւ։

403. Զմակարդեալս՝ զթարմ պանիրս միայն իմանան մեկնիչք. իսկ ինչ անսեղի իմանալ և զմածնոյ։

404. Ամենայն գրչագիրք միաբան այդպէս ունին զտողդ, զոր Սկալիգեր համարձակի և աստ, չգիտեմ յինչ պէտս, իբրև թէ ուղղել ըստ քմաց իւրոց 'ի համարակ ասացուած փոխելով,

Ընդ աշալուշըն կայթիւք առեալ գընայ 'ի շէնս հովիւ։

Իւ սովորական տպագիրք միաբանեալ ընդ նմա՝ ընկալեալ են զատարապարտ փոփոխութիւնդ. բայց զբազում զայդպիսի տարապարտ փոփոխութիւնս Սկալիգերի 'ի գիրս նախնեաց՝ դատապիտ առնեն արդի բազմահմուտ քննիչք։ Իսկ կայթն է կողով կամ սակառ ուռենի հիւսկէն։

405. Ամբարեն վասն ձմերայնոյ՝ պանիր գործելով։

407. Սպարտայ կամ Լակեդեմոնի շունքըն առաւել յաղթէ բարակաց էին, ըղ-գասաք և սուր հոտոտելիք, քաջ տապակա-նապաստք. իսկ մոլոսացիքն, որ 'ի գաւառէ իմնքէ Եպիրոսի, թէ յորսս պատուականք և թէ 'ի պահպանութեան հօտի։

'Ի շիճուկ սընո պարարտ, և ըստ նոցին պահպանութեամբ
Ոչ գող երբէք ըզգաւթօք՝ գայլոց հինի ոչ ասպատակ
Կամ 'ի թիկանց ահացուցէ զքեզ խաղմարարն իբերունի ։
Եւ յարշաւ բազում անգամ տագնապեսցես զերկչոտ ըզցիռս,
Եւ շամբք նապաստակս որսասցիս շամբք յամոյր և վիթ,
Կինճս յաճախ 'ի մացառուտ թաւալոցաց ընդոստուցեալ
Խուճապեսցես 'ի հաջիւն, և 'ի վերայ լերանց բարձանց
Եղջերու վիթխարի գոռմամբ 'ի վարմըս վարեսցես ։

Ուսիր վառել 'ի փարախս և եղեւին ըզհոտեւան,
Եւ զվիշապըն ծանուն 'ի քաղբանեան վանել ճենճեր ։
Բազում այն է զի 'նդ անշարժ մըսուրովք դըժպիհ իժ հարկանօղ
Դարանեալ՝ և զարհուրեալ յերկնից լուսոյն փնայ 'ի կորուստ,
Կամ թէ սովոր մըտանել օձ ընդ յարկաւ և ըստուերաւ,
Ընդէոյ ժանտ ժըպիրհ, և 'ի թափել թոյնս 'ի հօտին,
Ընդ հողով բունէ, բուռն հար, հովիւ, 'ի վիրգ, հար բուռն 'ի բիր,
Ըզխըրոխտօղն ըսպառնալիք և զփըքացեալ շըչօղ ուլամբն
Հալածեա, զգլուխն ահաբեկ 'ի խորս ահա թաքոյց 'ի խոյս,
Մ'ինչ աղիք ողին և գաւմարտակ պորտապատ վէտ վէտ որտան
Լուծանին, և զյամր ոլորս ընդ քարշ ածէ յետին պարոյր ։
Է և այն որ 'ի մայրիս կալաբրացւոցըն չար վիշապ
Ուղղաբերձ կանգուն լանջօքն հոլովելով թեփոտ թիկունս
Եւ երկայն փոր խայտաբղէտ 'ի մեծամեծ նիշ նըկարէն.
Որ յորժամ գետք յաղբերաց բըխեալ յորդեն, և մինչ երկիր
'Ի տամուկ թանայ գարուն և հարաւովք խոնաւական,
Բնակէ 'ի լիճս և նըստեալ ամպարըշտին անդ առ եզեր
Ձըկամբք և շաղակրատ գորտովք լընու զդըժոխ որկորն.
Իսկ իբրև խաղըն կիզեալ և 'ի տօթոյ սկաղի գետինն,

410. Իբերունի կամ իբերացի՝ սպանիացին է, որք գողութեամբ և յելուզակութեամբ անուանի էին, մանաւանդ մինչ չև նուաճեալ էր և զգածացեալ և ընտելակըրթեալ. որ վասն և խաղմարար իսկ կոչէ ։ Բայց Սպանիան աստ առեալ է փոխանակ ամենայն գաղղիայ ։

417. Քաղբան կամ անգժառ հոյլ է իբրև զխէժ կամ զխունկ, զոր առայ նարգիս վայրենի, և 'ի հոտոյ նորա և 'ի ծխոյ հալածին օձք ։ Իսկ զօձսն ծանուցեալ ամենայն ըստ զարշահոտութեան իմանան, և կէտք ըստ մեծապատկառութեան ։

427. Կալաբրիա յայտնի է գաւառ 'ի հարաւային ծագս Իտալիոյ, ուր յաճախ է այս օձ երկակենցաղ նման խժի և քարբի կամ թքաքարբի և աղքայիկ օձին ։

'Ի ցամաք վազեալ կայտռէ և աչս ածեալ շուրջ բոցավառս
Յանդգնս մոլի պասքով դըժնեայ և 'ի տապոյն գազանացեալ:
Որպէս լիցի նիրհել յանժամ խնձ ընդ երկնաւ քուն քաղցրանինջ,
Որպէս յորսայս յողն անկանել ըղխտտաւետ թիկանք մայրեաց,
Մինչ նա զխորխն ընկեցեալ՝ նոր մանկութեամբ պայծառափայլ
Նան առնու, կամ ըզկորիւնսն 'ի տան թողեալ և կամ ըզձուս,
Բարձրավիզ՝ և եռասայր լեզուք 'ի շուրթն յարև շողայ:

Եւ զախտիցն ուսուցից ըզքեզ պատճառս և զնշանակս:
Որոս չարակեղ հարկանէ զհօտն՝ ուր ցուրտ անձրև խորամուտ
'Ի մարմինսն անցանէ թափ և կարաձմեռըն սառնասոյզ,
Կամ յետ կլորոց ըզնոգօք եթէ մածնու քիրտն անլուայ,
Եւ ցրտեն նոցա զանդամսըն խայթահարք քրտմընափուշք:
Ման որոյ քաղցր 'ի վըտակս հովիւք զգոլոր խաշն ողողեն,
Եւ խոյն զըզաթուն թուրմ 'ի գետ անդըր մըխըրճի
Եւ ընդ հոսանս յորձանաց թողեալ խաղայ գընայ 'ի լիւղ.
Կամ զկրանսըն խըզեալս 'ի ժանտ ներկեն մըրուր ձիթոյ՝
Օշարծաթոյ խառնեալ փըրփուրս և ըղծըծումբըս կենդանիս,
Եւ ձիւթ իդական և իւղային մոմ ճարպալիր,
Մըկնասոխ և վըրացի կոճըս ծանունս և կուպըր սեաւ:
Սակայն չիք ինչ առաւել ցաւոցըն դիւր երագահաս
Որպէս զի ոք երկաթով պատառիցէ զխոցոյն գըլուխ.
Զի անթափ արկածքն 'ի ներքըս ճարակեալ կան կենդանի,
Թէ 'ի վէրսըն խաշնարած ձեռն արկանել բըժըշկական
Հրաժարեալ՝ և զամենայն 'ի դիւց նըստեալ հայցէ զբարիս:

437. Ընդ երկնաւ, 'ի բացի, բացօթեայ:

438. Թիկունք՝ ախրապէս լերանց ասեն և բլրոց. այլ անտառք և մայրիք որ 'ի լերինս և 'ի բլուրս իցեն, ասի և նոցա ևս:

440. Ջձուս կամ զկորիւնսն յիշատակէ, զի ամենայն գազան 'ի ժամանակս ծննդոց ամեհագոյն է:

441. Լեզուք օձից ըստ Արիստոտէլի իսկ երկճիղ են. իսկ քերթողք եռասայր կամ երեքարձէն ասեն զայնս. կամ զի արգեամբք այնպիսի են, կամ զի 'ի սաստիկ արագութենէ շարժմանն այնպէս երևին:

480. Բաց 'ի լուալեաց և այլ իմն ցուցանէ գեղ կամ սպեղանի քսայ, յորոյ 'ի կազմութիւն մտանեն գասն մրուր ձիթոյ, քարմրցանակ՝ զոր փրփուր արծաթոյ կոչէ, և այն է որ 'ի զտելն արծաթոյ 'ի բովս յերևան գիզանայ. բայց ոմանք սնգիկ իմանան. դարձեալ և զուտ և մաքուր ծըծումբ հանածոյ, և ձիւթ կամ կպրաձիւթ Իդայ լերին Փռիւգիոյ կամ Կրետեայ՝ այսինքն ազնիւ, և մոմ և մկնասոխ կամ սոխ ծովային, և կոճ վրացի կամ մրտիտասի ծանրահոտ, և սաւ խիժ զայլխտանքն, և կուպր կամ նաւթ:

458. Օրինակք ինչ ունին Հրաժարէ, կամ նըստեալ 'ի գէջ հայցէ բաղդ բարեգէտ.

զomnia որ է զամենայն՝ ընթերցեալ omina:

Իսկ իբրեւ ցաւն 'ի ներքին ոսկերս հօտին անկեալ մտէ,
Այլ տենդ տապախառն առնէ զանդամոցն հալ և մաշ,
Լաւ իցէ փարատել ըզբորբոքեալ հրատին եռանդն
Երակ արիւնաբուխ պըձղամն 'ի ծագս հատանելով,
Զոր օրինակ Բիսալտայք սովորեցին և դուժ Գելոն
Մինչ փախուցեալ 'ի Ռոդոպէ և յանապատըս գետացւոց
Ըզկաթըն մակարդեալ երիվարին ըմպէ արեամբ:
Զոր օցտեալ և ընդ ախորժ մըտեալ ըստէպ ընդ հովանեաւ
Կամ ըզծայրըս հեղգաբար զգաւսոց կըրծել ականարկիցես,
Այլ վերջատնեալ կամ դաշտին ընդ արածելն անկեալ 'ի մէջ,
Այլ տեղի տալ միայնակ անագանի գիշերայնոյն,
Երկաթով զեղեռն 'ի բաց վաղվաղակի հատ պարուրեա՛
Զի ընդ ամբոխն անըզգոյշ ճարակ գըտեալ ախտին չարի:
Ոչ այնչափ կուռ փոթորիկք ամպրոպայոյզք խաղան 'ի ծով,
Որչափ խուռն անասնոց ժանտք, և ոչ մի մի զոք առանձինն
Հարուածքըն ըմբռնեն, այլ զհանդըրուանն ողջոյն յանկարծ
Զյոյս և զհօտ համայնաջինջ զիսկըզբանէ զարմ և զաւակ:
Յայնժամ զայդ 'ի միտ առցէ՝ թէ զԱլպըս ոք զօղակառոյց,
Զնորիկեան աւրոցս 'ի բլուրս, զանդս յաքիսեանըն Տիմաւեայ
Այժմ իսկ տեսցէ յետ ամաց՝ ըզթուարածացըն զարքունիս
Ամայի և զանտառս յայսկոյս յայնկոյս 'ի սպառ թափուր:
Ընդ երկնից ախտիւ յարեաւ ողորմ երբեմըն ժամանակ
Տօթագին աշնայնոյն խորշակայեղց բոցով հրաշէկ,

Բայց բաղուածք և ստուգագոյնք ունին որպէս եդաք զամենայն բարիս:

459. Քոսն արտաքին ախտ է մորթոյ, իսկ տենդն ներքին ախտ անդամոց և արեան, և սաստ զանանէ են ուրոյն բանք:

463. Այս սովորութիւն՝ երակ հատանելոյ ձիոց և ըմպելոյ զարիւն նոցա ընդ կաթին՝ ոչ էր միայն Բիսալտայց ազգաց Թրակիոյ կամ Մակեդոնիոյ, և ոչ միայն Գելոնաց սկիւթական կամ Թրակացի ժողովրդոց, այլ առհասարակ ամենայն սկիւթական ազանց, սարմատացւոց, գետացւոց և Մասքթաց:

464. ԶՌոդոպէ տես ա. 343. դ. 333: Իսկ գետացիք կամ Գետք ազգ են 'ի դակեանց, սահմանակիցք Սկիւթիոյ և Թրակիոյ առ բերանովք Դանուբ կամ Իստրոս գետոյ. զդակեանս տես դ. 500

470. Իբրև զայդ նշանս ախտին տեսանիցես, բարձ 'ի միջոյ զախտակիրն սպանմամբ սրոյ:

475. Զհօտն ամենայն հանդերձ մարբք և որդւովք որ յոյսն են հօտին և հովուին:

476. Զայս յայնժամ հաւաստի գիտասցէ ոք, եթէ տեսցէ յետ այնքան ամաց զառաւելին երևեալ ամայութիւն հովուանոցացըն և անտառացն, որ երբեմն շէնն էին յԱլպեայս՝ 'ի բարձրակառոյց լերինն եզերականս Իտալիոյ, և 'ի Նորիկեան բարձրաւանդակին՝ որ են մասն ինչ Բաւարիոյ և Աւստրիոյ հանդերձ Կարինթեաւ և Սթիրեաւ որ 'ի հիւսիսոյ Ալպեանց, և 'ի վիճակըս Տիմաւոս գետոյ Վենետաց՝ զոր յաքսեան առէ վասն երբեմն ամոքէն բնակելոյ կամ գրաւելոյ գոլոյ յաքիսեանց, որ են խորվաթիք յազգացն Իլլիրիկեցւոց:

Որ սպառըսպուռ սատակեաց ըզգազանաց՝ զանասնոց ճետ,
Եւ ըզլիճըս և զարօտս ապականեաց ՚ի ժահ թունից։
Եւ մահուն ճանապարհ չէր օրինակ հասարակաց.
Նայն հրատապ մինչդեռ ծարաւ ընդ երակունս անկեալ բոլոր
Փաղաղէր ըզհէք անդամս, յորդէր անդըրէն զինճին թարախ
Եւ ուտէր տակաւ զոսկերսըն խըղխայթեալ առ հասարակ.
Յաճախ ՚ի դից դաշնամունս հուպ առ բագնին զոհըն կացեալ,
Լուսանիւթ ժապաւէնեաւ մինչ ապարօշ ասուի պատի,
Դանդաղկոտ պաշտօնէիցն առ ոտս անկեալ թափէ զոգին.
Կամ թէ զոք կանխեալ քըրմին և սրախողխող փողոտիցէ,
Ոչ անտի նուիրելով ընդերըք այլին սեղանք երբէք,
Ոչ հրաման պատասխանւոյ տալ ինչ զօրէ գուշակ հարցեալ.
Հազիւ ներկանին սուրբք՝ մըխեալք յարիւն բոսորաքուն,
Եւ ՚ի հիւծ նըւաղ շարաւ թուխ թաթաւին երկրին երեսք։
Նստուստ ՚ի զուարթ դալարիսըն խիտ առ խիտ սատակին որթք,
Եւ զոգիսըն զանուշակ անդ առ զեղուն մըսուրովք փըչեն։
Նստի քըծնի շանց կատաղումն, և հազ թասօղ դըղըրդեալ
Զհիւանդ խոզեանն ընդ փողն այտոյցս առնէ հեղձամըղձուկ։
Նըկանի վատաբախտիկ գոռ երիվարըն քաջայաղթ
Ըզխոտ և զախորժակըն մոռացեալ, յաղբերց յուրաստ,
Եւ ոտիւքն հազ ըստէպ դափը հատանէ, ականջքն ՚ի կախ,
Եւ անդ քըքարըն յեղյեղուկ՝ և այն ցըրտին յորհասականս.
Մորթ խըռուեալ երիթացեալ բիրտ ՚ի զընին ձեռին խաղնտոյ։
Զայսոսիկ տան նըշանս ՚ի սկիզբն աւուրց նախ քան ըզմահ.
Յակ եթէ այնուհետև սկըսանի ախտըն զայրանալ,
Նոդ աչք բոցագոյն և հատկըլեալ մորթ ՚ի խորոց
Ռունչ հեծունչ հառաչակուլ, երկարաձիգ հեծեծանօք
Լերքին կուշտք ձըկտեալ պըրկին, արիւն ընդ քիթս ընթանայ թուխ,
Եւ լեզուն խիստ և հօծեալ՝ կըցեալ ՚ի քիմս հազագին նուրբ։
Օգնեցին Սպանդարամետին մատըռուակեալ ծորանք եղջերբ,

489. Զի և զգլխով զոհին վարսակալ ասուի ածէին ժապաւինաւ կապեալ, և զծոպսն ասուի անտի ՚ի վայր արձակեալ։
492. Ոչ նուիրին ՚ի հուր սեղանոյ իբրև անատուրք. և ոչ մարգարէ կամ գուշակ կարէ պատգամ ինչ տալ կամ հմայս հմայ. եւ. այնու զի մասն ինչ ընդերացն պակաս գտանի կամ ապականեալ։
498. Զփաքալ խողացն և զծծակ յաւ փողից նոցա նկարագրէ կենդանի։
500. Անդ՝ զականջքն քիրտն անհաստատ, որ հապ գայ և մերթ գնայ։
511. Անդէն ՚ի սկզբան ախտին օգնէ զին՝ եղջերւոյ փոշովս կամ խողովակաւ առ-

Նայդ ևեթ երևեալ 'ի հոգեվարսըն փըրկանակ․
Նայդ իսկ ապա հաս եղեան, և արծարծեալք 'ի մոլութիւն
Բորբոքէին, և ինքնին, դառն օրհասին առ դուրս հասեալք,
(Յհարդարոց քաւ, ով դիք, և ատելեաց այն զառածանք,)
Խածատեալ մերկ ատամամբ կեղեքէին զանդամս իւրեանց։
Իսկ զըւարակ աւանիկ կարծր ընդ խոփիւըն ծըխաշունչ
Տապալի, ժայթքէ 'նդ բերանըն փըրփըրախառն ապաժոյժ
Ըզյետին հանեալ թառանչ․ գընայ տըրտում հողավատակ
Ըզթախծեալն արձակելով մահուամբ եղբօրն ամոլակից,
Եւ կիսագործ 'ի հերկին ցըցեալ թողու զմաճն և զարօր։
Ոչ հովանիք խոր մայրեաց՝ ոչ մարգք կարեն զարմանագեղք
Շարժել ըզսիրտն, ոչ քան զբիւրեղ ջինջ ընդ քարինս ոլոր վըտակ
Որ դէմ 'ի դիւր դըմիցէ, այլ 'ի ներքուստ կողք լուծանին,
Զաչսըն սոր եալ կըկոցեալըս պաշարէ ապուշ թըմբիր,
Եւ հակեալ մէտ ծանրութեանն՝ ուղն 'ի յերկիր հոսի տապաստ։
Զինչ երկն օգնէ կամ աճանք, զի՞ կորդ 'ի խոփ դաշտ պատառեալ․
Եւ սակայն ոչ մասիկեան Սպանդարմետին տուրք պարգևաց,
Ոչ ճաշք ըղճաշըս մըղեալք համադամօք մեղան նոցա․
Տերևովք և յանպաճոյճ ճարակ խոտոյ պարենաւորք,
Բաժակ գետ քաղցրածաւալք են և աղբիւրք ակնակիտք,
Եւ ոչ զըմբաղ ցընորիչ զառողջարար քուն հատանէ։
Ոչ յայնում ժամանակի վիպեն երբէք ընդ այն նահանգս
Երընջուց եղեալ խընդիր առ 'ի հանդէս տօնին Հերայ
Եւ յանզոյգ գոմշոց ածեալ կառս 'ի վըսեմ նուիրանոցս։
Նորդ զերկիրըն տըրմըխօք առ 'ի ձըլել յոյժ տաժանին,
Եղընգամբք իւրեանց թաղեն սերմանս ու 'նդ բարձըր լեռնավայրս

կեալ ընդ բերանն․ բայց ապա այդ իսկ միատակար լինի, և կատարեալն 'ի զօրութենէ գինւոյն։

516․ Ատամամբք մերկացելովք և 'ի դուրս ցցուելովք առ ծիւրութեան և հիւծութեան բերանոյ և քանցելոյ ըմպոյ 'ի ժանտ ախտէն։

527․ Զինչ օգնեն նմա 'ի յետոյն տառապանաց անդ աշխատանքն իւր և երախտիք և սպասաւորել 'ի նմանէ եղեալ դաշտքն․ մնացեալ եղկելին։ Եւ սակայն ոչ երբեք զմեղ 'ի գինւոյ Մասիկոս լերինն Կամպանիոյ (Բ․ 114) ջերմն նորա զօրեան, կամ յայլ և այլ խորտկաց մի զհետ միոյ յաջորդելոց․ զի տերև և խոտ ուտեն և ջուր ըմպեն և անհոգ ննջեն։

533․ Ցեառ այսր հարուածոց երկրին, և ոչ յայնում երբէք ժամանակի, պատմի պատկառութիւն եղեալ երինջուց 'ի ձգել զհանդիսաւոր կառս կամ զգեստական առնի աստուածուհւոյն Հերայ՝ յոր կովս ամլատակս միայն օրէն էր լծել․ վասն որոյ և հարկեցան անզոյգ անհաւասար՝ այսինքն մին մեծ միւսն փոքր կամ այլագոյն և անհաւասարս գոմշովք ածել զկառսն 'ի տաճարն։

536․ Առ 'ի շղայկ արջառոց։

Ուժգնապիրկ պարանոցօք կրընչաձայն ձրգեն ըզսայլս ։
Ու գայլ դարանամուտ հետազօտէ շուրջ ըզգաւթօք ,
Ու զհօտիւ գիշերընթաց պատի , յանձուկ կայ տագնապի ․
Վատասիրտ այծեմունք և եղջերուքըն խուսափուք
Արդ ընդ շունս և զմարդախիտ յարկօք անցեալ դեգերին շուրջ ։
Զանոլորտ ծովուն զաւակ և զհամօրէն ազգ լուղական
Արդ 'ի ծայրըս ծովափանց որպէս իրանս ինչ նաւաբեկս
Ահանկըն ողողմանեն , փախչին 'ի գետս անսովոր փոկք ։
Ատակի և իժ 'ի թիւր սոյզս 'ի նանիր ապաւինեալ ,
Եւ հիդրայք ընդարմացեալք խողանացեալ 'ի ցից թեփովք ․
Այլմին իսկ հաւուց տարմին ոչ սիքք օդոց են բարեբար ,
Խօթափեալք ընդ երկնաձեմ ամպով զոգիսըն լըքանեն ։
Եւ սոքօք ոչ և զճարակըն փոփոխել ինչ օգնեսցէ ․
Ունասեն զիւտք արուեստից և ձեռընթափ եղեն ճարտարք
Փիլիրեանըն Քիրոնի և Մելամպոս ամիթաւնեան ։
Յանդընդային աղջամըղջէն ելեալ 'ի լոյս մոլեգնի
Մահադէմ Տիսիփոնէ զախտս յառաջոյ վարեալ և զահ ,
Եւ օր քան զօր խրոխտացեալ ամբառնայ զգլուխ իւր անյագուրդ ։
'Ի բառաչ դըլուարաց , 'ի թանձրախիտ անդեայց զոչիւն
Գետք ափունք խորշակահարք և կորափիտ հընչեն լեռնակք ։
Եւ ահա շեղջաշեղջ կոտորէ նա նախճիրս յամբայր
'Ի նոյն 'ի գոմս իսկ կուտեալ շարաւահոտ ծորեալ շաղիղս ,
Մինչև հողոյ տալ ուսանին և 'ի նըրկուղըս սուզանել ։
Զի ոչ պէտք ինչ էր կաշւոյն և ոչ զընդերսն է ոք կարող
Ջընջել ջուրց վըտակօք և կամ պարտել 'ի բոց հըրոյ ․
Ու կըտրել զասր ախտաբիծ և զաւռ 'ի պիղծ ժահից ժանգաւռ ,

539 ․ Ուր և տիրէ ախտս այս ժանտ և խաշնամահ ։

551 ․ Զպարտութիւն խոստովանեցին բժիշկք ճարտարքն իբրև զՔիրոն որդի Կռոնոսի և Փիլիրայ ծովային յաւերժահարսին, որ վարժապետ եկաց Աքիլլեայ ․ և իբրև զՄելամպոս կամ Մելամպուս՝ ուստր Ամիթաւոնի և Դորիպպեայ ։ Քիրոնն 'ի յուշկապարկաց էր , և աստուածարեալ փոխեցաւ յերկինս յաստեղատունն Աղեղնաւորին ․ և Մելամպոս մեհենիւ և տօնիւք և զոհիւք պատուեցաւ ։

554 ․ Տիսիփոնէ մի 'ի ժանտից և 'ի կատաղեացն ձիւաղաց դժոխոց , տանելով առաջի երեսաց իւրոց կարապետս իւր զախտս և զարհաւիրս ։

561 ․ Յորժինչ էր պիտանացու մորթ անասնոցն եղծեալ յախտէն ․ և ոչ զընդերսն հնար իցէ սրբել ջրով կամ հրով ։

563 ․ Ոչ կարել զբուրդսն և ոչ իսկ ձեռըն 'ի նոսա մերձեցուցանել համարձակելի է վասն զիւրափոփոխ զիւրամուտ և զիւրատարածելի բնութեան ախտին ․ զի ահա ով ոք և ագանէր հանդերձ յաստուէն յայնմանէ , իսկոյն յախտէ անտի յայնմանէ ըմբռնեալ լինէր ։

Այլ ոչ ձեռն իշխեն տանել 'ի յերր 'ի մէջ հարեալ գեղմանս։
Նա 'ւանիկ պատմուճանացն 'ի փորձ թէ ով մատչէր ժանտից,
Բոցակիծ խաղաւարտք և քիրտն ըղհետ զազրաթորմի
Օնեխահոտ մարմնովքն եռայր, և 'ի վայրիկ մի ևս յամել
Սողոսկեալ հուր նըզովիցն ուտէր զանդամն համաճարակ։

568. Սուրբ հուր ասեն զայգ և Լուկրետիոս քերթող և Վիրգիլիոս, որ և սեփական անուն համարի ախտին այնորիկ չարի։ Որպէս զիարդ և իցէ, սուրբն աստանօր յայն միտս է՝ յոր միտս Վիրգիլիոս այլուր ևս զդրունս դժոխոց և զքաղց ոսկւոյ կոչէ սուրբս, այսինքն նզովեալ, ժանտ, ամպարիշտ։ Նա զի աստանօր և 'ի դժնեայ գիցն դժոխականաց ասի բորբոքեալ 'ի Տիսիփոնեայ։ Մի գրչագիր ևեթ ունի հուրն առափէլ, դժնդակ հուրն։



ՊՈԲԼԻՈՍԻ

ՎԻՐԳԻԼԵԱՅ ՄԱՐՈՎՆԻ

# Մ Շ Ա Կ Ա Կ Ա Ն Ք



## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## ԶՈՐՐՈՐԴ ԳՐՈՑ

Յետ համառօտ իրացն առաջարկութեան, որ է մեղու և մեղուացն ճառք, 'ի փոքունս մեծամեծս խոստանալով հրաշակերտս և ցանկալիս՝ հեշտալուր և յօժարամիտ արարեալ զլսելիս Մեկենասայ, ձեռն 'ի գործ առնէ անդէն քանիցն խոստացելոց 'ի գիրս յայսմ, որոյ գտանին գլուխք ինն։

Ա. Յաղագս պատկանաւոր և վայելչական բնակարանի մեղուաց։

Բ. Յաղագս ճարակի նոցին և գնդաց և մարտից։

Գ. Յաղագս կրկին ազգաց նոցին։

Դ. Յաղագս թէ զինչ զգուշութիւն 'ի ցնորական թափառելն մեղուաց։

Ե. Յաղագս քաղաքական իմն իմաստութեան նոցա և հասարակաց իրաց տնտեսութեան։

Զ. Յաղագս ժամանակաց մեղերն հաւաքելոյ։

Է. Թէ զի՞նչ ախտք մեղուաց, և զինչ նշանք այնոցիկ և դեղք։

Ը. Թէ 'ի բնաջինջ սատակելն զիա՛րդ իցէ միւսանգամ վերստին հայթայթել։

Թ. Թէ ո՛ առաջին հնարագէտ այսր հայթայթանաց. և ասել կամեցեալ թէ Արիստէոս, զնորա առասպելն խառն ընդ Եւրիդիկեայն և ընդ Որփէոսին յերկարագոյն նուագօք գեղգեղէ։

Այս հակիրճ վերջաբանիւ կնքէ զքերթածն ողջոյն։

ՊՈԵՏԻԿՈՍԻ

ՎԻՐԳԻԼԵԱՅ ՄԱՐՈՎՆԻ

# Մ Շ Ա Կ Ա Կ Ա Ն Ք

## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

*ՕԴԱՅԻՆ մեղու զպարգեւսըն զերկնաւորս այսուհետեւ*
*Հատուցից, ծն և 'ի սոյն մասն ակնարկեա ինձ Մեկենաս:*
*Սքանչելի քեզ տեսարանըս հանդիսից եկից մանունց,*
*Ըզպետսըն մեծանձինս, ըզհամերամ ազգին կըրօնս,*
*Ըզհրահանգս, ըզժողովուրդս և զպատերազմնըն ոգեցից:*
*Վաստակ 'ի փոքու, բայց ոչ փոքր ինչ փառք պարծանաց,*
*Դիք թէ ներեն ահեկինք և Ապողոն լսէ կոչեալ:*

*Մեղուաց՝ տեղի նախ և բնակարան է խընդրելի*
*Ուր ոչ հողմոց իցէ մուտ, քանզի խափան լինին հողմունք*

1 · Օդային մեղր և երկնաւոր պարգեւ, վասն զի ըստ կարծեաց հնոցն 'ի ցօղոյ օդոյ և երկնից զծաղկամբք և զտերեւովք իջելոյ յօրինեն մեղուք զմեղրն: Թերեւս և վասն անօսր սեռն և վճիտ և երեւելի թափանցոյն բնութեան հանգոյն տարերն օդոյ, և զի երկնածիր աստուածատուր պարգեւք են:

7 · Ահեակ 'ի հմայս հելլենացւոց և այլոց ազգաց՝ ձախորդ, անյաջող և չարագուշակ նշանակէ, իսկ 'ի հռովմայեցւոցն՝ յաջող և բարենշան: Պատճառաւ ախտարաց համարեալ էին արեւելք, և ապախտարաց՝ արեւմուտք. և զի հելլէնք 'ի հմայելն զերեսս 'ի հիւսիս կողմն դարձուցանէին և հռովմք 'ի հարաւ կոյս, նոցա ահեակն յարեւմուտս կոյս անկեալ և յապախտարս համարէր, իսկ սոցայն յարեւելս կողմն՝ և յախտարս հաշուէր: Բայց հռովմոց քերթողք է զի իւրեանցն օրինօք վարին, և է զի հելլենականաւն: Զխարդ և աւագի աստանօր՝ իմաստից ինչ ոչ սահմանէ. ըստ առաջին մտաց իմանի, եթէ չարահաւակ դիք կամ հմայք թոյլ տացեն և ոչ ընդդէմ կայցեն. ըստ երկրորդին, եթէ բարերար աստուածոցն զօրութիւն յաջողեսցէ, որպէս սովոր է ներողամիտ լինել հայցողաց: Բայց ներքին սակս՝ թուի թէ առաւել յառաջին իմաստն հայեցուցանէ: — Իսկ եթէ Ապոլոն դիք քերթութեան, այլ և հովուութեան ևս, յօգնութիւն կարգացեալ լսիցէ:

Իզձարակս 'ի տուն տանել, և ոչ ոչխարք և ուլք լեռնիրչք
Կայտռեսցեն ընծաղկամբք, կամ թափառոտ երինջ 'ի դաշտ
Թափեսցէ 'ի ցօղոյն և կոխեսցէ զբողբոջ բուսոց։
Եւ խայտաբղէտ մողիզաց 'ի բաց լիցին խոժոռ ազգերք
Յակաղձուն շտեմարանացն, երաշտահաւք ուայլ օդապարք,
Եւ Պրոկնէ՝ արիւնըռուշտ բըռամբքն 'ի լանջսըն դրոշմաւոր.
Զի զբընաւն յաւեր դընեն շուրջ և զնոսին 'ի թըռչանի
Ըմպեալ տանին կըտցօք՝ անգութ բունոցն համեղ ճաշակ։
Այլ աղբիւրք ականակիտք ուեղտիւրք լիցին անդ լռաւէտք
Եւ ընդ մորգ դալարագեղ առու բարակ մեղմընթացիկ,
Պաւթին արմաւ կամ վայրի հովանացի մեծ ձիթենին.
Զի երբ նոր արքայք հանցեն նախընծայ պարս յիւրեանց գարուն
Եւ սաւառնեալ 'ի փըթոցըն խաղայցէ գունդ մանկըտւոյն,
'Ի տօթոյն խոյս առնուլ հրաւիրեսցէ գետեզրըն հուպ
Եւ յոստախիտ օթևան առ ոտս անդ ծառն ընկալցի հիւր։
'Ի միջի անդ անխաղաց և թէ գնայուն իցեն ալիք,
Արկ ուռիս խոտորնաձևս և մեծամեծ վիմաց հատորս,
Զի ունիցին 'ի խիտ առ խիտ կամուրջս անդ կալ հոլաթևել
Յորև ամառնայինն՝ զապաժամանան եթէ յանկարծ
Թափ անկեալ ցըրուեսցէ հողմ և կամ 'ի ջուրսն ընկըղմեսցէ։
Արդոսք մըշտափըթիթք և շուրջ 'ի սփիռս անուշահոտ
Ծաղկեսցեն անդ ծոթորք և սաստկաբոյր թաւուտ կորդիւն,
Եւ հոյլ 'ի հոյլ մանիշակք առոգանօղ արբցեն վըտակս։
Իսկ ինքեանք՝ 'ի զոգաձև թէ կեղևոց քեզ կարկատունք.

15. Պրոկնէ ծիծառն է. որ ըստ առասպելին դուստր էր Պանդիոնի աթենացւոց արքայի և կին Տերէոսի արքայի Թրակիոյ, յորմէ եղև նմա ուստր մի Իտիս անուն, զոր առ քինեալ ընդ առն իւրում՝ միաբանեալ ընդ քեռ իւրոյ Փիլոմելայ և սպանեալ զնա ջամբեաց հօրն 'ի կերակուր։ Իսկ և 'ի վերայ հասեալ Տերէոսի՝ սուր հանեալ զվրէժ որդւոյն կամէր առնուլ, ինքն փոխեցաւ 'ի յոպոպ, Իտիս 'ի փասիան, Փիլոմելա 'ի առախակ կամ ասպուռնակ և Պրոկնէ 'ի ծիծառն. որ 'ի գիւղն գալ և կոծել զկսուրծան ընդ տարապարտ խոշոշումն որդւոյն անմեղի, արիւնոտ ձևօքն ներկեալ է զլանջան, կամ թէ 'ի խորդխորելն անդ՝ ցայտեալ է 'ի նա յարենէ որդւոյն. այսպիսաբար այլաբանելով զարիւներանգ նիշս և խայտուցս կրծից հաւուն։ Են որ զՓիլոմելա 'ի ծիծառն և զՊրոկնէ 'ի սոխակ առեն դարձեալ. բայց առաջինն հաւաստի է։

18. Լռաւէտս իմա զքարինս աղբերացն կամ զեզերս եղափուրացն։

21. Այժմ յայտնի է ամենեցուն, զի մեղուաց ոչ արքայ է կամ թագաւոր, այլ թագուհի՝ զոր և պարամայրն ասեմք. բայց հինքն առնու զնա գիտէին կամ չէզոք. վասն որոյ և ընդ սեռունդս նոցա զարմանայ Վիրգիլիոս 'ի ստորև (196)։ Իսկ Իւբէնոյ դարուն իմա քաղցր և հաճոյական նոցա և պատշաճաւոր, կամ յորում ծնանին և մնան և 'ի թռիչս մարգաց սկսան թևածել։

Այլ թէ գողտրիկ ունէնեաւ ողորահիւսք իցեն փեթակք,
Մուտս անձուկս ունիցին, զի ձմեռն հասեալ սառամանեօք
Պնդէ զմեղր և տապ տօթոյն լուծեալ լքեալ հալէ 'ի ծոր։
Զօրութիւն երկաքանչիւր՝ մեղուաց 'ի զոյգ երկիւղալի.
Այլ ոչ յունայնէտ ինչ նոքա մոմով 'ի յարկսըն ժիրաժիր
Ըզծերպսըն նուրբ՝ ծեփեն, լընուն ծաղկունս յեզերսն և շըպար,
Այլ 'ի դոյն յայդոսիկ պէտըս մըթերեալ պահեն սոսինձ
Քան զոստըզ թանձրամած և քան ըզձիւթ փռիւգեանն իդայ։
Այլ յաճախ որջըս հատեալ, թէ հաւաստի համբաւքն իցեն,
Ընդ հողով տուն տածեցին, նա և զըտան իսկ աւանիկ
Մինչ 'ի խոռոչս անդ քարանց և 'ի փապար փոսից ծառոց։
Դու սակայն կակուղ կաւով ըզծակոտկէն նոցին խըշտիս
Շուրջ օծ պաշտպանելով մանր 'ի վերայ տերևս արկեալ։
Մի 'ի թողուր ցիրդ առ յարկօքն, ըզկարմրերփեան մի զխեչեփարս
'Ի հուր խորովեսցես, և խոր ճահճի մի հաւատար,
Կամ ուր հոտ մօրից է զարշ, և կամ ուր վէմք անձաւախիտք
Դանգիւն հանեն 'ի թընդմանց, ուստուն ձայնին դիպեալ պատկեր։

Բայց սակայն մինչ արևակն ոսկի զձըմեռն հալածական
Ընդ երկրաւ տարամերժեալ բանայ զերկին ջերին արփիւ,
Իսկ և իսկ ելեալ նոքա թևապարեն յարօտս, յանտառս,
Հընձել ծաղիկ ծիրանիս և ճաշակել թեթևակի
'Ի ծայրից հոսանաց, և քաղցրութեամբ ոչ գիտեմ իւ

38. Մոմ իմա զականաւոռն կամ գեղին մոմ, որ չէ մոմ, այլ խիժ ինն մածուցիկ 'ի մեղուաց պատրաստեալ։

39. Շպարն մեղուաց է հիւթ ծաղկանց. և փոխանակ այսպէս ասելոյ՝ ծաղիկս և շպար տանէ։

41. Զձիւթ կամ կպրաձիւթ Իդայ տես Գ. 450։ Եւ սոսինձն այն թանձրամած՝ է նոյն ինքն ականաւոռն։

43. Օրինակք ինչ՝ փոան ֆուրէշին։

45. Թէպէտ և մեղուք 'ի ներքսուստ ամենայն զգուշութեամբ ամրափակեն, սակայն դու և արտաքուստ ծեփեա կաւով։

47. Զի հիւթ ցրդւոյն յոռի և զառն մեղր տայ, և հոտ խորովոյ խեչեփարին վնասէ մեղուաց։ Եւ զմեղուսդ մի հաւատար ճախինային ջուրց խորոց, զի լճացեալ մեռեալ են ջուրքն, և զի խորութեամբն չմարթեն կալ 'ի նմա վէմք իբր կամուրջք և ապաւէնք. և կարակուռն մօրից ժահահոտութեամբն վնասէ. և ասլաուժ քարինք գոգաւորք արձագանգօքն խռովեցեալ ահարկու առնեն և զանգիտող։ Այս ամենայն յաւէտ ըստ կարծեաց ժամանակին գալով։

52. Ընդ երկրաւ իմա 'ի կէսն սուզականն և յանթերևան բոլորն հակարջային բևեռին որ 'ի ներքոյ մեր. զի իբրև մեզ ամառն գայ, նոցա ձմեռն հասանէ։ Եւ արեգակն բանալ ասի զերկինս փարատելովն զամպս ըզքարբերս և զբալաձիգս զմէգ և զմառախուղ։

54. Քաղել զազնուագոյն մասունս զեղջիկ և պայծառ գոյնագոյն ծաղկանց։

Ըղձայլեալք դառնան 'ի տած անոյշ բունոյն և սերընդոց
Մոմ նորագործ արուեստել և յօրինել մեղըր մածեալ։
Իսկ ապա յորժամ յաստեղս երկնից ելեալ 'ի ներքնատանց
Եւ ընդ լոյծ օդս ամարան ըղձունոյն 'ի շիւղ զականիցես
Եւ հողմով պարզեալ նրսեմ ամպ ընդ երկնին զարմանալի,
Տես ուշիւ, քաղցըր վըտակս և սաղարթուն խընդրեն միշտ յարկ.
Սըփռեսջիր առ ետեղ զօրինաւոր ճաշակս համոց
Պատրինջըս մանր աղացեալ և զանարգ բոյսըն կորընգան,
Եւ զարթօ դու թըմբիւն և շուրջ շարժեա զՄօրըն ծընծղայս.
Նոյն ինքեանք 'ի հնարաւոր կայեանսն եկեալ ակըմբեսցին,
Եւ յինքնին բուսոյ բարուց տաւաղեսցին յորրանսն 'ի ներքս։
Իսկ թէ 'ի վէգ ելանեն, զի խազմ ըստէպ բազմավըրդով
Իշխանձ առեալ ցոլանայ 'ի մէջ երկուց թագաւորաց,
Զամբոխին սըրտմըտութիւն և զըրտաթունդ լանջս 'ի կըռիւ
Գոյ գուշակել 'ի հեռուստ, զի զյոյլս կըռփեալ դըրդէ յորդոր
Կերկերեալ պըղընձոյն գոչիւն մարտի պատերազմի,
Եւ լսելի լինին ձայնք՝ տիպ բեկբեկեալ փողոց բարբառ։
Ընդ տագնապաւ խումբ առեալ ճախրեն շողան սաւառնաթև,
Սըրեն սըլաքս 'ի կընճիթս և ըզծըղիս մարզեն 'ի վեր,
Զարքայիւ, զապարանօքն եռան զեռան աշխարհակոյտ
Եւ յոխորտ խրախուսանօք ընդ ոսոխին դէմ խիզախեն։
Որդ զըտեալ ջերոտ գարուն և զերկնից դաշտըն բացարձակ՝
Խուժեն 'ի դուրս, ռազմըն բախի, ճայթէ բոմբիւն 'ի բարձունս,
Զիրարեալք խառնեալք 'ի մի գումարտակին գունդ ահագին,
Եւ անկանին դիթաւալ. ոչ թանձրախուռն ընդ օդ կարկուտ,
Ոչ այնչափ 'ի թօթափել սըղոցւոյ կաղին տեղայ տարափ։

60. Զնոյն գունդն նորածին ձագուց, կամ 'ի պատճառէ իմիքէ հատուածելոց և գաղթելոց, սփռեալ իբրև ամպ ընդ երեսս երկնից։

62. Օրինաւոր ճաշակք են զորս օրէնն է սփռել յայնպիսի դէպս և զորս ես պատուիրեմ, յոր և սովորեալ իսկ են մեղուք, և յայն յանկուցեալ միայն և ոչ ցրուին վտարանդի վարատեալ։

64. Որպէս յայտ է, մեղուք 'ի ձայն պղնձեաց բախելոց 'ի մի վայր եկեալ ժողովին առ հեշտութեանն, կամ առ երկիւղին՝ իբրու յորոտմանէ փախուցեալք։ Մօրն ծնծղայք են ծանօթ ծնծղայքն որ հարկանէին 'ի տօնս գիցամօրն Կիւբելեայ, որ և Մայր մեծ և Ռէա և Ոփս անուանի։

65. 'Ի հնարիւք գեղոց պատրաստեալ նոցա կայեանսն։

67. Այս պատերազմ լինի յորժամ 'ի ծնանել նորոց ձագուց բազում էգք պարսմայք գտանին 'ի նոսա, զորս սպանանեն և քան զմի ոչ ապրեցուցանեն։ Բայց եւ սաստկագոյն հասանէ պատերազմ, յորժամ օտար ոք պարսմայր առեալ զգունդն իւր յանգգնաբար կամ խոլաբար անկանի յօտարին փեթակս։

'Ի խուռն բանակաց՝ անդ Թագաւորքըն պերճաթեւք
Մեծամեծ յուզեալ հոգիս յանձուկ 'ի սիրտսըն մըրըրկեն,
Յամառեալ՝ մի տալ տեղի, չեւ ամեհի գուպարայաղթն
'Ի փախուստ զայս կամ զայն կողմըն վըտանգեալ շըրջել Թիկունս ։
Այս մըռմըռեալ զայրացուկք եւ այս այնքան ճակատամարտք
'Ի ցանել չիթ ինչ փոշւոյ դադարեսցեն լըռեալ 'ի սպառ ։

Իսկ իբրեւ զերկոսին պետս 'ի ճակատուցըն դարձուսցես,
Յոռեգոյն թըւեցելումդ, զի մի շռայլեալ արկցէ 'ի տոյժ,
Հատ զսորեւ, թո՛յլ տուր լաւին յանդորրաւէտ տիրել դարպաս ։
Մինն իցէ ոսկեհուռն ոսկեճամուկ բոցանըշոյլ,
Զի կըրկին ազգ են նոցա, սա լաւագոյն երեւաւոր
Եւ կարմիր թեփովք պայծառ, միւսն այն պըղերգ ահագնակերպ
Եւ լայնափոր որովայն ընդ քարշ տանի անփառունակ ։
Որպէս կըրկին դիմն արքայից՝ նոյն եւ մարմինք բազմամբոխին.
Զի կէսք տըգեղք սոսկալիք, զերդ ուղեւոր երիթացեալ
Ծարաւուտ թըքնու շըրթամբք ըզհող՝ եկեալ թանձր 'ի փոշւոյ.
Այլք վառ 'ի վառ փողփողեալ ոսկեճաճանչ փայլատակեն
Ընդ իրանսըն նոյնգունակ խայտախարիւ նըկարակերտ ։
Այս է զարմ ազնըւագոյն, աստի յանշուշտ երկնիցն 'ի կէտ
Մեղր անոյշ մըզեսցես, եւ քան որչափ անուշարար՝
Աւել ծորածոյ եւ տըտպութեան գինւոյն յաղթօղ ։

Այլ իբրեւ պարք ընդ երկին զբօսեալ թեւեն թափառական
Ըզխորիսխ արհամարհեալ եւ ըզմարդակսըն թողեալ ցուրտ,
Զօգիսըն յողդողդունս արգելուցուս յունայն խաղոյն.
Եւ չէ բանըդ մեծ ինչ իր, թագաւորաց թափեա դու զթեւս,

89 · Զի զեղխ յուտել եւ ծախել առանց գործելոյ ։

97 · Զխորթին տգեղութիւն յառեացն նմանեցուցանէ փոշոտեալ ուղեւորի, կամ փոշեխառն եւ չոր թքոյ պապքեալ եւ պապակեալ ուղեւորի ։ Բայց ըստ արգեաց այս զանազանութիւն գունոյ 'ի հասակացն է, ոչ 'ի ցեղիցն ։

100 · 'Ի սահմանեալ ժամանակի քաղե-լոյ զմեղրն, որ է 'ի գարնան եւ յաշնան ։

102 · Ծորածոյ խմա յստակ եւ անխառն, ոչ աղտոտ եւ մըրախառն թանձրացեալ. եւ ոչ թէ լոյծ եւ հեղհեղուկ, որ ոչ ընդունի համարի ։ Իսկ գինւոյ անուշիչ, վասն զի հինք մեղրախառն եւ ըմպէին զգինիս, մա-նաւանդ զկարկուն եւ զտոտիպս ։

104 · Յուրբ Թողլոյ, խմա անմարդի, ան-բնակ, հեռանալովն անտի եւ յօգան թա-փառելով ։

Ինչ 'ի Սկիւթ և 'ի ռիփեան բարձունս աշխարհ կանգնի կուտակ,
Մ՚էտ թաւալ'ի հարաւ կողմ Լիբիական կայ խորասոյզ։
Զայս գագաթն 'ի վեր համակ վըսեմաբերձ նըկատեմք մեք,
Զայն'դ ոտիւք մըթին դըժոխք ուանդընդային սանդարամետք։
Այդ վիշապ Օձ կամակոր 'ի մեծ գալարըս սողի շուրջ
Գետօրէն զեռեալ պարոյր ոլորտապտոյտ ընդ Արջ կըրկին,
Կըրկին Արջ զարհուրեալք յովկիանու թանալ հոսանս.
Անդ յաւէժ, զէրդ ասեն, լըռէ գիշեր խաւարարգել,
Եւ 'ի ստուեր թաթաւեալ խոր՝ մութ ըզմըթով մածեալ պատի,
Կամ թէ զոտն առեալ'ի մէնջ՝ տիւ ծագէ Այգ առաւօտեայ.
Եւ մեզ այն ինչ Արուսեակ շընչէ թասուն երիվարօք,
Զերեկորին լուցանէ.Ջահս անդ ատրաշէկ Գիշերավար։
Գուշակել աստի ունիմք զօդս 'ի յերկնից տարակուսի,
Աստի՝ զաւուրս հընձոց և սերմանացըն ժամանակ.
Եթէ երբ 'ի դէպ թեւօք զյողդողդ անդունդըս պատառել,
Եւ երբ ըզպընդակազմ իջուցանել նաւատորմին.
Կամ 'ի ժամ բարեպատեհ 'ի թաւ մայրիս հարկանել սոճ.
Եւ ոչ զուր ինչ զաստեղաց հետազօտեմք զել և ըզմուտ
Եւ զտարին հանգէտ պէսպէս քառահոլով յեղանակօք։
Եթէ ցուրտ անձրեւ երբեք երկրագործին լինի խափան,
Կամ է 'ի շատ ինչ ուշով այնուհետեւ բերել պարապ,
Որ ապա ճեպ 'ի ճեպոյ 'ի ջերս իցեն շուլթափելի։

246. Սկիւթիա և ռիփեան լերինքն Սարմատիոյ կարկառեալք 'ի ծովն սկիւթական՝ զհիւսիս նշանակեն, կողմ Լիբէական՝ զհարաւ։ Որպէս հիւսիսային ծագ կամ բեւեռն բարձր է մեզ, նոյնպէս հարաւայինն սուզեալ աներեւակ։ Օրինակք ինչ ունին ռիփէան, բայց ընտիրքն ռիպէան. և Խորենացին Ռիպիա դնէ 'ի սարմատացւոց աշխարհին։

250. Ասէ, զհիւսիսիւ՝ ընդ վիշապին են և արջք կրկին, մեծ և փոքր արջքն, որ ոչ երբեք մտանեն մեզ. և մտանելըն ըստ քերթողաց բաղում ուրեք 'ի ծով կամ յովկիան մխրճել ասի. և սոքա երկոքեան իբրու հալեալք 'ի ջուրսն և սոսկացեալք դառնան այսրէն։ Եւ Հոմեր զմեծ արջոյն՝ զոր և Սայլն կոչեն ասէ, նմանօրինակս բարբառի Իլ. ժը. 489. ասէ,

Որ միայնն է անհաղորդ լոգարանացն ովկիանու։

253. Անդ, 'ի հարաւ կոյս, երկար գիշեր է 'ի մերում ամարայնի, կամ առաւօտն 'ի մէնջ առ նոսա դարձ արարեալ՝ տիւ գործէ նոցա. և յորժամ արեգակն քառաձի կառօքն՝ ըստ քերթողաց սանձծանելոյ՝ գայ հասանէ առ մեզ, անդ առ նոսա երեկոյ լինի։ Զայդոսիկ յերկուանօք ասէ ըստ անստուգութեան ժամանակին, որով և զդժոխս և զսանդարամետս յանդունդս խորոց աներեւակ բեւեռին դընէին, որպէս տեսաք 'ի 249։

258. Աստի 'ի տարեւորական ընթացից արեգական ընդ կամար կենդանաբերին և 'ի փոփոխմանց ամսոց և յեղանակաց ունիմք հանել զժամանակ զանազան գործոց. և ոչ անօգուտ ինչ է աստեղաց և ժամանակաց խորանք։

263. Սոճիւդ իմա զամենայն փայտս անտառի, զորս 'ի ժամու պարտ է հատանել։

267. Որ թէ ոչ պարապով գործեսցին

Յառաջինս ընկալ հարթել 'ի գլուղան մեծ սոսկալլեթխար ,
Եւ զըննեալ ձեռամբացի՝ կուռ և մածան բըռել կաւով ,
Զի մի բոյսք արձակեսցին կամ պախիցէ լուծեալ յանձինս :
Ապքթաքուր խաղան յայնժամ ազգի ազգի անդ ժանտաժուպք .
Երդ ըստէպ և մըթերոց եդ ընդ հողով մուկըն մանրիկ ,
Կամ թէ կոյր խըլըրդանին բրեցին խըշտի մըշտագիշեր .
Գըտնաւ 'ի սորս և դօդօշ և որ ինչ այլ բերէ երկիր
Ճիւաղ բազմաձըձի խառնափընդոր 'ի ծոց իւրում .
Եւ աւար առնու մնինայ զլեռնակարկառ թեղ ցորենոյ ,
Եւ մըրջիւն՝ ցակամեալց զառամութեան կասկածաւոր :
Միտ դիր և՝ յորժամ նըշին 'ի դարաստի փունջ խուռներամ
Զօրինեալ ծաղկապըսակ՝ զանուշահոտ ծըղխն հակէ .
Թէ որդիքն են բազմաբիւր , տոհմականօք գայցեն ցորեանք
Եւ ընդ մեծ տօթոյն 'ի հետ հասանիցէ մեծ կալըրայ .
Իսկ թէ շռայլեալ վարսիւք յորդէ սաղարթազեղ հովանի ,
Զուր կասուցու կալոտին ընդյարդաւէտ թափուր օրան :
Ես բազում սերմանահանս տեսի թըրմեալ ըզսերմանիս
'Ի բորակ նախ և 'ի թուխս ոռոգելով մըրուր ձիթոյ .
Զի արմըտիք յոյր ծընցին քան ըզպատեանսըն նենգաւորս ,
Եւ 'ի հուր մեղմախառն ամոքեսցին դիւրապատրաստ :
Երկայնամիտ տըքնութեամբ թէպէտ իցեն փորձք հատընտիրք ,
Տեսի սակայն զի խորթանան , թէ զպարարունս ամ ըստ ամէ
Մի առ մի ձեռօք իւրովք ոչ կըտուեսցէ մարդկեղէն ուշ :
Այսպէս համայնից՝ միշտ 'ի վատթար տապալել կոյս
Եւ յետս ընդ կըրունկ սահել՝ ճակատագրեալ 'ի հրամանաց :
Ոչ ընդհատ քան որ հազիւ դէմ յորձանաց ղեկավարեալ
Մըղէ զլաստափայտն , եթէ երբէք ելք ըզթևան ,
Ընդէն ըզնա դարավէժ յափըշտակէ սուր հեղեղատ :

Այլ և մեզ իսկ է զարփիս նըշմարելի զԱրջապանին ,

188 . Դօդօշ իմա զտառին գորտ մեծ և թունաւոր :

200 . Զի բազում անգամ պատիճք ընդոց մեծամեծ երևեալք՝ ունին զհատան ունին և ոչ ատոքս . զայս ասէ նենգաւոր և խաբեբայ : Դեղովքդ յօրինեալ սերմանք՝ կրկին օգուտ բերեն . զի ատոք գան , և զի դիւրաւ եփին մեղմ հրով :

210 . Ոչինչ ընդհատ մեզ մշակաց քան նաւորդաց գիտել արժան է զելս և զմուտս վտանգաւոր աստեղաց : Զարջապանն տես 'ի 92 . Ուլքն են աստեղք յուս Կառավա-

Նուագաւոր հընչմանց Կուրեանց և ձայնատու պըղընձոյն ընդհետ
Զերկնից արքայն սընուցին 'ի քարայրին Դիկտէական։
Այք ևեթ ըզծընունդս հասարակաց ունին և զտունս,
Միաժողով 'ի քաղաք՝ մեծ օրինօք վարեալ կենցաղ.
Սոքա միայն գիտեն անդեդև յարկս և հայրենիս.
Հանդերձեալ ձըմերայնոյն յամարայնի յառաջատեսք
Ձեռն 'ի գործ արարեալ և 'ի միջի զգիւտսըն դընեն։
Քանզի կէսք ըսկեն ռոճկաց դաշամբք ուխտից յանդըս ճըգնեալք,
Այլք 'ի յորմածըս գաւթիցն առեալ զարտօսր ըզնարգիսի
Եւ սինձ թանձր 'ի կեղևոց՝ դընեն մաղոց հիմն առաջին,
Եւ ըզկնի կառուցանեն այնուհետև ըզմոմըն մած.
Ըզզարգուն մանկութիւն՝ ըզյոյս ազգին դայեկեն կէսք,
Այլք ըզմեղրըն սուրբ սերտեալ պարզեն բըջջաց լըյծ օշարակ։
Կան՝ և ոյց առ դուրս եհաս վիճակ պահպանութիւն.
Եւ դէտ կան փոխանակաւ ամպոց երկնից և անձրևաց,
Զեկաւորաց կամ ըզբեռն առնուն, կամ գունդ հրոսակ կազմեալ
Ըզգառեխսըն ջոկ անգործ հանեն վանեալս 'ի սըրահից.
Վաստակն եռայ և բուրէ մեղր 'ի ծոթոր անուշահոտ։
Զերդ Կիկլոպայք երբ հապճեպ՝ շանթս 'ի հալուն դարբնեն ձուլից,
Կէսք 'ի փուքս արջառենիս ըզսիքս օդոց առնուն և տան,
Ըզպըղընձսըն շառաչունս 'ի լիճ մըխեալ ջըրդեղեն այլք.
'Ի ներքոյ կանգնեալ սալիցն Եթնէ 'ի թոպ թընդեալ հեծէ,
Նոքա զբազուկս ընդ իրեար մեծաւ ուժով բառնան կարգաւ
Եւ ամրապինդ աքցանօք կալեալ զերկաթըն շըրջշըրջեն.
Ոչ ընդհատ, օրէն թէ զփոքր ընդ մեծ իցէ համեմատել,

Կիւբելեայ եկին մնուցին զմանուկն Արամազդ յանձաւի Դիկտէ լերին կամ 'ի Դիկտէս այրին Իդայ լերին կղզւոյն Կրետեայ, զոր անդր ապրեցուցեալ էր մայր նորա Կիւբելեայ 'ի ծախող որդեկեր ժանեայն Զըրուանայ կամ Կռոնոսի։ Եւ 'ի վարձ ծառայութեանս առին մեղուք յԱրամազդայ զմեծ և զզարմանալի հանճարս իւրեանց և զիմաստութիւն։ Փոխան այսմ հանդերձելոյ պարգևի, ասէ, մեղուք յառաջագոյն մնուցին զԱրամազդ. փոխանակ ասելոյ՝ թէ փոխարէն մնուցանելոյն առին զպարգևան զայն։ Անուն Կուրետաց 'ի հելլէն ձայնէ ածանցեալ է, զոր պէսպէս առնուն։

160. Սինձ թանձր. տես 'ի առջն 40. 41։ Զայս սոսինձ կամ զականամոմ՝ հիմն արկեալ մաղոցն, ապա 'ի վերայ նորա շինեն զպանման՝ վերուստ 'ի վայր գործելով։ Եւ յայս իսկ հայի թերևս լատին բառն suspendunt, որ զշինուածոյ սատացեալ՝ նշանակէ սովորաբար կանգնել, ամբառնալ կամարակապ. բայց զի և կախելոյ միտք են 'ի բայդ, խորհրդով եդաք կառուցանել, որ յերկոսին միտս ակնարկէ։

169. Զկիկլոպայս և զէտնէ տես ա. 489։

172. Օրինակք ինչ փոխանակ Եանէի ունին անջրան կամ փորոյն։

Ընդաբոյս սէր համբարոց ըզկեկրոպեան ձեպէ մեղուս
Ըզմէն մի յիւր ըսպասուն. հինօրէից՝ 'ի խնամս աւանք,
Պահել ըզպան խորըսխաց և տուն կազմել ամենարուեստ.
Իսկ մանկագոյնք յանագան դառնան պահու վաստակաբեկք
Զոլթըրնով բարձք հոծեալ, կըծեն աստ անդ և ըզմաթուզ,
Իսաժագոյն զուռենիս, ըզշէկ քըրքում և ըզնարգոս,
Ըզթըմբի պարարտաբեր և ըզյակինթըն գերկնագոյն:
Մի հանգիստ գործոյ բնաւից, մի բոլորից աշխատութիւն.
Այգուն զիմեալք ընդ դըրունս՝ այլ ոչ երբէք դուլ և դադար.
Եւ յազդել երեկորոյ դարձ յարօտէ առնել մարգաց,
Յայնժամ 'ի տուն ընթացեալք, յայնժամ մարմնոց տանին զարմանս.
Ձայնք հընչեն, և առ սեմովք ուանդաստակօք շըշընջեն շուրջ:
Իսկ ապա 'ի սըրսկապանս իբրև մըտեալ պատըսպարին,
Լըռութիւն է զգիշերն, և զխոնջ անդամս՝ իւր քուն պատէ:
Բայց յոտնաձայն անձրևի չմեկնին 'ի տար 'ի դադարաց
Կամ երկնից հաւատան 'ի մըրրըկաց ասպատակել.
Այլ յանքոյթս ըզպարըսպօք ոստանին շուրջ երթան ըզջրոյ
Եւ հնարին սուղ արշաւանս, և զերդ մակոյկ մի յողդողդուն
Զնաւախիձն 'ի տատանել ալեաց՝ բառնան կոպիճս յաճախ,
Եւ ընդ օդ սին նոքօք ըզփըքրոցի կըշռեն անձինս:
Զարմասցիս և ընդ այս կարգս հաճոյական մեղուաց եղեալ,
Զի ոչ ամուսնութեանց ինչ պարապեն, ոչ յողալիք
Զմարմինսն 'ի խառնըս հեղուն կամ ծընանին մանկունս երկամբք:
Այլ ինքնին 'ի սաղարթուց ուանոյշ բուսոց զիւրեանց սերունդ
Բերանովք հաւաքեալ՝ ինքնին զարքայն և զժողովուրդն

176. Կեկրոպեան է ատտիկեցի, 'ի Կեկրոպայ առաջին արքայէ ատտիկեցւոց: Զի մեղր ատտիկէաստանի, մանաւանդ Հիւմետ լերին, անուանի էր, որպէս և մինչև ցայսօր:

182. Թմբի հոյզ իմն մեղրածորան մատակարարէ մեղուաց 'ի սափինձ պատկանաւոր:

183. Զայսոսիկ իմա զմիաբան միաժողով գործակցութենէն. ապա թէ ոչ, փոխանակաւ եւս հանգչին և վաստակեն, այլ և գիշերի եւս, ըստ այժմու ճշգրտագոյն զննութեանց:

189. Իւր քուն է իւրաքանչիւր առանձին յատուկ և սովորական, և ըստ օրինի և 'ի բնէ պարտուպատշաճ, և զոր ոչ եւս կարէ թօթափել:

194. Կարծիք էր ժամանակին և այս՝ 'ի վրիպակ տեսութենէ. զի զգործ այլոյ ուրուք ազգի մեղուաց, որ զբոյնսն յորմս կառուցանեն աւազով և խճիւ մածուցեալս, մեղրագործ մեղուաց ընծայեալ են:

199. Նոյնպէս և այս կարծիք էին հնոց, թէ մեղուք 'ի ծաղկանց ժողովիցեն զսերմանս ծննդոցն. և վասն այսորիկ իսկ, ասէ, այնչափ է նոցա սէր ծաղկանց, մինչև զթևսն խորտակել և մեռանել իսկ:

Զհովանիս նըսեմաստուեր հերկոց քըշտել 'ի սուր մանգաղ,
Զհաւս 'ի խօշիւն խուճապել և աղօթիւք կարդալ զանձրև,
Ահ, ընդ վայր զօտարին նըկատեսցես ըզմեծ գադիշ,
Եւ ըզսով քո սփոփեսցես թօթափելով կաղնի յանտառս:

Բեր տեսցուք զինչ և անօթք իցեն և զէնք պինդ մըշակաց,
Զորոց վըրէպ՝ ոչ վար և ցան և ոչ հընձոց յառնեն հասանկք:
Գալարուն ծանր արօրոյ նախ և յառաջ կոթով և խոփ,
Եւ սայլակք Եղեւսեան մօրն անուահոլով յամրընթացիկք,
Գահուկք և կամնասայլք և անհեղեղ քերին տըրմուխք,
Նա և չերտանկու կեղևանն նըւաստ կահ և կազմած
Մաթզի տափան, և նըքոյր Սպանդարամետին խորհըրդաւոր.
Զոր ուշ 'ի կուրծս անկեալ կանուխ հանդերձեսցես զամենայն,
Երկնաւէտ վիճակին եթէ պահին քեզ փառք հանդէպ:
Անդէն և անդ 'ի մայրիս մեծաւ ուժով թեքեալ յառեղ
Պարտի նըշդարենի և գայ 'ի ձև կոր արօրոյ,
Զոր սամին 'ի բընոյն ձիգ երկայնեալ յութ ոտնաչափ,
Զոյգ ունկունքըն պատշաճեալ և երկողնի առատամանք:
Հարկանի փոյթ և թըմբին թեթև 'ի լուծ ուերկայն փիճի,
Եւ մաճ, որ 'ի թիկանց զյետոյս սայլին տանի բերէ.
Եւ զմայրիդ յակութ 'ի կախ ծուխըն փորձէ խարուկածին:
Ես առ իս բազում պատուէրք հայրենաւորք աւանդել քեզ,
'Ի հոգոց մանրակըրկիտ թէ չես խուսափ ծանրատաղտուկ:

160. Հովանի բազում ուրեք փոխանակ ստուերաց առեալ է, գործ ընդ պատճառի, ծանօթ ձևով հռետորականաւ:

167. Եղեւսեան մայր նոյն ինքն Դեմետրէ է ուսուցողն հողագործութեան, որ յԵղեւսիս քաղաքէ Ատտիկեայ՝ յորում նախ ուսոյց զարուեստ, Եղեւսեան ևս ասի: Իսկ սայլի նորա, որով և զպատկեր նորա յանդաստանս շուրջ ածէին, անիւք էին ոչ խոզիւք, և խեցիւ կազմեալ, այլ կունդք թմբկաձևք որ լիառամբն հետ գառանային, որպէս վարին ցարդ յարևելս 'ի Հայս, և անուանին ծկլիկք:

169. Կեղևան կազմած ասէ զցաքաննն. զի Տրիպտոլեմոս՝ որ առաջին ուսաւ զերկրագործութիւն 'ի Դեմետրեայ, էր որդի Կեղէոսի արքայի Եղեւսիս քաղաքի:

170. Նքոյրն կամ խարբալ 'ի տօնս և 'ի խորհուրդս Սպանդարամետին 'ի հանդիսի անցանէր. զի զկեղեքեալ անդամս նորա՝ 'ի մաղի ժողովեաց Իսիս, և շինականք մաղիւ նուիրէին նմա զերախայրիս պտղոց, և զի օրինակ է մաղ ընտրութեան բարեաց և չարաց, որպէս ցորենոյ 'ի յարդէ:

172. Եթէ կամիս պատիւ և գովեստ գիւղիդ և վայելուչ գտանել յագարակէդ:

173. Բանաստեղծական նկարագրութիւն կազմածի արօրոյն. ուր առեղ իմա զյետոյ կողմն նորա, զաւարտան:

177. Թմբի է օղամոր, tilia. և փիճի՝ ազգ կաղնւոյ, fagus:

179. Զի փորձ և ընտիր համարէին փայտք պնդացեալք 'ի ծուխ վառարանի:

Իւրաքանչիւր 'ի ծնընդեան բերեն յինքեանըս նուրբ ոգիս ․
Եւ ապա 'ի նոյն անդրէն ամենայն ինչ լուծեալ երթայ ,
Եւ չիք ուրեք մահու մուտ , այլ կենդանւոյն վերաթեւեալ
'Ի թիւս աստեղաց անցեալ ծրարին յերկնից խորան ։

Թէ զվեհավայր երդն ինչ բացցես և զմեղուն գանձս 'ի շտեմարանս ,
Ումպ մի նախ ընդ բերան ցօղեալ ջուր զիրգ և սրըսկեսջիր ,
Եւ 'ի ձեռն առեալ հանդէպ կարկառեսցես ծուխ հալածիչ ։
Երկիցս ըզբեռն աճեցուն քաղեն , կըրկին կըթոց են ժամք ․
Այն ինչ յերկիր Բազմաստեղք ըզգեղեցիկ դէմըն ցուցցեն
Եւ առ ոտն անկուշեալ հարկանիցեն զծովուն հոսանս ,
Կամ մինչ յարփից փախուցեալ խոնաւայոյզ թօնուտ Ձըկան
Տըխրագին իջանիցեն 'ի ձմեռնական ալիս յերկնից ։
Այն նոցա զայրուցք 'ի վեր քան զօրինակ , և թէ խուլիցին՝
Թոյն շընչեն շիթոցըք և յերակունսըն հարըստեալ
Ընդ ըզկոյր թողուն սըւինսն և 'ի վէրս անդ զոգիսն հանեն ։
Թէ դըժպըհի ձմերայնոյն ահիւ զընդդաս յառաջիկայն

227 ․ Երկու հնագոյն գրչագիրք ընդ այլոց չորից ունին augustam sedem , վէհավայր երդն ․ իսկ այլք angustam sedem , անձուկ երդն ։ Բայց առաջին մակդիրն առաւել նշանական է , իսկ երկրորդդ աւելորդ և վայրապար , վասն որոյ և ոչ վիրգիլեան ։

232 ․ Որք 'ի վեր վազեն և ոստնուն , զոտն զգետնի հարկանեն , և իբրև թէ ոտն 'ի վերայ ոտոփելով մերժեն զայն և 'ի վեր սլանան ։ Այսպէս իմն իմա աստանօր յետ ծագելոյ Բազմաստեղաց զվերանալ նոցա և զբարձրանալ 'ի վերայ ջուրց ծովու՝ յորմէ ելանել թուին ամենայն աստեղք ։ Գեղեցիկ դէմս աստ , զի և կոյսք ոմանք էին յաստեղս վերառեալք ․ տես ա ․ 227 ։

233 ․ Ոչ եթէ 'ի մտանել կամ սուզանել Բազմաստեղաց Ձուկն զկնի կայ նոցա կամ զկնի մտանէ , յորմէ փախչիցին ․ այլ զի ըստ կարգի պատկերաց կենդանակամարին յերկնագունտն , ուր դասաւորեալք են ըստ ճշմարիտ ընթացից արեգական , յարեւմտից յարեւելս զդէմսն ունելով , Բազմաստեղք որ 'ի Ցուլն՝ իբր յառաջոյ գնան , և Ձկունք 'ի թիկանց գան նոցա ։ Եւ ամենայն որ ինչ ըստ տեսութեան իմիք զհետ ընթանալ թուի , հալածել ասի զյառաջընթացն , և սա փախչել ։ Ըստ այսմ տեսութեան փախուցեալք և զօղեալք ասին աստ Բազմաստեղք 'ի Ձկանէն ։ Իսկ տրտմեալք՝ վասն դառնութեան ձմեռնային ժամանակին՝ յորում սուզանին ։ Բայց ոմանց անկիրթ թուեցեալ՝ ըստ այսր տեսութեան կարգի ընթացից կենդանակացն 'ի գունոյն խօսել Վիրգիլեայ, համարին թէ Ձկամբն ոչ եթէ զաստեղատունն, այլ զձմեռնային եղանակն իմանայցէ , յորմէ իբրև խոյս տուեալ և սուզեալ թաքչիցին Բազմաստեղք ։ Այլք այլազգ ևս իմանան կամ ուղղել կամին զբնագիրն ․ բայց զոր եգաքն ընտրելագոյն են կարծիք ։ Զիարդ և իցէ , ելիւք Բազմաստեղացն որ 'ի 231 , և մտիւքն որ աստ , զերկուսին ժամանակս կթելոյ մեղուն յայտ առնէ ․ որոց առաջինն է 'ի սկիզբն մայիսի՝ առ որով ընդ արեւուն ելանեն , և երկրորդն գրեթէ 'ի սկիզբն նոյեմբերի , առ որով 'ի ծագել արեւու ինքեանք մտանեն ։

235 ․ Իմա յորժամ քաղիցի մեղըն նոցա , յայնժամ անհնարին բարկութիւն է նոցա , և յայնժամ առաւել խայթեն ։ Եւ զխայթոցսն կոչէ կոյր սուինս կամ փքինս , զի թաքունք են՝ նուրբք և աներեւոյթք իմն և կուրաբար յետուստ վարեալք ․ և 'ի ձգելն զնոսին յետս՝ խզեալ մնան հանդերձ պատառմամբ որովայնիցն , որով և մեռանին ։

238 ․ Իսկ եթէ վասն առաջիկայ գառ-

Պուլթ ածեալ աւերածին և բեկելոց անձանց նոցա ,
Սակայն ո՞ ծըխել ծոլթոր և զընդունայն մոմն հատանել
Յերկուացի , զի ստէպ լափէ զխորխախն անյայտ կովադիւաց ,
Ոչ թոտոտք խաւարասէրք եռան կայտռեն խուռն 'ի սենեակս ,
Ոչ բըրէտ ապախտաւոր առ օտարին նըստեալ նըպար ,
Կամ պիծակ ժանտ և ժըպիրհ անհամեմատ խառնի զինուք ,
Կամ ցեց ազգ դըժընդակ , կամ գարշելին Աթենասայ
Սարդ 'ի դըունսըն կախէ զբարակաման տորգս ոստայնին ։
Ո՛ր և չափ կողոպտեսցին՝ նոյն միահոյլ փոյթ պընդութեան
Տարցին 'ի կանգնել զանկումն ազգին կործանելոյ ,
Լըցցեն ըզխորշս 'ի ծաղկանց և հիւսեսցեն զամբարանոցս ։

Իսկ եթէ , որ զի կենցաղ ըզմեր վըտանգս եռ և մեղուաց ,
Նըխտիւք դառնութեան ծորեալ մարմնոց թառամեսցին ,
Զոր անշուշտ ունիցիս նըշանակօք ծանօթս առնուլ ,
Նըժամայն խօթիցըն մոյնք այլագունեալ՝ խամրին երեսք
Սոսկալի մաշարայիւ . անդ 'ի գաւթաց մարմինս յայնժամ
Հանեն դիակնացեալս և յուղարկեն ողորմագին .
Կամ ոտն 'ի յոտն ըզմիմեամբք յեռեալ տողան կախին առ դուրս ,
Կամ 'ի ներքըս յորմարգել տանցըն շուշեն առհասարակ
Տարտամեալք առ քաղցի ու՚նդարմացեալք կարկամ ցըրտով .
Յու լինի անդ թաւ հընչիւն և մըրմընջեն յերկար նուագօք ,
Զոր օրինակ մըռմըռայ յանտառս երբեմըն ցուրտ հարաւ ,
Իբրև ծով ծըփեալ գուժէ 'ի յեռըաճարձ սահել ալեացն ,

նութեան աւուրց ձմերայնոյն ոչ զամենայն խորխախն քաղիցես , գթացեալ 'ի մեղուսն՝ զի մի սատակեսցին 'ի սովոյ , սակայն սըր-բելի է քեզ զփեթակն ծխով , և զաւելորդ մոմն 'ի բաց հատանելի , զի մի 'ի բջիջսն անդ դարանեալ բունեսցին ազգի ազգի ճճիք և զեռունք ։ Մեղուք առաւել 'ի բա-րեխառն ձմերայնի երկնչին 'ի սովոյ . զի նոյնպէս գործել չկարեն , բայց ուտել ու-տեն ։ Իսկ 'ի խստաշունչ ձմերայնի թըմ-բրեալ ընդարմացեալ ոչինչ ճաշակեն ։

243 . Գոռեխ կամ իշամեղու անգործ , յօտարին համբարոց կերակրեալ ։

244 . Անհամեմատ զէն պիծակին՝ է խայթոց նորա մեծ քան զմեղուացն ։

245 . Սարդն ըստ առասպելին էր Արա-քնէ դուստր Իդմոնի , մէոնացի կամ լիւ-դացի . որոյ խրոխտացեալ ճարտար քան զԱթենաս գոլ ոստայնանկութեամբ , ցա-սեաւ աստուածուհին և պատառեաց զոս-տայն նորա և զգործիսն խորտակեալ ցրու-եաց ։ Ընդ որ խռժոռեալ Արաքնէ՝ խեղդ-արկ և կախեցաւ , և 'ի կախաղանի անդ փոխեցաւ 'ի սարդ 'ի նմին իսկ յԱթենա-սայ ։

247 . Որչափ և կթեսցես զմեղր նոցա , միայն թէ մի մինչև 'ի սովամահ առնել զնո-սա կամ յանպատեհ ժամանակի , այնչափ անդադրյնս ջանան և նոքա դարման տանել վնասուն և լնուլ զկորուստ խորխախացն 'ի հիւթոյ և 'ի հուզոյ ծաղկանց , և կարկատել զբջիջս պանիցն կամ մաղոցն ։

Որպէս հուր 'ի փակ հնոցի փայլականացեալ շռնչէ մըրրիկ։
Նըստանօր բուրմանս այրել զանգըրժառի յորդորեցից
Եւ ընդ ցընցուղ եղեգնեայ ծորանս 'ի ներքս ամոլ մեղու,
Նախորժիւք ըզպարտասեալըն յընտանի խիւս հրաւիրելով։
Լաւ լիցէ խառնել 'ի նոյն և զգըղըթորոյ լեռեալ ճաշակ
Եւ վարդ չոր կամ քաղցու 'ի հուր բազում պարարտացեալ,
Կամ ողկոյզըս չամչի առ 'ի փախթեան այգեստանէն,
Եւ զկեկրոպեանըն ծոթոր և զտերեփուկ բազմաբուրեան։
Է և ծաղիկ ինչ 'ի մարգս՝ առ երկրագործսըն ցինկ անուն
Դիւրագիւտ բոյս և առ ձեռն ոյց միանգամ ելցեն 'ի խոյզ.
Զի անտառ մեծ ամբառնայ 'ի միոջէ և եթ փընջէ,
Ինքըն ոսկի, այլ 'ի տերևսն որ խուռներամ զիւրև սըփռեալ՝
Կապուտակ մանիշակին ծիրանեփրեան հարկանի փայլ։
Բազում ուրեք զից բագինք 'ի պըսակաց հիւս զարդարին,
Համն 'ի քիմըս դաժան, տաւարածականք յարօտս հովտաց
Եւ առ ափն ոլորտապտոյտ ուղխից Մելլայ ժողովեն զայն։
Զարմատըս սորա՝ յանուշահոտ եփեալ գինւոջ
Եւ լիով սակառեօք մատո նոցա ճարակ առ դուրս։

Իսկ թէ ումեք յանկարծոյն 'ի սպառ 'ի սպուռ հատցի զաւակ,
Եւ չիցէ ուստի զնորոգ նորոյ զարմի յարուցանել,
Զարկադեան հօտապետին ժամ է յայտնել զիւտ անուանի,
Որք ըստէպ 'ի սպանող եզանց զարշ ապաժոյժն հանցէ մեղուս։

263. Անդժառ կամ քաղբան, տես Գ. 417։

267. Քաղցու եփեալ և 'ի ռուփ կամ 'ի մաթ փոխեալ։

268. Զփախթեան այգիս կամ որթս տես Բ. 93։

269. Կեկրոպեան ասել զծոթոր, որպէս և զմեղուս 'ի 176, ատտիկեցի ասել է, վասն առատութեան անկոյգ 'ի Հիմետ լերին ատտիկեցւոց, որոց առաջին թագաւորեաց Կեկրոպս։

277. Մելլա կամ Մելլա գետ է մերձ 'ի Գրիքսիա քաղաքն Իտալիոյ։

282. Արկադեան հօտապետ է Արիստէոս հովիւ, որդի Ապողոնի և Կիւրենեայ յաւերժահարսին դստեր Պենէոսի գետոյ։ Այս իշխող եղեալ Արկադիոյ, և զմեղուաց գործունէութիւն և զմակարդումն մածնոյ ուսուցեալ կամ զխառնաց պանրոյ։

283. Հասարակաց կարծիք էր երբեմն արևելից, և ոչ անտեղի ինչ, թէ ամենայն ազգի ազգի բզէզք և ժիժմունք և ճճիք և զեռունք՝ 'ի գիճական փտութենէ, այսինքն 'ի խմորելոյ և եռալոյ և նեխեալ կամ այլայլեալ և ապականեալ նիւթոցն ծնանիցին։ Զայս և զմեղուաց կարծէին, յարջառոյ սպանելոյ և նեխելոյ, 'ի ծնունդ յառաջագայիլ պարուցնոցա. որ և եգիպտացւոց հնարագիտութեան գիւտ համբաւեալ էր։ Ըստ այսմ և զձիաստացն 'ի նեխեալ մարմնոց ձիոյ ծնանել ասէ Խորենացին ('ի գիրս պիտ. պարսաւ ձիոյ. ժէ), նոյն և Պլինիոս որ և զընդունուս յիշէն ասէ (գիրք ժա. 20)։

Ընդոստին 'ի վերուստ առեալ ըղթեալ կարգի ձառխ
'Ի նախուստ անտի սկզբանց ըղըրոյցն ողջոյն առկից 'ի վեր։
Օ՜ ի ուր պեճեան Կանոպայ տունքն բնակէ երջանկապարմ
Ո՞ր ուղխիցըն հոսանօք ծովածաւալըն` Նիլոսիւ,
Եւ նրկարէն նաւկներով շըրջագայի յիւր անդաստանս,
Եւ ուր պատի զսահմանօք կապարճեղոց պարսկաստանեայց
Եւ պարարեալ 'ի թուխ աւազ զկանաչագեղն Եգիպտոս
Եւ յեօթն առաջս հատուածեալ զայ դարավէժ հոսէ 'ի ծով
Ընդուստ 'ի մըթագոյն Հնդկաց իջեալ գետն յորդաղէմ,
Ըմանդակ 'ի սոյն արուեստ հաստէ աշխարհն յոյս անպատիր։
Սուղ իմն ընտրի նախ տեղի և առ 'ի նոյն պէտս ամփոփեալ.
Եւ պընդեալ զայն նեղ որմովք և կըղմընտրովք անձուկ յարկի`
'Ի չորից հողմոց քառեակ տան լուսամուտս 'ի կողմանէ։
Խընդրեալ ապա յերկեմեան ձակատուն որթ կարակներջիւր,
Երկլին ծուծքն և հաղագլին դուռըն խըմու բուռն ոգորմամբ
Եւ յանեղծ 'ի մորթն ըմպերք զանիւք տոշկին կոչկոճանահ։
Ո՞յզունակ յորմածի անդ արկեալ թողուն, և շուրջ սրփուեն
Ըզկողիւք նորին ուղէշս հատեալ ծոթոր ուառոյգ նարդոս։
Կործի այս` մինչ մեղմ օդով սկըսանի դեռ ծով ծիծաղել,
Զև 'ի նոր երփնից նարօտ մարգագետինքըն շողացեալ,

286. Պելլա քաղաք էր Մակեդոնիոյ. Կանոպայ կամ Կանոպոս քաղաք եգիպտացւոց առ երի Աղեքսանդրիոյ։ Որովհետև մակեդոնացիք տիրեցին երկրին եգիպտացւոց, յանուն նոցա մակեդոնական կոչէ զայն, և ևս յառաջաբար պելլեան, զի Աղեքսանդր մեծն` տիեզերայաղթ թագաւոր մակեդոնացւոց` 'ի Պելլա քաղաքի ծնեալ էր, և զԱղեքսանդրիա նա շինեաց։

288. Զայս իմա յողողանել ջուրց Նեղոսի։

289. Իմա շըջան առեալ անցանէ զկողմամբք սահմանացն Պարսից, զկողմամբքն` յորս հասանէր երկիր տէրութեան Կիւրոսի պարսկի և Կամբիւսեայ, որ և եգիպտացւոց տիրեաց։ Կամ մանաւանդ զՊարսս իմա աստ Պարթևս. 'ի կողմանս` յորս Թեակոնեէին սահմանք ընդարձակ թագաւորութեանն Պարթևաց. զորս և կապարճաւորս կամ աղեղնաւորս իսկ ասէ, որ տիրապէս Պարթևաց է սեփականեալ։

292. Մթագոյն Հնդիկք են աստ եթովպացիք, զորս ասացեալ եմք ընդհանուր անուամբ Հնդիկս կոչել նախնեաց։ Եւ արդարև, որպէս կարծի հաւանաբար, 'ի լերանց լուսնի որ 'ի խորս Եթովպիոյ` ելեալ խաղացեալ գայ Նեղոս, և ընդ եօթն բերան թափի 'ի ծով։ Ամենայն ասացեալքդ յայս գլխին, թէ բովանդակ երկիրն եգիպտացւոց, զոր ընթացիւք եգիպտական գետոյն Նեղոսի տեղագրէ` սկսեալ յարևմտեան կողմանցն, ուր Կանոպայ է հուպ Աղեքսանդրիոյ, մինչև յարևելեան կողմանս առ սահմանօք պարթևական տէրութեան, յայս հնարս արուեստան կան զկորուստ մեղուացն գտանելոյ։ Եւ թէ զինչ կարծեցեալ հնարքըն էին, ահա ասէ։

299. Անեղծ մնալով մորթոյն, ոչ ծակել և ոչ պատառել։

302. Այս է 'ի մուտս գարնայնոյ, զաւուրքս գարուն դրանցն բանալոյ, 'ի լուել տատասկաշունչ մրրկաց, և մինչչև փթթեալ ծաղկանց։

Եւ շատախօս ծիծեռանն չէ կառուցեալ բոյն 'ի հեծանս ։
'Ի փափուկ ոսկերսն յայնժամ ջեռեալ աւիշք կան յեռանդեան
Եւ զեռունք երևոյթ կերպարանօք զարմանալիք
Նախ անոտունք և ապա սաւառնաթև յուզին ամբոխք ,
Եւ զամ քան ըզզամ ըզնուրբ օդովք թևակոխեն .
Մինչև զօրէն տարափոյ յամառնայնոյ ցընդեալ ամպոց
Երրանան , և կամ որպէս նետք 'ի ձայթել լարին թռուցեալք
Երբ այն ինչ նախամարտիկ մըխին 'ի կռիւ երագ Պարթևք ։

Ո՞վ 'ի դից մեզ , Մուսայք , ո՞ զայս արուեստ եհան 'ի վեր ,
Ո՞ւստ ուստեք ըսկիզբն առեալ նորոգ մարդկանս եմուտ հանճար ։
Փախուցեալ 'ի պենեւսեան Տեմպեայ հովտէն Արիստէոս ,
Երբ և ախտիւ և սովով կորեան մեղուքն ըստ զրուցաց ,
Եւ 'ի գլուխ գետոյն առ սուրբ աղբերակունս կացեալ տրտմաւ
Բազում բողոք հարկանէր՝ ձայն առ ծընօղն արձակեալ զայս .
Մա՛յր իմ , Կիւրենէ , մայրիկ նըստեալ ուղխից 'ի թափս ,
Ո՞ր զիս 'ի վեհափառ աստուածասերմ դիցըն տոհմէ ,
Թէ միայն զոր պատմեմն՝ հայր է Թիմբրեանն ինձ Ապոլոն ,
Ատելի ծընար բաղդին , կամ յո՞ քո սէրն առ իս գընաց .
Ա՞ռ իմ խրախուսէիր երկնից անգամ ինձ ակն ունել .
Աւասիկ և զայս իսկ մահկանացու կենաց պատիւ ,
Որ ինձ հազիւ հազ արդեանց և անասնոց արթուն խընամք
Ամենայն հնարիւքս ետուն , զքեզ ունելով մայր , կորուսի ։
Ո՞ւմ կաս դու , ինքնին ձեռօքդ ըզբարգաւաճ խըլեա մայրիս ,
Հար 'ի բակս հուր ոխերիմ , կէզ սատակեա զհունձս արտորայս ,
Եւ արկ յորթատունկս այգւոյն հատու տապար 'ի գործ ,

312 . Այս հարցումն ոչ վասն Արիստէոսի թուի լինել՝ զոր ծանօթս կանխաւ առկաքեան հատուածի անուանէ 'ի 282 , այլ վասն Պրոտէոսի , կամ մանաւանդ Կիւրենեայ՝ մօր Արիստէոսի , յորմէ ուսաւ և ուսոյց ։ Իւ թէ որպէս , զայն տեսանի պատմել յառաջիկայդ , ուր և երևի՝ գիւտուածոյ գիւտ լեալ մանաւանդ ։

314 . Տեմպէ էր հովիտ գեղեցիկ 'ի Թեսաղիա , մինչև քերթողաց զամենայն զով և գեղեցիկ հովիտս կոչել Տեմպէ յանուն սորա . զոր հատանէր անցանէր գետն Պենէոս կամ Պենեւս , հայր համարեալ Կիւրենեայ մօր Արիստէոսի , որ և 'ի նորուն աղբերակունս անդ գետոյն 'ի խորս բնականէր ։ Այսր երբև 'ի մայրենի տուն գայ Արիստէոս , Թողեալ զափունս Պենէոսի առ աղետից սատակման մեղուացն իւրոց ։ Ըստ մատոյ քերթողս Արիստէոս 'ի ժամանակին բնակէր 'ի Թեսաղիա , չև անցեալ 'ի Կէա . տես ա. 16 ։

320 . Թիմբրեան կոչի Ապոլոն 'ի Թիմբրա գեղջէ Տրովադայ , ընդ որ հոսէր գետն Թիմբրիոս , և հռչակաւոր էր մեհենիւ և պաշտամամբք նորա ։

Թէ այդչափ իմ պարծանաց զարշանք ըզքեզ ըմբըռնեցին։
Լըւաւ մայրն յառագաստէն ըզճիչն 'ի յալըս խոր գետոյն.
Յաւէրժհարսունք ըզնովաւ նիւթէին ասըր մի՛լետեան
Ծովագոյն 'ի կապուտակ ներկեալ տոգորըս տարրապէս.
Ընդ Դըրիմով և Քսանթով, Փիլոդոկէ և Լիգէա
Ըզփաղփուն ծամըրն հոսեալ զշուշանափայլ փափուկ ուլամբք.
Նեսէէ և Սպիով և Թաղիա, Կիմոդոկէ.
Կիդիպպէ և ընդ նըմին խարտիշագեղ Լիկովըրիաս,
Մ՛ինն աղջիկ կոյս, միւսըն դեռ ընդ փորձ անցեալ նախկին երկանց.
Եւ Կլիով և Բերոյէ քորք երկոքին ովկիանծինք,
Երկոքին յոսկի պաճոյճ, 'ի գոյնագոյն մաշկ երկոքեան.
Եւ Եփիրէ և Ովպիս ասիական Դէոպիայն,
Եւ Թեթևն Արեթուսա զնետս հուսկ ուրեմն եդեալ 'ի բաց։
Յորոց մէջ կայր Կլիմենէ զրուցէր ըզզուր ջանս Հեփեստեայ
Եւ ըզզաւն Մարսի և զանուշակ գաղտագողնս,
'Ի սկըզբնահայր 'ի Քաւսէն տողեալ ըզդից յոլով տըռփանս։
Որով տաղիւք ըզմայլեալ ըզաւակ կակուղ մինչ յիլ պատեն,

331. Զմի՛լետեան ասր տես Գ. 309։

335. 'Ի կէս գըրչագիրս պակասէ այս տողս, որ կայ իսկ յԷնէիականին, Ե. 826։

338. Զսոսա երկոսին ծնունդս Ովկիանու ասելով՝ յայտ առնէ թէ սոքա միայն դստերք էին Ովկիանոսի և Տեթեայ, իսկ այլքն դստերք Ներեւսայ և Դորիսայ, թոռնեայք Ովկիանոսի։ Զի Ներևս կամ Ներէոս և Դորիս՝ սոքա ևս էին զաւակք Ովկիանոսի, յորոց ծնեալ յաւէրժահարսունք ջուրց՝ կոչին Ներեանք, թուով յիսուն. իսկ ովկիանեանքն՝ երեք հազար։ Բայց երբեմն սոքա և նոքա առհասարակ ներեանք կամ ներէիդք կոչին։ – Երկոքին ոսկեպաճոյճ մորթս զգեցեալք իբրև յաւէրժահարսունք որսորդք։

340. Ասիական, յասիական ծովակէն. տես Ա. 397։

341. Արեթուսա յառաջն 'ի նաժշտաց Անահտայ կամ Արտեմեայ գոլով և որսորդ իբրև զնա, ապա թողեալ զորսորդութիւն՝ փոխեցաւ 'ի նմանէ յաղբիւր. իսկ աստ այժմ ընդ այլսն նստեալ կայ 'ի մանել, որ 'ի հնումն արուեստն էր պանծալի և ձեռագործ ազնուաց անգամ օրիորդաց։

342. Հեփեստեայ կին էր Աստղիկ կամ Ափրոդիտէ, որում որչափ և զգուշացաւ այլն պահել 'ի հոմանւոյ նորա յԱրեայ, անօգուտ եղև. զի ըստ որում բանքնարկենն՝ հուսկ ուրեմն ըմբռնեաց զնա 'ի շնութեան հանդերձ սիրեխաւն յերկաթագործ վարմի ցանցեալ և նշաւակեալ առնէր դից. բայց և այսու ոչինչ այլ շահեցաւ՝ քան զի հրապարակագոյժ արար ինքնին զնախատինս իւր։

344. Զայսպիսի քարուականս կայր պատմէր Կլիմենէ 'ի ժողովի անդ քերցն, զելոյն բնաւ ազգի ազգի շամբշութիւնս անգըսամին յառաջին Քաւսէ անտի, այն ինքն է աներևոյթ անկազմ և անպատրաստ անդունդքըն ոչնչութեան կամ խառնակութեան տիեզերաց, խոր և խաւար, թոխ և բոխ, համապարփակ մթութիւն աշխարհակալ մեգի՝ որ յառաջ քան զլինել եղեւ և 'ի յարգըս և 'ի կերպարանս գալ։ Յորմէ եղեալ և 'ի ցուցակութիւն եկեալ կարծեցին հեթանոսք զաշխարհս, և աստուածացուցեալ զնա ընդ առաջին գիսն՝ հայր աստուածոց ասացին։ Բայց ըստ ճշմարտութեան՝ 'ի սէրս գիցն իմանալի է զայլաբանութիւն պէսպէս սիրական համբուրից և աղապատանաց սկզբնածին տարերց եղեալ, և 'ի նախինի անհամբոյր ընդդիմամարտ բնութենէն 'ի մի միաբանութիւն սիրոյ գալ, և այնպիսեաց շաղաշարութեամբք այլ իմն նորանորս 'ի գոյ ածել բնութիւնս։

Մերստին 'ի մայրենի ունկն անկանէր ողբ Արիստեայ.
Յապակեղէն գահոյիցն յապուշ դարձան ամենեքին,
Այլ դէտակն Արեթուսա քաջ քան զայլ քորս 'ի բաց կալեալ՝
'Ի ծայրից ծփանացն առ ըղձեղձան գըլուխն 'ի վեր.
Ո՛վ, ասէր, ոչ վայրապար ընդոստուցեալք յայնմ հեծութեանց
Կիւրենէ քոյր, քեզ ինքնին ահա քոյին սիրասընունդ
Արիստէոս սըրտառուչ յալիս ծնողին Պենէոսի
Կայ հարեալ յարտասուս և անողորմ ըզքեզ ձայնէ.
Յանկարծակի երկիւղիւ մայրըն խռովեալ 'ի միտս յայնժամ,
Ածն բեր առ մեզ, ասէ, դից նըմա սեամս օրէն կոխել.
Եւ անդէն տայր հրաման շուրջանակի մեկնել ուղխից
Ընդ որ ոտն առեալ 'ի ներքըս պատանեակըն խաղայցէ.
Եւ եկաց խորանաձև զնովաւ յորձանքն 'ի տիպ լերին,
Եւ 'ի ծոց իւր լայնատարր առեալ մատոյց յալուց գետոյն.
Սքանչացեալ ընդ տուն ծնողին, ընդ արքունիս խոնաւական,
Ընդ ծովակս անձաւածիրս և ընդ անտառըն ձայնաւորս
Ընթանայր, և հիացեալ 'ի մեծամեծ ջուրցըն յուզմանց՝
Զամենեսեան նըկատէր գետս յահագին անդունդս երկրի
Յայլ և այլ սահեալ կողմանս, և ըզՓասիս և ըզԳայլ գետ,
Եւ զըստինոս ուստի խորինն Ենիպէոս ցայտեալ բըխէ,
Ուստի հայր Տիբերինոս, ուստի և ուխք Անիենեան,
Ընդ խարակս աղեղագոչըն Հիպանիս, միւսեան Կայիկ,
Եւ ցըլադէմն Երիդանոս կըրկին եղջերբք ոսկեձաձանչ,

358. Օրէն է նմա մտանել 'ի տունս դիւցականս, զի դիւցազն է և ինքն՝ յաստուածոյ և 'ի յաւէրժահարսնէ ծնեալ:

360. Աստանօր ոչ զակամբս եւեթ Պենէոսի նկարագրէ քերթողն, այլ անձաւ իմն անդնդախոր շտեմարան ջուրց, յորմէ ըստ Պլատոնի իբրև 'ի հասարակաց իմն աղբերէ ելանեն գետք ընդ այլ և այլ կողմանս երկրի: Եւ անձաւն այն իբրև արքունիք իմն են, յորում գետք գետոց և յաւէրժահարսունք աղբերաց ունին իւրեանց ապարանս, կամ սենեակս և որսկապանս, յորոց 'ի միումն կայր և Կիւրենէ իւրայովքն:

361. 'Ի բղխել և գնալ ջուրցն՝ առ ոտս գտանեն զալարիս և թփուտս և մացառս, ընդ որս խոխոջեն. և այսու իբրև թէ անտառք իմն իցեն և հնչիցեն կամ ձայնատուր լինիցին:

364. Փասիս գետ 'ի լերանցն Հայոց իջեալ ընդ Կոլքիս կամ ընդ Եգերացիս՝ Թափի 'ի ծով սեաւ. առ որով առատութիւն է փասիան թռչնոց որ 'ի նմանէ զանուանս ունին: — Գայլ գետք բազում են, անուանի է պոնտոսեանն որ 'ի նոյն ծով գնայ: — Ենիպէոս կամ Ենիպեւս է 'ի Թեսաղիա. Տիբերինոս որ և Տիբերիս (տ. 514,) և Անիոն կամ Անիէն՝ յԻտալիա. Հիպանիս 'ի Սարմատիա, որ այժմ Բոգն կոչի. Կայիկոս 'ի Միւսիա. Երիդանոս որ և Պադոս՝ յԻտալիա. որում իբրև ցլու դէմս և եղջիւրս ասէ, զի առ հասարակ գետք գետականք այնպէս նկարէին վասն գոչելոյ ալեացն և յառաջս բաժանելոյ: Իսկ ոսկի ասել զեղջերսն Երիդանոսի՝ կամ վասն քաջաբերութեան անդոցն, զոր և ասէ իսկ, կամ զի ամենայն գլից սեփական է ոսկին:

Նման զոր ոչ այլ ոք ուրեք ընդ հարաւունս արգասաւոր
Հոսէ 'ի ծով ծիրանի յորդահեղեղ գետ յորձանուտ։
Իբրև հաս նա յառագաստն 'ի սունկ քարանց գմբեթայարկ,
Եւ զորդւոյն 'ի միտ էառ զաւելորդ սուգըն Կիւրենէ,
Հարազատք կարգաւ նամէտ կայլակս 'ի ձեռսն արկանեն քորք
Սրբանիւթ դաստառակս ողորկատարրըս մատուցեալ։
Կէսք խորտկօք լընուն սեղանս և պատարուն կանգնեն բաժակս.
Բագինք՝ պանքայեան խընկանըւէր հրով բորբոքին.
Սա, ասէ մայրն, ընկալ զըսկիհ զանապակիդ Մէոնեան,
Նուիրեսցուք Ովկիանու, և ինքն համայն յաղօթըս կայր
Առ Ովկիան հայր էից և քոյրաթիւ յաւէրժհարսունս,
Որ հարիւր անտառաց որ կան հարիւր գետոց 'ի պահ։
Երիցս 'ի հրատ կայծականց ցօղեաց ծորան քաղցրածաւալ,
Երիցս 'ի ծագըս յարկին բոց ծառացեալ փայլատակեաց։
'Ի հմայից աստի խրախոյս տըւեալ սըրտին՝ սկըսաւ ասել.
'Ի կարպաթեան ծոց պըտոյտից Պոսիդոնի այր մի է դիւթ,

370. Ամենայն գոյն կենդանի և պայծառ՝ ծիրանի ասի առ քերթողսն. իսկ ծով կրկին առաւելութեամբ, զի և անուանեալն է ազնուագոյն ծովու ծիրանին։

374. Ընձեռոցս ասուիս, որոց թաւութիւն անկուածոյ երեսացն խուզեալ և հարթեալ, այնու իսկ ողորկ, լերկ և կակուղ են։

376. Պանքայեան. տես Բ. 139։

377. Մէոնեան է լիւդական, լիւդացի. զի Լիւդիա, 'ի հնումն Մէոնիա կոչեցեալ, համբաւաւոր էր այգեօք և գինեօք։

379. Ովկիանոս ոչ միայն հայր էր ամենայն գետոց, և նախահայր Կիւրենեայ, վասն որոյ և զաւակք նորա՝ սմա 'ի քորս համարեալք. այլ և հայր ամենայն էից և դից անգամ։ Զի և ըստ Թալեսի միլեսացւոյ հնագոյն իմաստասիրի բնախօսութեանն՝ ամենայն ինչ 'ի ջրոյ եղեալ աւանդի։ Որում ոչ սատարաձայն ինչ է և մովսիսականն աշխարհագործութեան աւանդութիւն, որ ընդ աներևոյթ և անպատրաստ անդնդոց ոչ այլ ինչ ցուցանակէ, այլ միայն զՋուրս։ Այսոցիկ հուպ մատչի կամ մեկնէ զայսոսիկ և արդեացս բնագիտութիւն, 'ի լոյծ և 'ի հոսանուտ օդակերպ սղոխաց կամ շոգեաց ասել զնախագոյ բնութիւն կամ զառաջին հաստատութիւն էից։

380. Կան 'ի պահ, անդ դարեալ դադարեն իբրև շահապետք նոցին և պահապանք։

381. Ծորան իմա զգինին։ Իսկ երիցս հեղեալ նուէր, զի երրեակ թիւն մեծ էր և խորհրդական և աստուածային առ հեթանոսն, մինչև ասել ամին իսկ Վիրգիլեայ 'ի հովուական տաղսն,

Աստուած իսկ ինքնին երրեակ թըւով է զուարճացեալ։

Յայս վայր հասին միտք մարդկեղէնք, որպէս զի կարօղ եղեն տեսանել, թէ աստուած՝ կամ զօրութիւն և կարողութիւն իւր է անսահման, կամ միտք և բան անբաւ, կամ հոգի և կեանք անհուն. և կամ լոյս էս, որպէս նշմարեցին իսկ ոմանք, երեքեան անշփոթութիւնքդ միանգամայն բովանդակեալ 'ի մի լըութիւն կատարելութեան միոյ միայնոյ բնութեան։

382. Ահա ցոլանալ բոցոյն և ճեղանել զգարանաւանդս կամ զձեղուն յարկին՝ բարենշան համարեալ էր 'ի հմայս։

384. Կարպաթեան կոչի ծովն որ ընդ Կրետէ և Հռոդոս առ Կարպաթ կղզեաւն։ Պոսիդոն կամ Պոսիդոնն էր դիք ծովայնոց, ընդ որոյ գաւազանաւ կային ամենայն ծովք. և ինքն իսկ բազում ուրեք պարզապար փոխանակ ծովու առեալ է։

Կապոյտըն Պրոտէոս՝ այն որ զանդունդս համատարած
Զձկնաձուկն երկոտանի նըհանգս 'ի կառս վարեալ ձևէ :
Յեմաթեան ծովուցն 'ի գոգս 'ի Պալլենէ խուրըն գաւառ
Բայց առնէ նա զարդիս, ըզնա պաշտեմք հաւատովքս յաւէժ
Այլ հինաւուրցն խոկ Աթրեւս, զի է ըմռուեց կէս խելամուտ
Որ ինչ էնն, որ ինչ եղեն, որ առաջի կարգեալ նիւթին :
Նաև այն զի այսպէս Պոսիդոնի հաճոյ թուեցեալ,
Զոր ըզնախխըն ամէհի և զզազիր փոկս հովուէ յանդունդս :
Ըզսա դու նախ 'ի սարիս արկեալ, որդեակ, կաշկանդեսցես,
Որ զախտին պատճառս ողջոյն յայտնեալ ցուցցէ եւս ազգաց :
Զի պատգամ և ոչ մի տացէ երբէք անըմբռնադատ,
Այլ ոչ յաղերս ածիցես. ձեռըն հզօր և պարանօք
Պըրկեալ 'ի նա կալ և կապ, անդ 'ի դերև լուծցին պատիրքն :
Այս ինքն ըզքեզ, մինչ արեւն ըզմիջօրեայ բարձրացէ տապ,
Մինչ դալարիք ծառուէն և հովանի քաղցր է հօտի,
Ի զանխուլս ածից ծերոյն ուր խումբ յաւէտ մեկուսանայ.
Զի զքընով անկեալ դիւրեաւ հասցես դու զամազիս :
Այլ ձեռբակալ արարեալ երբ 'ի կապանս ըմբռնիցես,
Անդ պէսպէս խաղայցեն դէմք և կերպարանք գազանեղէնք.
Զի անդէն 'ի սոսկալի յեղցի վարազ, 'ի վագր 'ի ժանտ,
Ի վիշապ թեփամորթ և 'ի յառիւծ շէկ պարանոց.
Կամ սաստիկ բոցոյ խոշիւն արձակելով 'ի կապանաց
Թափեսցի, կամ չիք 'ի ջուրըն հոսանուտ վիժեալ լիցի :
Այլ որչափ ձև և տեսիլ նա փոխեսցէ ամենազան,
Այնչափ պընդեսջիր դու զուժգնապիրկ տոռունս, որդեակ,
Մինչև յայն դարձցի ընութիւն յորում տեսեր նախ զառաջինն
Մինչ քընոյն անկանելոյ զաչըս խուր դեռ կափուցանէր :
Զայս ասաց և անուշակ անմահութեան սըփռեալ բուրումն

385. Կապոյտ տէր Պրոտէոս կամ Պրոտեւս, զի էր որդի Ովկիանոս և Տեթեայ կամ Պոսիդոնի և Փենիկեայ : Ըստ Հոմերոսի՝ եգիպտացի էր. իսկ Վիրգիլիոս զաւառս հայրենի տայ նմա զՊալլենէ ցամաք կղզին Եմաթիոյ կամ Մակեդոնիոյ : Սա էր զնա և հովիւ հօտին Պոսիդոնի, որ են նըհանգք ծովու առ հասարակ, ընդ որս առանձինն և փոկք՝ որթք ծովայինք. և այր մարգարէ, և զօրութիւն ունել փոխելոյ 'ի բիւր ազգի ազգի կերպարանս, և մինչև կապեալ՝ չյուշակել ինչ ումեք : Զի կարծեն թէ այլ յայլմէ եղեալ և աստուածարեալ և բանդագուշեալ՝ վարէր մոլեգնէր և տատանէր զնա հոգի կամ աւիւն մարգարէութեան, որպէս և զհարցուկն Պիթիա և զՍիբիլլեայն :

389. Զհներեւս տեսցես 'ի 338 :

412. Այս անմահական անուշահոտութիւն սեփական էր ամենայն գեց և դիցուհեաց՝ նշանակ աստուածութեան :

Ըզգօրոր զորդեկին շուրջ բաւկ արկեալ զիւրանօքն օծ ։
Իսկ նորա յաստուածարեալ վարսից բուրեաց սիք քաղցրաշունչ ,
Եւ ընդ անդամսն արութիւն յաջողուածոյ ծաւալեցաւ ։
'Ի փապ լերին խորափոր' է քարանձաւ մի մեծանիստ
Ուր ալեաց դէզք հողմավար վէտ վէտ 'ի խորշըս փեռեկին ,
Ապաստանաւոր նաւորդաց երբեմն ամուր ապաւինի .
'Ի ներքս անդ թաքչի Պրոտեւս' վէմ անհեդեդ նըզեալ առ դրուրս ։
Աստ յաւէրժհարսն 'ի դարան զհամբաւին եդեալ զերծ 'ի լուսոյն ,
Ինքըն կայր 'ի բացէ պատեալ զիւրեւ ամպ քօղանիդ ։
Հրաշունչ Շընիկն ըզՀընդիկսըն ծարաւուտ տոչորելով
Առնէր յերկինս , 'ի միջակ գընդին ժաման կայր բոց արփին .
Բոյսք խըռուեալք , և զխորաձոր վըտակսն մինչ 'ի յատակս
Ճառագայթք տապացուցեալ փաղաղէին երաշտահար .
Եւ ահա յըստել քարայրն յալեաց դիմեալ գայր Պրոտէոս ,
Խոնաւուտ ազգ ըզնովաւ ծայրածաւալ ծովուն մեծի
Խաղալով ըզցօղն աղի շուրջանակի ցընդեալ ցանէր ։
Փոկք յայս կոյս և յայն 'ի նիրհ անկեալ յափին անդ գայռայլին .
Ինքն որպէս փարախապետ տեսուչ հօտից երբեմն 'ի սարս ,
Յարօտէ մինչդեռ զընջուղս ածէ 'ի տուն Գիշերավարն
Եւ 'ի հընչիւն բառաչմանց սըրեն գառինք զգայլոց վոհմակ ,
'Ի միջին բազմեալ 'ի վէմ ունի զնոցա թիւ համարոյ ։
Եւ զի շնորհեալ Արիստեայ իշխանութիւն էր ըզնովաւ ,
Ծերունւոյն հազիւ ներեալ ըզխոնջ անդամսն 'ի նինջ դընել ,
Յարձակեալ ուժգին գոչմամբ զանկեալն աղխէր 'ի ձեռակապս ։
Նայն ածեալ նորա յուշ զարուեստըն իւր մեծաքէնաւոր ,
Յամենայն հրաշըս տարերց ըզկերպարանսըն փոփոխէր ,
'Ի հուր և 'ի գազան զարհաւրագին և յուխ գետուն ։
Իսկ ապա իբրև ոչ մի գըտին պատրանք ելս 'ի փախուստ ,
Պարտեալ յանձըն դառնայր և մարդկօրէն խօսէր ձայնիւ .
Եւ ո՞վ ետ քեզ զայդ օձան , ո՛վ պարմանեաց յանդըգնագոյն ,
Համանել 'ի յարկըս մեր , և զի՞նչ աստուստ , ասէ , խընդրես ։

418 . Իմա կամ 'ի մէջ ընդարձակ և ահա_գին անձաւին , կամ առաջի նորա ուր խա_ղաղական էր ծովն ։

422 . Շնիկն՝ աստղ տօթաբեր տապա_խառն աւուրց խորին ամարայնոյ ։ Հնդիկս իմա զեթովպացիս կամ զամենայն բնակիչս տապայրեաց աշխարհացն արեւելից և հարա_ւոյ ։

427 . Այդ փոկաց որոց հովուէրն ։

Իսկ նորա, Պիտեւս Պրոտեւս, ինքնին գիտես, չիք քեզ խաբկանք.
Այլ դու կաց 'ի կամելոյդ, դից հրամանօք եկաք այսրէն
Խնդրել պատգամ յոնչից տուգանս. այսչափ և եթ բարբառեալ:
Ոչ այս՝ կիւասհրմայն այնուհետեւ 'ի մեծ տագնապ,
Ո՛չ հրաշալի աչքն շրջեալ յականողին իւր 'ի ծաւիս,
Սաստիկ կըրձրտմամբ երաց բերան բախտիցն 'ի բաշխս:
Ո՛չ պաքէն դից իմն, ասէ, զքեզ հալածեն ցասման վըրէժք,
Մեծամեծ տաս դատաստանս. եթէ չկալցին հրամանքն ըզդէմ,
Պատուհաս զայդ ածէ քեզ՝ հէքն Որփէոս անպարտակիր,
Փոխանակ առեանգին իւր ամուսնոյն մոլեալ դըժնեայ:
Այր 'ի քէն մինչ փախուցեալ սուրայր ընդ գետըս դարահոս,
Զանարի վիշապ առ ոտըն դարանեալ առ դարափամբ
Զետես 'ի բոյս Թաւամուր՝ կոյս մօտալուտ 'ի մահ նուիրեալ:
Սակայն պարք հասակակից անտառամանունդ յաւէրժհարսանց
Զայն առին բարձր 'ի լերինս, կական բարձին սարք ռոդոպեան
Եւ բարձունք պանգէականք և արիսեան Ոսեսեայ երկիր
Եւ գետացիք և Հեբրոս ուակտիականն Ովրիթիա:

444. Ոչ խաբիս, և ոչ ծածկի ինչ 'ի քէն պատրանօք: Այլ դու դադարեա 'ի կամելոյ այդր փոփոխել 'ի պատիր կերպարանս և խաբել զիս:

446. Վասն մեծասաստ կորստեան ընչիցս, մեղուացս:

449. Ոչ առ սրտմտութեան, այլ 'ի հոգւոյ մարգարէութեան կոկոզացեալ: Եւ բանայ զբերան առ 'ի գուշակ տալ և բարբառել զբաշխս բախտիցն:

451. Այսինքն մնասցես 'ի պատուհասից, եթէ ոչ բաղդ քո և ճակատագիր ընդդէմ կացեալ ցուցանիցեն քեզ հնարս քաւելոյ զմեղսդ և զերծանելոյ 'ի պատուհասէդ:

452. Ոչ Որփէոս կենդանի, այլ ուրուն նորա, ստուերն ուրուական կամ հոգին Որփէի մեռելոյ: Եւ էր Որփէոս կամ Որփեւս Թրակացի, որդի Ապողոնի և Կալիոպէ Մուսայի, կամ ըստ այլոց՝ Իագրեայ արքայի կամ գետոյ Թրակիոյ և Պոլիմնիա Մուսայի. այր մարգարէ և բանաստեղծ և երաժիշտ անուանի ընդ աշխարհս, ժամանակակից Մովսիսի մարգարէին:

453. Փոխանակ զի առեանգել կամեցար դու երբեմն զկին նորա Եւրիդիկէ. որոյ 'ի փախչելն 'ի քէն ընդ գետեզերս Պենէոսի կամ Հեբրոսի՝ օձահար եղեալ յոտիցն մեռաւ:

458. Ռոդոպէ, Պանգէոս լերինք են Թրակիոյ, որ և արիական երկիր ասի, զի անդ ծնաւ Արէս, և նմա նուիրական էր երկիրն: Իսկ Ոեսեայ ևս ասի երկիր, զի աստ ուրեմն առ տրովական մարտիւն Ոեսոս կամ Հռեսոս ոմն անուանի թագաւոր եկաց անդ:

460. Գետացիք ազգ Թրակիոյ կամ Սկիւթիոյ էին, որպէս ասացեալ եմք կանխաւ: Հեբրոս գետ Թրակիոյ՝ որ այժմ կոչի Մարիցա կամ Մէրիճ 'ի Ռոդոպէ լերանց խաղացեալ: Ովրիթիա դուստր Երեքթեայ արքայի Աթենացւոց, 'ի Բորեասայ կամ Վոռէասայ և կամ ըստ առասպելին 'ի Հիւսիսոյ հափափեալ և յափշտակեալ 'ի Թրակիա. զոր իբրև յաւէրժահարսն այնր աշխարհի յիշատակէ, յորջորջեալ զնա ակտիական, այսինքն է ատտիկեցի. զի հինք Ակտի կամ Ակտէ կոչէին զԱտտիկէ, որ է ասել ծովեզր. և անտի ապա մեղմով իմն և քաղցրացուցանելով ածանցեալ է Ատտիկէ. Այլք ասեն յԱկտիս գաւառէ Կրանաւոսի աթենացւոց կոչեցեալ:

Զեղընգունս և ըզգիրգ հերս 'ի պըղընձին ճըշգըրտեսցէ,
'Ի կատար գործոյն յետնեալ՝ թէ չգիտիցէ զբոլորն ածել։
Այսպիսի լինել զիս՝ թէ յօրինել ինչ հնարիցիմ,
Ոչ կամիմ, որպէս և ոչ կեալ անհեդեդ տըձև քըթաւ,
Սևաթոյր թէ և աչօք և թուխ գիսօք երևելի։

Առէք, բանահիւսք, ուժոյ ձերում նիւթ 'ի կըշիռ,
Քըննելով 'ի ձիգ իմ ուսքդ իցեն բերող՝ իմ հեստ ըմբոստ։
Ում ըստ կարի իւր 'ի դէպ՝ իրն ընտրեսցի ուշի ուշով,
Ոչ բանից յորդ աղբիւր՝ ոչ կարգ յըստակ պակասեսցէ։
Կարգին, եթէ չխաբիմ, այս ընտրութիւն է և շնորհ,
Զի զոր աստ, այժմ է ասել՝ այժմ ասասցէ զայն աստանօր,
Բազում ինչ յամեցուցեալ՝ յառաջիկայն թողցէ պատեհ.
Զայս սիրեալ՝ զայն հերքեսցէ աւետաւոր տաղից քերթող։

Նա'ւանիկ 'ի նորատունկ բառից անգամ ուշիդ և ըզգոյշ,
Ընտրականըս խօսեսցիս՝ թէ խորագէտ յեռեալ յօդուած
Ըզծանօթ ձայնին բարբառ 'ի նորալուրըս փոխեսցէ։
Իսկ թէ նոր նըշանակօք թաքունս ինչ հարկ յայտնել լիցի,

ծոյն վերջացեալ գտանիցի։ 'Ի յօրինելս ինչ՝ չկամիմ լինել իբրև զայն արուեստաւոր․ որպէս և ոչ, թէ և այլով մասամբք մարմնոյ գեղեցիկ իցեմ, կամիմ ունել քիթ անճոռնի և այլանդակ․ զի թէպէտ և փոքր ինչ մասն ևեթ է մարմնոյ, սակայն տգեղութիւն է։ Այս է, յիրս ինչ գովելի լինել և յիրս ինչ պարսաւելի ոչ կամիմ։

39․ Ահա և աստ ոչ առ բանաստեղծս միայն խօսի Որատ, այլ և առ ամենայն մատենագիրս․ և պատուիրէ 'ի ձեռս առնուլ նիւթ համեմատ ուժոյ իւրեանց, քննելով յերկար՝ զինչ կարող իցեն բառնալ ուսք իւրեանց, և զինչ չառնուցուն յանձն և զընկենուցուն։

44․ Քերթողական կարգաւորութիւն մասանց ոչ բնականին և պատմականին հետևի կարգի, այլ լաւագոյն իմն արուեստաւ ինքն քերթողն հնարի իւր կարգ՝ զօրութեան բանին և յուշ նպատակին յաւէտ յանկաւոր․ որ է ոչ լոկ բնականին՝ այլ գեղեցիկ բնութեան նմանողութիւն, և խառնել զպիտանին ընդ անոյշ 'ի հրահանգել և 'ի զուարճացուցանել միանգամայն։

46․ Ընտրութիւն արասցէ կարգելի իրայն բանաստեղծ՝ որ խոստանայ կամ յառաջ ակնկալութեամբ աւետաւորէ մեծ ինչ և նշանաւոր քերթուած։ Զի 'ի մանր ինչ ատաղս չիք այնչափ ընտրութեան անգի կամ այնր դժուարութիւն։

47․ Զգուշացուցանէ 'ի նորահնար բառից զամենայն բանարար․ և ընտիր եւս է, ասէ, այնպէս խօսել, զի ճարտարութեամբ հիւսեալ և առ իրեարս պատշաճեալ բառք՝ սովորական և յայտնի բառին նոր իմն առումն և իմաստ տացեն, քան թէ նորս ստեղծանել։ Ոմանք ըստ փոքր մի երկխօսութեան բնագրին իմանան թէ ճարտար յաւելուածն ծանօթ գործեսցէ զնորահնար բառն։ Բայց ոչ կիրթ թուի այդ անընդմիջաբար զկնի զգուշացուցանելոյն․ որ զի և չև է ասացեալ զհրաման նոր բառս ստեղծանելոյ, և զկնի յարէ՝ թէ սակայն եթէ հարկ լինիցի հանճարել ինչ այնպիսի վասն նորագիւտ իրաց, օրէն է և զայն առնել։ Զգոյն ուսուցանէ և Արիստոտէլ 'ի քերթողականին իւրում։

Անլուրս համգուշն համբուրիճելոց ըստեղծանել Կեթեգեանց
Իցէ դէպ, և տացի չափով առեալ ազատութիւն.
Այլ նորք և դերածինք վաւերական լինիցին բառք,
'Ի հելլէն թէ յաղբերէ դոյզն 'ի խոտոր անկանիցին.
Զի՞նչ իցէ զոր Պլաւտոսի և Կեկիլեայ շնորհէ Հռոմն
Այլ արգել կարձեաց երբեք 'ի Վիրգիլէ և 'ի Վարեայ.
Սակաւուց ինչ թէ 'ի գիւտ է ինձ լինել՝ էր յաչաղիմ,
Ուր Կատոնի և Էննեայ լեզուն ըղխօսածն հայրենի
Ճոխացոյց և նորանոր անուանս իրաց մածոյց 'ի մէջ.
Էր օրէն և միշտ լիցի ձայն նորաթեւք բերել 'ի լոյս.
Որպէս մայրեաց փոփոխին տերևք ընդ ամըս գլորանաւ,
Հինք թափին, այսպէս բառից անցեալ զընայ զառամ հասակ,
Այլ զօրէն պատանեկաց ծաղկեն առոյգ արդի ծընեալք.
Պարտեալ կամք 'ի մահ՝ մեք և մերքս ինչ 'ի միասին.
Թէ առեալ ծովն 'ի ցամաք առ 'ի նաւաց պահէ զհիւսիս,
Գործ արքունի, և յերկար ամուլ ճահիճ թիոց 'ի դէպ

51 · Առ այնպիսի հարկի 'ի դէպ իցէ ստեղծանել նոր ձայնս անլուրս Կեթեգեանց վաղնջական ազգատոհմի, որ առանձինն իմն զօտեածս ասին ունել և համբուրիճանձև պատմուճան: Խմս բառս անծանօթս նախնի հռովմայեցւոց: Եւ այսպիսի բառք առաւել ընդունելի լինիցին, եթէ 'ի յոյն լեզուէ առցին՝ փոքր մի խոտորելով և յարմարելով յատկութեան և օրինաց հռովմէական բարբառոյ: Զի յոյն լեզու գրեթէ հասարակաց ծանօթ էր հռովմայեցւոց, մանաւանդ գիտնոց, և ընտանի լատին բարբառոյ և ազգախառնեալ 'ի նա: Այսու ուսուցանէ Որատիոս և այլոց լեզուաց թէ զինչ արժան իցէ առնել յայնպիսի պէտս կարեաց:

53 · Ընդէր իցէ հռովմայեցւոյն շնորհել Կեկիլիոսի և Պլաւտոսի հին քերթողաց զազատութիւն ստեղծանելոյ նոր բառս 'ի նոր պէտս, և զլանալ առայս զոյն այժմուցս Վիրգիլեայ և Վարիոսի: Եթէ կարեմ և ես սակաւ ինչ նոր ստացուած գտանել, ընդէր նախանձու բամբասիմ, մինչդեռ նախնիքն՝ Կատոն և Էննիոս քերթող՝ կարացին նորանոր բառիւք ճոխացուցանել զլեզուն հայրենի: Այսպէս որպէս յայնժամ, նոյն և այժմ միշտ օրէն է նորահնար բառս ստեղծանել առ հարկի իրացն:

62 · Թող զայդ, նոյն իսկ առօրական և ծանօթ բառք յետ երկայն ժամանակաց փոփոխին. առաջինքն հնանան և խափանին և այլք 'ի տեղին յաջորդեն. և լինի այս յամենայն կենդանի լեզուս:

63 · Զաւեռնեան լիճն խմանայ, զոր խառնեալ ընդ Լուկրինեան նաւահանգըստին և ընդ ծովուն և ամբարտակաւ ամրացուցեալ՝ նաւահանգիստ մեծ կազմեաց Օգոստոս կայսր, և նմին իրի գործ արքունի կոչէ: — Ամուլ ճահիճն էր ընձակ մի նաւարկելի երբեմն, պնդեալն կամ պտմտակեան տասցեալ. որում լիր արկեալ դաշտացոյց Կեթեգոս ումն անուն, և այնուհետև արօրադիր եղեալ տայր արդիւնս: — Իսկ գետ ձկանակար երբեմն անդատաստանաց էր Տիբերիս, որոյ յառաջն ընդ այլ ձորաբոր անցեալ ողողանէր և աւերէր դաշտս. և առաջ Օգոստեայ հրամանաւ փոխեցաւ յայլ յատակ՝ ընդ որ անվնաս անցանիցէ, յորում և կայ մնայ մինչև ցայսօր: Այսպիսի հաստատուն և յաւիտենական իսկ կարծեալ գործք մարդկան յաւուր միում կործանելոց են, թող թէ փոփոխական յողդողդուն և թեթև ընդ օդս ցնդելի բարբառքս, որ ըստ պէտս պէտս անկանելոց են և յառնելոց:

Կրթելով ըղձանք արօր ըղձօտաւոր կերակրէ շէնս,
Նաւագոյն ուսեալ շաւիղ, թէ գետ զընթացըս իւր փոխեաց
Օրարոցն եղեռնաւոր, կորիցեն գործք մահկանացուք,
Ող թէ պատիւ բարբառոց և շնորհ կացցէ յաստիս յուժի:
Որ անկեալքն են շատք անդրէն կենդանասցին, և շատք անկցին
Որ արդ կան 'ի պատուի բառք, թէ այնպէս ինչ հաճեսցին նկէտք,
Առ որում են դատաստան՝ օրէնք խօսից և իրաւունք:

Արքայից զօրավարաց գործք քաջութեան և մարտք ահեղք
Թէ որով չափովք ոտից երգեն 'ի վէպ՝ եցոյց Հոմեր:
Ի տաղից անհաւասար զուգելոց նախ եղերք երգոց
Եւ ապա բերկրապատար սըրտից իմաստք պարագրեցան:
Իսկ ո՛ հայր և առաջնորդ եղերերգուաց մըրմունջ ձայնից,

74. Թէ որով ոտիւք տաղից գրելի իցէ դիւցազնական վիպասանութիւնն, յորում վիպել առնու քերթողն զգործս քաջութեան և զահեղ մարտս դիւցազին ուրուք, եցոյց Հոմերոս՝ անզուգական և գրեթէ միայն կատարեալ դիւցազներգակ որ զգրեաց զԻլիականն և զՈդիսականն քերթածս իւր վեցոտանի չափովքն հելլենացւոց: Զնոյն արարին և այլք որ զկնի նորին եկին քերթողք, ոչ միայն հելլէնք, այլ և հռովմայեցիք, որ յամենայնի նմանողք գտան Յունաց. զոր օրինակ Վիրգիլիոս յիւրում Էնէականին, որ միայն արժանի է 'ի նախնիս զկնի Հոմերի թուելոյ: Այսու յայտ առնէ Որատիոս, թէ դիւցազնական քերթածն մեծագոյն և վեհ չափովք է գրելի, զոր և ընկալեալ իսկ ամենայն լեզուք, որպէս և բնութիւնն ինքնին ուսուցանէ: 'Ի մերոցս պատշաճագոյն թուի 'ի վիպասանութիւն ազատօրէն քառանդամն նախնեաց 'ի քառավանկ աւարտեալ անյանգ վերջիւք, զորմէ լիով խօսեալ եմք 'ի յառաջաբանի Մշակականայն Վիրգիլեայ: Եթէ և զձայնայանգ յաւելուլ դէ յայն կամիցի, ոչինչ հակառակիմք որոց սիրեն զգեղեցկութեան կապանսն, միայն զի թէ հնար ինչ իցէ՝ ըստ արժանի յանգք իցեն ընդունելոյ բառից իմաստիցն, և ոչ աղայական նմանաձայնութիւնք կամ օտարոտի բանաղբօսութիւնք: — Սովին մեծագոյն չափովք դրեցին հելլէնք և հռոմք և զվարդապետական քերթուածս, որպէս զՄշակականն Վիրգիլեայ և զքերթողականն Որատեայ. և զամենայն քերթած փոքր մի ընդարձակագոյն: Իսկ 'ի մանունց՝ զհովուերգութիւնս, յորում դերբայաղանց քան զամենեսին է Թէոկրիտոս յոյն և հետևող նմին Վիրգիլիոս:

76. Եղերերգական տաղն, որով նախ զաշխարանաց իրս երգեցին և ապա զուրախականս ևս, առ Յոյնս և հռովմայեցիս 'ի տունս տունս բովանդակի երկատողս, որոց առաջինն է վեցոտանի, երկրորդն հնգոտանի. այս է ասելն՝ անհաւասար զուգեալ տաղս: Յեղերերգակ քերթողս որ կան 'ի նախնեաց՝ գերազանց քան զամենայն է Տիբուլլոս հռովմայեցի, զի հելլենականքն չեն 'ի միջի: Առ այս տաղս և առ այսպիսիս ազատ են մերքն 'ի կիր առնուլ զոր և է պարզ և խառն ազգս չափոց: Իսկ ձայնայանգք աւելորդ արուեստականութիւն թուին 'ի տաղս արտմալից և ողբանուագարաց. Սակայն ընտրեսցէ դք որպէս և առ խորժէ 'ի համառօտ քերթածոց:

78. Եղերերգուաց մրմունջ ձայնիս՝ զնոյն նախատացեալ եղերերգութենէն առէ, որոյ ոտից գտօղն կամ հանդիսացուցիչ չէ յայտ հաւաստեաւ, որպէս դիւցազնականին Հոմերոս, թէպէտ և ոմանք զՄիմներմոս կոլոփոնացի ասեն լինել: Եւ մեզ կամ մանր ևնուր՝ առէ զեղերերգութիւնն վասն անաստութեան իմաստիցն և կարճութեան բոլոր տաղիցն, և վասն երկրորդ տողիցն կարճութեան, որ որպէս ասացաք՝ չեն վեցոտանիք իբրև զառաջինն, այլ հնգոտանիք:

Մաքառին քերականք, և տակաւին վէճն 'ի դատ կայ։
'Ի յիւրն 'ի մեծավերջ զՄաքեդոնս զինեաց զայրոյթ.
Զնոյն ոտն ընկալան կատակերգակք և ողբերգակք,
Որ 'ի դէպ զրուցատրութեան և յարմարուած իրաց ծննեալ,
Եւ յաղթական շռշռնջմանց բազմաժողով հրապարակին։
'Ի քնար է 'ի տաւիղ ետ Մուսա զդիս և զդիւցազունս
Եւ զյաղթօղ բռնամարտիկն և զերիվար զուպարայաղթ
Եւ ըղձութըս պատանեաց և զհամարձակ նուագել զգինիս։

Զպայմանեալ յեղանակս և զքերթածաց պահել զերանգս
Թէ չկարեմ կամ թէ չգիտեմ՝ ընդէ՞ր քերթող ես ողջունիմ.
Զի՞մ ընտրեմ թիւր ամօթով անգիտանալ քան ուսանել։
Կատակաց իրք չառնուն յանձն ոգել տաղիւք ողբերգական.

80. Մեծավերջ ոտն է երկավանկ, առաջինն սուղ՝ երկրորդն երկար. զոր հնարեցաւ, ասեն, Արքիլոքոս հնաւուրց քերթող, և նովին գրեաց զերգիծաբանութիւնս իւր առ զայրացմանն ընդդէմ կնոջ իւրոյ և աներոյն Լիկամբեայ։ Բայց կէսք առաւել հաւանեցուցանեն զիւրն ոչ վասն հնարելոյն խմանալ, այլ վասն յինքն անփականելոյն զայն ոտն և յաճախ և քաջ 'ի կիր արկանելոյն, որպէս Հոմեր զվեցոտանին. զի ասեն թէ կային մեծավերջական չափքն և յառաջ քան զԱրքիլոքեայ բարկութիւնն։ Զնոյն ոտն ընկալան և ողբերգակք և կատակերգակք, իբրև յարմար 'ի խօսակցութիւնս թատերաց և 'ի գործողութիւն, և ուժգնութեամբ ձայնին բաւական 'ի յաղթել շչնջմանց բազմութեան ժողովելոցն 'ի տեսիլ խաղուցն։ Իսկ թէ այս որպէս, դժուարաթարգմանելի է մեզ այժմ։ 'Ի մեզ պատեհագոյն թուի 'ի թատըր և նմանագոյն աչխուժից մեծավերջին՝ ազատորէն քառանդամն նախնեաց եռավանկ տասնեւ վերջիւք, զորմէ ասինարկեալ եմք 'ի ծանօթութեան (7) յառաջաբանի Մշակականաց Վիրգիլեայ. թէ ախորժէ ոք՝ յաւելցէ և 'ի սոյն զձայնայանգս. թէպէտ և ոչ յոյժ 'ի դէպ ինչ թուի մեզ այդ 'ի բնական զրուցատրութիւն կոչ թատերաց, մանաւանդ կատակերգութեան։

84. Քնարական քերթութեան նիւթ ետ երգոց Մուսա աստուածուհի տաղից՝ զգովեստս դից, դիւցազանց, բռնամարտկաց և երիվարաց յաղթողաց յասպարէս մրցանաց. որպիսի են տաղք Պինդարոսի և ոմանք Որատեայ՝ գերագոյն քնարերգակաց. և զսէր տարփից պատանեաց և զուրախութեան և զազատադէմ զիներբուս. և զայլ ևս այսպիսի մանր նիւթս զուարճալիս և սիրականս. որպէս են, օրինակ իմն, տաղք Անակրէոնի և Կատուլլոսի և ոմանք Որատեայ, որ և երկքեան իսկ անզուգականք են յայսմ կարգի։ Քնարական քերթութեան ոտք և չափք զանազան են առ Յոյնս և Հռոմէացիս և առ ամենայն ազինս. այլ և խառն իսկ վարին 'ի սոյնս տունս։ Նոյն ազատութիւն է և առ մեզ, որում և օրինակք բազում են 'ի նախնեաց և յարդեաց՝ անյանգ և յանգիւ. որ յայս ազգ քերթութեան առաւել 'ի դէպ թուի։

87. Վասն զի պայմանաւոր եղանակք և իբրև նկարուց երանգք են և կերպարանք իւրաքանչիւր ազգի քերթածաց, և անձնիւր իրաց յազգի անդ, և միոյ միոյ մասանց իրաց, և բնաւ իսկ ամենայն իմաստից և ասացուածոց ըստ տեղեաց անձանց և ըստ դիմաց խօսելեաց. որում պարտ միտ դնել քերթողին և ըստ այնմ յարմարել զազգ ոտանաւորին և զօրինակ ոճոյն և զհանդամանս. ապա թէ ոչ՝ չէ արժանի անուան քերթողի։

90. Զառնուն յանձն, թէ ըստ փոքր մի զանազանութեան ոտիցն, և թէ ըստ վսեմական ոճոյն։ Զի թէպէտ և կատակերգութիւն և ողբերգութիւն մեծավերջիւք չափին, որպէս ասաց յառաջն, սակայն գոյր խտիր. զի էր ինչ ոտն՝ որով ա-

Սոսկական և արժանի կատակերգակ ոտից նուագօք
Ըզչարին թէ վիպեսցին Թիեստական կոչնոց ընթրիք։
Պահեսցեն իւրաքանչիւր ըզվիճակեալ կարգ վայելուչ.
Բայց սակայն ամբառնայ և կատակերգ երբեմն ըզձայն
Եւ ուռուցիկ բերանով կագի Քրեմէս ծանրացասումն,
Եւ հետևակ մինչէ բանիւ բազում անգամ ողբերգակ։
Պելէոս և Տելեփոս վտարանդիքն և տառապեալ
Մերժեն երկոքեան ըզփուք և զբառըս կանգնաւորս,
Թէ փոյթ վայելքն առնիցեն շարժել ըզսիրտ լըսարանին։

Քերթածաց չէ բաւական գեղեցկութիւն, լիցին քաղցունք,
Եւ զոգի ունկընդրին յո և կամին առեալ ածցեն։
Զերդ խնդամն ընդ խնդացող՝ նոյն ընդ լացող լան դէմք մարդկան.
Արտօսր յինէն թէ խնդրես՝ նախ քեզ վայել է սուգ ունել.
Յայնժամ քոյդ աղէտք հարցեն զիս Պելէեւս դու կամ Տելեփէ.
Զանկարգ անճահ թէ խօսիս՝ ծիծաղեցայց կամ նիրհեցից։
Թաղծադիմին դէպ են տըխուր, սըրտմըտելոյ՝ սպառնալից ձայնք,
Խայտացելում՝ ցընծալի, ծանրաբանին՝ լուրջ և ըզգօն։
Զի բնութիւն նախ ընդուստ առ ամենայն բախտի պայման

ռաւել վարէր ազատօրէն կատակերգակն 'ի մեծամեծերջակաւն չափս իւր քան զողբերգակն. և զի 'ի նմին չափման իսկ հանգամանքք դարձուածոյ ոճոյն զանազանէին։

92. Թիեստէս էր եղբայր Ատրէոսի. և անկեալ ընդ կնոջ նորա Երոպեայ՝ ծընաւ երկուս կամ երիս որդիս, զորս առքէն վրիժուցն սպանեալ Ատրէոսի՝ ետ 'ի կերակուր Թիեստեայ, և զարիւն նոցա խառնեալ ընդ գինիս՝ ետ ըմպել նմա. յորմէ սոսկացեալ, ասեն, արեգական յայնպիսի վրիժագործութենէ՝ դարձաւ յետս, զի մի տեսցէ զեղեռնն։ Արդ, օրինակ իմն, այս նիւթ ողբերգականն ոչ ներէ՝ թէ կատակերգակ ընդելական ոտիւք և ոճով ճառեսցի։

94. Սակայն է ուրեք՝ զի և կատակերգութիւնն բարձր և վսեմ ոճով խօսի ըստ տեղւոյն. որպէս Քրեմէս կարի սըրտմտեալ առ Տերենտիոսի լաւին կատակերգակի։ Եւ ողբերգակն երբեմն միջակ և ընդելական խօսի ոճով. օրինակ իմն, Պելէոս յաքսորս և Տելեփոս աղքատացեալ՝ զմեծամեծ և զուռուցիկ բառս մերժեն, եթէ ողբովքն կամին շարժել զսիրտ ունկնդրաց։ Պելեւս կամ Պելէոս Էակեայ որդին և հայր Աքիլլեայ՝ սպանեալ զեղբայրն զՓոկոս, արտաքսմամբ եղեալ էր 'ի հայրենի աշխարհէն յԵգինեայ, և 'ի Թեսալիա ինքնահալած շրջէր։ Տելեփոս որդին Հերակլի արքայ միւսացւոց՝ վիրաւորեալ յԱքիլլեայ, և 'ի պատգամաց լուեալ թէ չիք այլ դարման վիրացն, բայց եթէ նովին տիգաւն Աքիլլեայ շփեսցի, յաղքատիկ և յաղաչաւոր կերպարանս մատեաւ առ Աքիլլէս 'ի բանակն խնդրել բժշկութիւն։

100. Ցայս վայր ասացեալքն 'ի գեղեցկութիւն քերթածոց հայէին, այլ չէ շատ՝ գեղեցիկ միայն լինել վայելուչ կարգմամբ և յօրինուածով. լիցին և քաղցր, այսինքն շարժողական, հոգեշարժ, սրտահաճոյ, բարբացուցական, գորովական և խանդաղատելի, որ զսիրտ և զոգիս լսողին շարժիցեն յոր կիրս և կամիցին՝ թէ 'ի յօրինուածի անդ քերթածին, և թէ յարտասանութեանն 'ի թատեր, որպէս և բացայայտէ զկնի։

Զեփիւռեալ ըղձեղ բերկրէ, կամ թէ դըրդէ 'ի բարկութիւն,
Կամ յերկիր ծանրաթախիծ սըգով հակէ տառապագին,
Նա լեզուին թարգմանաւ ըղկիրս հոգւոյն բերէ 'ի դուրս։
Այթէ բանք խօսողին չիցեն բախտին իւր համեմատ,
Սեպուհք հռովմայեցիք և ամենըքոլք բարձցեն քըրքիջ։
Խըտիր մեծ է թէ ստրուկ և թէ դիւցազն ոք խօսիցի,
Ծեր հասուն, թէ ծաղկափթիթ տիօք աշխոյժ երիտասարդ,
Այլ տիկին տիրուհի, եթէ դայեակ ոք ժըրագլուխ,
Վաճառ պանդխտական, թէ բուսաբեր անդոյ մըշակ,
Կոլքի, եգերացի, յԱրգոս սընեալ թէ 'ի Թեբէ։

Կամ հանբաւոյն հետեւեա կամ թէ պատեհս յօղեա, քերթող.
Եթ Աքիլլէսըն փառացի եթէ յատեան երբէք հանես,
Անվեհեր, բարկասիրտ և ամեհի և անողոք՝
Ասէ օրէնս իւր գիտիցէ, յոյս զամենայն դիցէ յիւր զէն։
Մեդէ լիցի անողորմ և անընկճելի, Ինով ողբարկ,
Անգաւոր Իքսիոն, Իով թափառոտ, տըրտում Որեստ։
Թէ անփորձ և անսովոր ինչ ընծայես 'ի տեսարան,

118. Եգերացին է կոլքեցի, որպէս յայտ է։ Արգոս էր գաւառ և քաղաք Պելոպոնեսոյ. Թեբէ մայրաքաղաք Բէովտիոյ։ Թէ և 'ի նմին ազգէ իցեն խօսեցիքն, որպէս հելլենացի, սակայն և այն եւս խտրելի է՝ թէ յորմէ գաւառէ կամ քաղաքէ. զի ըստ այնմ եւս փոփոխումն բարուց և ոճոյ երեւի։

119. Եթէ յաւանդութենէ հին վիպասանից առեալ ինչ է զոր քերթեսն, կամ ընկալեալ հանբաւոյն հետեւեսցիր, կամ յարմարականս ինչ իրին առեղծցիր։ 'Ի հանբաւոյ աւանդութեան օրինակ տայ զհետագայ անուանսդ։ — Աքիլլէս յայտնի է 'ի հոմերական քերթածոցն, ըստ որում համառօտէ իսկ աստ զնկարագիրն։ — Մեդէ կամ Մեդիա էր կին Յասոնի առաջնորդին Արգոնաւորդաց, որ 'ի փախչելն 'ի հօրէն սպան զԱպսիրտոս զեղբայր իւր կրտսեր, և ապա յարհամարհելն 'ի Յասոնէ՝ սպան առաջի նորա զամենայն որդիսն իւր։ — Ինով էր դուստր Կադմեայ, որոյ փախուցեալ 'ի ժանտութենէ առնն իւրոյ Աթամանտեայ արքայի Թեբայեցւոց՝ առ ցասմանն արկ զինքն և զորդին իւր Մելիկերտ 'ի ծով, և փոխեցաւ ինքն 'ի Լեւկոթէէ կամ Մատուտա աստուածուհի, և որդին 'ի Պալեմոն դիք ծովու, որ և Պորտումնոս կամ Պորտունոս ասի։ — Իքսիոն էր արքայ Թեսաղիոյ, որ ներգաւ ընկեց զԴեիոն զաներ իւր 'ի գուբ հրեղէն և կորոյս, ապա յանդգնեցաւ խորդաւանել 'ի սէր իւր և զՀերա աստուածուհի զկին Արամազդայ։ — Յով դուստր էր Ինաքայ արքային արգոսացւոց կամ արգիացւոց, սիրեցեալ յԱրամազդայ, և առ քինուն Հերայ փոխեալ յերինջ. և 'ի բազում չքթեալ և մոլեգնեալ՝ թափառական շրջեցաւ մինչև յԵգիպտոս, ուր ամուսնացեալ ապա ընդ Ոսիրիսի՝ փոխեցաւ և եղև Իսիս աստուածուհի։ — Որեստ էր ուստր Ագամեմնոնի և Կղիտեմնեստրայ, որ 'ի վրէժ անարգանաց և մահու հօրն՝ սպան զմայրն և զհոմանի նորա զԵգիսթոս, բայց 'ի խղճէ մտացն, կամ ըստ առասպելին՝ 'ի դժոխական դահճացն 'ի կատաղեաց տանջեալ՝ տրտում և սգաւոր էր, և մոլեգնեալ իսկ 'ի թասերս ձեւանայր։ Այսոքիկ վիպասանութեան աւանդից օրինակք։

125. Իսկ թէ անծանօթ ինչ և նոր գուտ առեղծանիցես, ծագէ 'ի ծագ քերթածիդ միօրինակ պահեսցի դրոշմ և արժանք նը-

« Ըզ Պրիամեան երգեցից բախտ և զմեծապանծ ճակատամարտս »։
Զի՞նչ պարծողդ այդ արժանի այդքան պատառ բերցէ զոչման.
Ծննեսցեն լերինք յերկունս և ծնցի մուկն ծաղրալից։
Քանի՜ն վայելուչ է՝ այն որ ոչ ինչ նիւթեալ անդէպ.
« Զայրն ասա, Մուսա, ինձ՝ որ յետ աւուրց առման Տրովայ
Ըզբազում ազգերոյ ետես ըզբարս և ըզքաղաքս »։
Ոչ ծուխ 'ի փայլականց, այլ 'ի ծխոյ հնարի տալ լոյս.
Զի զքանչելիս զարմազան բերցէ 'ի վեր այնուհետև,
ԶԱնտիփատն և զՍկիւղլայն ընդ Կիկլոպայ և զՔարիբդիս։
Ոչ ըզդարձ Դիոմիդեայ 'ի մահուանէն Մելէագրի,
Ոչ ըզմարտըն տրովական 'ի յերկուորեակ ձըւոց հինու։
Միշտ 'ի կէտն իւր փութացեալ և զունկընդիրն յափըշտակէ

զոչման մեծախօս ձայնիցն իմանի, և թէ ըստ հագագային հատածին cantabo et· զոր չէր մարթ և ոչ հարկ ինչ նոյնպէս առնել և 'ի հայումս· այլ փոխանակեցաք ընդ այնր զյանձնառութիւն բերանաբաց այր առաջին։

140 · Այն որ ոչինչ նիւթէ անձահ՝ Հոմերոս է, որոյ Ոդիսականին սկիզբն են երկոքին տողքդ թարգմանեալք յՈրատեայ համառօտելով և զերկու տողն Հոմերի յերկուս ամփոփելով։

143 · Գռռոտախօս սկզբունք որ յետոյ յոչինչ լուծանին, նման իմն են բոցոյ յարգի՝ որ առաջ ծուխ միայն հանէ· իսկ հանդարտ և անպաճոյճ սկսուածք իբրև մեղմով իմն ծխին նախ, և ապա բոց մեծ արձակեն 'ի լուսաւորել և 'ի ջեռուցանել։ Այսպիսի են մեղմական և զգօնական սկզբնաւորութիւնն Հոմերի, որ և հանէ իսկ ապա 'ի լոյս զյիշատակեալ սքանչելիսդ· օրինակի աղագաւ, զԱնտիփատ արքայ Լեստրիգոնեանց զմարդակեր, որ լափեաց զմի յընկերացն Ոդիսեայ, զՍկիւղլա և զՔարիբդիս՝ զերկոսին քարաժայռս 'ի սիկիլեան նեղուցին, զառասպելեալսն 'ի կին մարդ կամ 'ի խառնակերպ հրէշ· զՊոլիփեմոս Կիկլոպսն՝ զհսկայն միականի և զահաւոր, որ ծախեաց զվեցեսին ընկերս Ոդիսեայ յայրի անդ իւրում, ուստի հազիւ ճողոպրեցան այլքն խորագէտ հնարիմացութեամբ· և այլս յոլովս զորոց չէ աւգւոյս երկարել։

146 · Դիոմիդէս մի 'ի գլխաւորաց տրովական մարտին, էր որդի Տիդեայ և թոռն Ինէոսի արքայի Ետոլիոյ· իսկ Մելէագր կամ Մելէագրոս էր հօրեղբայր Դիոմիդեայ, և սպանաւ 'ի Կուրետեանց կամ Կուրետաց 'ի պատճառս կալիդոնեան վարազին։ Արդ ասէ Որատ, թէ ճարտար քերթողն առ 'ի վիպել օրինակ իմն զդարձն Դիոմիդեայ 'ի տրովական պատերազմէն 'ի տունն՝ ոչ սկսանի 'ի մահուանէն Մելէագրի հօրեղբօր նորա, 'ի կարի իմն վերուստ և հեռուստ, որպէս կարծի արարեալ Անտիմաքոսի քերթողի։

147 · Լեդա դուստր Թեստիոսի արքայի Ետոլիոյ յղացեալ յԱրամազդայ, որպէս առասպելեն, ծնաւ ըստ ոմանց ձու մի, յորմէ ելին երկուորեակք Հեղինէ կամ Հելինէ և Պոլիդևկէս· ըստ այլոց երկուս ձուս, յորոց 'ի միոյն ելին Կաստոր և Պոլիդևկէս, 'ի միւսմէն Հեղինէ միայն կամ Հեղինէ և Կլիտեմնեստրա։ Այս Հեղինէ որպէս յայտ է, առևանդեալ 'ի Պարիսէ տրովացւոյ պատճառ եղև տրովական պատերազմին։ Արդ երկրորդ օրինակաւս ևս ասէ Որատ, թէ ճարտար քերթողն իբրև զՀոմերոս՝ զտրովական պատերազմն ոչ սկսանի 'ի ձուոց աստի երկուորեկաց, կամ որ նոյն է՝ 'ի ծննդենէն Հեղինեայ, այսինքն կարի իմն 'ի վերուստ և 'ի հեռուստ։

148 · Վիպասանն քերթող, նոյն և թատերականն, ոչ 'ի ծայրէ կարգի առեղծեալ վիպացն սկսանի զքերթուածն իբրև պատմական օրինօք, այլ 'ի նպատակն իւր արագելով անդէն և անդ առնու արկանէ զլսօղն 'ի մէջ յոգնախուռն անկուածոյ իրացն վիպելեաց իբրև 'ի յայտնի ինչ լսողին թէ ցայն վայր հասեալ իցեն իրքն ըստ յառաջագոյն անցիցն անցելոց, զոր լսեալն է և զոր յետոյ առաջ յեռու վայել-

'Ի խուռն անդ իրացն 'ի մէջ ոչինչ ընդհատ իբր 'ի յայտնիս ։
Զոր չյուսային յօրինուածով գեղեցկանալ թողու 'ի բաց ·
Այլ այնպէս իմն սրտէ՝ պատիրս 'ի ստոյգըն խառնելով,
Զի ոչ մէջն ըսկըզբան՝ ոչ միջոյն վերջն օտար գըտցի ։

Զոր ինչ ես և ժողովուրդն ընդ իս խընդրէ, աղէ դու լուր ։
Թէ ցանկաս ծափահարի վարագուրացն ակն ունելոյ
Բազմելով ակըմբահոյլ մինչեւ երգիչ ծափ տուք ասէ,
Զհասակաց իւրաքանչիւր նըկատելի է քեզ ըզբարս,
Յեղյեղուկ բնութեանց անձնիւր և տիոց տալ զիւր վայելուչն ։
Որ ըզձայնս հընչել գիտէ և հաստատուն հետս հարկանել
Ընդ իւրում համատիոց կայտռէ մանուկ խաղալ խայտալ ·
Վայրապար ցասնու լըռէ և փոփոխի ժամէ 'ի ժամ ։
Անմօրուս պատանին՝ զերծ հուսկ ուրեմն 'ի դայեկէն՝
Ձիովք, ասպականեօք և յարեգծեր զուարձանայ դաշտ ·
Մոմ ըզմոմ յախտըս կակուղ, առ խրատատուս աղընդըրձնեայ,
Պիտանեաց պըղերգ 'ի փոյթ, դահեկանաց վատնիչ շըռայլ,
Բարձրայօն, ցանկասէր և սիրելըյն շոյտ անտեսօղ ։
'Ի դառնալ յօժարութեանց՝ հասակ և սիրտըն այրական
Բարեկամն և գոյս խընդրէ, պատուոյ պատկառ կայ և փառաց,
Զգոյշ լինի չգործել ինչ՝ որ ստըրջասցի ապա փոխել ։
Տառապանք բազմադիմի շուրջ տագնապեն ըզծերունին ·
Զի զանձեալ՝ ժուժկալէ հէքն 'ի մըթերից, վարել զընդայ,
Կամ զի բնաւին է իրաց երկչոտ և ցուրտ մատակարար,

չապէս 'ի պաճուճանս անգլուոյ. զոր օրինակ Հոմերոս յՈդիսականին՝ Ոդիսեայ տալով պատմել զանազանս, և Վիրգիլիոս յԵնէականին Էնեայ ։ Եւ զոր մասն ստոյգ պատմութեանն չյուսայ թէ գեղեցկասցի արուեստիւ և հանճարով, 'ի բաց թողու զայն, և փոխանակ այնր զկեղծիսն այնպէս յօդէ ընդ ճշմարտին, զի ամենայն մասունքն 'ի սկզբանէ ցվախճան համեմատ և պատկանաւոր գտցի քերթածն ։

153· Հմուտք քերթութեան արուեստի իբրև զիս, և ռամիկն՝ որ հասարակաց մտօք և բնութեամբ դատի անսխալ ։

154· Եթէ ցանկաս զի որ ծափս հարկանելոցն են 'ի նշան հաճութեան և զուարթութեան, նստեալ մնասցեն և սպասեսցեն առ հեշտութեանն ամենայն փոփոխմանց վարագուրացն, մինչև 'ի վերջին փակումն սրահակի թատերին՝ որ զվախճան հանդիսիցն նշանակէր, և մի 'ի դուսանացն կամ պարն երգեցողաց աղդ տանէր զայն ասելով ցհանդիսատեսան Ծափս հարէք կամ Ողջ մնացէք և ծափս հարէք ։ Եթէ ախորժելից ունկնդրութեան քերթածիդ մնաս, խնամով ճշգրտեսջիր զնկարագիր բարուց իւրաքանչիւր հասակի · զորս և համառօտէ պաճուճել ճարտարութեամբ և մանր զննութեամբ յայն ինչ 'ի լեզու և յոտս եկեալ մանկանէն մինչև ցծերն ։

Հայտնապէս Կադմոս ժողովրդեան մարդկան ընդդէմ ելեսցէ մի,
Կամ դարձցի Պրոկնէ 'ի հաւ կամ թէ Կադմոս 'ի վիշապ օձ։
Օ՜ որ այսպիսին ինչ ցուցանես՝ անհաւատեալ և ատեամ իսկ։

Նա որ կամի ցանկալի լինել և գալ կրկին յատեան,
Մի՛ քան զհինգ հանդէս նուազ և մի երկար ինչ լիցի վէպ։
Մի՛ դիք միջնորդեսցեն, բայց թէ կընճիռն արժան բազկի
Նշցէ՛նդ առաջ, և մի դեւք խօսել չորրորդ լիցին աշխատ։
Պարն ըսպաս գուսանի և այրական հարցէ պաշտօն,

'ի կերակուր առն իւրում. և 'ի փախչելն 'ի սրտմտութենէ նորա՝ ինքն փոխեցաւ 'ի ծիծառն, Փիլոմելա 'ի սոխակ, Տերէոս 'ի յոպոպ, Իտիս 'ի փասիան: Ըստ ոմանց առասպելաբանից Պրոկնէ 'ի սոխակ, և Փիլոմելա 'ի ծիծառն. բայց ըստ առաջնում օրինակիդ ունի և Ովիդիոս յԱյլակերպութիւնսն, ուր հաւաստի քննութեամբ զառասպելս դնէ և ոչ հարևանցի յիշատակաւ: — Կադմոս որդի Ագենորայ սպանեալ զվիշապ մի նուիրական Արիսի, ապա իբրև ամենայն ատամն 'ի բազում վէշ ապս տառապանաց մատնեալ լինէր, 'ի քաւութիւն վիշապասպանութեան մեղացն աղաչեաց զգիս փոխել զինքն յօձ, և լսելի լեալ՝ դարձաւ 'ի վիշապ: Այսպիսի զարմանագործ սքանչելիք մարթեն մուտ ունել 'ի վիպասանութեան, բայց ոչ և արգելանք դիմաք ձևանալ 'ի Թատերս:

189. Զի մի կարճութեամբ 'ի նեղ անկանիցի և կարի երկարութեամբն աղտուկ լինիցի ունկնդրաց ողբերգութիւն կամ կատակերգութիւն, չափ իմն դնէ նոյա Որատիոս, մի երկարել և մի կարճել քան զհինգ հանդէս կամ արարուած. որ են բաժանմունք և ընդհատութիւնք խաղոյն փակմամբ և բացմամբ վարագուրին, զոր և ռամկօրէն վարագոյրս կոչեմք: Այս բաժանումն հինգ թուոյն իբրև օրէնս պահեցաւ սովորաբար առ հինսն. բայց յետոյն դարուց քերթողք ազատ արարին իբրև զոչ կարեւոր ինչ, և արդարանան: Զի անօղութիւն և բաժանումն հանդիսից 'ի ճոխութիւն նիւթոյն հայի, և ոչ յայլ ինչ: Վասն որոյ և Որատեայ պատուէրն ոչ ըստ թուոյն առնլի է, այլ մանաւանդ ըստ քանակի նիւթոյն որ 'ի հնգամեան բաժանման անդ բովանդակէր առ իւրով ժամանակաւն: Զայս այսպէս արժան է իմանալ. և ոչ թէ զի անհրաժեշտ ինչ և անսխալ ու-

սուցանիցէ Որատիոս զգաստն:

190. Դիից 'ի Թատերս կրկին օրինակաւ է երևել: Մի՝ իբրև զմի 'ի գուսանաց անտի խօսելեաց և գործելեաց խաղուն. զայս ոչ արգելու Որատիոս: Իսկ միւս ևս 'ի մէջ գալ է դից՝ աստուածական զօրութեամբ յանկարծակի երևեալ 'ի լուծանել զհանգոյց ինչ կամ զկնճիռն իրաց. յոր ընթացնեալ քերթողին և յանհնարս մտեալ ընդ թեան կարգաց լուծանելոյ՝ զդիս առնու 'ի թիկունս ազատութեան հանճարոյ իւրոյ: Արդ մի յամենայն գուշակեալս այսպիսի՝ զդիս կամ զաստուածեղէն գերագոյական կարողութիւնն առնուր, ասէ, միջնորդ, այլ գուն ուրեք՝ ուր կնճիռն ինչ մեծ և արժանի մտացն նոցա պատահիցէ:

191. Առ խորշելոյ 'ի խառնակութենէ և զխուռնհաւ առնելոյ զդէմս և զխօսս խօսելեացն՝ աւելորդ համարի խօսել 'ի Թատերն չորից գուսանաց ընդ միմեանս 'ի միում տեսլեան. այլ երեք բաւական են յաշխոյժ զբօսացուցութիւն: Իսկ թէ առաւել չորից մարթիցի, չէ ինչ ընդդէմ: Բայց մարթի երևել ևս բազմութեան 'ի պէսս պէսս առանց խօսակից լինելոյ ընդ երիսն:

192. Պարն 'ի Թատերս հնոցն խումբ մի էր գուսանաց յամենայն կարգէ մարդկան կամ դից ըստ պէտս իրացն, որք եռեղանկալք կային անդէն 'ի Թատերն իբրև ականատեսք և վկայք իրացն. և երբեք երբեք խօսակից լինէին ընդ երից բուն խաղացողացն, բայց 'ի բերանոյ միոյն որ պարագլուխ կամ դասապետն կոչէր: Իսկ գլխաւոր գործ նոցա էր նուագել առաջ ինչ յընդմիջել արարուածոց հանդիսիցն: Արդ ասէ Որատիոս, պարն և պարական գործոյն՝ միոյ դիմի, միոյ խաղացողի գործ իմանի, միոյ առն լաւի: Այսինքն է. 'ի խօսելն մի խառն 'ի

Եւ մի 'նդ մէջ հանդիսիցն արարուածոց երգեսցէ ինչ
Որ ոչ կըշիռ դէպ և դէպ հասուցէ յուշ նըպատակին ։
Նա բարեաց թիկունք լիցի և սիրաբար խորհըրդական ,
Համ դիցէ զայրացելոց և զմեղսատեացսըն սիրեսցէ .
Գովեսցէ զսուղ սեղանոյ նա ինքն ըղձաշըլս , նոյն զօրէնս ,
Զարդարութիւն փըրկաւէտ և զդըռնաբաց խաղաղութիւն .
Նա զխորհուրդըս պահեսցէ , դիցըն մաղթանս հանցէ ուաղէրս
Զի դարձցի առ հիքացեալս և գնասցէ բախտ 'ի գոռոզաց ։

Ոչ իբր այժմ յարոյր կապեալ սըրինգ փողոյ նախանձաւոր
Այլ նուրբ նըւաղ պարզական երբեմն 'ի ծակ սակաւաթիւ՝
Նըրմընչել և օժանդակ պարուն լինել էր օգտակար ,
Ընչոմն ըզչև յոգնախումբ լըցեալ ակումբ բազմականին ,
Ուր թըռով ապաքէն սակաւաւոր յայնժամ ամբոխ
Եւ ցածուն և պարկեշտ և պատկառոտ գայր ժողովէր ։
Իսկ ըսկիզբն իբրև արար զանդըրս լայնել նա յաղթական ,
Եւ պարիսպ ընդարձակ շուրջ զոստանիւըն բոլորել ,
Եւ 'ի տօնս անպատուհաս երեկանաղ զըւարթ գինեօք ,

խուռն գնդովին խօսիցի , այլ 'ի դիմաց միոյ ռան՝ պարագլխոյն . և յերգելն ընդ մէջ հանդիսիցն՝ մի ստարոտի ինչ նուագեսցէ որպէս առ կարի վաղնջականն երբեմն . այլ զխաղաւորս իրացն և զխաղաւորութեան հանդիսին , որպիսի Սոփոկլեայքն էին ։ Եւ իբրև այր բարի և իմաստուն խրատս օգտակարս հնչեսցէ 'ի տաղսն , բարեաց 'ի թերէ կացցէ և խորհրդական , և այլն . զորովք զանց արարեալ քերթողին 'ի կարգի խաղուն , գնէր սոսա 'ի բերան պարուն վսեմական ոճով քնարերգականաւ ։ Տես զու ինձ սատանօր զուգութեան և զյարուց իմաստս առ նախնեան ։

198 . Դռնաբաց առէ խաղաղութիւն , զի ուր 'ի ժամանակս պատերազմի կամ խռովութեան ամենայն դրունք փակին ընդդէմ հինի կամ թշնամեաց , խաղաղութեան եկեալ բանայ , և ամենեքին յանհոգս և յապահովս կեան դրամբք բացելովք ։

199 . Խրատեսցէ խորհրդապահ լինել զաղանեաց . և խնդրեսցէ 'ի դից . զի բարեբաստութիւն և յաջողուած դարձցի եկեսցէ առ տառապեալսն , և ելեալ գնասցէ 'ի բաց յամբարտաւանից 'ի բանաւորաց ։

201 . 'Ի հնագունիցն թատերս սըրինգն միակ էր , և պարզ՝ չէ յերկուց 'ի մի զօդեալ արուրով , կամ 'ի յօդուածոցն ագուցս լամբեալ և կամ յայլ ինչ մասունս առ 'ի զարդ ։ Եւ սակաւ ծակտեաւ միայն ունէր , և ոչ իբրև 'ի նախանձընդդէմ եկեալ փողոյ՝ ուժգին և խրոխտս հնչէր . և բաւական էր 'ի լնուլ զփոքր և զնոսր ժողովարանն ։ Իսկ իբրև մեծացան թատրք և յաւելաւ ժողովուրդն , ընդ նմին և թիւք և ձայնք երաժշտականք սաստկացան , երկու սըրինգք արուրով զօդեցան , ոչխնն սակաւս ունելով ծակս և քաղցր ուռնչ , իսկ ձախոյն բազում ծակօք և զօրութեամբ խրոխտահնչական ։ Զի և ոգէտ չենականք ընդ աղնուականս խառնեցան խռնեցան 'ի լուր , որոց բերա լսելիք ուժգնագոյն ձայնից և եղանակաց կարօտանան 'ի շարժել ։

208 . Զօփօնէն . ըստ այլ օրինակաց՝ դյողոփօն . իմացեալ ոչ պէտուղեայ եեթ , այլ և զայլոց քաղաքաց հռովմէական ան-րութեանն , յորս և կային իսկ թատերք ։

210 Ընդ 'ի թիւս և 'ի չափս յանդըրգնութիւն մեծ եղն անկաւ ։
Զի տըխմարն և 'ի յերկոց այն ինչ մըտեալ զի՞նչ գիտիցէ
Ընականն 'ի վերհ խառնեալ քաղաքացի, չարն ընդ բարին ։
Այսպէս շարժումն և զեղխանս ած սըրնգահար 'ի հինն արուեստ,
Եւ զպատմուճանն 'ի թատերս ընդ քարշ էարկ յերթևեկի.
Այսպէս իսկ աճեցին ձայնք 'ի քընարն ըզգօնական,
Եւ բարբառ օտար հընչեալ լեզուն ճոռոմ և սըրավար՝
Պիտանեաց բանն հանճարեղ և լինելոց նախագուշակ
Ոչ ընդհատ երևեցաւ 'ի դելփադիւթ խոր պատգամաց ։

Որ ընդ անարգ նոխազին ողբերգական տաղիւ մարտեաւ,

213. 'Ի հին 'ի պարզ արուեստն յաւել զշարժումն, զաշխոյժս նուագայն և զեռանդուն շարժուածս ձեռաց և զկայթս և զկաքաւս ոտից. և զզեղխութիւն, զշռայլութիւն ծակուց սրնգին և յորդելակ խըռոխաական ձայնից նորա, և զհանդերձանաց համօրէն թատերին, և առանձինն զպաճուճանաց զգեստուցն. ըստ որում և յարէ իսկ, թէ՝ և զպատմուճանն երկայն վերջաւորօք քղանցաւորօք 'ի քարշ առրաւ 'ի թատերն յերթևեկելն յաջ կոյս և յահեակ, որ օրէնն իսկ էր պարուն 'ի կալն և 'ի նուագել յանկըրպետս հանդիսիցն ։

218. 'Ի նմին ժամանակի յորում այդ փոփոխումն լինէր 'ի սրինգն, յայնժամ և 'ի քնարն զգօնական՝ 'ի մեծարոյ և 'ի խոհական, որոյ նախուստ երեք միայն էին աղիք, յաւելան այլ ևս ձայնք՝ լարք ձայնաւորք մինչև 'ի չորս և առա յեօթն ։ Եւ լեզու քնարերգակին առաղատացից օտարացեալ 'ի նախնի պարզական վսեմախօսութենէն, սկսաւ օգաբանս և սրավարս ճառաւել՝ բարձրախոհս լինել կարծելով. մինչև բանն հանճարեղաց, փոխանակ պիտանի և հանդերձելոցն կանխագուշակոյց խորաւուք իմաստնարարն լինելոյ, պատ 'ի պատ մանուածոյ ոճոյն նմանեցաւ խորաբան և անիմանալի հրամանաց պատասխանւոյ և ըղձութեանց դելփական պատգամախօսին, որ 'ի Դելփիս յապոլոնեան տաճարին յեռոտանւոյն բարբառէր գիւթական հարցուկն Պիւթիա ։

219. Ողբերգակ քերթողաց մրցանակ յաղթութեան և հաճոյական լինելոյ քան զընկերսն էր նոխազ, իբրև նուիրական Սպանդարամետին՝ յորոյ 'ի ատեան սկսան խաղք այսպիսիք, յորս և զոհէին նմա նոխազ, յորմէ և նոխազերգութիւն ևս ասացաւ ողբերգութիւնն ։ Արդ ողբերգակ քերթողքն առաջինք, 'ի զուարճութիւն և 'ի զբօսանս ժողովրդեան, 'ի խաղս անդ կամ 'ի մէջոցս արարուածոցն ածէին ևս 'ի տեսարան զկերպարանս այծամարդոց կամ մարդաայծից, որ էին հրէշք ինչ խառնակք 'ի մարդոյ և յայծէ կամ 'ի այծէ, նախազատուկք. և մերկ երևէին բնիկ կերպարանօքն՝ բացի միայն ածեալ 'ի ծածկոյթ երեսացն ։ Եւ առանց ինչ սահմանելոյ ծանրութեան իւրում, ողբերգութիւն կամ ողբերգական անձն խաղացող՝ խաղանէր ընդ նմա և նա ընդ սմա զաւեշտաբար և աղու բանիւք, մանաւանդ 'ի կծանել զայս ոք և զայն, և հեշտացուցեալ ըզբօսեցուցանէր զժողովուրդն, որ առաւորաբար յետ զոհից տօնական աւուրց գայր խմբէր 'ի թատրն կերեալ և արբեալ և յամենայն կապոյ օրինաց արձակ ։ Աստի առեն սկիզբն առեալ և երգիծական քերթածոց, որպէս և անուննն իսկ յայտ առնէ 'ի լատին լեզու ։ Բայց դատուելոյ Որատիոս վայելչապէս առնել և զայս խեղկատակութիւն, և մի նուաստացուցանել զյառաջագոյն հանդիսացեալ մեծափառ դիւցազունսն իբրու զաշխարհաւանդիկս ռամիկս. և մի դարձեալ վսեմաբանել կամ լով զհողմս և զամպս ըմբռնել, մինչ փըքողք ուռնուլ կամ օգաբանս և սրավարս ճամարտակել ։ Այլ այնպէս խառնել 'ի խեղկատակութեանն, որպէս մեծարոյ ոք տիկին զի ստիպեալ ելանէ 'ի խաղալ 'ի տօնս դիցամօրն. քանզի և ողբերգութեան անվայելուչ է թեթևութիւն ցոփութեանն ։ Արիստոփանեայ հեղլէն կատակերգակի իջուցեալ այր մի յերկնից, և հարցեալ թէ զինչ անեաէր, այոյ պատասխանել. Փերթոցս սմանս սպանդարամետական տաղից.

Հովանեայ ըղձնի ուրեմն՝ և զայծամարդկան վիշապներս,
Այն անվրիժար ծանրութեամբըն խորտակրօնն էառ խաղաղ.
Զի յախուրժ նորութիւն զբօսեցուցէ և ՚ի հրապոյրս
Զհանդիսատեսն յետ զոհից ըղձիներգէն զապերասան ։
Այլ օրէն ըղձմարդապայման ազալեզու և զծաղրածուսն
Ընծայել այնպէս իցէ, այնպէս ըղլուրջն ՚ի խաղ շըրջել,
Զի որ պատուած ոք ՚ի մէջ և որ դիւցազն ոք մատուցի
Յառաջն յոսկի պայծառ ու՚ի ծիրանիս արքունական,
Յաշխարհաւանդս ՚ի նըսեմ մի զառածցի նըւաստ բանիւ,
Կամ յերկրէ ՚ի բաց անցեալ՝ զհողմըս և զամպս ըմբռնեսցէ ։
Խեթեւութեան վիժել տաղս ողբերգութեան լեալ անպատեհ,
Իբր յաւուրըս տօնական հարկաւորեալ բանքիչն ՚ի խաղ՝
Այնպէս դոյզն ինչ ամօթխած ՚ի խեղկատակըն խառնեսցի ։
Զանպաճոյճ և զտիրական բընիկ անուանս և զբայս եւեթ
Զաւեշտարար բանահիւս ոչ սիրեցից ես, Պիսոնեանք ։
Յերանգոյն ողբերգական ոչ ճըգնիցիմ ցայն որոշել,
Մինչ ոչինչ դընել խըտիր՝ Դաւոս իցէ որ խօսիցին,
Թէ յանդուգըն Պիւթիաս կըթեալ քանքար ՚ի Սիմոնէ,
Թէ սանական դից Սիլէնն դաստիարակ և սպասաւոր ։
՚Ի յայտնեաց տաղ ըստեղծից՝ զոր ամենայն ոք յուսասցի,

որ ընդ հողմս և ընդ ամպս վարգէին՝ ժողովել մեգ և փոշի ՚ի պէտս տաղիցն ։

224 . Վարգապայ քաղ տասցեալն ՚ի գիրս ուրեք, վրիպակ Թուի գրչագրաց՝ փոխանակ մարգապայ գրելոյ, ըստ որում խառնակ ինչ կենդանի ՚ի մարդոյ և ՚ի պայէ. վարգն ոչինչ Թուի նշանակել ։

233 . Զբառս և զբայս ոչ պաճուճեալս այլաբանեցից յոլորմոլորմամբ, այլ յստակ և բնիկ ձայնիւք ըստ հասարակաց սովորութեան, զամենայն ինչ իւրով անուամբն կոչելով, Թէ գեհկականք իցեն և Թէ անհամեստք, զայսպիսիս խառնեցից ես ՚ի զուարճաբանելս և ՚ի խեղկատակել յողբերգութեան. կամ Թէ բարեքեցից պարկեշտ և վայելուչ այլասացութեամբ ։

235 . Եւ ոչ ջանացայց այնչափ խոտորել յողբերգական ոճոյն՝ պարզութեան ուշ կալեալ, մինչև չցնել ինչ բնաւ խտրոց ընդ խօսս խաղարկուացն, եԹէ Դաւոս տղայ իցէ որ խօսիցին. կամ Պիւթիաս աղախին՝ որ ճարտար խորամանկութեամբ հանէ ՚ի Սիմոնէ ծերոյ տաղանդ մի արծաթոյ ՚ի կատակերգութեան Լուկիլեայ յաւուրն քերթողի, զոր ՚ի կԹել այբուբանէ և բնագիրն Որատեայ, եԹէ Սիլենոս աղնուական դայեակ և սպասեակ Բաքոսի Սպանդարամետ դից՝ իւրումն սանուն ։ Յայնպիսի ծաղրածու խաղս այծամարդաց գտանելոց պարու կայր մեշտ կերպարանեալ տին Սիլենոս ։

239 . ՚Ի ծանօթ և ՚ի սովորական իրաց տաղից նիւթ կերծեաց այսպիսեաց տաղից, և ՚ի հասարակաց բնական խօսից զկերպարանս ոճոյն, որ այնպիսի դիւրին և հեշտին երևիցի. մինչև կարծել ամենայն ումեք՝ Թէ և ինքն կարող իցէ առնել զնոյն նմին վայելչութեամբ. և սակայն սաստիկ ՚ի քիրտն հարեալ և ՚ի զուր աշխատեսցի ։ Եւ այսմ պատճառք այն են, զի մեծ և զարմանալի զօրութիւն բնակէ ՚ի շարս և ՚ի յօդաւորութիւնս բանից, և մարթի յաւելուլ վայելչութիւն մեծ յիրս հասարակաց, եԹէ միայն գործել գիտիցէ ճարտարն. և նմին իրի ոչ ամենեցուն է դիւ-

Այլ սակայն ձեռն արկեալ տաժանեսցի զխաղձանս քրքրտանօք.
Այնչափ է զօրութիւն կարգի բանից և հիւսուածոյ,
Այնչափ յիրս հասարակաց յանկչին շնորհք վայելչութեան։
'Ի մայրեաց ելեալ պայք ըզգոյշ կացցեն յիմ դատաւնիք,
Որ մի զռեհկաց ինչ հանգոյն և զօգ մանկանց հրապարակի
Կամ կարի գողտրիկ տաղիւք լըկնեալ երբէք խենեշասցին,
Կամ զազիրըս ժայթքեսցեն և լուտանաց խօսք խայտառակ։
Որոց հայր և ստացուած և երիվար է՝ զայրանան,
Ոչ յոր ինչ սիսեռն մըրկի կամ ընկուզին հաճի գնօղ՝
Ընդունելին մըտաղիւր և ոչ պըսակըս տանն պարգև։

Վանկ երկար 'ի սուղն յարեալ՝ անուն կոչի իւր մեծավերջ։
Ոտն երագ, վասն որոյ և եռաչափ յորջորջմանց
Այս հրամանս մեծավերջեանց՝ իբրև վեցեակ հանէր դոփիւն.
Յառաջնոյն մինչ 'ի վերջին նոյն և նըման առհասարակ։

րագիւտ։ Զայս դէպ ուղիղ զմարդապայեցն խաղուց ասէ Որատիոս. բայց ճըշմարտեալ է և յայլ ամենայն ազգս քերթուածոց։

243. Զպայս զխաղարկուսն առելով զքերթողսն այնց խաղուց կամի ասել։ Արդ, ասէ, ըստ իմում դատաստանի, քանզի 'ի բնէ անտառաբնակ պայքն և 'ի թատերն անկամ 'ի մայրեաց ելեալ գան 'ի գուրս 'ի հրապարակ անդր, զգուշասցին իբրև զգիւղացունս ոմանս համեմատաբանել, սակայն և զգոյշ լիցին չխօսել զռեհիկս ինչ, և մի լկտենալ հայհոյս և մեղկ բանիւք աղուականօք, կամ զազրաբանել թշնամանալից բարբառով։ Զի ընդ այնպիսիս զզուրին բարեծնունդքն և բարեկեցիկք, որ գոյաւորքն են, և տէարք ձիոյ կամ ասպետք, և սեպուհք կամ պատրիկք՝ որք ունին հայր 'ի ծերակուտին, որոյ աւագանին հարքն կոչէին. և չհաճին ընդ որ բերանաբաց պակչոտի ռամիկն որ 'ի հրապարակս գնէ և ուտէ սիսեռն կամ նուշ մըրկեալ։

250. Զոճոյն առաջեալ ցայս վայր, այժմ ասէ զչափոյ ոտիցն թատերական քերթուածոց Յունաց և Հռոմոց, այլ միանգամայն միում ասյ և այլոց լեզուաց խրատու իմաստութեան յիւրաքանչիւր չափս տաղից։ Տես և 80։ Երկավանկ ոտն՝ յորում առաջին վանկն է սուղ և երկրորդն երկար, մեծավերջ կոչի. և երկաչափ ասի տաղն՝ յորում չորք մեծավերջ կան, եռաչափ՝ յորում վեց։ Իսկ զի երագ ոտն է, վասն սուղ վանկին յերկարն թաւալգլոր սահեալ անկանելոյ, և վասն կիսով չափ յաճախութեան ոտիցն և խիստ ա խիտ յաջորդելոյ, նմին իրի թէ և վեցեակ բախումն ոտնիցն վեցիւք ոտիւք, սակայն եռաչափ կոչի մեծավերջեան, զերկու ոտնն 'ի մի չափ առեալ։ Այս է, թէ և վեց ոտն ունիցի, չափին համարի երեք. ուր 'ի գիւցազնական վեցոտանին հաշուին չափք երկոտասան։ Զոր քերթողքն պատուիրեցին կամ օրինադրեցին, զնոյն մեծավերջ ոտին ընծայէ գլխաւորաբար. որպէս և զկնի՝ զոր քերթողքն ընկալեան կամ մերժեցին կամ ստգանին, զամենայն 'ի գեղս մեծավերջ ոտին առնու։

253. 'Ի սկզբան անդ մեծավերջական տաղն յամենայն տողս իւր ծայրէ 'ի ծայր անխառն մեծավերջիւք յօդէր. այլ որպէս զի փոքր մի ծանրաքայլ լիցի, առաւուրեմն 'ի յետին ժամանակս ընկալաւ 'ի սեփական կայանս իւր զծանր և զդանդաղ համբոյր ոտնն երկավանկ, որոյ երկոքին վանկքն են երկար են։ Բայց այսմ ներղամիտ եղև միայն յառաջին և յերրորդ անդոյգ տեղիսն. իսկ 'ի զուգացն՝ յերկրորդէն և 'ի չորրորդէն ոչ եւ առեալ մեծավերջն, այլ անխախուտ կալաւ զայնոսիկ

Նայլ զի խուն մի յամրաքայլ և ծանրագոյն ազդիցի յունկն,
'Ի սահմանսն հայրենի զկայուն համբոյրս առ 'ի մօտոյ,
Երրորդ ասպընջական, սակայն և ոչ յերկրորդ զահէն
Կամ տայր նա տեղի երբէք 'ի չորրորդէն ընկերաբար:
Որ յակկեան սակաւ լըսի պերճ եռաչափս, և 'ի յեննեանս
Մեծաքեռըն ծանրութեամբն 'ի տեսարան արձակեալ տաղս՝
Ըզգործոյն շուլթափելոյ 'ի զգուշաւոր խնամոց անքած
Կամ զարուեստին խամութեան բերէ կորանս ամօթապարտ:
Ոչ ամենայն զատաւոր խըռպոտ տաղից լինի հասու,
Այլ հոռոմ քերթողաց շնորհեալ ներումն է տարադէպ:
Իսկ արդ յայդ ինչ ապաստան մոլորիցիմ ըստ քիմս 'ի գիր,
Կամ թէ զմեղս ակընյայտնի համարեցայց ամենեցուն՝
Յուսով թողութեան աներկեան և յապահովս.
'Ի ստգիւտից ազատ գըտայ, իսկ գովութեան ոչ արժանի:
Դուք զհելլէն տիպարս 'ի ձեռս ածէք ըզտիւ ածէք զգիշեր:
Սակայն ձեր գովեցին հարք ըզպղաւտեան չափս և ըզկատակս,
Յաւէտ ինձ ընդ երկոսին ներողաբար ըսքանչացեալք,
Զասեմ յիմարաբար, թէ միայն ես և եթէ դուք
Ըզգեղջուկն և զուարձախօս զիտեմք ընտրել բան 'ի միմեանց,
Այլ եմք մատամբք և ունկամբ օրինաւոր ձայնից հըմուտ:

յերկաչափ տաղս: Զնոյն իմա գրեթէ և զղուգից եռաչափին, զորս հազիւ երբէք ներէ այլում ումին: Եւ այս մեծավերջ, ասէ, կարեւոր և անխախուտ 'ի զոյգ տեղւոջն ըստ այժմու ճշգագոյն օրինաց, ոչ պատահի յեռաչափսն Ակկիոսի քերթողի. և նոյն մեծավերջ կարեւոր՝ պակասեալ 'ի տաղսն Ենինոսի, որ ծանր համբուրիւքն առաքեալ են 'ի տեսարան անդր, ստգիւտ ածէ քերթողին տագնապափոյթ արագելոյ անհոգութեամբ 'ի վճար գործոյն, կամ յարուեստին խակ լինելոյ:

262. Ոչ ամենայն ունկն քաջ խելամուտ լինի անյարմարութեան չափոց ոտից և դաշանց տաղից: Եւ յայսմ մասին, ասէ, անարժան ներողութիւն շնորհեալ է հռովմայեցի քերթողաց ըստ քիմս վարելոյ: Զայս ստգտեալ, ապա հարցանէ՝ թէ յայս ներողութիւն յուսացեալ ըստ կամս անձին զինչպիտութեան վարեցից 'ի գրելն ինչ, կամ թէ և ամենեցուն յայտնի համարեցայց զխախալանս՝ անհոգ և անկասկած գոլով յուսով թողութեան անփոյթ առարից: Եթէ զայդ առնիցեմ, 'ի մեղադրութենէ միայն զերծ գտանիցիմ կամ առ ներողամտութեան այլոց կամ առ տգիտութեանն, այլ ոչ եթէ գովեստի արժանաւոր եղէց յանաչառ և 'ի բանիբուն կորովեաց: Ապա օրինակ տայ ընտրելական տաղից զհելլէն քերթողսն այնպիսի գովութեամբ, որ չգիտեմ զինչ չարժիցէ յայնպիսի բերանոյ. և սաստիկս բամբասէ զՊղաւտոս լատին կատակերգակն, և զհինսն՝ որ ընդ նա յայժ էին սքանչացեալ: Կատակքն, ասէ, գեղջկականք են, և չափք ոտիցն ոչ գեղայարմարք, խառն ունելով յաճախ ոչ միայն զհամբոյր՝ այլ և զատեղն ոտնն, եթէ ունկն մեր նուրբ ընտրող է օրինաց տաղից, և մատունք մեր ճարտարք 'ի չափել և թուել զոտս բարեյարմարս տաղից:

Զանծանօթ զողբերգական նուագաց ազգ հնարաւորեալ
Նա սայլիւք շուրջ ըզքերթածս 'ի ճեմս ածեալ ասի Թեսպիս,
Զոր մրրով զերեսս օծեալք նուագէին և խաղային։
Վայելուչ պարեգօտի և դիմակին գիւտող Եսքիլ
Յետ նորա չափաւոր մածոյց ըզբեմըն գերանօք,
Նա վըսեմն ուսոյց խօսել և հաստատել զոտս 'ի կօշիկ։
Զհետ սոցա հին կատակերգք յաջորդեցին մեծ գովութեամբ.
Այլ յեղեան ազատութիւնըն զառածաւ և 'ի վըտանգ
Օրինաց սաստից կարօտ, և լեալ օրէնքն ընդունելի՝

274 . Առաջին սկիզբըն Թատերական խաղուց այսպէս աւանդի եղեալ։ Առ կարի հնագոյնսն հելլենացւոց 'ի սպանդարամետական տօնսն նուագէին զԲաքոս կամ Դիոնիսոս, և զոհէին նմա նոխազ, յորմէ այն երգք նոխազերգութիւն ասացան։ Եւ ոչ միայն 'ի տաճարս և 'ի քաղաքս առնէին զայդ. այլ և 'ի սայլս կամ 'ի հնծանս այգեկթոց ելեալ, և մրրով կամ ըստ Տիբուլլոսի քերթողին (Եղեր. գիրք ա. տ. 55) նօթիւ զերեսս օծեալ առ 'ի կերպարանափոխ լինելոյ, այնպէս շուրջ յածեալ երգէին և խաղուք և շարժմամբք ձևացուցանէին զսպանդարամետական վէպսն և զառասպելս, երբեմն և զայլոց դիւցազանցն։ Այսմ նախագասող ասէ Որատիոս զԹեսպիս աթենացի. զոր պարտ է իմանալ ըզսայլիցն և զմրրոյն, և զի ոմն 'ի գուսանացն կարգեաց վիպել կամ խաղալ զառասպելական վէպսն և զայլոց ինչ դիւցազանց. զի միայն սպանդարամետական երգքն՝ երիցագոյն են քան զԹեսպիս ժամանակաւ։

277 . Զհետ Թեսպեայ Եսքիլոս հանճարեաց փոխանակ մրրոյն զդիմակ, և զերկայն պճնաւոր պարեգօտ և զկօշիկ կամ զմոյկ ոտից 'ի վայելչութիւն և 'ի բարձրահասակ երևել։ Եւ փոխանակ սայլին կառոյց բեմ բարձր՝ խօսարան խաղալեացն, և փոխանակ միոյն երկուս կացուցեալ գուսանս 'ի խօսակցութիւն, ուսոյց վսեմս բարձրաբանել, 'ի բաց ընկեցեալ ըզխեղկատակութիւն։ Զկնի Եսքիլեայ ծաղկեցին երկոքին մեծ ողբերգակքն հելլենացւոց՝ Սոփոկլէս և Եւրիպիդէս. որոց առաջինն մանաւանդ 'ի ծագ կատարման հասեալ է, մինչև Կիկերոնի կոչել զնա աստուածային՝ իբրև զՀոմերոսն և զՊինդարոս։ Ինքն եղև և առաջին որ երիս դէմս 'ի զրուցատրել եհան, աճեցոյց և զթիւ պարուն։ Իսկ 'ի Հռովմայ չիք ոք առ մեզ հասեալ մեծանուն ողբերգակ յիշատակի արժանի։

280 . 'Ի զարգանալ ողբերգութեան եկն եւ 'ի վեր երևեցաւ և կատակերգութիւնն առաջինն, որ յառաջին խառն էր ընդ նմա, որպէս ասացաք 'ի 219։ Եւ հին ասի նորագիւտն այն, յորում յականէ յանուանէ խաղ առնէին զորս նշանաւորս և հռչակաւորս 'ի ժամանակս ընկերահաշտեացն աթենացւոց։ Եւ իբրև այս յանդգնութիւն 'ի յոռութիւն և 'ի մեծ յոյժ էր կրթեալ, եկն տիրեաց Աղեքսանդր քաղաքին աթենացւոց. և ժողովրդեանն նուաճեալ ընդ սաստիւ թագաւորական իշխանութեան, դադարեցին փոքր մի 'ի չար սովորութենէն։ Եւ խելամուտ լեալ այնուհետև ապիրատութեան գործոյն, արժան դատեցան օրինօք ևս արգելուլ 'ի սպառ՝ չառնուլ զուրուք 'ի կենդանեաց զանուն 'ի բերան. որ և եղև իսկ հրովարտակաւ Լամաքոսի։ Եւ այսպէս 'ի բառնալ ապերասան համարձակութեանն, պարքն գուսանաց և խաղալկաց՝ որում էր առաւել կըծանել զայլս, կողոպտեալ յիշխանութենէն և յամօթ լեալ՝ լռեցին այնուհետև յամբարտաւան շփացութենէ անտի։ Ապա յայնմ հետէ սկիզբըն առ միջին կատակերգութիւն, յորում առանց անուան յայտնի առնէին և խաղ զդէմսն։ Այսպէս և այսմ խափանեալ, եկն եհաս կատակերգութիւն 'ի կատարեալ չափ խոհականութեան՝ յորում և է իսկ ցայսօր։ Հնոյ կատակերգութեան օրինակագիր քաջ կայ և այսօր Արիստոփանէս յոյն. միջնոյն և ոչ մի. իսկ նորոյն՝ քաջանուն էր 'ի Յունաց Մենանդր, այլ չիք այժմ 'ի միջի, և կայ նախանձաւոր հետեւող և երկիւզած նմանող նորա կամ թարգմանիչ Տերենտիոս հռովմայեցի՝ ընտիր և քաղցրաբան։

Կարկեցաւ պարն ամօթով, բարձեալ վնասուցն իշխանութեան։
Այլ Թողին ինչ անփորձ և մտրասէր ըստեղծաբանք.
Այլ ոչ փոքր առին պարծանս հարկանելով ձեռըն յանձին
Ըմբռնել զՀելլէն շաւիղս և զառատընսն իւր հրաշակել,
Այլ զլօղկեանս որ ուսուցին և որ զամ մի զպատմուճանեալս։
Այլ պերճ զինուք ուարութեամբ վեհ քան լեզուաւ գոյր Լատինն,
Ուէ դեգեր և խարտոցի ճիգըն սատան չէր քերթողաց։
Ով արիւն պոմպիլեան, լերուք տաղից դուք պարսաւիչ
Որ ոչ աւուրք յոլովք և ոչ քերուածն ընկճեաց երկար,
Այլ ոչ տասնիցս եղընգամբք յըղկեալ կոկեաց յամբոկ գործոյն։

Ոչ ի զհանճար քան զհէք արուեստ գերերջանիկ յոյժ վարկուցեալ
Այլ զըզգաստ հանէ քերթողս յԵլիկոնէ Դեմոկրիտոս,

284. Եւ հռովմայեցի բանաստեղծք զօտանայինի փորձ փորձեցին և նոքա։ Բայց նախ թարգմանել սկսան զյունականսն. և ապա առ սակաւ սակաւ համարձակեցան թողուլ զհետս նոցա, և յանձանց յօրինել Դամարերգութիւնս զազգային իրաց։ Եթէ բնիկ հռովմէական վէպն ողբերգական և կատակերգական յուսագործերոյն և յազնուականաց առեալ էր, կոչէր լօգկեան, զի լօգիկս զգեստուին նոքա, ժամանակեալս ծիրանեաւ. իսկ թէ 'ի ստականաց էր նիւթ թատերգութեանն, կոչէր պատմուճանեալ, զի համգերձ էր նոցա պարզ և անպաճոյճ պատմուճանն։ Իսկ 'ի հելլենացի վիպաց առեալ խաղք՝ կոչէին պալերգատեալք։ Եւ ուսուցանել ասին թատերական քերթողք զի ինքեանք ուսուցանէին և կրթէին զդերասանսն և բոլոր թատերն առաջնորդք կային։

289. Դեգեր է երկայն պարապուն մտադիւրութեամբ արուեստին, և խարտոց՝ քերուածն և քերթուածն և յղկումն տաղից մինչև քաղ տաղերգացին։ Զայգ ահա պակաս գտանէ 'ի լատին թատերգողսն։

290. Արիւն կամ ազգ և սերունդ պոմպիլեան կոչէ զնոյն ինքն Պիսոնեանս առ որս խօսի. զի զարմ նոցա 'ի Նումայ Պոմպիլեայ սերեալ խաղացեալ գոյր 'ի յաջորդէն Հռովմուլոսի կամ Ռոմիլոսի նախահօրն հռովմայեցի անուան և կառուցողի Հռովմ քաղաքի։

292. Եղնգամբք յղկել օրինակ առեալ է 'ի ճարտարաց արձանաց կամ փայտի, որ ծայրիւք մատանցն և հարթեալ եղնգանց զննեն զորկութիւն գործոյն. և թէ խոշորութիւն և անհարթութիւն ինչ կամ գեղութիւն ուրեք գտանիցեն, յղկեն և կոկեն։ Այսպէս 'ի կատարել իսկ գործոյն հանճարոյ ամենայն մտաւանդք՝ տակաւին մանր քննելի և ուղղելի է մինչև ցինն ամ, որպէս զինին ասէ 'ի 387։ Բայց համգերձ այսու չէ պարտ մոռանալ և զխրատն՝ զոր վերագոյն աւանդեաց, թէ՝ որ կարի ինն նրբութեան և զորկութեան տաղիցն ջան առնի, ջլատէ և կթոտէ զնոսա (27)։

294. Դեմոկրիտեայ փիլիսոփայի ասացեալ էր ուրեք, թէ առանց մեծի հանճարոյ և մոլութեան չմարթի արուեստիւ լոկով քերթող քաջ եղանել, խմանալով զգեղեցիկ մոլութիւն և զհոգեխահրաշ հիացումն մտացն՝ որով աստուածարեալ և շնչումն ինն կրեալ իբր 'ի վերուստ և այլ յայլմէ լեալ, վերամբարձ զզարմանալիսն լսողաց և զազդեցականս։ Վկայէ նմին և Պղատոն և Արիստոտէլ։ Այս է տարագիր հանել յԵլիկոնէ կամ 'ի Հելիկոնէ, որ էր լեառն Բէովտիոյ բնակարան Մուսայից։ Յայս հայեցեալ, ասէ, ոմանց անմտաց և յայս անձանց քերթողաց՝ զխօխուիւ և անյարգար և վայրենի չքնին իբրև զմոլիս. զի համարին այնու արտաքին կերպարանօք քերթող երեւել, եթէ օրինակ իմն զգլուխս իւրեանց չտայցեն սափրել Լիկինոս վարսավիրայի, զգլուխս՝ որոց ոչ եթէ միով, այլ և երիւք Անտիկիւրաւք չէմարթի բժշկել։ Եւ է Անտիկիւր կղզի մի յեգէական ծովուն, ուր առատ բուսանի

Եւ զեղընգունըս սըրբել՝ ոչ ըզմօրուս հոգան բազումք,
'Ի զանխուլ վայրս ընթանան, 'ի բաղանեաց առնուն հրաժեշտ ։
Զի զանուն ժառանգեսցեն ըզքերթողի և ըզպատիւ,
Թէ զերիւք Անտիկիւրօք անբուժելի խելապատակս
Եւ երբէք հաւատասցեն 'ի Լիկինոս վարսավիրայ ։
Ո՜վ պանդոյր ես որ առ դուրըս գարնայնոյն ըզմաղձ թափեմ .
Եւ ոք այլ ուրեք քան զիս ընտիր քերթուածըս յօրինէր ։
Այլ չէ ինչ, արդ ես ըսպաս հարից ուրեմն ըզյեսանի
Որ զերկաթ գիտէ սըրել՝ ինքըն նիազ հատանելոյ ։
Ըզպաշտօնն և ըզգործ, իմ ոչ գըրեալ ինչ, ուսուցից .
Ուստի զանձք մըրթերիցին, զինչ քերթողին սընունդ և կեանք,
Զի՛ դէպ, զի՛ ոչ, քաջութիւն մոլորութիւն յո՛ տարցին յո՛վ ։

Ըսկիզըն ուղիղ քերթութեան է և աղբիւր իմաստութիւն .
Սոկրատեան մատեանքն իցեն քեզ բաւական նիւթ ընծայել,
Եւ իրին հիւթելոյ՝ բառքն ինքնակամ գայցեն ըզհետ ։
Որ ուսաւ զինչ հայրենեաց՝ բարեկամաց զինչ իցէ պարտ,
Ո՛ր սիրով ծընօղըն իցէ՝ որով եղբայր, հիւր սիրելի,
Զինչ ատենակալ, զինչ դատաւորն ունիցին գործ,
Զինչ պայմանք զօրավարին առաքելոյ 'ի պատերազմ,
Նա գիտէ իւրաքանչիւր ումեք զարժանըն տալ անշուշտ ։

վրացի կոչին մաղձադեղ և դարմանիչ խելաց ։ Իսկ Լիկինոս էր անուանի վարսավիրայ ոմն 'ի Հռովմ քաղաքի ։

300 · Եթէ այդ այդպէս իցէ և ըստ նոցա կարծեացն պարտ իցէ գալ, վա՜յ եղուկ զիս զանմիտս, ասէ Որատիոս, որ յամենայն մուտս գարնայնոյն մաղձադեղ առեալ սրբիմ ։ Զի եթէ մաղձ դառնութեան, յորմէ և խելաց իսկ առնի խանգար, կարեւոր կամ պիտանի ինչ էր 'ի քերթութիւն, ոչ ոք անցուցանէր զինև քերթութեամբ ։ Զի մաղձաւոր իսկ աւանդի լեալ Որատիոս ։ Այլ չէ ինչ, ասէ . այս է, չէ ինչ մեծ եթէ կորուսանեմ զանուն մեծի քերթողի, և առանձնամ զիմաստնոյ ։ Այլ ուրեմն, քանզի ես չեմ մեծ բանաստեղծ, գործ յեսանի միայն կատարեցից՝ զայլս սրել . ուսուցից զպաշտօն և զգործ քերթողին, ոչինչ ունելով իմ գրեալ ։ Այսինքն զի Որատեայ չէք ինչ ընաւ գրեալ դիւցազնական տաղ կամ ողբերգական և կատակերգական որ բուն գլխաւոր հանդէսքն են քերթութեան ։ Բայց զայդ և առ չափաւորութեան և պարկեշտութեան իմա . զի ոչ եթէ չիցեն քերթութիւն և քնարերգութիւնն և խրատական քերթուածն, յորս իշխան է ամենայն լաւին քերթողաց Որատիոս ։

308 · Սոկրատայ իմաստասիրի անուամբն իմա զամենայն իմաստասիրաց մատեանն ։ Զի որովհետեւ ասաց իսկ, թէ իմաստութիւնն է սկիզբն և արմատ ամենայն ուղիղ քերթութեան, ըստ կարգի ապա առաքէ 'ի գիրս իմաստասիրաց, անտի ընդունել պատարել զմիտս ազգի ազգի հիւթովք, որոց ինքնին զհետ գայցեն բանքն և բառքն 'ի խօսել՝ 'ի պաճուճել և 'ի կենդանացուցանել քերթողաբար, և ոչ թէ փիլիսոփայօրէն անզարդս և ոյծս ճշմարտաբանել ևեթ ։

Հըմուտ նըմանողըն ըղձարս և զբարըս տաց պատուէր
Կըրկըտել, և անդուստ 'ի դուրս բերել ճըշգրիտ բարբառ։
Եւ զի սատ անդ զօշոտիչ վէպ և բարուց նըմանահան,
Ուր շընորհ ինչ ունելով ոչ մէտ կըշռոյ և ոչ արուեստ,
Քաղցր 'ի քիմս է մեծապէս ժողովըրդեան և զբօսուցիկ,
Քան թէ տաղք անհիւթաւորք և նուագաւոր մնոտեաց հընչմունք։
Օ հանճար Յունաց եւ Մուսա՝ Յունաց ողորկ լեզուով խօսել,
Ո՛յն որ ոչ յայլ ինչ ըղձաւ քան 'ի գովեստ էին ագահ։
Մանկտին հռովմէական կըրթի յուսումն երկայն հաշուիւ
Զդըրամն 'ի մասունըս կոտորել հարիւրաւոր։

318 · Նմանող ասի ամենայն բանաստեղծ, որ զկերպարանս բնութեան և զհանգամանս նկարագրել պարտի՝ նմանող նմին լինելով յամենայնի ըստ ընտրական գեղեցիկ ճշգրտութեանն։ Արդ այսպիսում պատուէր տայ՝ քաջ նկատող գիտող և զննող լինել ամենայն ազգի ազգի բարուց և վարուց, և ըստ այնմ կենդանագրել զնոսա ճշգրիտ կամ կենդանի ձայնիւք, որպէս թէ արդեամբք և կենդանեաւ 'ի միջի կայցեն նոքա կամ խօսիցին, զորոց զկերպարանսն առնու։

317 · 'Ի ցուցանել թէ քանի մեծ է զօրութիւն կենդանի նկարագրութեան բարուց՝ օրինակ տայ, զի երբեմն վիպասանութիւն ինչ՝ թէ և ոչ այլ ինչ շնորհ ունիցի, ոչ ծանրութիւն ինչ իմաստից և ոչ արուեստ, այլ միայն 'ի տեղիս 'ի տեղիս պայծառ և երևելի իցէ, բայց ճշգրտագործ բարացուցական նկարագիր, այն յափշտակէ զժողովուրդն, զազգն, քան թէ տաղաւորք անիմաստք կամ անիրք, և լոկ մնոտիք քաղցրահնչականք։ Փոխանակ տաց անդ կամ ուրէք ուրէք ասելոյն՝ կէս օրինակք ընթեռնուն խաղուք կամ կատակօք և զուարճաբանութեամբք. միով տառիւ զանազանեալ 'ի լատինն locis և jocis։

321 · Մուսա, որպէս յայտ է, էր աստուածուհի դպրութեանց, գիտութեանց, երաժշտութեան և ամենայն ազգի ազգի հանճարոյ, և առանձինն բանաստեղծութեան։ Ինն քորք էին դստերք Արամազդայ, միով հասարակաց անուամբ Մուսա կոչեցեալք։ Ողորկ լեզուն է ճախարակեալ յղկեալ և կոկ բարբառ, որ զյարդարուն կատարումն և զքաղցրութիւն յայտ առնէ։ Իսկ ագահն՝ եթէ զտենչացօղն գովութեան և եթէ զճշգօղն նշանակէ։ Զի էին իսկ Յոյնք սաստիկ փառասէրք և ցանկացօղք գովեստի, և միանգամայն ակիշոք և ժլատք 'ի գովել վարկպարազի զայլս. որով և ինքեանք 'ի փոյթ լաւութեան և քաջութեան անդէին զանձինս, և զպարծանս ներբողի տային միայն արժանաւորաց. և երկոքումբ այդու 'ի կատարումն ամենայնի խրախուսէին։ Այս են հռչակ գրուատելի յունական հանճարոյն և ողորկութեան տաղից յՈրատեան գրչէն՝ զինչ պարծանս չիցեն Հեղլէն քերթութեանց, որոց բազումք՝ աւա՛ղ՝ չեն այժմ 'ի միջի։ Զայս Որատիոս յիւրում ժամանակին առաւուրան. բայց մեզ ընդ Հեղլենացիսն վայելէ դասել և զոմանս 'ի հռովմայեցւոց, ըզՏերենտ, զԿատուլ, զՎիրգիլ, զնոյն ինքն զՈրատ և զՏիբուլ, որ ոչինչ ընդհատ են 'ի նոցանէ հանճարով և ողորկութեամբ տաղից ըստ տանելոյ լատին լեզուի։

324 · Դրամն է վեց դանգ, դանգն երկոտասան գարի. չորրորդ մի դանգին կամ երեք գարին ասի եւ թասու. և վեց գարին է կէս դանգ, որպէս ինքնին իսկ յայտ է։ Արդ առ Յունաց ճարտարութեամբն զհռովմայեցւոցն եդեալ հեգնօրէն, աքա՝ ասէ՝ 'ի հաշիւս ընչից և մեծութեան պարապին, և քաջք իսկ են. փորձով ցուցից. աւասիկ որդին Ալբինոսի վաշխառուի կամ փոխատուի. տեսէք զիարդ ճարտար է 'ի գիտութեանս։ 'Ի հինգ գարեաց հանեալ զերկուսն՝ զինչ մնայ, ասէ ասա։ Եւ իբրև թէ մանուկն ասացեալ իցէ առաւել կորէն երեք, կամ թէ ըստ օրէնս ուսուցողի մանկան՝ Որատիոս թելադիր լինի զձայն արուեստին քաղցրերելով միանգամայն մարդասիրութեամբ, թէ կարէիր ասել թասու։ Եւ ապա ընդ հինգն կամ 'ի դիմաց լսելեացն ձայն արձակէ գովութեան, թէ ո՜վ զօր ես դու և կարօղ 'ի պահպանել և յաճեցուցանել զստացուածս։

'Ի հընգից եթէ զարկաց բարձցին երկուքըն՝ զի՞նչ մընայ.
Պատգցէ որդին Ալբինի. — կարող էիր ասել՝ Թասու.
Ա՜շ քաջիդ, դու զօրաւոր լիցիս պահել ըզմեծութիւնդ:
Այլ անդրէն դառնայ գայ մի զարին, արդ զի՞նչ լինի. — կէս դանգ:
Որ միանգամ ժանգ և հոգ ըստացուածոց յայս 'ի տոգորս
Զոգիսն արբուցեն, իցէ՞ տաղից յոյս քերթածաց
Որ օծմամբ եղևնիւ կնքեալ պահեստ փայլուն նոճւոյ:

Կամ օգտել կամին քերթողք կամ հեշտութիւն մատուցանել,
Կամ զօգուտ խօսել կենաց և զախորժակ միանգամայն:
Որ զինչ պատուիրեսցես՝ համիրճ խօսիք լեր համառօտ,
Զի փոյթ առցեն միտք հըլուք և անկորուստ կալցին ըզբանն.
Ամենայն աւելորդ 'ի թաթաղուն սըրտէ զեղու:
Պաճուճեալքն 'ի զուարճութեան պէտըս՝ լիցին հուպ ճըշմարտին,
Մի զորպէտ պահանջեսցէ դող առասպելդ հաւատարիմ,.
Մի զկերեալ վըհուկ ճուաղանն ողջ 'ի պորտոյն հանցէ մանուկ:
Խրախանք աւագ՝ զտաղս հալածեն անշահեկանս,

Նա կրկին հարցանէ ցմանուկն, թէ յերկուց զարկաց անտի բարձելոց մին գայ յաւելլու, ոչ 'ի մնացեալ երիսն, այլ 'ի նոյն յառաջին հինգ թիւն, զի՞նչ լինի: Նա գտնէ զպատասխանին՝ թէ կէս դանգ, որ է վեց զարկ՝ որպէս առաջագոյն:

329. Ագահութիւն իբրև ժանգ երկաթոյ կամ պղնձոյ մածնու 'ի հոգիս և դըժուարաջնջելի է: Արդ, ասէ, ուր այսպիսի ագահութեամբ տոգորեցին ոգիքն, կայցէ՞ անդ յոյս այնպիսի տաղից՝ որ իւղով եղևնեաւ օծեալ պահպանեսցին իբրև գանձ պատուական 'ի նոճեայ սըրտաւաշ արկեղ: Զի եղևնի իւղով օծանէին 'ի հնումն զմեծարգի գրեանն, և պահէին յողորկ և 'ի պայծառ արկղ նոճի՝ առ անապական մնալոյ 'ի ցեցոյ և 'ի փտութենէ:

332. Ամենայն քերթուած կամ առաւել յուսուցանել ինչ է, կամ առաւել 'ի զուարճացուցանել, կամ զերկոսին միանգամայն խառն գործէ: Արդ եթէ խրատ ինչ աւանդես, լեր համառօտախօս և վճռաբան. զոր սքանչելի օրինակաւ իսկ իւրով ուսուցանէ Որատիոս 'ի բոլոր քերթողականի աստ: Զի ամենայն առաւելագանցն և աւելորդն հոսէ և թափի յուշոյ մտաց իբրև 'ի թաթաղուն և զեղուն ամանոյ, ուր աւելին քան զչափ իւր ոչ մնայ, այլ արտաքս հեղու: Իսկ եթէ առ 'ի զուարճութիւն ինչ ստեղծանես, մերձաւորք ճշմարտին լինիցին և հաւանականք. և մի զոր ինչ և կամի առասպելդ պահանջեսցէ հաւատալի լինել, մի յանդգնեսցի իբրև արժանահաւատ ինչ յառաջ բերել. մի, օրինակ իմն, զկերեալ և զկլեալ տղայն 'ի ճիւաղէ կամ 'ի մարդադայլոյ՝ հանցէ կենդանի 'ի փորոյ նորա:

340. Հասունք հասակաւ և ծերունիք անգոսնեն խոտեն և մերժեն զանպտուղ և զանօգուտ քերթածս. իսկ երիտասարդք խրոխտք և բարձրավզք կամ բարձրամիտք քամահաբար անտես առնեն զխստակրօնսն և զխրատականսն: Վասն որոյ զամենեցուն վճիռ հաճութեան հաւանութեան առնու՝ որ զօգուտն ընդ հեշտութեան խառնէ 'ի քերթածումն իւրում: Այնպիսի մատեանն, ասէ, յաջողութեան գնողացն, շահ բազում արծաթոյ բերէ Սոսեանց, գրավաճառաց Հռովմայ. փափագելի եղեալ խնդրի յոտար աշխարհաց, և անդր ընդ ծովս անցանէ. և հռչակաւոր մատենագրին երկարօրեալ կեանս յաւելու՝ կենդանի պահելով եւ յետ մահու զհամբաւ և զանուն նորա յազգս յաւիտենից:

Նշպետք վըսեմական՝ զարդապատեանս յընչաց քերթեն․
Զամենայն լինու զհաճոյս որ զպիտանին խառնէ ՚նդ անոյշ,
Ընթերցողին ՚ի հեշտանս ընդ նըմին զգոյշ և առ ՚ի խրատ:
Այն մատեան շահի Սոսեանց արծաթ, ընդ ծով այն անցանէ,
Եւ երկայն յաւիտեանս հռչակելում նօթձէ գրչին:

Սակայն են ևյանցանք որոց հաճոյ թըլի ներել․
Զի և ոչ լար զոր կամի ձեռնըն և միտք՝ արձակէ ձայն,
Եւ ըղթաւ պահանջողին ըզսուկըն տայ բազում անգամ․
Եւ ոչ աղեղն հարցէ միշտ՝ ուր միանգամ ըսպառնացի:
Բայց ուր բազում ինչ փայլէ ՚ի քերթածի՝ չտարայց ընդ միտ
Ըզսակաւ ինչ արատ զոր կամ եհեղ անհոգութիւն,
Կամ թէ բնութիւն մարդկային ըստ արժանի չըզգուշացաւ:
Զի՞նչ ապա․ զոր օրինակ գրագէտ դըպիր՝ թէպէտ խրատեալ,
Եթէ զնոյն մեղիցէ ցանգ՝ ոչ արժանի է թողութեան,
Եւ ծաղըր կայ քնարահար՝ որ միշտ ՚ի նոյն լար սըխալէ,
Նոյնպէս ինձ գըթեալն յաճախ լինի վըրիպակն այն Քիրիլոս
Զոր լաւութիւն երկից ուերիցս հանդերձ ծաղու զարմանամ,
Եւ նոյն ինքնըս ցասնում յորժամ ննջէ քաջըն Հոմեր:

351. Ակամայ և թեթև թերութեանց ինչ արժան է համբերել և ներողամիտ լինել․ զոր և օրինակօք լարի քնարին և աղեղան յայտ առնէ: Զի ակամայն չէ եկեալ ՚ի գիտութիւն հօր բանին և ոչ ՚ի ձեռս իւր է, իսկ թեթևն՝ իբրև գոյզն ինչ անփոյթ առարեալ է կամաւ, կամ սխալմամբ և անզգաստ բնութիւն մարդկային ոչ է կարացեալ ըստ արժան բաւականին զգուշանալ ՚ի մանուանց անտի՝ յաւելեալ ուշի ուշով ՚ի մեծամեծ գեղեցկութիւնսն և յափշտակեալ ՚ի նոցանէն: Զոյգ սմին բարբառի և Լոնգինոս յոյն ՚ի Ճառի Վսեմին․ գլ․ ԽԷ:

353. Իսկ զի՞նչ ապա․ ուրեմն այսպիսի մեկնութեամբք արդարացուցանել և անբասիր առնել պարտ իցէ զամենայն սխալանս քերթողաց: Ոչ, ասէ․ այլ որպէս գաղիր եթէ ցանգ զգուշացուցեալ և ցանգ սխալիցի ՚ի նոյն առաս, անարժան հանդիպի ներողութեան, և ծաղր լինի քնարահար՝ որ յար և հանապազ ՚ի մի և ՚ի նոյն լարի կամ ՚ի մատնին փրիպեսցի․ այսպէս առէալ առէալ սխալեալ և անկեալ քերթողն, յորում յաճախագոյն են մեղանք և տգեղութիւնք քան զուղղութիւնս և զգեղեցկութիւնս, համարեցայց ինձ իբրև զՔիրիլոսն զայն յոյն բանաստեղծ անարուեստ և անհանճար առ Աղէքսանդրիւ մակեդոնացւով․ ընդ որոյ եթէ ընդ գովելիս ինչ զարմանայցեմ ուրեք երբեք, սակայն ծաղրեմ ես ընդ քինս ՚ի վերայ յաւութեանցն, և թէ զիարդ ընդ այնքան և այնպիսի անպիտանութիւնս գտանիցին և զարմանալոյ ինչ արժանիք: Այս քերթող աւանդի յոմանց այն լինել, առ որ ասացն Աղէքսանդրոս՝ թէ ըղձալի է ինձ ՚ի Հոմերանի վէպսն Թերսիտէս գոլ քան ՚ի քուդ Աքիլլէս: Եւսեբիոս եւ յիշատակէ ՚ի Քրոնիկոնին Քիրիլոս զոմն անուն, բայց ճիւ ամաւ յառաջ քան զժամանակսն Աղէքսանդրի մեծի, առ առաջնով Աղէքսանդրիւ մակեդոնացւոց արքայիւ: Ոմանք զլատին բառն oberrat զքնարահարէն՝ իմացեալ են որ միշտ ՚ի նոյն լար գեգերի, որ հարկանէ միշտ զնոյն լար․ բայց ուղիղ ոչ է ըստ ամենայն հաւատարիմ մեկնչաց․ զի բանն զխալելոյ է միշտ ՚ի նոյնս, և ոչ զատաղտուկ յարամնայնութենէ:

358. Իսկ ընդ հակառակն զժգամիմ խոժոռիմ և իբրու ընդ անձին ոգորիմ յորժամ

Սակայն յերկար 'ի վաստակ մարթի թէ քուն սպրդիցի ։
Քերթուած, որպէս նըկար, է ինչ՝ որ մօտ եթէ կայցես,
Այլ է՝ որ քաջ 'ի բաց կացեալ ըզքեզ յինքն յանգուցէ.
Սիրէ այս ինչ ըզմութ, լուսով կամի գալ այն 'ի տես
Որ 'ի նուրբըն սրութենէ դատաւորին երկընչի ոչ ։
Գամ մի եղև սա հաճոյ, նա տասն անգամ լըցի՝ կըրկնեալ ։

Ով երէցըդ պատանեաց, թէ և ձայնիւ հայրականաւ
Յուղիղ անդըր թեքիս և դու քեզէն ես իմաստուն,
Զայս քեզ առջիր ասացեալ՝ յեռեալ 'ի միտսըդ անմոռաց.
Ան են ինչ՝ որոց ուղիղ շնորհի միջակն և տանելին.
Չափաւոր իրաւագէտ և դատաստաց ոք ատպաքէն
'Ի պերճախօս Մեսալայն հեռի դըմնի քաջութենէ,
Այլ չէ գիտուն յԱւլոսի Կասկելեայ չափ, սակայն յարգի.
Քերթողաց՝ ոչ մարդ ոչ դիք ոչ սիւնք ներեն լինել միջակ ։

նիրհէ երբեք ուրեք քաջն Հոմերոս, զայն թեթև աղուեսաքուն անգամ անվայելուչ համարեալ այնքանոյ քաջի և սիրելւոյ քերթողահօր ։ Եւ սակայն 'ի գործս երկայնս իբրև զնորայն՝ չէ ինչ գիւրին յամենայնի ամենայն ուրեք արթուն և զգաստ գտանել և ոչ նիրհ առնուլ բնաւ ։ Են որ զբնագրին quandoque իմանալով առ Ներէնս, այսպէս յարմարեն զիմաստսն. Ընդ Քերիլոս երկիցս և երիցս հանդերձ ծաղու զարմանամ, բայց և ցասնում իսկ. երբեմն նիրհէ և քաջն Հոմերոս, սակայն յերկար վաստակ որպէս 'ի նորայն գիւրին է քնոյ սողոսկել ։

360 · Որպէս և Սիմոնիդէս ասէր քերթողն, բանաստեղծութիւնն է խօսուն նկարչութիւն, և նկարչութիւնն՝ լուռ բանաստեղծութիւն ։ Նա բանիւք նկարէ, սա երանգովք խօսի. երկոքեան այլ և այլ միջնորդօք զմի և զնոյն գործ վճարեն զիրսն կենդանագրել, ուսուցանել, շարժել և հեշտացուցանել ։ Է ինչ որ 'ի մօտոյ բարւ երևի 'ի քերթուածս՝ որպէս 'ի նկարս, և է որ 'ի հեռուստ ։ Իմա զայս թէ զամբողջ քերթուածէ, և թէ զմասանց քերթուածի ։ Է ինչ որ խնամով յօրինեալ չերկնչի 'ի լուսոյ և 'ի մտադիւր նկատողութենէ, և միշտ ախորժելի լինի. և է որ իբր հեռաւոր տարերս ուրուագրեալ միայն հեռի կամ աղօտ տեսութիւն պահանջէ, և ընդ այլ գլխաւոր և կատարեալ մասունս գեղեցկութիւն գործէ, և չափօք յինքեանս ևեթ առանձինն նկատել զայնս. կամ միանգամ ևեթ տեսեալ վեր 'ի վերոյ և 'ի հարևանցի՝ չլինի անհաճոյ, բայց յերկար և մանր զննութեան ոչ ժուժկալէ ։ Այսու ակամբ կամ մօք հայելի է յամենայն քերթուածս, և մի զամենայն միով կշռով կշռել և միով դատաստանաւ դատել ։

365 · Դարձուցանէ զդէմս բանին առ երէցն յերկուց անուանի եղբարց պիսոնեանց, զորմէ ասեն 'ի քերթութիւն զակատեալ և ողջերգութիւնս ինչ յօրինեալ ։ Թէպէտ, ասէ, և բանիւք հօրդ խրատիս յուղղութիւն և 'ի լաւութիւն քերթուածոց, սակայն առ 'ի չփութալ քերթող երևել՝ զայս զիմ խրատ քեզ համարեալ յուշի պահեա. զի թէ այլոց գիտնոց կամ ճարտարաց շնորհեալ է չափաւոր, միջակ և տանելի լինել, սակայն քերթողաց ամենևին ոչ ։

370 · Վալերիոս Կորուինոս Մեսալա էր ճարտարախօս անուանի ժամանակին, և Աւլոս Կասկելիոս՝ հզօր իրաւագէտ ։

372 · Դիք իմանին Ապոլոն և Մուսայք դիք բանաստեղծութեան ։ Իսկ սիւնք՝ էին 'ի գաւթի ուրեք Հռովմայ, ուր գրավաճառք վաճառէին գիրս, կամ կախէին զնոցանէ զվաճառելի գրեանն և զյայտարարութիւնս նոցին ։ Զմիջակային և զհետևակ քերթողաց գիրս մերժէին գրավաճառք, և ոչ հանէին յերևան. զի ոչ ոք կայր նոցին առգնող ։ Ըստ այլոց իմանին սիւնք պա-

Իբր 'ի հեշտ խընջոյս փառսեն անմիաբան արուեստականք
Եւ թանձր օծանելիք և ընդ սարդիկ մեղու խաշխաշ,
Զի էր և առանց սոցին յընթրիսըն խրախանալ.
Նոյնպէս տաղք 'ի հեշտութիւն ոգւոց ծընեալք և ճարտարեալք
Եթէ դուն ինչ 'ի բարձուէն ընկըրկեսցին՝ գըլին 'ի ստոր։
Որ խաղուց չիցէն տեղեակ՝ յասպարիսին խորշի զինուց,
Անհըմուտն անուոյ՝ գընդի և շըրնչանան նըստի հանդարտ,
Զի մի քըրքիջ աներկիւղ բարձցեն ակումբք կուռ բոլորեալք.
Որ անգէտն իցէ տաղից՝ ժըտի սակայն ըստեղծանել։
Ընդէ՞ր ոչ. ազատ՝ ազնիւ և մանաւանդ դըրամից գըլխով
Սակեալ թիւ ասպետական և անարատ ամենևին։
Դու մի խօսիր կամ առներ ինչ յակամայս Աթենասայ.
Այն քո խելք և այն է միտք. իսկ եթէ ինչ հարցես 'ի գրի,
Իջցէ յունկըն դատողին Մետեայ՝ 'ի հօր քոյ և 'ի մերս,

լատեան տաճարին Ապոլոնի և մատենադարանին՝ շինելոց Օգոստեայ հրամանաւ յապարանս իւր, ուր ընթերցեալ լինէին ընտիր ընտիր քերթողացն մատեանք հըմտից քննութեամբ, և ապա դանձեալ անդէն 'ի պահեստ։

373. Օրինակ իմն, որպէս 'ի հեշտալի խրախճանս կոչնոց՝ փոխանակ օգտի վնասեն անմիաբան անյարմար նուագածութիւնք, և թանձրամած ապականեալ իւղ օծանելի, և խաշխաշն ընդ մեղուն Սարդիա կամ Սարդինիա կղզւոյ, ուր առ դառնութեան բուսոցն դառն է և մեղրն. զի չէր ինչ կարևոր պէտք այդոցիկ, այլ 'ի հեշտութիւն միայն լինելոց էին՝ թէ լինէին ըստ պատշաճի. այսպէս իմա և զքերթուածս։ Սպիտակ խաշխաշի սերմն, ըստ Պլինիոսի, աղանձեալ՝ 'ի սեղան աղանդերոց նախնեացն մատչէր հանդերձ մեղու։

378. Իմա զխաղս մարմնոյ հրահանգաց 'ի կրթարանս արխեան ասպարիսին, ուր մանկունք հռովմէական ընդ կիրթ ելանէր։

382. Զայս իմա հեգնօրէն 'ի գլխոց կամ ըստ կարծեաց անհանճար և անարուեստ քերթողի ուրուք։ Զմէ՞ ոչ քերթիցեմ, ասէ, տաղս. ո՞չ ապաքէն ազատազգի եմ և ազնուական, և որ մեծն է՝ ըստ հաշուի գլխոց արծաթոյ համարեալ եմ 'ի դասս ասպետաց կամ սեպհաց, որ էր քառասուն բիւր դրամից. և յամենայն ախտէ զերծ, որպէս թէ անմեղութիւն վարուց միայն բաւական իցէ կամ նպաստ ինչ 'ի քաջ քերթողութիւն։

384. Աթենաս էր աստուածուհի իմաստութեան և հանճարոյ և ամենայն ճարտարութեան։ Քո, ասէ, իմաստութիւն և ուղիղ ընտրութիւն այն լիցի, զի հակառակ հանճարոյ քում և բնաւորութեան կամ ախորժակի յակամայ կամս մի ինչ խօսեսցիս իբրև ճարտասան, և մի ինչ արասցես կամ ստեղծցես իբրև քերթող կամ ճարտար։ Եւ գիտեմ թէ այդպէս առնիցես. զի այնպիսի իսկ կամ այնչափ է քո խելքդ և միտքդ։ Իսկ եթէ գրեսցես ինչ, մատիցէ այն յունկն 'ի լսել Սպուրիոսի Մետիոսի Տարպեայ՝ լաւոյ քննողի և դատողի քերթուածոց և քերթողաց 'ի նախասացեալ պալատեան տաճարին Ապոլոնի և Մուսայից և 'ի մատենադարանին, այլ և յունկն հօր քոյ և 'ի մերս՝ յանաչառ դատաւորաց։ Եւ յետ այնորիկ եւս՝ մատեանքդ 'ի ներքս 'ի տան կամ յարկեղդ պահեսցին զամս ինն, այս ինքն է բազում, առ ուղղել և յղկել եւս քան զեւս։ Զի մարթի ջնջել և կորուսանել զոր չեւ է 'ի լոյս ելեալ. իսկ միանգամ 'ի դուրս ելեալ բարբառ կամ մատեան, ոչ եւս այնուհետև գիտասցէ դառնալ յետս։ Զինն թիւն, որպէս եգաք, փոխանակ բազմի առնուն. այլ ընդէ՞ր ինն, և ոչ եօթն կամ տասն։ Թերևս վասն ինունց եղելոց Մուսայիցն, դից քերթութեան, դստերց Մընեմոսինեայ, որ է յիշողութեան. զի մի ըստ միօջէ յուշ արասցեն նմա զուգզելեան եւյարմարելիս։

Եւ զինն ամ, մագաղաթիցդ ՚ի ներքս արկեալ, կացցէ ՚ի պահ.
Կայ ջնջել զանտեսն ՚ի լոյս, ձայն արձակեալ չունի դառնալ։

Զվայրագ մարդիկ սուրբն Որփեւս և աստուածոց պատգամաւոր
Յարեանց ու՚ի շաղղակեր վարուց կենաց դարձոյց ՚ի բաց,
Ասի զվագերս համբաւեալ և զամեհիս կակղել առիւծս։
Եւ Ամփիոն՝ ոստանին պատմի կերտօղըն Թեբայեցւոց
Ըզքարինս ՚ի ձայն փանդռան դղրնչեցուցեալ ոստուցանել
Եւ ամոք ողոքանօք տանել բերել յուպէտ յուկամ։
Այս երբեմն իմաստութիւն եղեւ՝ ընտրել ըզգօնաբար
Ըզսուրբսըն ՚ի պըղծոց և զաշխարհին յիրաց անձնիւր,
՚Ի մոլոր կարձել խառնից, դընել դաշինս կանամբեաց,
Շէն կառուցանել, գըծել օրէնս ՚ի տախտակի.
Այսպէս եկն ՚ի դիւցական Ճարտարս ու՚ի տաղս անուն և փառք։
Յետ սոցա մեծըն Հոմեր և Տիւրտէոս ՚ի նուագս երգոց
Զոգիս արիականս յարիական վառեցին զօռ։

389. Զի մի այսքան խրատուք զգուշութեան ահաբեկ արարեալ քնուսցէ ինչ զՊիերիդեանն կամ ապարտուցէ ՚ի քերթողութենէ, սկսանի այժմ զգովութիւն և զպարծանս քերթութեան և քերթողաց համառօտիւք ՚ի համար արկանել։ Որփեւս կամ Որփէոս վաղնջական քերթող անուն էր և երաժիշտ Թրակացի. և իբրև աստուածարեալ անձն, և գեղ պատգամախօս՝ իբրու հրեշտակ ՚ի գիմաց նոցա եկեալ առ մարդիկ, որդի ասացեալ Ապողոնի և Կալիոպէ Մուսայի։ Քաղցրութեամբ և իմաստութեամբ տաղիցն զգօնացոյց զառաջին զվայրենի մարդիկն՝ հրաժարեցուցեալ յաւրէնհեղութենէ միմեանց կամ յըմպելոյ զարիւն և յուտելոյ զհում միս որսոց վայրի։ Լատին բնագիրն ունի ՚ի գործածէն հերոյ. զոր ոմանք խոտորեալ խոտանաւոր անասնակերպ կեանս իմանան։ Իսկ այլք գիշակեր կամ շաղղակեր, որ նման աս է. զի ահա անդէն իսկ առ նմին ՚ի վագերս և յառիւծունս օրինակին։

392. Ամփիոն նմանապէս էր մի ՚ի հին երաժշտաց և քերթողաց, որդի համբաւեալ Արամազդայ և Անտիոպայ. զորմէ զրուցեն առասպելքս՝ թէ ճարտարութեամբ մատանց քնարին և քաղցր նուագօք շարժէր տանէր ըստ կամս և ըստ պէտս զքարինս, և նոքօք զԹեբայեցւոց քաղաքն կանգնէր։ Որ է ասել, թէ զվէրս և զխիստ սրտորն ՚ի շինութիւն և քաղաքական կեանս յօրդորեալ յանկուցանէր։ Ոչ Որփէէ և ոչ Ամփիոնի տաղք ինչ կան առ մեզ. որ վիպականք ինչ որ երեւին՝ անվաւերականք են։

398. Նախնի քերթողացն գործ այն էր, ասէ, որոշել զսուրբսն ՚ի պղծոց, այսինքն ուսուցանել զինչ սուրբ իցէ և բարի, զինչ պիղծ և չար. զատանել զհասարակացն յառանձնականաց, առ հասարակութեան տասւել պատիւ քան առանձնականաց. արգելուլ ՚ի մոլորական և ՚ի Թափառական խառնից ամուսնութեան, և աւրանց օրէնս հարսանեաց կարգել. քաղաքս շինել, օրէնս գնել, և այլ այսպիսի կենցաղօգուտ իրս։ Եւ այսպէս անուն և փառս ժառանգեցին աստուածային քերթողք և քերթուածք։

400. Հոմերոս յայտնի է ամենեցուն։ Իսկ Տիրտէոս կրտսեր առաւելապէս քան զՀոմերոս՝ էր անուանի քերթող աթենացի, որոյ կան ցայժմ չորք տաղք խրախուսիչք մանկտւոյ ՚ի մարտ և ՚ի մահ գեղեցիկ ՚ի վերայ հայրենեաց։ Արիական ասել է պատերազմական. զի Արէս էր գիք պատերազմի։

Տաղիւք պատգամք խօսեցեալք և ճանապարհ կենաց ցուցեալ,
Պիերեան եղանակօք թագաւորաց խնդրեալ շնորհք,
Նա խաղուց եկեալ 'ի գլուխ՝ երկայն երկոց դուլ և հանգիստ։
Մի կիրթն 'ի վերն Մուսա ւերգիչն ամօթ թուեսցի քեզ Ապողոն։

Խնդիր է, բնութեամբ լիցին թէ արուեստիւ տաղք գովելիք։
Ես ուսումն կըրթութեան առանց առատ ձոխ երակաց
Նա ոչ թէ զինչ բիրտ հանճար օգուտ իցէ՝ տեսանեմ ես.
Նոյպէս սիրով դաշնաւոր զմիմեանց նըպաստ հայցեն դոքա։
Ընկըրոտեալն 'ի ցանկալի ասպարիսին ժամանել կէտ
Աստակեաց յոյժ 'ի տղայ տիս՝ 'ի քիրտն 'ի ցուրտ համբերատար,
Ժուժկալեալ հրաժարեաց յԱստըղկանէ և 'ի գինւոյ.
Որ զպիթեանս երգէ փողար՝ ուսաւ սաստիւ նախ վարժողէն։
Զարդիս շատ է ասել՝ ես հրաշալի տաղս յօրինեմ.
Ընդյետնեալըն քոս առցէ, ամօթ է ինձ յետոյս մընալ՝
Ստուգիւ յոր ոչն ուսայ զանգիտութիւն լեալ խոստովան։

Զոր օրինակ վաճառուց զամբօխն 'ի գին խըրմէ քարոզ,

402. Ոտանաւոր և չափական բանիւ խօսեցան պատգամք գից և խրատք վարուց աւանդեցան. պիերեան եղանակօք, այս ինքն երաժշտաց և Մուսայից նուագօք որ 'ի Պիերիա լերին Բիովտիոյ օթացեալք և պիերեանքն կոչէին, որ է ասել զարձեալ տաղից երգովք խնդրեցան շնորհք կամ հովանաւորութիւն արքայից. և խաղք թատերականք հնարեցան 'ի գիւղ և 'ի հանգիստ պարապոյ և տօնական աւուրց աշխատելոցն երկայն վաստակովք։ Այս ամենայն բարիք 'ի քերթութենէ յառաջ եկին, ասէ. վասն որոյ մի ամօթ ինչ համարիցիս զՄուսաս՝ զճարտարն 'ի քնար, և մի զնուագօղն Ապողոն, այս ինքն է զքերթողութիւն. որ թէ չիցէ ճարտար և նուագաւոր, յայնժամ ապա յիրաւի յամօթ համարեսցի։

407. Արուեստ և ձոխ երակ որպէս աղբերց և բովուց՝ է յորդութիւն բղխմանց և ծննդոց բնատուր հանճարոյն, որ հիմն է ամենայնի. բայց արուեստն ուղղէ և կատարէ զայն։ Համգոյն Որատեայ խօսի և Լոնգինոս յայն յաղագս այսր խնդրոյ 'ի ճառի Վսեմին. գլ. Բ. Լ։

410. Որ ցանկայ ըմբռնել զնպատակն և զմրցանակն յասպարիսական մրցութեանս, 'ի մանուկ տիոց յայն կրթի. ընդ քիրտն գայ և ընդ ապաժոյժ, և 'ի ցրտոյ բրտանայ և ամենայնի համբերէ, ժուժկալէ յաստղկեան հեշտութեանց առ 'ի պահպանել զարութիւն մարմնոյն, նա և 'ի գինւոյ ևս։

413. Փողահարն որ նուագէ 'ի հանդէսս պիթեան խաղուց ապոլոնեան տօնին, յառաջագոյն ուսանի երկիւղածութեամբ 'ի վարժապետէն։ Իսկ այժմ 'ի դժուարագոյն արուեստիս բաւական է ասել միայն անձնապանծ խրոխտանօք, թէ ես զարմանալի քերթածս հիւսեմ. և անէծս կարդալ, թէ քոս հասցէ այնմ որ երկուցեալ յետս մնասցէ. ինձ ամօթ է այդ, և ճըշմարտիւ խոստովանել թէ չգիտեմ զայն ինչ յոր չեմն կրթեալ։ Քոս առցէ ասելն առակաւոր անէծք են, առեալ 'ի խաղուց մանկտւոյն, որ այնպէս անիծանէին որոց կատարեալ յետս մնայցին յարշաւս։

417. Սկսանի այսուհետև զգուշացուցանել 'ի շողոմարար և 'ի շնթող գովասանորաց և գովաբանից։ Որպէս հրապարակն կոչէ, ասէ, զժողովուրդն 'ի գին վաճառուց կամ յաճուրդս՝ յուսով շահից, այս

Հրաւիրէ զմարդահաճոյս գընալ 'ի շահ և բանաստեղծ
Մեծատունն ագարակօք, դահեկանօք վաշխից փարթամ :
Իսկ թէ իցէ ոք ատակ կոչնականին տալ բարձ 'ի դէպ,
Մըտանել երաշխաւոր կալ փոքրոգի չըքաւորին,
Եւ թափել ըզպաշարեալն 'ի միգապատ դատից փուրսիչ,
Զարմացայց թէ գիտիցէ 'ի բազմերանն արբեցութեան
Ընտրել ըզճըշմարիտն 'ի նենգաւոր բարեկամէն :
Դու թէ ումեք շնորհիցես կամ թէ շնորհել ինչ կամիցիս,
Մի առ քո քերթեալ տաղս ըզզուարճալիցն առեալ տանիր.
Զի անդէն գոչիցէ՝ վա՜շ, գեղեցի՜կ, բարւո՛ք, ազնիւ.
Խալկասցի առ սոքօք, աչքըն սիրունք քամեսցեն ցօղ,
Վազեսցէ 'ի վեր ընդոստ և կայթս ոտիւքըն դոփեսցէ :
Զերդ վարձուորք 'ի դիահանս որ կոծ ջայլեն եղերամարք
Առաւել ասեն առնեն անդ քան ըզլաուն սերտ սըգաւորս,
Նոյնպէս կատակն այպանօղ քան զհաւաստին շարժի գովիչ :
Ասեն զարքայս յորդ գինեաց նուագօք նեղել և խոշտանգել
Ում ջանան գոլ խելամուտ թէ արժանի սիրոյ իցէ :
Տաղս հիւսեալ քո՝ քեզ մի բնաւ դաւեսցեն միտք աղուեսակերպք :

պէս և մեծատունն բանաստեղծն զսուտակապաստ :

420. Իսկ եթէ իցէ ոք, որ մեծութեամբն կամ առատութեամբն բաւական ևս գոյցի մեծամեծար պատիւ տալ հրաւիրելոցն, յերաշխի առնուլ զթեթևամիտ և զյողդողդ և նենգաւոր կամ զանիրաւ և զգօս աղքատն, և ազատել 'ի խաւարային դատից զվարակեալն, զարմանք իցեն եթէ կարասցէ այնպիսին 'ի կարծեալ երանութեան անդ ընտրութիւն առնել ճշմարիտ և սուտ բարեկամին : Զի չթողացուսցեն զայն նմա շողոքորթութիւնք երախտաւորելոցն, որ բարեմարդիկն կամին լինել պաշտօն առնելով :

426. Զայցեալն զուարճութեամբ ընկալեալ շնորհացն առ 'ի քէն կամ յուսով ակընկալութեան ընդունելոցն : Զի ընդ լըսելն զքոյսդ, 'ի գովեստ արձակեսցէ զլեզուն : 'Ի վերայ այսոցիկ՝ ձևոցի ևս, թէ առ թնդալ սրտին և ոգւոյն խռովել՝ իբրև թալուկ իմն զարտիւն գայցէ, և այլ յայլմէ լեալ հիասցի 'ի զմայլիցն, և առ գորովանացն արտասուեսցէ 'ի սիրայորդոր աչացն, և այլն : Ամենայն առ երեսս և սուտութեամբ, որպէս լալականքն առնեն առ մեռեալս այլոց, որ քան զբուն սերտս գնացելոյն առաւել զկոծն սաստկացուցանեն և զգովասանութիւնս հրաժարելոյն :

433. Միտս ուսիր յարքայից, 'ի հարուստներանց. որք իբրև կամին փորձել զոք՝ թէ իցէ բարեկամութեան իւրեանց արժանի, բազում գինեաւ տագնապեն, և իբրև թէ 'ի հարց փորձ արկանեն. զի յորոց 'ի զըւարթութեան անդ համարձակ գործիցէ, անտուստ 'ի միտ առցեն զարժանիս նորա : Այսպէս և դու 'ի ցնծութեան անդ մարդահաճոյից ծանիցես զնոսա : Զգինին ճշմարտախօս ասէր և հին առածն. զոր և Թէոկրիտեայ յիշեալ 'ի ԻԹ. Եւ մեզ արբեցս պարտ է, ասէ, արդարաբան լինել : Բայց աստ ոչ ըստ անխարդախ ստուգութեան է համեմատութիւն ընդ սուտակապաստն, այլ ըստ զուարթամիտ առատութեան և համարձակ ճոխաբանութեան : Եւ 'ի քերթել քո տաղս՝ մի խաբեսցեն զքեզ նմանեալքն աղուեսու կեղծաւոր նենգամիտք. որ ակնարկէ յառակ աղուեսուն, զի շողոմաբար գովութեամբք հան զպանիրն յագռաւէն :

Կուինտիլեայ եթէ ինչ ընթեռնուիր, ասէր ուղղեա
Փոքր ինչ աղէ զայս և զայս. թէ զուր ճըգնեալ զանձն ասէիր
'Ի կրկին փորձ ուերեքկին լաւագունին անձեռընհաս,
Տայր ջընջել զանկազմըն տաղս և վերըստին ածել 'ի սալ։
Թէ ջատագով վընասուդ ընտրէիր կալ քան փոփոխել,
Ոչ ևս այլ ընդունայն բան ինչ կամ ջան 'ի գործ առնէր,
Զի առանց նախանձորդի քոյովքդ և քև զմայլեսցիս լոկ։
Այր բարի և խոհական կըշտամբեսցէ զտաղս անարուեստ,
Խըստիցըն մեղ դիցէ, և ըզգըրիչըն դարձուցեալ
Անարդիցն արկցէ սեաւ նիշ, ըզպերճանացըն հատցէ զարդ.
Լոյս պահանջեսցէ աղօտ աղօտ ծագել տեղեաց,
Ցուցցէ զերկխօսութիւնն և զփոխելիսն արասցէ յայտ.
Եղիցի Արիստարքոս և մի բարուրս յօդեսցէ ինչ,
Թէ առ իմ ես 'ի խաղս ըզմըտերիմ տըրտմեցուցից։
Խաղքըդ 'ի վտանգ ծանր արկցեն զամ մի պատրեալ թէ ծանակ կայ։

Որպէս ոք զի չարակեղ բոր կամ դալուկըն տանջիցէ

436. Այժմեայ օրինակ և զհանդամանս ուղիղ և անաչառ քննաբան դատողի 'ի դէմս Կուինտիլիոսի Վարոսի հռովմայեցւոյ՝ իւրումն մտերմի. որ անկեղծաւոր և արդարակորով դատաւորն էր քերթածաց 'ի ժամանակին, և ինքն իսկ քերթող ականաւոր։

439. Իբրև 'ի սալ դարբնաց յառակ օրինակի, 'ի կռել կոփել և վերստին ստեղծանել և կերպարանել զոր կամքն էին։

442. Յիմարաբար քև և քոյովքդ քերթածովք դու միայն զուարճասցիս՝ առանց զոք քեզ նախանձորդ ունելոյ։ Զի որ զոչ ուրուք նախանձելիսն առնէ, չունի զոք ինքեան նախանձաւոր։

443. Կարճառօտիւք ցուցանէ զգործս բարւոյ և աննենգ դատողի։ Յանդիմանեսցէ, ասէ, զանարուեստ և զանհարթ տողս տաղիցն. ստգտցէ զխրթին իմաստիւք կամ բառիւք. զանշուքն նշանակեսցէ ձգելով սեաւ գիծ կամ այլ ինչ նիշ արկանելով կողմնակի և առ 'ի չեղ շըջեալ զեղէգնն կամ զգրիչն։ Զի այնպէս առնէին հինքն առ ակնարկելոյ՝ թէ քերելի և ջնջելի են այն տողք։ Զաւելորդ շռայլանացն զարդս յապաւեսցէ, և այլն։

448. Արիստարքոս էր մեծանուն գրագէտ և գալխր յաղեքսանդրեան ճեմարանէ, աշխարհաւ սամոթրակեցի, վարժապետ Պտղոմեայ Փիլոմետորի արքայի եգիպտացւոց։ Գրեաց յոլով մատեանս 'ի քննել դատել և ընտրել զքերթածսն Հոմերոսի և այլոց քերթողաց յեկամուտ խորթութեանց և 'ի վրիպակաց գրչաց. որովք ժառանգեաց զփառս քաջի և ողջախոհ քննաբան դատաւորի, մինչև կոչել աստուածային և մարգարէ. և արժանի օրինակ կալ յապա եկելոց քննաբանից։ Այսպիսի ոմն եղեալ քաջի դատողին, ոչ պատճառեսցի՝ թէ զի՞ է ինձ 'ի սնոտիս և 'ի դուզնաքեայս վշտացուցանել զբարեկամն։ Դուզնաքեայքըդ չարիս մեծամեծս հասուսցեն նմա, եթէ երբէք խաբեալ միանգամ 'ի մարդահաճութենէ՝ ծաղր և քըքիջ կացցէ բազմութեան։

451. Ճարտար նկարագրել առնու զինքնահաւան քերթողն և զանասատող դատաստանի քննութեան հմտից տեղեկաց. և խրատէ թէ ընդ այնպիսումն պէտք պարտ իցէ վարել։ Որպէս եթէ ոք, ասէ, փոփոխելի ախտիւ վարակեալ իցէ, կամ կատաղութեամբ մոլեգնեալ, կամ յԱնահտայ՝ այսինքն 'ի լուսնոյ հարեալ և լուսնոտ, այսպէս ստգին նման խորշին մերժին իմաստունք 'ի մոլի քերթողէն, և հուպ երթալ երկնչին. անմիտ մանկունքն միայն

Կամ շամբուշ բանդագուշանք և զայրագինն Անահիտ,
'Ի մոլին հրապել քերթող խինթան ուշիմք փախչին 'ի բաց,
Խուճապէ մանկլտին և անըղձգոյշք պընդոլին ըղհետ:
Բարձրավիզ սա յորժամ տաղս ըղձայուելով շըրջի թափառ,
Որդ հաւորս պիշ 'ի կեռնեխս եթէ 'ի գուբ անկցի կամ հոր,
Թէպէտ յերկար գոչիցէ՝ ձեռըն տուք ով քաղաքացիք,
Մ՛ի գըտցի ոք ըրնաւ՝ որ զնա հանել արասցէ փոյթ:
Թէ հոգ ոք տարցի օգնել և արձակել պարան 'ի խորս,
Ո՞վ գիտես, ա՛յր դու, թէ ոչ կամաւ անկեալ չկամի փըրկել,
Ասացից, և զսիկիլեան բանարարին պատմեցից մահ.
Տենչացեալ Էմպեդոկլէս յանմահից դիցն անցանել կարգ,
Սազս առեալ ցըրտագին ոստեաւ յԱյտնէ 'ի հրաբորբոք:
Արժան լիցի և օրէն բանաստեղծաց երթ 'ի կորուստ.
Որ ըրռնի զոք փըրկեսցէ՝ չէ ինչ ընդհատ 'ի սպանողէն:
Ոչ մի անգամ արար զայդ, և ոչ թափեալ թէ մարդ լիցի,
Նա 'ի բաց թողուցու զհամբաւաւոր մահուն տարփանս:
Նա չէ յայտ ամենևին՝ ըղտաղս առ ինչ կարկատիցէ,

առ 'ի խաղ՝ և անըղձգոյշք ոմանք առ հետաքրքրութեան անկանին ընդ նմա քննելով և գտանելով զքերթածս նորա:

458. Բարձրավիզ. կեա օրինակք և մեկնիչք զվերադիրդ 'ի վերայ տաղիցն առեալ՝ իմանան ընդ հենգն, Սա յորժամ տաղս վեհս ըղձայուելով, և այլն: Արդարև sublimis բառ is յանդգին թէպէտ և յոգնակի հայցական եւ խմանի 'ի հին գրութիւնս հաւաքմականն լեզուի, բայց առա չիք ինչ պատճառ փոխելոյ 'ի sublimes յատուկ հայցական, որպէս յայլ բազում տեղիս գրոց փոխեալ են զայսպիսիս յետին տպագիրք: Արդ յորժամ մոլորեալ թափառեալ կայ, ասէ, ամբարհաւաճ կարծեօք մտացն, և անկանի հոգւով 'ի գուբ խայտառակութեան, կամ թէ և մարմնով եւս ուրեք՝ 'ի զմայլական առանդելն, մի ոք հանցէ, մի աշխատ լիցի խրատել ազատել զնա. զի ո՛ գիտէ կամաւ և գիտութեամբ արկեալ է զինքն և չկամի զերծանել, կարծելով առնել ինչ անուն: Որպէս երբեմն Էմպեդոկլէսն սիկիլիացի, յախտաբանից իմաստասէր և քերթող, որոյ յօրինեալ էր քերթուած մի բնաբանական, կամելով կարծիս առնել զանձնէ 'ի գիտն փոխելոյ, ըստ որում պատմի, արկ զինքն գաղտ 'ի հրահոս լեռանն Սիկիլիոյ յԵտնէ, մաղձիւն կամ յերևաց մահուն ցրտացեալ, և կամ անկարեկիր անխռով անձամբ: Արիստոտէլ չկամի տալ Էմպեդոկլեայ զպարծանս բանաստեղծութեան. զի ոչ որ ինչ և միանգամ ոտանաւոր բանիւ է, ստեղծաբանութիւն իցէ:

464. Թող կորիցեն բանաստեղծք այդպիսիք՝ խելագարք՝ անձնահաճք. այսինքն կորուսցեն զանուն իւրեանց՝ ոյր վասն այնպէս անմտաբար վտանգին, որ և արդէն իսկ ինքնակամ գիտացրաւ 'ի կորուստ ընթացեալ են, և ոչ կամին լսել: 'Ի սպանողէ համար մտանէ՝ որ յակամայ կամս նորին ապրեցուցանէ զնա 'ի վտանգէն և անուանի մահուանէն: Նա զի և ոչ առաջին անգամ է այդ՝ քերթողիդ այդմիկ զայդ առնելոյ. և ոչ՝ եթէ և զայս նուագ եւս փրկեսցի 'ի գբոյն կամ յանդր անկանելոյն, զգաստացեալ յինքն գայցէ, մարդ լինիցի, ըստ որում ունի և ճառին բնագիրն. զի անմիտն և մոլին՝ մարդ ոչ է: Եւ ոչ հրաժարեսցէ 'ի ցանկութենէն հաչակաւոր լինելոյ, թէպէտ և մահուամբ լինիցի. այսօր փրկեալ, վաղիւ դարձեալ 'ի նոյն խորխորատ հոսեսցէ զանձն:

468. Նա զի և չէ իսկ յայտ բնաւ, թէ առ ինչ և առ ի՞նչ բախեալ կայ 'ի գծա այդ

'Ի հայրենի ոսկերանցն իցէ յաճիւն միգեալ արդեօք,
Ո՛չ յանմատոյց սրբութիւն մրծրղնէիւ մերձեալ անձամբ։
Արդարև մոլի նա, և օրինակ իմն իբր արջոյ
Զ գայռագղին թէ խորտակել զընդդիմակաց զօրեաց խաղխամս,
Ըզտրգէտն և բանիբուն փախուցանէ ժանտ տաղասաց։
Իսկ կալեալ զոք՝ պինդ ունի և ընթերցմամբ ըսպանանէ,
Տըզըրուկ անբաժ 'ի մորթոյ մինչև արեամբ յագուրդ առեալ։

դև և ոգի և մոլորահողմն քերթողութեան։ Թերևս 'ի գիցինչ արժանահաս պատուհաս իցէ, ուստի և հարկ իսկ իցէ կորնչել նմա 'ի վրէժ անօրէնութեան իրիք մեծի։ Զի թերևս միգեալ իցէ 'ի գերեզման հօր իւրոյ, կամ պղծեալ զսրբարան ինչ ահաւոր։ Որ զինչ և իցէ յասացելոցս ցայս վայր, այս ճշմարիտ է՝ զի մոլի այրն. և իբրև արջ 'ի վանդակաց փախուցեալ՝ հալածէ զամենեսեան։ Իսկ եթէ ըմբռնիցէ զոք յանկարծ 'ի բարեմիտ լսողաց, իբրև տզրուկ ոչ թողու մինչև կշտասպինդ լցցի արեամբ ցյագ, պարարեսցի զուարճասցի ընթերցմամբ տաղից իւրոց։ Եւ ոգեսպառ կորուսանէ, հանէ թափէ զոգիս լսողին կարգացմամբն այնուիկ. և ընթեռնու՝ ոչ 'ի լսել զգաստատան այլոյ և ուղղել ինչ, այլ առ ոլսալ դրուատիս միայն։



# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

## ՈՐ Ի ՔԵՐԹՈՒԱԾԻՍ

Աթենաս, 384։
Ալբինոս, 326։
Ակկեան, 258։
Ամփիոն, 392։
Անահիտ, 452։
Անահտական, 16։
Անտիկիւր կամ Անտիկիւրա, 298։
Անտիփատ, 145։
Ապոլոն, 405։
Ասորի, 118։
Աստղիկ, 412։
Ատրեւս կամ Ատրէոս, 185։
Արգոս, 118։
Արիսական, 401։
Արիստարքոս, 448։
Արքիլոքոս, 80։
Աւլոս Կասկելիոս, 371։
Աքիլլէս, 120։
Դաւոս, 236։
Դելփիական պատգամք, 218։
Դիմոկրիտոս կամ Դեմոկրիտոս, 294։
Դիոմիդէս, 146։
Եգերացի, 118։
Եղիկոն կամ Հելիկոն, 294։
Եմիլեան, 33։
Եմպեդոկլէս, 462։
Եննեան, 258։
Եննիոս, 58։
Եսքիլ կամ Եսքիլոս, 277։
Ետնէ, 463։
Թեբացիք, 392։
Թեբէ, 118։
Թեսպիս, 275։
Թիեստական, 92։
Իլիական, 129։
Ինով, 123։
Իքսիոն, 124։
Լատիոն, 288։
Լիկինոս, 299։
Կադմոս, 186։
Կասկելիոս Աւլոս, 371։
Կատոն, 58։
Կեթեգեանք, 51։
Կեկիլիոս, 55։
Կիկլոփս կամ Կիկլոպ, 145։
Կուինտիլիոս, 436։
Հելլէն, 54 · 268 · 286 · տես և Յոյնք։
Հոմեր կամ Հոմերոս, 75 · 358 · 400։
Հռոմ, 55 · 263 · տես և Հռովմայեցի։
Հռենոս, 18։
Հռովմայեցի, 113 · տես և Հռոմ։
Հռովմէական, 323։
Մեդէ կամ Մեդիա, 123 · 184։
Մելէագր կամ Մելէագրոս, 146։
Մեսալա, 370։
Մետիոս, 386։
Մուսա, 84 · 141 · 321 · 405։
Յոյնք, 321 · տես և Հելլէն։
Յով, 124։
Որեստ կամ Որեստէս, 124։
Որփեւս կամ Որփէոս, 389։
Պելեւս, պելէոս, 97 · 104։
Պիերեան, 403։
Պիթեան, 413։
Պիսոնեանք, 6 · 234։
Պիւթիաս, 237։
Պլաւտեան, 269։
Պլաւտոս, 55։
Պոմպիլեան, 290։
Պրիամոս, 137։
Պրոկնէ, 186։
Սարդիկ կամ սարդիացի, սարդինիացի, 374։
Սիլէն կամ Սիլենոս, 238։
Սիկիլեան, 461։
Սիմոն, 237։
Սկիլլա, 145։
Սոկրատեան, 308։
Սոսեանք, 344։
Վարիոս, 56։
Վիրգիլ կամ Վիրգիլիոս, 56։
Տելեփոս, 97 · 104։
Տիրտէոս, 400։
Տրովա, 141։
Տրովական, 147։
Քարիբդիս, 145։
Քերիլոս, 356։
Քրեմէս, 95։

# ՎՐԻՊԱԿՔ ՏՊԱԳՐԻՆ

| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|
| 25 | ծան. 143 | *սկզբնաւորութիւնն* | *սկզբնաւորութիւնք* |
| 32 | ծան. 250 | *չորք մեծավերջ* | *չորք մեծավերջք* |
| 37 | ծան. 317 | *'ի տեղիս 'ի տեղիս* | *'ի տեղիս տեղիս* |
| 42 | ծան. 392 | *'ի շինութիւն և քաղաքական կեանս* | *'ի շինութիւն և 'ի քաղաքական կեանս* |